ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ



10

ՀՈԿՏԵՄԲԵՐ

ԵՐԵՎԱՆ 1958

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 10
ՀՈԿՏԵՄԲԵՐ
1958 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXV
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



### ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ



### ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



---

## СОДЕРЖАНИЕ



---

# ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ ՓԱՌԱՊԱՆԾ 40-ԱՄՅԱԿԸ

*Մեծ Հոկտեմբերի կենսարար արևի տակ ծնվեց ու սնվեց կոմունիստական երիտասարդական Միությունը։ Կոմերիտմիության ստեղծման առաջին իսկ օրից Կոմունիստական պարտիան նրա առջև խնդիր դրեց՝ միլիոնավոր աշխատավոր երիտասարդների ուժն ու եռանդը ի սպաս դնել սոցիալիստական Հայրենիքի պաշտպանության, մեր երկրում սոցիալիզմի կառուցման վեհ գործին։ Կոմերիտմիության անցած ուղին, նրա սքանչելի գործերը փայլուն ապացույց են այն բանի, որ նա հաջողությամբ է լուծել իր այդ հիմնական և պատվավոր խնդիրը։*

*Կոմերիտմիությունն իր առաջին քննությունը բռնեց քաղաքացիական կռիվների տարիներին, երբ երիտասարդ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան ամեն կողմից շրջապատված թշնամիներով՝ ծանր օրեր էր ապրում։ Կոմունիստական պարտիայի կոչով նրա լավագույն անդամները, երիտասարդ հայրենասերները համալրում էին հերոսական Կարմիր Բանակի գնդերն ու դիվիզիաները՝ արիաբար մարտնչում Սովետական Հայրենիքի պաշտպանության առաջավոր դիրքերում։*

*Քաղաքացիական պատերազմի հաղթական ավարտից հետո, կոմերիտմիությունը, որն իրեն մարտական փառքով էր պսակել, ստեղծագործական խաղաղ աշխատանքի լծվեց մեր երկրի քայքայված ժողովրդական տնտեսությունը վերականգնելու համար։*

*Սոցիալիստական շինարարության տարիներին, երկրի ինդուստրացման և կոլեկտիվացման համար մղվող պայքարում երիտասարդ լենինյանները աշխատանքային սխրագործությունների բազմաթիվ էջեր գրեցին սոցիալիզմի էպոխայի պատմության մեջ։ Հաղթահարելով բոլոր դժվարությունները, համառությամբ տիրապետելով նորագույն տեխնիկային, նրանք, ՍՄԿՊ-ի ղեկավարությամբ, սովետական ողջ ժողովրդի հետ միասին խիզախորեն առաջ են մղում նոր, լուսավոր և երջանիկ կյանք ստեղծելու, կոմունիզմ կառուցելու սրբազան գործը։*

*Անգնահատելի է կոմերիտմիության և երիտ[illegible]ան դերը սոցիա-[illegible]ց պաշտպանելու, [illegible]պատմական հաղ-[illegible]*

*[illegible]տարությամբ լե-[illegible]։ Գնալով աճում [illegible]ռնում նրա դերը [illegible]ական ոգով դաս-*

## СОДЕРЖАНИЕ



---

# ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ ՓԱՌԱՊԱՆԾ 40-ԱՄՅԱԿԸ

*Մեծ Հոկտեմբերի կենսարար արևի տակ ծնվեց ու սնվեց կոմունիստա-
կան երիտասարդական Միությունը: Կոմերիտմիության ստեղծման առաջին
իսկ օրից Կոմունիստական պարտիան նրա առջև խնդիր դրեց՝ միլիոնավոր
աշխատավոր երիտասարդների ուժն ու եռանդը ի սպաս դնել սոցիալիստա-
կան Հայրենիքի պաշտպանության, մեր երկրում սոցիալիզմի կառուցման վեհ
գործին: Կոմերիտմիության անցած ուղին, նրա աքանչելի գործերը փայլուն
ապացույց են այն բանի, որ նա հաջողությամբ է լուծել իր այդ հիմնական և
պատվավոր խնդիրը:*

*Կոմերիտմիությունն իր առաջին քննությունը բռնեց քաղաքացիական
կռիվների տարիներին, երբ երիտասարդ Սովետական Սոցիալիստական Ռես-
պուբլիկան ամեն կողմից շրջապատված թշնամիներով՝ ծանր օրեր էր ապ-
րում: Կոմունիստական պարտիայի կոչով նրա լավագույն անդամները, երի-
տասարդ հայրենասերները համալրում էին հերոսական Կարմիր Բանակի
գնդերն ու դիվիզիաները՝ արիաբար մարտնչում Սովետական Հայրենիքի
պաշտպանության առաջավոր դիրքերում:*

*Քաղաքացիական պատերազմի հաղթական ավարտից հետո, կոմերիտ-
միությունը, որն իրեն մարտական փառքով էր պսակել, ստեղծագործական
խաղաղ աշխատանքի լծվեց մեր երկրի քայքայված ժողովրդական տնտեսու-
թյունը վերականգնելու համար:*

*Սոցիալիստական շինարարության տարիներին, երկրի ինդուստրացման
և կոլեկտիվացման համար մղվող պայքարում երիտասարդ լենինյանները
աշխատանքային սխրագործությունների բազմաթիվ էջեր գրեցին սոցիալիզմի
կառուցման պատմության մեջ: Հաղթահարելով բոլոր դժվարությունները, հա-
ճախ ամենադաժան զրկանքները, նրանք, ՍՄԿՊ-ի ղեկա-
վարությամբ, սովետական ողջ ժողովրդի հետ միասին խիզախորեն առաջ են
մղում նոր, լուսավոր և երջանիկ կյանք ստեղծելու, կոմունիզմ կառուցելու
սրբազան գործը:*

*Անգնահատելի է կոմերիտմիության և երիտասարդության դերը սոցիա-
լիստական Հայրենիքը գերմանա-ֆաշիստական զավթիչներից պաշտպանելու,
միջազգային իմպերիալիզմի նկատմամբ համաշխարհային պատմական հաղ-
թանակ տանելու գործում:*

*Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ և հոգատարությամբ լե-
ինյան կոմերիտմիությունը մեծ և փառապանծ ուղի է անցել: Գնալով աճում
ամրապնդվում է նա, է՛լ ավելի պատասխանատու է դառնում նրա դերը
ոմունիզմի կառուցման և երիտասարդությանը կոմունիստական ոգով դաս-*

տիարակելու ասպարեզում։ Վաղուց է, որ նա դարձել է կադրերի սքանչելի դարբնոց, պարտիայի ու պետության հզոր ռեզերվ։

ՀամԼԿԵՄ XIII համագումարը նշեց, որ կոմերիտմիության գործունեությունն ավելի արդյունավետ է դարձել հատկապես վերջին տարիներին, երբ սովետական ժողովուրդը հաջողությամբ կենսագործում է մեր երկրի արդյունաբերության հետագա զարգացման և գյուղատնտեսության շեշտակի վերելքն ապահովելու վիթխարի պլանները։ Կոմերիտմիությունը ներկա էտապում ավելի համառորեն է պայքարում պարտիայի և Սովետական կառավարության առաջադրանքները պատվով կատարելու համար։ Կոմունիստական պարտիայի կոչով մոտ 300 հազար երիտասարդ հայրենասերներ մեկնեցին երկրի Հյուսիսում, Արևելքում և Սիբիրում կատարվող վիթխարի շինարարական աշխատանքներին մասնակցելու. 40 հազարից ավելի պատանիներ ու աղջիկներ աշխատանքի անցան Դոնբասի, Կուզբասի, Կարագանդայի, Մերձմոսկովյան ավազանի ածխահորերում ու հանքահորերում։ Կոմերիտականներն ու երիտասարդները մեծ խանդավառությամբ մասնակցում են նաև էլեկտրակայանների, ջրանցքների, գործարանների, դոմնային և մարտենյան հնոցների կառուցմանը, ակտիվորեն պայքարում են գյուղատնտեսության վերելքն ապահովելու համար. մոտ 350 հազար պատանիներ ու աղջիկներ կոմերիտմիության ուղեգրով մեկնեցին խամ ու խոպան հողերը և մյուս աշխատավորների հետ միասին 2—3 տարվա ընթացքում կարողացան իրացնել 36 միլիոն հեկտար նոր հողեր. 650 հազարից ավելի երիտասարդներ ուղարկվեցին անասնապահության բնագավառում աշխատելու։

Կոմերիտական կազմակերպությունները մեծ գոհունակությամբ վերցրին քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների կառուցման շեֆությունը, այժմ նրանք մեծ եռանդով պայքարում են ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշումների կենսագործման, մեր երկրում արդյունաբերական ապրանքների լիառատություն ստեղծելու համար։

Հայաստանի կոմերիտմիությունը Սովետական Միության բազմամիլիոն կոմերիտական բանակի հետ միասին, Հայրենիքի նկատմամբ իր պարտքը կատարելու ջերմ ցանկությամբ համակված, մասնակցում է կոմունիստական շինարարությանը։ Ամենուրեք, արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ, տրանսպորտում և շինարարություններում ռեսպուբլիկայի երիտասարդությունը բարձր քաղաքական և աշխատանքային ակտիվություն է հանդես բերում։ Հարյուրավոր կոմերիտական-երիտասարդական բրիգադներ, հազարավոր կոմերիտականներ ու երիտասարդներ աշխատանքային նորանոր հաջողություններով են դիմավորում լենինյան կոմերիտմիության փառապանծ հոբելյանը։ Համամիութենական կոմերիտական խնայատուփն է արդեն մուծված 180 միլիոնից ավելի ռուբլու գումար, հավաքված է 4 հազար տոննա մետաղի ջարդվածք (լոմ)։ Կոմերիտականների և երիտասարդների ժրաջան աշխատանքի շնորհիվ ժամկետից շուտ ավարտվեցին Կոտայքի ջրանցքի շինարարության կոմերիտական առաջին հարվածային տեղամասի աշխատանքները։ Չորս հազարից ավելի կոմերիտականներ և երիտասարդներ մասնակցում էին Ղազախստանի Կուստանայի մարզի բերքահավաքի աշխատանքներին։

Երևանի, Լենինականի, Կիրովականի, Ալավերդու, Ղափանի և ռեսպուբլիկայի մյուս քաղաքների արդյունաբերական ձեռնարկությունների կոմերի-



տականներն ու երիտասարդները հանդես են գալիս նոր, օգտակար նախաձեռնություններով։ Գործարաններում և ֆաբրիկաներում լայն ծավալ է ստացել երիտասարդ բանվորների շարժումը օրվա առաջադրանքը գերակատարելու և բարձր որակի արտադրանք թողարկելու համար։

Այս տարի զգալի են կոմերիտական կազմակերպությունների հաջողությունները գյուղատնտեսության բնագավառում։ Հատկապես աչքի ընկնող աշխատանք է կատարված անասնակերի կուտակման գործում։ Վեդու, Շամշադինի, Էջմիածնի, Ալավերդու, Մարտունու, Գորիսի և այլ շրջանների եգիպտացորենի և ուրիշ կուլտուրաների մշակման կոմերիտական-երիտասարդական բրիգադներն իրենց բարեխիղճ աշխատանքով հյութալի կերի բազա են ստեղծում անասունների համար։

Կոմունիստական պարտիան, կառավարությունը, ամբողջ սովետական ժողովուրդը բարձր են գնահատում կոմերիտմիության գործունեությունը։ Նրանք հպարտանում են, որ կոմերիտականները, երիտասարդները խոշոր ավանդ են մուծում կոմունիստական շինարարության համաժողովրդական գործի մեջ։

Սակայն մեր երկրի պատմական զարգացման ներկա էտապում Կոմունիստական պարտիան կոմերիտմիությունից սպասում է է՛լ ավելի բեղմնավոր աշխատանք երիտասարդության կոմունիստական դաստիարակության բնագավառում։ ՀամԼԿԵՄ XIII համագումարին ուղղած իր ողջույնի մեջ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն, համագումարում ունեցած իր ելույթում ընկ. Խրուշչովը կոմերիտմիության առջև նոր, ավելի պատասխանատու խնդիրներ դրին։

Սոցիալիստական հասարակարգի մարդը աճում և կոփվում է աշխատանքում, ուսման մեջ, պայքարում։ Լենինը երիտասարդական միությունների խնդիրների մասին ՌԿԵՄ III համագումարում արտասանած իր նշանավոր ճառում նշում էր, որ կոմերիտմիությունը պետք է իր կրթությունը, ուսումը և դաստիարակությունը միացնի բանվորների և գյուղացիների աշխատանքի հետ, որ միայն աշխատանքում, պայքարում կարելի է դառնալ իսկական կոմունիստ։ Վ. Ի. Լենինի ճառում կարմիր թելի նման անցնում է այն միտքը, թե առանց ժամանակակից գիտության և տեխնիկայի վրա հիմնվող աշխատանքի չի կարելի դաստիարակել կոմունիզմ կառուցողների իսկական սերունդ։ Վ. Ի. Լենինի՝ համագումարի պատգամավորներին, ողջ երկրի երիտասարդությանն ուղղված ցուցումները բխում էին երկրի արդյունաբերության և գյուղատնտեսության անհապաղ վերականգնման, տեխնիկական նոր բազայի հիման վրա դրանք վերակառուցելու և զարգացնելու վիթխարի խնդիրներից, որոնք ծառացել էին երիտասարդ սոցիալիստական ռեսպուբլիկայի առջև։ Չնայած նրան, որ այդ խնդիրները կենսագործված են, մեծ առաջնորդի ցուցումները այժմ էլ նույն ուժով լույս են սփռում մեր գործունեության վրա։

Որքան էլ որ մեր երկիրն արագ թափով ընթանա դեպի կոմունիզմ, որքան արագորեն զարգանան սոցիալիզմի արտադրողական ուժերը, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան, այնքան ավելի սրությամբ է դրվում մատաղ սերնդի ուսման և կրթության գործը, որը պետք է սերտորեն շաղկապված լինի աշխատանքային դաստիարակության հետ։

Սակայն այդ բնագավառում մենք ունենք լուրջ թերություններ։ Դրանք առաջին հերթին վերաբերում են դպրոցին։ Օրերս մամուլում հրապարակվե-

ցին Ն. Ս. Խրուշչովի առաջարկությունները միջնակարգ և բարձրագույն դպրոցների վերակառուցման մասին։ Բնական է, որ այդ առաջարկությունները մեծ հետաքրքրություն առաջացրին մեր երկրում, որովհետև դրանք վերաբերում են միլիոնավոր մարդկանց կրթության գործին և խոշոր նշանակություն ունեն կոմունիստական հասարակարգի հետագա նյութական և կուլտուրական զարգացման համար։ Վերակառուցման անհրաժեշտությունը պայմանավորված չէ նրանով, որ մեր դպրոցը վատ է։ Ընդհակառակը, Սովետական իշխանության տարիներին հսկայական չափերի հասավ ժողովրդական կրթությունը մեր երկրում։ Այժմ դպրոցներում սովորողների թիվը 30 միլիոնից անցել է, ուսանողների թիվը ավելի քան 4 միլիոն է, իսկ մասնագետների բանակը ժողովրդական տնտեսության մեջ կազմում է 8, 6 միլիոն մարդ։ Նույնիսկ Սովետական Միության նկատմամբ ոչ այնքան բարյացակամ վերաբերմունք ունեցող մարդիկ արտասահմանում խոստովանում են, որ մեր ինտելիգենցիան իր պատրաստականությամբ ավելի բարձր է, քան ուղածդ կապիտալիստական երկրում։ Այդ մասին է վկայում այն վիթխարի թռիչքը, որ կատարել են մեր երկրում գիտությունն ու տեխնիկան։ Չնայած սովետական դպրոցի այս հաջողություններին, այնուամենայնիվ, դպրոցներն ու բուհերը դեռևս ետ են մնում կյանքից, մեր զարգացումից։

Տասնամյա դպրոցը երիտասարդությանը նախապատրաստում է միայն բարձրագույն ուսումնական հաստատություններ ընդունվելու համար։ Դպրոցներն ավարտածների մեծ մասը, որին չի հաջողվում ընդունվել բարձրագույն ուսումնական հաստատություն, ընդունակ չէ պրակտիկ գործունեության։ Նրանք չգիտեն արտադրությունը, որովհետև դպրոցական ծրագրերը կտրված են կյանքից։

Ներկա պայմաններում ուսման և կրթության հարցերը պահանջում են անհապաղ լուծում՝ ժողովրդական կրթության վերակառուցում։ Այդ վերակառուցման նպատակն է՝ միջնակարգ, ինչպես նաև բարձրագույն դպրոցը մոտեցնել արտադրությանը, կարգավորել ընդունելության գործը բուհերում, զգալի չափով լայնացնել հեռակա և երեկոյան ուսուցումը։ Միջնակարգ և բարձրագույն դպրոցի աշխատողների գլխավոր խնդիրը պետք է լինի աճող սերնդին նախապատրաստել կյանքի, օգտակար աշխատանքի համար։

Սովետական մարդիկ չեն կարող հաշտվել այն բանի հետ, որ դպրոցը չի դաստիարակում աշակերտության մեջ անհրաժեշտ սեր դեպի ֆիզիկական աշխատանքը, նրանց մեջ չի արթնացնում ջերմ հետաքրքրություն դեպի արտադրությունը։

Սովետական մարդիկ, մեր հասարակայնությունը դատապարտում են բոլոր նրանց, ովքեր արհամարհանքով են նայում ֆիզիկական աշխատանքով զբաղվողների վրա։ Այդպիսի վերաբերմունքը ֆիզիկական աշխատանքի մարդկանց նկատմամբ խորթ է սոցիալիստական հասարակարգին, մեր բարոյականությանը։ Դա գալիս է հին, բուրժուական հասարակարգից, երբ շահագործող դասակարգերը ֆիզիկական աշխատանքով զբաղվող մարդկանց վրա նայում էին որպես կործանվածների վրա, երբ մասնագիտություն ընտրելիս վճռական դեր էր խաղում դասակարգային պատկանելությունը և այլն։

Յուրաքանչյուր հասարակական օգտակար աշխատանք ազնվացնում է մարդուն։ Այդ առավել ևս այդպես է մեր սոցիալիստական հասարակարգում, ուր աշխատանքը վաղուց է դարձել պատվի ու փառքի գործ։ Ինչպիսի աշխատանքով էլ մարդն զբաղվի մեր հասարակարգում, ֆիզիկական թե մտավոր, երբ այն նպաստում է կոմունիզմի կառուցմանը, անշուշտ կարժանանա բոլորի համակրանքին, նա կզգա իրեն որպես սոցիալիստական հասարակարգի լիարժեք անդամ։ Եվ ընդհակառակը, եթե մարդը ոչ մի օգտակար աշխատանքով չի զբաղվում և վարում է պարազիտային կյանք, ապրում է ընտանիքի այս կամ այն անդամի հաշվին, նա միշտ էլ արհամարհվում է հասարակության կողմից, նույնիսկ նրանից երես են թեքում ամենահարազատ մարդիկ։ Ֆիզիկական աշխատանքն արհամարհող երիտասարդների նկատմամբ կոմերիտական կազմակերպությունները ոչ միայն պետք է ներգործեն հասարակական կարծիքի միջոցով, այլև օգնեն նրանց՝ կանգնելու ճիշտ ուղու վրա։



Կոմերիտմիության սրբազան պարտականությունն է՝ լինել հոգատար յուրաքանչյուր երիտասարդի նկատմամբ, օգնել նրան, որպեսզի նա կարողանա նախապատրաստել իրեն ոչ միայն սովորելու, այլև աշխատանքային գործունեության համար։ Չափազանց կարևոր է, որպեսզի պարտիական և կոմերիտական կազմակերպությունները համառորեն ներարկեն երիտասարդության գիտակցության մեջ այն միտքը, որ նրանցից յուրաքանչյուրի կատարած աշխատանքը, նույնիսկ հասարակ, աննշան, բայց ժողովրդին անհրաժեշտ, հանդիսանում է համաժողովրդական աշխատանքի մի մասնիկը, որ ամեն մի, թեկուզ փոքր հաջողություն ժողովրդական տնտեսության և կուլտուրական շինարարության այս կամ այն տեղամասում մոտեցնում է կոմունիզմի հաղթանակը։ Աճող սերնդի գիտակցության մեջ պետք է մշտապես սավառնի այն միտքը, որ մեր պանծալի բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և սովետական ինտելիգենցիայի հետ միասին ակտիվորեն մասնակցել կոմունիստական շինարարությանը, նշանակում է սքանչելի կյանքի դպրոց անցնել, կոփվել գալիք մեծ գործերի համար, դառնալ ավելի պիտանի մարդ։

Երիտասարդության կոմունիստական դաստիարակության հզոր միջոցը՝ մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով նրան զինելն է։ ՀամԼԿԵՄ XIII համագումարին ուղղած իր ողջույնի մեջ ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեն նշում է, որ մեր դարում, երբ կոմունիզմի գաղափարները, տիրելով միլիոնավոր մարդկանց մտքերին ու սրտերին, դարձել են արդի հասարակության վերափոխող զորեղ, ստեղծարար ուժ, երիտասարդության համար առանձնապես կարևոր է, որ խորապես ուսումնասիրի մարքս-լենինյան տեսությունը, պրակտիկ գործունեության մեջ ստեղծագործաբար կիրառի ստացած գիտելիքները։ Երիտասարդության գաղափարական դաստիարակության հարցերը գնալով ավելի մեծ կարևորություն են ստանում։ Մեր երկրի զարգացման ներկա էտապում աշխատավորական լայն մասսաների քաղաքական գիտակցության բարձրացումը սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու վճռական պայմաններից մեկն է։ Սոցիալիզմի կառուցման քառասնամյա փորձը մեր երկրում ցույց է տալիս, որ քաղաքական աշխատանքի մակարդակից է գլխավորապես կախված այս կամ այն կարևոր խնդրի հաջող լուծումը, որ կոմերիտմիության աչքի ընկնող ծառայությունները նրա գաղափարական-քաղաքական կոփվածության և բարձր սոցիալիստական գիտակցության վառ արտահայտությունն են։ Եվ եթե առանձին կոմերիտականներ, երիտասարդներ ակտիվորեն չեն մասնակցում մեր առօրյա կյանքին, հետին տեղ են գրավում մեր շարքերում, ապա դա պետք է բացատրել առաջին հերթին նրանց քաղաքական ցածր գիտակցությամբ, իսկ դա արդյունք է այն բանի, որ կոմերի-

տականների, երիտասարդների որոշ մասը դուրս է մնում քաղաքական աշխատանքից, թողնվում է բախտի քմահաճույքին։

Քաղաքական դաստիարակչական աշխատանքը թույլ է հատկապես կոմերիտմիության շարքերից դեռևս դուրս գտնվող երիտասարդության շրջանում։ Մեր ռեսպուբլիկայի առանձին կոմերիտական կազմակերպություններ անհրաժեշտ ուշադրություն չեն հատկացնում այս կարևոր գործին, որի հետևանքով ՀամԼԿԵՄ շարքերը երկար ժամանակով չեն համալրվում լավագույն երիտասարդների հաշվին։ Կոմերիտմիության մեջ վատ է ներգրավվում հատկապես բանվոր և կոլտնտեսային երիտասարդությունը։ Սևանի, Կոտայքի, Ախտայի և այլ շրջանների շատ կոլտնտեսային սկզբնական կոմերիտական կազմակերպություններ գրեթե դադարել են աճելուց։ Հազիվ թե կարիք կա ապացուցելու, որ ՀամԼԿԵՄ շարքերից դուրս գտնվող երիտասարդների հետ չաշխատել, նրանց չներգրավել ակտիվ աշխատանքի մեջ, չնախապատրաստել նրանց ՀամԼԿԵՄ շարքերը համալրելու համար, նշանակում է կտրվել երիտասարդական մասսաներից, մատնվել քաղաքական անգործության, կազմակերպորեն թուլանալ։

Կոմերիտական կազմակերպություններն ունեն բոլոր հնարավորությունները ժամանակին վերացնելու երիտասարդության քաղաքական դաստիարակչական աշխատանքներում տեղ գտած թերությունները։ Արդեն սկսվել է կոմերիտական քաղաքական լուսավորության ուսումնական տարին։ Հենց սկզբից ևեթ պետք է լուրջ վերաբերվել այս գործին, կոմերիտականներին և երիտասարդներին քաղաքական ուսուցումից դուրս չթողնել։

Կոմերիտմիությունը սովետական երիտասարդության մասսայական կազմակերպություն է, ամբողջ աշխատանքը հենվում է նրա անդամների ինքնագործունեության, ակտիվության և նախաձեռնության վրա։ Ուստի ՀամԼԿԵՄ XIII համագումարը, նշելով կոմերիտմիության շարունակ աճող դերը կոմունիստական շինարարության գործում, պահանջեց ավելի լայնորեն զարգացնել կոմերիտականների և երիտասարդների ստեղծագործությունն ու նախաձեռնությունը, կատարելագործել կազմակերպական աշխատանքի ձևերն ու մեթոդները։ Չնայած ՀամԼԿԵՄ XIII համագումարից հետո կարճ ժամանակ է անցել, այնուամենայնիվ, ռեսպուբլիկայի կոմերիտական կազմակերպությունների կատարած աշխատանքն այդ ուղղությամբ արդեն նկատելի է։ Այժմ կարելի է հանդիպել շատ կոմերիտական կազմակերպությունների, որոնք վճռական բեկում են ստեղծել իրենց աշխատանքներում, գործում են ավելի խելացի, ավելի ինքնուրույն, հանդես են բերում լավագույն նախաձեռնություն երիտասարդության հետ աշխատանքն ավելի բազմազան, ավելի հետաքրքրական դարձնելու համար։ Այս առումով հիշատակության արժանի է ՀԼԿԵՄ Արտաշատի շրջկոմի աշխատանքը։ Արտաշատում կազմակերպված անցավ ՀամԼԿԵՄ շարքերն ընդունվող երիտասարդների շրջանային հավաքը, որտեղ զեկուցում տրվեց «Լինել կոմերիտական — մեծ պատիվ է» թեմայի մասին։ Կոմերիտականների և երիտասարդների քաղաքական ակտիվության բարձրացման համար խոշոր նշանակություն ունեցան հանդիպումները հին բոլշևիկների և շրջանի առաջին կոմերիտականների հետ։ ՀԼԿԵՄ շրջկոմը կոմերիտականների և երիտասարդների համար սիստեմատիկաբար կազմակերպում է բանավոր ամսագրեր, գրողների, դերասանների և կուլտուրայի զանազան գործիչների հետ հանդիպումներ, գյուղատնտեսության երիտասարդ



առաջավորների հավաքներ։ Շրջանի աշխատավորության մեջ մեծ հետաքրքրություն առաջացրեց «Կոմերիտական աչք» երգիծական պատի թերթը։

Այդպիսի միջոցառումներ անց են կացվում նաև Կիրովականի քաղաքային, Երևանի Ստալինյան շրջանային և այլ կոմերիտական կազմակերպությունների կողմից։ Այս ամենն անկասկած զգալի չափով կնպաստեն կոմերիտական կազմակերպությունների ստեղծագործական նախաձեռնության, քաղաքական ակտիվության և աշխատանքային խանդավառության բարձրացմանը։ Կոմերիտական կազմակերպությունները պետք է ամրապնդեն ձեռք բերած հաջողությունները, նպատակ ունենալով, որ երիտասարդության համար անցկացվող միջոցառումները չկրեն կամպանիոն բնույթ, այլ նրանք լինեն նպատակասլաց, անընդհատ հարստացվեն ու կատարելագործվեն նոր ձևերով։

Այստեղ պետք է նշել, որ երիտասարդության հետ անցկացվող այս կամ այն միջոցառումը, հատկապես ֆեստիվալները, էքսկուրսիաները, երիտասարդների հանգստի հետ կապված հարցերի կազմակերպումը, կապված են որոշ դժվարությունների հետ. այստեղ կոմերիտական կազմակերպություններին պետք է օգնության հասնեն պարտիական, սովետական և տնտեսական ղեկավար ընկերները, մեծ ուշադրություն և հոգատարություն ցուցաբերեն երիտասարդության համար անցկացվող միջոցառումների նկատմամբ։ Սակայն եզակի չեն այն դեպքերը, երբ կոմերիտական կազմակերպությունների այս կամ այն լավագույն նախաձեռնությունը չի իրականացվում հենց առանձին հիմնարկ ձեռնարկությունների ղեկավարների անհոգի վերաբերմունքի պատճառով։ Երևանի հրուշակեղենի-մակարոնի ֆաբրիկայում մեծ թվով երիտասարդներ կան։ Արտադրության բախտը որոշողները հիմնականում նրանք են։ Սակայն մի՞թե հանդուրժելի է այն, որ ֆաբրիկայի դիրեկցիան անտարբեր է երիտասարդության նկատմամբ, չկա երիտասարդության համար անցկացվող որևէ միջոցառում, որը չհանդիպի նրա դիմադրությանը։ Այսպիսի երևույթները, որոնք բացասաբար են անդրադառնում երիտասարդության դաստիարակության վրա, միանգամայն դատապարտելի են և պետք է անմիջապես կանխվեն պարտիական կազմակերպությունների կողմից։

Պարտիական ղեկավարությունը կոմերիտմիության նկատմամբ իրականացվում է զանազան մեթոդներով և ձևերով։ Օրինակ, կոմերիտական աշխատանքի վերաբերյալ այս կամ այն հարցի քննարկումը քաղկոմ-շրջկոմների բյուրոների, պլենումի նիստերում, սկզբնական պարտիական կազմակերպությունների ժողովներում. դա, անկասկած, պարտիական ղեկավարության կարևոր ձևերից մեկն է։ Բայց դրանով չի սահմանափակվում պարտիական ղեկավարությունը կոմերիտմիության նկատմամբ։ Պարտիական օրգանների պրակտիկայից դուրս մղելով ավելորդ խնամակալությունը կոմերիտմիության հանդեպ, անհրաժեշտ է ապահովել այնպիսի ղեկավարություն, որը նպաստի կոմերիտական կազմակերպությունների քաղաքական և կազմակերպական ամրապնդմանը, նրանց ինքնագործունեության զարգացմանը։ Պարտիական կազմակերպությունները պետք է ամեն օր հետաքրքրվեն կոմերիտական կազմակերպությունների աշխատանքով, տնտեսական և կուլտուրական շինարարության հարցերը լուծելիս հենվեն նրանց վրա, որպես իրենց հավատարիմ օգնականի վրա, խրախուսեն նրանց լավագույն նախաձեռնությունները, ընդլայ-

*նեն նրանց գործունեության ասպարեզը։ Այս են պահանջում կոմերիտմիության նկատմամբ պարտիական ղեկավարության լենինյան սկզբունքները։*

*Չպետք է մոռանալ մի կարևոր հանգամանք, որ կոմերիտական կազմակերպությունների ղեկավարները երիտասարդներ են, չունեն կյանքի անհրաժեշտ փորձ և միշտ զգում են մեծ ընկերների խորհուրդների և օգնության կարիքը։ Սակայն առանձին պարտիական ղեկավար ընկերներ, մասնավորապես պարտիայի քաղկոմ-շրջկոմների քարտուղարները, ոչ միայն կոմերիտական ակտիվի հետ, այլև նույնիսկ կոմերիտական քաղկոմ-շրջկոմների առաջին քարտուղարների հետ ամիսներով, երբեմն էլ տարիներով անձնական զրույցներ չեն ունենում, չեն խորանում կոմերիտական աշխատանքների, երիտասարդությանը հուզող հարցերի մեջ։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ այսպիսի վերաբերմունքը կոմերիտական աշխատանքը թերագնահատելու արտահայտություն է։ Եվ սրա հետևանքը եղավ այն, որ վերջին ժամանակներս առանձին կոմերիտական ղեկավար աշխատողներ իրենց արտավորեցին, աշխատանքից հանվեցին։ Առանց վարանելու կարելի է ասել, որ այդ ընկերները պարտիական կազմակերպությունների տեսադաշտից վրիպել էին, որ կոմերիտական կադրերի հետ տարվող աշխատանքը դեռևս իր պատշաճ բարձրության վրա չի գտնվում։ Հատկապես լուրջ աշխատանք պետք է տանել կոմերիտական կադրերին, ակտիվին մարքսիզմ-լենինիզմի թեորիայով զինելու ուղղությամբ։ Մեր բազմամյա աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ կազմակերպական աշխատանքի լավագույն ունակություններ ունեցող կոմերիտական աշխատողը, եթե մարքսիստական-լենինյան թեորիային լավ չի տիրապետում, աշխատանքում անհամարձակ է, չի կարողանում ավելի շուտ կողմնորոշվել հարցերում, երբեմն էլ նահանջում է որևէ դժվարության հանդիպելիս։ Եվ ընդհակառակը, եթե կոմերիտական աշխատողը լավ կազմակերպիչ լինելով հանդերձ թեորիապես պատրաստված է, ապա նա ավելի խելացիորեն կարող է կազմակերպել երիտասարդությանը այս կամ այն կարևոր խնդիրը լուծելու համար։ Պարտիական կազմակերպությունները կոմերիտական կադրերի նկատմամբ պետք է ցուցաբերեն առավել հոգատարություն, նրանց մեջ դաստիարակեն աշխատանքում անաղարտ, ազնիվ լինելու, անվայել արարքներից զերծ մնալու հատկություններ։*

*Այժմ, երբ տեղի է ունենում սոցիալիզմի, դեմոկրատիայի և խաղաղության ուժերի հզոր կոնսոլիդացիա, երբ սունկի նման բազմանում են միջազգային բանվորական և կոմերիտական շարժման ծիլերը, աշխարհի ազգությունների և ժողովուրդների փոխադարձ հարգանքի և համագործակցության ավելի բարենպաստ պայմաններ են ստեղծվում։ Լայնանում են աշխատավոր մասսաների, երիտասարդության մերձեցման և ինտերնացիոնալ կապերի ամրապնդման շրջանակները, փշրվում, ոչնչանում են այդ ճանապարհին եղած արգելակները։ Վերջին տարիներին աշխարհում ավելի է աճել կոմունիստական երիտասարդության շարժումը, ավելի է նվազում բուրժուական իդեոլոգիայի ազդեցությունը երիտասարդության շրջանում։ Ներկայումս կոմունիստական երիտասարդական կազմակերպությունները միավորում են մոտ 60 միլիոն պատանիների ու աղջիկների։*

*Այժմ է՛լ ավելի պատասխանատու, ավելի բազմապիսի խնդիրներ են դրվում աշխարհի պրոգրեսիվ երիտասարդության առաջ, հատկապես լենինյան կոմերիտմիության առաջ, որը քայլում է սոցիալիզմի, դեմոկրատիայի և խաղաղության համար մղվող պայքարի առաջավոր շարքերում։*



*Մեր երկրի երիտասարդությունը, որը դաստիարակվում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, ակտիվորեն պայքարում է խաղաղության համար, նոր պատերազմի վտանգի դեմ։ Նա սրբությամբ կատարում է իր ինտերնացիոնալ պարտքը, ուժեղացնում է կապերն ու համագործակցությունը եղբայրական կոմունիստական կազմակերպությունների հետ, նպաստում է խաղաղության համար պայքարող դեմոկրատական երիտասարդության համախմբմանը։ Ներկայումս սովետական երիտասարդությունը բարեկամական կապեր է պահպանում աշխարհի 100 երկրների երիտասարդության հետ, նա ակտիվորեն մասնակցում է երիտասարդության զանազան միջազգային ձեռնարկումներին՝ փեստիվալներին, կոնգրեսներին, կոնֆերանսներին, հանդիպումներին, սեմինարներին։*

*ՀամԼԿԵՄ XIII համագումարից հետո ավելի է աշխուժացել կոմերիտական կազմակերպությունների աշխատանքը երիտասարդության ինտերնացիոնալ դաստիարակության բնագավառում։ Այս ուղղությամբ նկատելի աշխատանք են կատարում նաև մեր ռեսպուբլիկայի կոմերիտական կազմակերպությունները։ ՀԼԿԵՄ Երևանի քաղկոմի նախաձեռնությամբ վերջերս անցկացվեց Երևան քաղաքի միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների ուսանողների բարեկամության երեկո։ Երեկոյին ելույթ ունեցան 9 ազգությունների ներկայացուցիչներ, որոնք սովորում են Երևանում և պատմեցին իրենց ռեսպուբլիկաների մասին։*

*Երևանի կոմերիտական կազմակերպությունները սոցմրցման մեջ են մտել Կիև քաղաքի կոմերիտական կազմակերպությունների հետ։ Այս կազմակերպությունների դելեգացիաների փոխադարձ այցելությունները, բազմաթիվ հանդիպումները բանվոր և ուսանող երիտասարդության հետ, մեծ չափով նպաստում են հայ և ուկրաինական ժողովուրդների բարեկամական կապերի ամրապնդմանը։*

*Երևանի ուսանող երիտասարդության կապերը սոցիալիստական երկրների ուսանող երիտասարդության հետ ամրապնդելու նպատակով Երևան են հրավիրվել Գերմանական Դեմոկրատական ռեսպուբլիկայի, Լեհաստանի, Չեխոսլովակիայի ժողովրդական ռեսպուբլիկաների ուսանողության դելեգացիաները։ Երևանից կոմերիտական աշխատողների դելեգացիաներ են ուղարկվել Լեհաստան և Հունգարիա։*

*Այս ամենը խրախուսելի է։ Անհրաժեշտ է միայն այդ աշխատանքը դարձնել սիստեմատիկ, անդուլ պայքար տանել՝ հաջողությամբ կենսագործելու ՀամԼԿԵՄ XIII համագումարի ցուցումները երիտասարդության ինտերնացիոնալ դաստիարակությունն է՛լ ավելի ուժեղացնելու մասին։*

*Համամիութենական լենինյան կոմերիտմիության ստեղծման ժամանակից անցել է 40 տարի։ Այդ կարճ ժամանակը մեծ փառք բերեց կոմերիտմիությանը, զարդարելով նրա դրոշը 5 շքանշաններով։ Կանցնեն նորից տասնյակ տարիներ, Լենինյան կոմերիտմիության լավագույն գործերը, պանծալի տրադիցիաները փոխանցվելով սերնդե-սերունդ, կոմունիզմի երիտասարդ կառուցողներին կմղեն դեպի նորանոր սխրագործություններ, դեպի ծաղկող կոմունիստական հասարակարգի լուսաշող ապագան։*

---

# ՀԱՎԵՐԺ ԿԵՆԴԱՆԻ ՇԱՀՈՒՄՅԱՆԸ

## Վ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

Լրացավ Ստեփան Շահումյանի ծննդյան 80-ամյակը։ Այդ անունը թանկ է և սիրելի ոչ միայն սովետական ժողովրդին, այլև աշխարհի շատ աշխատավորների, որոնց հայտնի են մեր երկրի ռևոլյուցիոն շարժումները, մասնավորապես Բաքվի հերոսական Կոմունան և նրա 26 ականավոր առաջնորդների չարանենգ սպանությունը կոնտրռևոլյուցիոներների և անգլիական գաղութարարների կողմից։ Արդար զայրույթով և ատելությամբ է լցվում իմպերիալիստական գիշատիչների հանդեպ յուրաքանչյուր ազնիվ մարդ, երբ վերհիշում է 1918 թվականի սեպտեմբերի 20-ի չարագուշակ գիշերը, Ախչա-Կույմայի ավազուտներում արյունաթաթավ ընկած, կոմունիզմի համար պայքարող 26 անվեհեր մարտիկներին։ Շահումյանը, Ջափարիձեն, Ազիզբեկովը, Ֆիոլետովը, Մալիգինը, բոլոր մյուս կոմունարները, իրենց գործով ու հերոսական մահով սոցիալիզմի գաղափարներին անձնուրաց ծառայելու, իմպերիալիստական գաղութարարների դեմ ժողովրդի ազատագրական պայքարի վառ ու անմար օրինակ տվին։ Նրանց անունը շրջապատված է լուսավառ պսակով և ապրում է միլիոնավոր մարդկանց սրտերում, պայքարի կոչելով ազատության և կոմունիզմի համար։

Ստեփան Շահումյանը Կոմունիստական պարտիայի հնագույն մարտիկն էր, պարտիայի ականավոր գործիչներից ու Սովետական պետության առաջին կառուցողներից մեկը, մեծ Լենինի արժանավոր աշակերտն ու զինակիցը։ Նա մեծ ռևոլյուցիոներ էր, մարքսիզմի տաղանդավոր պրոպագանդիստ, հրապարակախոս և թեորետիկ, աշխատավոր մասսաների կենսական շահերի խիզախ պաշտպան, պայքարի մեջ սկզբունքային, խելոք, հավասարակշռված, անվեհեր ու անսասան առաջնորդ։

Շահումյանն անաղարտ ինտերնացիոնալիստ էր, մարդկային լավագույն գծերով օժտված, հոգու բյուրեղյա մաքրությամբ մի անձնավորություն, որից ակնածում էին ոչ միայն նրա բարեկամներն ու համախոհները, այլև անգամ հակառակորդները։ Նա կոմունիստի, լենինյանի իսկական տիպար էր և դրա համար արժանի կերպով վայելում էր բանվորների, գյուղացիների և առաջավոր ինտելիգենցիայի բացարձակ սերն ու անսահման հարգանքը։

Մեծ է Շահումյանի դերը Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների ստեղծման ու ամրապնդման, ողջ երկրամասի բազմազգ աշխատավորության ռևոլյուցիոն պայքարի կազմակերպման, Բաքվում ու Անդրկովկասում Սովետական իշխանության հաստատման գործում։

Լինելով հայ ժողովրդի զավակը, Շահումյանն անխոնջ պայքար տարավ նրա ազգային ու սոցիալական ազատագրության համար, շաղկապեց այդ պայքարը համառուսական դեմոկրատական ու սոցիալիստական հզոր շարժ-



ման հետ։ Նա առաջինը Հայաստանում հիմք դրեց մարքսիստական կազմակերպություններին, պրոպագանդեց մարքսիզմ-լենինիզմի անմահ գաղափարները, նշեց հայ ժողովրդի ազատագրության ճիշտ ուղիները, գաղափարապես ջախջախեց բուրժուական նացիոնալիզմի պրակտիկան ու իդեոլոգիան։ Հայաստանի բանվորական շարժման պատմության ամենախոշոր դրվագներն անխզելի կերպով կապված են Ստեփան Շահումյանի անվան հետ։



Ստեփան Շահումյանը պատանի հասակից, երբ դեռ ուսանում էր Թիֆլիսի ռեալական ուսումնարանում, սկսում է մասնակցություն ունենալ աշակերտական ռևոլյուցիոն գաղտնի խմբակներին։ Նրան չի բավարարում պաշտոնական, սխոլաստիկ ուսուցումը և նա մի խումբ ընկերների հետ պարապում է ինքնակրթությամբ։ Հոգեկան մեծ բավականությամբ 1896 թվականին Շահումյանը գրում է. «Լուսավորության գործն իմ սեփական ձեռքումն է գտնվում... Ինքնակրթության ոգին արդեն արմատներ է ձգել իմ և իմ ընկերների մեջ»։ Դպրոցական պարապմունքներից դուրս, նա բացառիկ ջանասիրությամբ ուսումնասիրում էր մարքսիստական և ռևոլյուցիոն-դեմոկրատական գրականությունը, կլասիկ և ժամանակակից գրողների ստեղծագործությունները, խորապես ներշնչվում Աբովյանի ու Նալբանդյանի, Պուշկինի, Լերմոնտովի, Նեկրասովի ու Գորկու, Շեքսպիրի, Գյոթեի, Շիլլերի ու Լյուդվիգ Բեռնեի, հայկական, ռուսական և եվրոպական այլ գրողների ազատասիրական երկերով։

Շահումյանի ռևոլյուցիոն դաստիարակության վրա խոշոր ազդեցություն են թողնում ռուս ռևոլյուցիոն-դեմոկրատները՝ Գերցենը, Բելինսկին, Չերնիշևսկին, Դոբրոլյուբովը, որոնց նա մեծ ակնածությամբ անվանում էր 40 — 60-ական թվականների հսկաներ։ Ոգեշնչված ռևոլյուցիոն այդ խիզախ մտածողների ու մարտիկների գաղափարներով և ժողովրդի գործին անձնազոհ կերպով ծառայելու նրանց օրինակով, պատանի Շահումյանն իր կյանքի իմաստը նույնպես համարում էր ժողովրդին ծառայելը, ցարիզմի ու ամեն տեսակ շահագործողների դեմ պայքարելը։ Ի պատասխան նրանց, ովքեր դաժան իրականությունից ելքը փորձում էին մահվան մեջ տեսնել, 18-ամյա Շահումյանը գրում էր. «...Ո՛չ, հարկավոր է ապրել և ապրել. մահ փնտրելը — կատարյալ փոքրոգություն է...։

Ապրել, կռվել, հաղթել և հաղթված դարձյալ ապրել և ապրել»։

Աշխատավորների հանդեպ իր պարտքի բարձր գիտակցությամբ և ամբողջ պատասխանատվությամբ պատանի Շահումյանն օրը օրին նախապատրաստվում էր հասարակական կյանք մտնել անվեհեր պայքարի համար՝ հանուն ժողովրդի ազատության ու երջանկության։

Շահումյանի ռևոլյուցիոն մարքսիստական աշխարհայացքի ձևավորման գործում վճռական նշանակություն են ունենում Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի և Գ. Վ. Պլեխանովի աշխատությունները, որոնց նա ծանոթացել է 90-ական թվականների վերջերին։ Այդ նույն ժամանակ նա կապվում է Թիֆլիս աքսորված ռուս մարքսիստների հետ և նրանց միջոցով ներգրավվում է սոցիալ-դեմոկրատական խմբակներում։

Ավարտելով ռեալական ուսումնարանը, Ստ. Շահումյանը 1898 թվակա-

նին մեկնում է Պետերբուրգ և ապա Ռիգա՝ բարձրագույն կրթություն ստանալու համար։ Այդտեղ նա ավելի մոտիկից է ծանոթանում բանվորական շարժմանը և մարքսիստական գրականությանը։

Նյութական միջոցների բացակայության պատճառով թողնելով ուսումը, 1899 թվականին Շահումյանը վերադառնում է Թիֆլիս։ Նույն թվականին նա Ջալալօղլիում (այժմ Ստեփանավան) կազմակերպում է Հայաստանում առաջին մարքսիստական խմբակը։

Այնուհետև մենք Շահումյանին տեսնում ենք դարձյալ Ռիգայում, որպես պոլիտեխնիկական ինստիտուտի ուսանող։ Բայց նա լոկ ուսանող չէր, այլ սոցիալ-դեմոկրատ ռևոլյուցիոներ, որի համար ուսումը մի միջոց էր առավել արդյունավետ ծառայելու սոցիալիստական ռևոլյուցիայի գործին։ Ռիգայում Շահումյանը դառնում է սոցիալ-դեմոկրատական կազմակերպության աչքի ընկնող դեմքերից և ուսանողական ռևոլյուցիոն շարժումների պարագլուխներից մեկը։

Ռևոլյուցիոն գործունեության համար արտաքսվելով Ռիգայի պոլիտեխնիկական ինստիտուտից, 1902 թվականի մարտին Շահումյանը վերադառնում է կրկին Անդրկովկաս, ուր նա եռանդուն գործունեություն է ծավալում Թիֆլիսի լենինյան-իսկրայական կազմակերպությունում։ Նա բանվորների շրջանում տանում է կազմակերպական ու պրոպագանդիստական մեծ աշխատանք, հանդես է գալիս հասարակական ժողովներում և անլեգալ հավաքույթներում, գրում է հակացարական կոչեր ու թռուցիկներ։ Նշանավոր է Շահումյանի ելույթը հայ տաղանդավոր գրող, մանկավարժ, դեմոկրատ Ղազարոս Աղայանի գրական հասարակական գործունեության 40-ամյակի առթիվ, երբ նա նոր, մարքսիստական աշխարհայացքով զինված, ռուսաց նորագույն ռևոլյուցիոն ավազանում մկրտված հայ երիտասարդության անունից ազդարարեց հայ իրականության մեջ պրոլետարական ռևոլյուցիոն շարժման և այդ կապակցությամբ առաջավոր ինտելիգենցիայի խնդիրները։ Մինչև արմատները մերկացնելով հայկական նացիոնալիզմը և բուրժուական լիբերալիզմը, Շահումյանը հզոր փաստարկներով հիմնավորում էր ցարական տիրող բռնակալական կարգերը ռևոլյուցիոն ճանապարհով խորտակելու անհրաժեշտությունը։

«Ազգային-կուլտուրական գործունեության փոխարեն…,— հայտարարում էր Շահումյանը,— մենք քաղաքական-ռևոլյուցիոն կռիվ ենք քարոզում. բուրժուական «ազգասիրության» ու «ազատամտության» փլատակների վրա մենք կարմիր, պրոլետարական դրոշակ ենք պարզում, որի վրա գրում ենք առայժմ.

Կռի՛վ բռնակալության դեմ,
Կեցցե՜ քաղաքական ազատությունը…»։

Նույն թվականին Ստ. Շահումյանի, Բ. Կնունյանցի, Աշ. Խումարյանի և Ա. Զուրաբյանի ջանքերով հիմնադրվեց «Հայ սոցիալ-դեմոկրատների Միությունը» և նրա անլեգալ օրգանը՝ «Պրոլետարիատը»։ «Հայ սոցիալ-դեմոկրատների Միությունը» մտնում էր ՌՍԴԲՊ-ի մեջ և ուներ լենինյան-իսկրայական ուղղություն։ Վ. Ի. Լենինը «Իսկրա» թերթում ջերմորեն ողջունեց «Հայ սոցիալ-դեմոկրատների Միության» հանդես գալը և «Պրոլետարիատ»-ում հրատարակած նրա «Մանիֆեստը»։



1902 թվականի աշնանը Շահումյանը մեկնում է Գերմանիա, սովորում է Բեռլինի համալսարանում։ Այստեղ նա մեծ աշխատանք է տանում ռուսաստանյան սոցիալ-դեմոկրատ էմիգրանտների շրջանում և հանդիպումներ ունենում միջազգային բանվորական շարժման ականավոր գործիչների՝ Ա. Բեբելի, Ֆ. Մերինգի, Վ. Լիբկնեխտի, Կ. Ցետկինի և ուրիշների հետ։

1903 թվականի գարնանը Շահումյանին բախտ է վիճակվում Շվեյցարիայում անձամբ ծանոթանալու միջազգային պրոլետարիատի մեծ առաջնորդ, Մարքսի և Էնգելսի գործի հանճարեղ շարունակող Վ. Ի. Լենինի հետ։ Այդ ծանոթությունը և հետագա հանդիպումները վճռական նշանակություն ունեցան Շահումյանի ամբողջ գործունեության համար։ Շահումյանը դարձավ Լենինի հավատարիմ հետևորդը և նվիրված զինակիցը։ Վ. Ի. Լենինն իր հերթին ջերմորեն սիրում էր Շահումյանին, գնահատում նրան, որպես պրոլետարական շարժման խոհուն և նվիրված գործչի։ Շահումյանը անվերապահորեն պաշտպանում էր մարքսիստական պարտիայի կառուցման լենինյան պլանը, պարտիայի մասին լենինյան սկզբունքները։ Եվ երբ տեղի ունեցավ ՌՍԴԲՊ II համագումարը, որը հիմք դրեց Ռուսաստանում կոմունիստական պարտիային, Շահումյանը կանգնեց բոլշևիկների շարքերում և իր ողջ գործունեության ընթացքում անշեղորեն ընթացավ լենինյան ուղիով։

1903 — 1904 թվականներին Շահումյանը արտասահմանում Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ աշխատում է ՌՍԴԲՊ Կենտկոմին կից ստեղծված հայերեն և վրացերեն լեզուներով սոցիալ-դեմոկրատական գրականության հրատարակության հանձնաժողովում։ Նրա անմիջական մասնակցությամբ և ղեկավարությամբ թարգմանվում և հրատարակվում են հայերեն լեզվով Մարքսի, Էնգելսի, Լենինի մի շարք երկերը, որոնց թվում Մարքսի և Էնգելսի հռչակավոր «Կոմունիստական պարտիայի մանիֆեստը»։

1904 թվականին Շահումյանը ընտրվում է ՌՍԴԲՊ Կովկասյան Միության Կոմիտեի, նրա օրգան «Պրոլետարիատի կռիվը» թերթի խմբագրության կազմում, Ի. Ստալինի, Բ. Կնունյանցի, Մ. Ցխակայայի, Ա. Ծուլուկիձեի, Ս. Սպանդարյանի, Ա. Ջափարիձեի և պարտիայի այլ ականավոր գործիչների հետ գլխավորում է կովկասյան պարտիական կազմակերպությունները։



1905 — 1907 թվականների ռևոլյուցիայի ժամանակաշրջանում Շահումյանը վիթխարի գործունեություն է ծավալում Անդրկովկասում, դրսևորելով ռևոլյուցիոն պաթոսով համակված ժողովրդական մասսաների քաղաքական ղեկավարի փայլուն ընդունակություններ։ Նա հանդես է գալիս Թիֆլիսի, Բաքվի, Երևանի, Ալավերդու և Անդրկովկասի այլ արդյունաբերական վայրերի բանվորական միտինգներում, դիսկուսիաներում, ժողովներում, ղեկավարում է բանվորական գործադուլները, հիմնադրում և խմբագրում է «Կավկազսկի ռաբոչի լիստոկ», «Կայծ», «Նոր խոսք», «Օրեր» բոլշևիկյան թերթերը, գրում է թեորիական ու հրապարակախոսական բազմաթիվ հոդվածներ, գաղափարական պայքար է մղում մենշևիկների, էսեռների, կադետների, դաշնակների դեմ, մերկացնում ամեն գույնի նացիոնալիստների, ամենուրեք կրքոտ ու հետևողական կերպով պաշտպանում է ռևոլյուցիայի մեջ լենինյան տակտիկական գիծը։

1906 թվականին Ստ. Շահումյանը ՌՍԴԲՊ Երևանի կազմակերպության կողմից ընտրվում է պարտիայի IV «Միավորիչ» համագումարի դելեգատ, իսկ 1907 թվականին պարտիայի V համագումարի դելեգատ՝ ՌՍԴԲՊ Բորչալուի կազմակերպության կողմից։ Համապարտիական այս համագումարներում Շահումյանն իր սկզբունքային ելույթներում մերկացնում է մենշևիկների օպորտունիզմը և հատկապես կովկասյան մենշևիկների հակապարտիական, պառակտիչ գործունեությունը։

Շահումյանի թեորիական աշխատություններում ու հրապարակախոսական հոդվածներում այդ տարիներին բազմակողմանի կերպով լուսաբանվում են պրոլետարիատի համաշխարհային պատմական դերի, պրոլետարիատի դիկտատուրայի, պետության, ռևոլյուցիայի, մարքսիստական պարտիայի դերի, նրա ծրագրի, ստրատեգիայի, տակտիկայի, կազմակերպական ու իդեոլոգիական հիմունքների, ազգային հարցի վերաբերյալ մարքսիստական-լենինյան հայացքները։ Վարպետորեն տիրապետելով մարքսիստական դիալեկտիկական մեթոդին, որը նա անվանում էր կոմունիստական պարտիայի ուժն ու հպարտությունը, Շահումյանը վերլուծում էր ժամանակակից իրադրությունը և զարգացնում պրոլետարական դասակարգային ճիշտ տեսակետ։ «Դասակարգերը ժամանակակից եվրոպական հասարակության մեջ» աշխատությունում Շահումյանը շարադրում էր Կ. Մարքսի տնտեսական ուսմունքի մի շարք կարևոր թեզերը, հատկապես դասակարգերի ու դասակարգային պայքարի մարքսիստական թեորիան։ Առանձնապես կարևոր նշանակություն ուներ Շահումյանի կողմից այդ, ինչպես և այլ հոդվածներում պետության դերի և էության մասին մարքսիզմի հայացքների շարադրումը։ Ինչպես հայտնի է, պետության բնույթի հարցի ճիշտ լուսաբանումը միշտ էլ ունեցել և այժմ էլ ունի սկզբունքային կարևոր նշանակություն պրոլետարիատի ռևոլյուցիոն դաստիարակության համար։ Շահումյանը մերկացնում էր պետության նկատմամբ եղած օպորտունիստական նախապաշարմունքները, ցույց տալով, հակառակ ռևիզիոնիստների, որ պետությունը ոչ թե վերդասակարգային մի օրգան է, այլ ունի զուտ դասակարգային բովանդակություն։ Նա ցույց էր տալիս, որ բուրժուական հասարակության մեջ պետությունը ծառայում է բուրժուազիայի ձեռքին իբրև զենք՝ «նվիրագործելու մասնավոր սեփականության «սրբազան» ու «անձեռնմխելի» իրավունքը, ամրացնելու և հավերժացնելու կապիտալիստական շահագործության հրեշավոր հիմունքները»։

Շահումյանը շարունակ հանդես է եկել Բեռնշտայնի և մյուս ռևիզիոնիստների դեմ, մերկացնելով նրանց հակամարքսիստական պնդումները, կապիտալիստական հասարակարգում բանվոր դասակարգի դրության իբր թե աստիճանական բարելավման, սոցիալական հակասությունների մեղմացման, կապիտալիզմից խաղաղ, էվոլյուցիոն ճանապարհով սոցիալիզմին անցնելու մասին։ «Էվոլյուցիոնիզմն ու ռևոլյուցիոնիզմը հասարակական գիտության մեջ» իր ուշագրավ աշխատությունում Շահումյանը օպորտունիստական աղավաղումներից պաշտպանում էր պատմական մատերիալիզմի կարևորագույն դրույթը՝ հասարակության մեջ ռևոլյուցիոն հեղաշրջումների պատմական օրինաչափության ու անհրաժեշտության մասին։ Զայրույթով ու ատելությամբ էր արտահայտվում նա ռևիզիոնիստների մասին՝ անվանելով նրանց «անհուսալի կույր ֆիլիստերներ», «ակնհայտ սրիկաներ», «իրենց



դարն ապրած և ամբողջ հասարակությունը ճնշող հին կարգերի կողմնակիցներ»։

Ստեղծագործաբար կիրառելով մարքսիստական թեորիան, Շահումյանը կարողանում էր ճիշտ կերպով վճռել Անդրկովկասին և հայ իրականությանը հատուկ բազմաթիվ հարցեր, ճիշտ տակտիկա մշակել հասարակական զանազան հոսանքների ու պարտիաների նկատմամբ։ Առաջին ու ամենահուժկու հարվածները նա հասցրեց Դաշնակցություն պարտիային, մինչև վերջ մերկացնելով նրա բուրժուական, հակադեմոկրատական էությունը։ Իրավացի կերպով պահանջելով հաշվի առնել յուրաքանչյուր երկրի սպեցիֆիկ պայմանները, Շահումյանը անողոք պայքար էր տանում նաև նրանց դեմ, ովքեր այդ «սպեցիֆիկ» պայմանների հաշվառման քողի տակ մերժում էին սոցիալիստական ռևոլյուցիայի ընդհանուր օրինաչափությունները, քարոզում էին նացիոնալիզմ։ Այդ տեսակետից պատմական մեծ կարևորություն է ներկայացնում Շահումյանի կողմից, այսպես կոչված, հայ «սպեցիֆիկների» մերկացումը, որոնք սոցիալ-դեմոկրատի, մարքսիստի դիմակ հագած, անց էին կացնում «նուրբ նացիոնալիզմ»։

Իր հոդվածներում Շահումյանն անդադրում պրոպագանդում էր պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարները, դաստիարակելով տարբեր ազգերի աշխատավորներին եղբայրական համերաշխության ոգով։ Լինելով ազգային հարցի խոշոր գիտակներից ու թեորետիկներից մեկը, Շահումյանը հաճախակի հանդես է եկել այդ խնդրի վերաբերյալ։ Ազգային հարցում մարքսիստական ծրագրի հիմունքների լավագույն շարադրանքներից մեկը՝ «Ազգային հարցը և սոցիալ-դեմոկրատիան» բրոշյուրը, պատկանում է Ստ. Շահումյանի գրչին։ 1906 թվականին լույս տեսած այդ աշխատության կարևոր նշանակություններից մեկն էլ այն է, որ այդտեղ մարքսիզմի տեսանկյունով նշվում են ազգային հարցի լուծման կոնկրետ ուղիներն Անդրկովկասում և քննադատվում՝ բուրժուական նացիոնալիստական պարտիաների ազգային ծրագրերը։

Ստ. Շահումյանն իր թեորիական աշխատություններում և ռևոլյուցիոն պրակտիկայում խոշոր տեղ էր հատկացնում ժողովրդական մասսաների, բանվորների և գյուղացիների պատմական դերի բացահայտմանը։ Ինչպես Մարքսը և Լենինը, Շահումյանը ևս հավատում էր ժողովրդի ինքնուրույն պատմական ստեղծագործական ընդունակություններին և պայքար մղում նրանց դեմ, ովքեր պատմության շարժիչ ուժն էին համարում աչքի ընկնող անհատներին, հերոսներին։ «Սոցիալ-դեմոկրատիայի կողմից ղեկավարվող ժամանակակից բանվորական շարժման ամբողջ ուժը,— գրում էր Շահումյանը,— այն բանի մեջ է, որ նա պատմական թատերաբեմ է հանում բանվորական մասսաներին իբրև պայքարող ուժ»։

Բանվորական մասսաների նկատմամբ ունեցած այս հավատն էլ հենց Շահումյանին մոտեցնում էր բանվորներին, դարձնում նրանց համար այնքան հարազատ ու սիրելի։

Ստոլիպինյան ռեակցիայի դաժան տարիներին Ստ. Շահումյանը գործում էր Բաքվի ընդհատակում։ Չնայած հաճախակի ձերբակալություններին, նա երբեք չէր կտրվում բանվորական մասսաներից։ Նրա, ինչպես և Ստալինի, Ա. Ջափարիձեի, Վ. Ֆիոլետովի, Մ. Ազիզբեկովի, Մ. Սամեդյարովի, Ս. Օրջոնիկիձեի, Ս. Սպանդարյանի, Սարատովեցի և այլ աչքի ընկնող բոլշևիկ-

ների ջանքերով ամրապնդվեցին պարտիական կազմակերպությունները, դուրս մղվեցին բանվորական միջավայրից օպորտունիստներն ու նացիոնալիստները, Բաքուն դարձավ բոլշևիզմի միջնաբերդը Անդրկովկասում։ Շահումյանը ղեկավար մասնակցություն ուներ «Բակինսկի ռաբոչի», «Բակինսկի պրոլետարի», «Գուդոկ» բոլշևիկյան թերթերի հրատարակությանը, թերթեր, որ շատ նշանավոր դեր են կատարել Բաքվի և Անդրկովկասի բանվորական շարժման մեջ։ Նա վճռականորեն հանդես եկավ լիկվիդատորների, օտզովիստների և այլ հակապարտիական տարրերի դեմ, որոնք ձգտում էին լիկվիդացնել բոլշևիկյան պարտիան։ Երբ այդ նպատակով Վ. Ի. Լենինի դեմ կատաղի հարձակումներ էին գործում լիկվիդատորները, օտզովիստները, տրոցկիստները, Ստ. Շահումյանը գրում էր, որ «Մենք ամբողջովին Իլյիչի կողմն էինք»։

Շահումյանը լիովին պաշտպանում էր պարտիական շինարարության վերաբերյալ լենինյան դրույթները և վստահ հավատում էր վերահաս ռևոլյուցիային։ Մ. Ցխակայային 1908 թվականին ուղարկած իր մի նամակում Շահումյանն այդ առթիվ գրում էր.

«Աշխատանքի պայմանները, թանկագին Միխա, սոսկալի դժվարացել են. մեզ տառացիորեն խաչում են, ամեն կողմից թքակոծում են, ստորացնում... Բայց մենք չենք վհատվում։ Հավատը դեպի ապագան և սերը դեպի մեր գործը անսպառ եռանդ են ներշնչում մեզ...»։

Եվ իրոք, ռևոլյուցիոն այդ վերելքը շուտով եկավ։ 1910 թվականի վերջերից սկսվեց բանվորական շարժման որոշ աշխուժացում, որը և հետագա տարիներին վերածվեց ռևոլյուցիոն խսկական վերելքի։ Այդ կապակցությամբ կարևոր նշանակություն ուներ համապարտիական VI կոնֆերենցիայի հրավիրումը, որին ձեռնարկեց արտասահմանից Վ. Ի. Լենինը։ Շահումյանն աչքի ընկնող դեր է կատարում այդ պատմական կոնֆերենցիայի գումարման համար։ Վ. Ի. Լենինի առաջարկով ՌՍԴԲՊ Կենտկոմի անդամների 1911 թվականի հունիսյան խորհրդակցությունը նրան առաջադրում է կոնֆերենցիայի հրավիրման հանձնաժողովի անդամ, իսկ 1911 թվականի սեպտեմբերին նա ընտրվում է կոնֆերենցիայի հրավիրման Ռուսաստանյան կազմակերպական հանձնաժողովի անդամ։ Սակայն բանտարկությունը և ապա աքսորը թույլ չեն տալիս նրան մասնակցելու կոնֆերենցիային։ 1912 թվականի հունվարին Պրագայում կայացած համապարտիական VI կոնֆերենցիան Շահումյանին, իր բացակայությամբ, ընտրում է պարտիայի Կենտկոմի անդամության թեկնածու։

Ութ ամսվա բանտարկությունից հետո Շահումյանը աքսորվում է Աստրախան։ Աքսորավայրից նա անում է հնարավոր ամեն բան՝ օգնելու ռևոլյուցիոն վերելքին։ Շահումյանը Վ. Ի. Լենինի հանձնարարությամբ ոստիկանությունից գաղտնի մեկնում է Պետերբուրգ և կարճ ժամանակով մասնակցում բոլշևիկյան «Պրավդա»-ի խմբագրման աշխատանքներին։

1911 — 1914 թվականներին Շահումյանը չի դադարում թեորիական աշխատանք կատարելուց։ Նա գրում է պարտիայի տակտիկայի, պատմագիտության, ազգային հարցի, գրականության, արվեստի և այլ հարցերի վերաբերյալ մի շարք փայլուն հոդվածներ, ինչպես նաև նամակագրություն է վարում Վ. Ի. Լենինի հետ։ Մարքսիստական գրականագիտության մեջ կարևոր



ներդրում են Շահումյանի հոդվածները ռուս մեծ գրողներ Լ. Տոլստոյի և Մ. Գորկու ստեղծագործությունների մասին։

Վ. Ի. Լենինի և Ս. Գ. Շահումյանի նամակագրության մեջ այս ժամանակաշրջանում մեծ տեղ է գրավում պարտիայի ազգային ծրագրի հարցերի քննարկումը։ 1914 թվականի մայիսին Շահումյանին գրած նամակում Վ. Ի. Լենինը նրան առաջարկում է միասին մշակել «Ազգերի իրավահավասարության և ազգությունների իրավունքները պաշտպանելու օրինագիծ»՝ Պետական դումա մտցնելու համար։ Վ. Ի. Լենինի հանձնարարությամբ Շահումյանը գրում է «Ազգային կուլտուրական ավտոնոմիայի մասին» իր հայտնի բրոշյուրը։ Այդ աշխատությամբ, որը լույս տեսավ 1914 թվականին, Շահումյանը հիմնովին մերկացնում է բունդականների և նրանց հայ էպիգոնների՝ (սպեցիֆիկների) կողմից պաշտպանվող «ազգային կուլտուրական ավտոնոմիայի» պահանջի ռեակցիոնությունը։

1914 թվականի գարնանը ազատվելով աքսորից՝ Շահումյանը վերադառնում է Բաքու, գլխավորում է Բաքվի պարտիական կազմակերպությունը և բանվորական գործադուլները։

Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին, որ փորձություն հանդիսացավ բոլոր սոցիալ-դեմոկրատների համար, Շահումյանը հաստատակամորեն կանգնած էր լենինյան ռևոլյուցիոն ինտերնացիոնալիստական դիրքերում, պայքարելով իմպերիալիստական պատերազմը քաղաքացիական պատերազմի վերածելու համար։ 1915 թվականի հոկտեմբերին Շահումյանը գլխավորում էր Կովկասի բոլշևիկյան կազմակերպությունների անլեգալ կոնֆերենցիան, որը միահամուռ կերպով ընդունում էր պատերազմում պարտիայի տակտիկայի վերաբերյալ լենինյան բանաձևերը։

Պատերազմի պայմաններում Շահումյանը շարունակում էր նամակագրական կապ պահպանել Վ. Ի. Լենինի հետ, հաղորդել նրան պարտիական աշխատանքի մասին կարևոր տեղեկություններ։ Ջերմ սիրով գրված այդ նամակներում նա վստահեցնում էր առաջնորդին, որ կովկասյան բոլշևիկները և ինքն անձամբ՝ հավատարիմ են մնում պրոլետարական ինտերնացիոնալիզմին ու համբերաշխ՝ Լենինի դիրքին։

«Ձեր նամակները, խորհուրդները և ցուցումները,— գրում էր Լենինին Շահումյանը,— ինձ համար միշտ ամեն բանից թանկ են եղել... Դուք ուզում եք իմանալ, թե ինչ եմ մտածում և ինչ եմ անում։ Կարծես այս անգամ էլ Ձեզ հետ միանման եմ մտածում և երբ առաջին անգամ ստացա դրա հաստատումը... շատ երջանիկ զգացի ինձ»։

1916 թվականին Շահումյանը նորից ձերբակալվում է և աքսորվում Սարատով։ Փետրվարյան ռևոլյուցիայի հետևանքով նա ազատվում է աքսորից, վերադառնում նորից Բաքու։ Բաքվի պրոլետարիատը հսկայական խանդավառությամբ է դիմավորում անվեհեր ռևոլյուցիոներին, իր սիրելի ղեկավարին։ Այնքան մեծ էր Շահումյանի հեղինակությունը Բաքվում, որ Բաքվի բանվորների դեպուտատների նորաստեղծ Սովետը, նրան՝ դեռ Բաքու չհասած, ընտրում է իր նախագահը, չնայած որ բոլշևիկներն այդ ժամանակ Սովետում դեռ փոքրամասնություն էին կազմում։

1917 թվականին, փետրվարյան ռևոլյուցիայից հետո, բոլշևիկների պարտիան Լենինի գլխավորությամբ պայքարում է բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստականի վերաճման համար։ Ստեփան Շահում-

յանը Ա. Ջափարիձեի, Ն. Նարիմանովի, Մ. Ազիզբեկովի, Վ. Ֆիոլետովի, Ա. Միկոյանի, Գ. Կորգանովի հետ միասին գլխավորում է սոցիալիստական ռևոլյուցիայի համար մղվող պայքարը Բաքվում և Անդրկովկասում։ 1917 թ. հունիսին նա մեկնում է Պետրոգրադ՝ մասնակցելու Սովետների առաջին համագումարին։ Այստեղ, երկար տարիների բաժանումից հետո, Շահումյանը կրկին անգամ հանդիպում է Վ. Ի. Լենինին։ Համագումարից վերադառնալով Բաքու, հուլիսյան օրերին, Շահումյանը հսկայական պայքար է ծավալում կադետների, մենշևիկների, էսեռների և կոնտրռևոլյուցիոն այլ տարրերի դեմ, որոնք զրպարտչական կամպանիա էին սկսել Վ. Ի. Լենինի, բոլշևիկյան պարտիայի հասցեին։ Այդ կոնտրռևոլյուցիոն հարձակումները համարելով մահվան դատապարտված դասակարգի ջղաձգություններ, Շահումյանը հաստատ համոզմունք էր հայտնում բոլշևիկների մոտալուտ հաղթանակի նկատմամբ։ «Եթե բոլշևիզմը արձագանք գտավ լայն մասսաների մեջ,— գրում էր Շահումյանը,— այդ նշանակում է, որ նա հող ունի և ռեպրեսիաներով նրան չես ոչնչացնի, որ բոլշևիզմը արտահայտում է ժողովրդական մասսաների ակնկալությունները»։

Բոլշևիկյան պարտիայի VI համագումարում Շահումյանը ընտրվում է Կենտկոմի անդամ։ Սեպտեմբերին նա Պետրոգրադում մասնակցում է Կենտկոմի մի շարք նիստերին, ուր քննարկվում էին Վ. Ի. Լենինի նամակները զինված ապստամբության մասին։ Հոկտեմբեր ամսին Շահումյանը Թիֆլիսում ղեկավարում էր ՌՍԴԲՊ (բոլշևիկների) պարտիայի կովկասյան I մարզային համագումարը, որը մշակեց կովկասյան բոլշևիկների տակտիկան Սովետների իշխանության համար մղվող պայքարում։ Մեծագույն աչալրջությամբ ու աներկյուղ կերպով Շահումյանը մարտական վիճակի մեջ էր դնում պարտիական կազմակերպությունները, նախապատրաստում բանվորներին ու ռևոլյուցիոն զինվորներին իշխանությունը նվաճելու համար։

Երբ հաղթանակեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան և Պետրոգրադում կազմվեց Սովետական կառավարություն՝ Վ. Ի. Լենինի գլխավորությամբ, Անդրկովկասի բանվորներն ու գյուղացիները բոլշևիկների ղեկավարությամբ խանդավառ պայքար էին մղում Անդրկովկասում ևս սովետական իշխանություն հաստատելու համար։ Ռևոլյուցիոն շարժման ավանգարդում, ինչպես միշտ, ընթանում էր Բաքվի պրոլետարիատը։ 1917 թվականի հոկտեմբերի 31-ին բանվորների ու զինվորների Բաքվի Սովետը, Ստ. Շահումյանի գլխավորությամբ, ջախջախելով նացիոնալիստական կոնտրռևոլյուցիոն պարտիաների դիմադրությունը, առաջինը Անդրկովկասում հռչակեց Սովետական իշխանություն, ճանաչեց Ժողկոմսովետի կառավարությունը։ Հենվելով Բաքվում հաստատված Սովետական իշխանության վրա՝ Ստ. Շահումյանը վիթխարի աշխատանք ծավալեց Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակի համար ամբողջ Անդրկովկասում։ Ոչ մի ժամանակ այնպես բազմակողմանի, բուռն ու փոթորկալից չի եղել Շահումյանի գործունեությունը, ինչպես այս՝ 1917—1918 թվականների ռևոլյուցիոն գոտեմարտի տարիներին։

Բազմազգ Անդրկովկասի բարդ ու խճճված իրադրության մեջ, ռևոլյուցիայի դեմ ներքին ու արտաքին բազմաթիվ թշնամիների կատաղի գրոհների պայմաններում, Շահումյանը լենինյան տիպի պարտիական ու պետական գործչին հատուկ շրջահայեցությամբ, զգոնությամբ, հեռատեսությամբ և



խիզախությամբ համախմբում էր բանվորներին, գյուղացիներին, զինվորներին Կոմունիստական պարտիայի շուրջը, պայքարի տանում Սովետական իշխանության համար։ Նա անդադրում մերկացնում էր իմպերիալիզմին ծախված նացիոնալիստական պարտիաներին, Կովկասը Սովետական Ռուսաստանից անջատելու նրանց հանցավոր պլանները։ «Կովկասում ռևոլյուցիայի ամենաոխերիմ թշնամին,— մատնանշում էր Շահումյանը,— միշտ եղել է և կմնա նացիոնալիզմը»։

Աննախընթաց եռանդով Շահումյանը աշխատանք էր տանում կոփելու Անդրկովկասի ժողովուրդների ինտերնացիոնալ համերաշխությունը և նրանց անխզելի կապն ու միասնությունը ռուսական հերոսական պրոլետարիատի հետ։

Անդրկովկասի կապերի խզումը Սովետական Ռուսաստանից, որի ուղղությամբ գործում էին նացիոնալիստները, Շահումյանը համարում էր ամենամեծ հանցագործությունը, ամենամեծ դավաճանությունը ժողովրդի և Հայրենիքի հանդեպ։

1917 թվականի դեկտեմբերին Ժողովրդական կոմիսարների Սովետը Ստ. Շահումյանին նշանակում է Կովկասյան գործերի արտակարգ կոմիսար։ Այդ պատասխանատու պոստում Շահումյանը չի խնայում ոչ մի ջանք ու եռանդ՝ կենսագործելու Սովետական կառավարության կողմից իր վրա դրված բարդ խնդիրները։ Նրա գործունեության առաջին արդյունքները արժանի կերպով գնահատել է Վ. Ի. Լենինը։ 1918 թվականի փետրվարի 14-ին Լենինը գրում է Շահումյանին.

«Թանկագին ընկեր Շահումյան.

Մենք հիացած ենք Ձեր հաստատակամ և վճռական քաղաքականությամբ։ Կարողացեք միացնել դրան ամենազգույշ դիվանագիտություն, որն անպայման թելադրվում է ներկայիս դժվարագույն դրությամբ, և մենք կհաղթենք»։

Պրոլետարական ռևոլյուցիայի հանճարեղ առաջնորդ Վ. Ի. Լենինը, Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն շարունակ օգնում էին Շահումյանին, Անդրկովկասի բոլշևիկներին, ճիշտ լուծում գտնելու Սովետական իշխանության համար մղվող պայքարի բարդ հարցերում։

1918 թվականի մարտին ջախջախելով մուսավաթականների կոնտրռևոլյուցիոն խռովությունը, Սովետական իշխանությունը Բաքվում ամրապնդվեց։ Ապրիլի 25-ին Բաքվի Սովետը կազմեց Բաքվի ժողովրդական կոմիսարների Սովետ՝ Ստ. Շահումյանի նախագահությամբ։ Դա առաջին Սովետական կառավարությունն էր Անդրկովկասում։ Ստ. Շահումյանի ղեկավարությամբ ժողկոմսովետը ծավալեց տնտեսական-կազմակերպական, կուլտուրական և ռազմական-պաշտպանական վիթխարի աշխատանք։ Կարճ ժամանակամիջոցում ջախջախելով հին պետության օրգանները, ստեղծվեց ժողովրդին մոտ և համակրելի սովետական ապարատ, կենսագործվեցին սոցիալիստական մի շարք միջոցառումներ, ազգայնացվեցին նավթահանքերը, գործարանները, բանկերը, նավատորմը, հողը, կազմակերպվեց նավթի հանույթը և նրա արտահանումը Սովետական Ռուսաստան։

Բաքվի բոլշևիկները Շահումյանի գլխավորությամբ, Սովետական Ռուսաստանի նյութական ու ռազմական բազմապիսի օգնությամբ հերոսական ջանքեր գործադրեցին՝ պաշտպանելու երիտասարդ Սովետական իշխանու-

*թյունը Բաքվի վրա հարձակվող ինչպես գերմանա-թուրքական, այնպես էլ անգլիական իմպերիալիստներից և նրանց մուսավաթական, էսեռական, մենշևիկյան-դաշնակցական ու սպիտակգվարդիական գործակալներից։*

*Շահումյանը, Բաքվի բոլշևիկները վճռականորեն վարում էին Սովետական իշխանության հատուկ անկախ քաղաքականություն և կտրականապես մերժում էին Սովետում խցկված պաշտպանողականների դավաճանական առաջարկը՝ Բաքուն անգլիական իմպերիալիստներին հանձնելու վերաբերյալ։*

*Բաքվի Սովետի նիստերում, բանվորական ու զինվորական մասսաների ժողովներում, Շահումյանը բացահայտում էր թուրքերի առաջխաղացումը կասեցնելու պատրվակով անգլիական իմպերիալիստներին Բաքու հրավիրելու մասին մենշևիկների, դաշնակների ու էսեռների պրոպագանդայի մութ իմաստը։ Շահումյանը ցույց էր տալիս, որ այդ առաջարկի կողմնակիցները իրականում անգլիացիներին են հանձնում Բաքուն, որպեսզի տապալեն Սովետական իշխանությունը, զրկեն երկիրը քաղաքական անկախությունից։ «Ես կտրականապես հայտարարում եմ,—ասում էր Շահումայնը Բաքվի Սովետի նիստում,— որ անգլիացիներին հրավիրելը միայն կարող է Բաքուն դարձնել Անգլիայի սեփականությունը»։*

*Ի պատասխան դաշնակցական-էսեռա-մենշևիկյան հայրենադավներին, որոնց հաջողվեց Բաքվի Սովետում շանտաժի ու խաբեության միջոցով, չնչին մեծամասնությամբ, անգլիական իմպերիալիստների զորքերը Բաքու թողնելու մասին դավաճանական որոշում ընդունել, Շահումյանը հայտարարեց. «Մենք գերադասում ենք մեռնել ռևոլյուցիոներների պանծալի դիրքերում, քան թե փրկել մեր կյանքը մատնության ու դավաճանության գնով»։*

*Իմպերիալիստական գաղութարարների դեմ հայրենիքի անկախության ու ազատության համար մղվող պայքարում հերոսության ու հաստատակամության վեհ օրինակ ցույց տվին Ստ. Շահումյանը, Բաքվի բոլշևիկները, որոնք մինչև վերջ հավատարիմ մնալով պարտիայի գծին, չխոնարհեցին իրենց գլուխը թշնամիների թվով գերազանց ուժերի առաջ։*

*Շահումյանի, Բաքվի բոլշևիկների այս վարքագծին լիովին հավանություն տվեց Վ. Ի. Լենինը։*

*Մենշևիկների, էսեռների, դաշնակների ու մուսավաթականների կոնտրռևոլյուցիոն դավադրության հետևանքով Բաքվում Սովետական իշխանությունը հնարավոր չեղավ պաշտպանել ինտերվենտներից։ Հուլիսի 31-ին Սովետական իշխանությունը Բաքվում ընկավ։ Դաշնակցական ու էսեռա-մենշևիկյան դավաճաններին հաջողվեց ժամանակավորապես զավթել իշխանությունը, կազմել, այսպես կոչված, «Ցենտրոկասպիի» կոնտրռևոլյուցիոն կառավարություն, Բաքու հրավիրել անգլիական ինտերվենտներին, ձերբակալել Շահումյանին և Բաքվի պանծալի կոմունայի մյուս գործիչներին։*

*Սովետական կենտրոնական կառավարությունը, անձամբ Վ. Ի. Լենինը աշխատում էին ամեն կերպ փրկել Բաքվի կոմիսարներին։ Բաքվի դրության և Ստ. Շահումյանի մասին ճշգրիտ տեղեկություններ պահանջելով 1918 թվականի օգոստոսի 9-ին՝ Վ. Ի. Լենինը հեռագրում էր Աստրախանի Սովետի նախագահին.*

*«Որտեղ է Շահումյանը։*



*Հարցում արեք Ստալինին և գործեցեք բոլոր հանգամանքները նկատի առնելով. Դուք գիտեք, որ ես լիովին վստահում եմ Շահումյանին...»։*

*1918 թվականի սեպտեմբերի 15-ին Բաքուն գրավում են թուրքական հրոսակախմբերը։ Անգլիական ինտերվենտները և նրանց ծախված ցենտրոկասպիի կառավարությունը փախչում են քաղաքից։ Նրանք էլ հենց դատաստան են տեսնում Ստ. Շահումյանի և Բաքվի մյուս 25 կոմիսարների հետ, որոնք «Թուրքմեն» նավով բերված էին Կրասնովոդսկ։*

*Անգլիական իմպերիալիստների և նրանց վարձկան էսեռների գնդակներից հերոսաբար ընկան 26 կոմիսարները՝ կոմունիզմի գործի հաղթանակի նկատմամբ հաստատ հավատը սրտերում։*

*Իր մահվանից քիչ առաջ, Ստ. Շահումյանը պատասխանելով դաշնակցական դավաճաններին, որոնք նրա նկատմամբ ինքնադատաստանի կոչ էին անում, գրում էր. «Դաշնակցականների լրագիրը հատկապես ջանում է իմ դեմ գրգռել մոլորված մութ մասսաներին և ինձ ինքնադատաստանի ենթարկել տալ։ Այդ դժվար գործ չէ։* Այդ, գուցե, ձեզ հաջողվի, բայց այդ ձեզ չի օգնի, պարոններ: Գիտակից բանվորների դատաստանը, պատմության դատաստանը մեզ համար ավելի կարևոր է, և այն ավելի սոսկալի կլինի ձեզ համար, քան ամբոխի ինքնադատաստանը, որին կոչում եք դուք»:

*Ստ. Շահումյանի այս խոսքերն իրականություն դարձան։ Պատմությունը իրոք անողոք դատաստան տեսավ իմպերիալիստների ստոր գործակալների հետ, և ամբողջ իմպերիալիզմի գաղութային անամոթ սիստեմի հետ, որն իր վերջին օրերն է քարշ տալիս։ Սովետական իշխանությունը հաղթանակեց։ Շահումյանի և նրա 25 ընկերների անունները հավիտյան գրվեցին ժամանակակից և ապագա մարդկության հերոսապատումների ոսկեզօծ գրքում։*

---

# ՄԵԾ ԺՈՂՈՎՐԴԻ ՄԵԾ ՍԽՐԱՆՔՆԵՐԸ

ԳԱՐ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Ինն տարի առաջ չին մեծ ժողովուրդն իր հարազատ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ համաշխարհային-պատմական հաղթանակ նվաճեց։ Ստեղծվեց Չինական ժողովրդական Ռեսպուբլիկան։

Դժվար և երկար ճանապարհ է անցել չինական ռևոլյուցիան։ Չին ժողովրդի ազատագրական պայքարի խորացման համար հատկապես մեծ ազդակ հանդիսացավ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, որը վճռական ազդեցություն ունեցավ այդ պայքարի բնույթի և ճակատագրի վրա։ Մեծ Հոկտեմբերը Չինաստանի միլիոնավոր կեղեքված աշխատավորներին ավետեց մարքսիզմ-լենինիզմի վեհ գաղափարները, նրանց ցույց տվեց հաղթանակի ուղին։ Մարքս-լենինյան անհաղթ տեսությունը դարձավ չինական պրոլետարիատի և նրա մարտական կոմպարտիայի պայքարի դրոշը, այն լուսարձակը, որն ուրվագծեց չինական ժողովրդական ռևոլյուցիայի հետագա զարգացման հաղթարշավի փառապանծ ուղին։

Իր դրոշների վրա գրելով դեմոկրատիայի և սոցիալիզմի գաղափարները, չին ժողովուրդը կոմունիստների գլխավորությամբ մոտ 30 տարի հերոսական պայքար մղեց ներքին և արտաքին թշնամիների դեմ, իմպերիալիզմի գործակալ, ժողովրդի ոխերիմ թշնամի գոմինդանականների դեմ։ Այդ պայքարում նա հասավ փայլուն հաղթանակի, ջախջախեց և մայր ցամաքից դուրս վռնդեց գոմինդանական կոնտրռևոլյուցիոն կլիկին և նրան հովանավորող ամերիկյան իմպերիալիստներին։

Չինական ռևոլյուցիայի հաղթանակը պատմական մեծագույն նշանակություն ունի։ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո նա ամենահզոր հարվածը հասցրեց իմպերիալիզմի սիստեմին։ Այդ պատմական հաղթանակը անչափ ամրապնդեց սոցիալիզմի ճամբարը, համաշխարհային ասպարեզում ուժերի փոխհարաբերությունը փոխեց հօգուտ սոցիալիզմի, խաղաղության և պրոգրեսի։

Ռևոլյուցիայի բոլոր փուլերում, ինչպես և այժմ՝ սոցիալիստական շինարարության պայմաններում, կոմպարտիան աչքի լույսի պես պահպանում է բանվոր դասակարգի և գյուղացիության ամուր դաշինքը՝ ժողովրդի հաղթանակի և սոցիալիզմի կառուցման երաշխիքը։ Դրա հետ մեկտեղ կոմպարտիային հաջողվեց ստեղծել միասնական դեմոկրատական դաշինք չինական հայրենասեր ազգային բուրժուազիայի այն մասի հետ, որը ցանկանում էր պայքարել իմպերիալիզմի և ռեակցիայի դեմ և համաձայն էր ճանաչելու բանվոր դասակարգի հեգեմոնիան ու դիկտատուրան։

Ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ Չինաստանում, իմպերիալիզմի այդ



նախկին կիսագաղութում, հաստատվեց ժողովրդի դեմոկրատական դիկտատուրա, որը հանդիսանում է պրոլետարիատի դիկտատուրայի ձևերից մեկը։ Չինաստանի պատմության մեջ առաջին անգամ ստեղծվեց այնպիսի պետական կարգ, որը լրիվ համապատասխանում է ժողովրդի շահերին և ելնում է նրանցից։ Նա դեմոկրատիա է աշխատավոր մասսաների համար։ Այդ իշխանությունը դեմոկրատական մեթոդներով է լուծում դեռ գոյություն ունեցող հակասությունները ժողովրդի ներսում։ Սակայն նա դիկտատուրա է չին ժողովրդի ներքին և արտաքին թշնամիների նկատմամբ։

Ընդմիշտ տապալելով իմպերիալիստների, ֆեոդալների, բյուրոկրատական կապիտալի դարավոր և դաժան տիրապետությունը, մեծ Չինաստանի 640 միլիոնանոց ժողովուրդը ձեռնարկել է սոցիալիզմի կառուցման հերոսական աշխատանքին։



Վերջին ինն տարիների ընթացքում Չինաստանի աշխատավոր մասսաները ընթանալով կոմպարտիայի նշած ուղիով, թե՛ արդյունաբերության ու առևտրի և թե՛ գյուղատնտեսության մեջ կենսագործեցին մի շարք կարևոր դեմոկրատական և սոցիալիստական վերափոխումներ, որոնք հնարավորություն տվին և անհրաժեշտ հող նախապատրաստեցին Չինաստանը հզոր սոցիալիստական պետության վերածելու համար։ Այդ պատմական վերափոխումները իրագործվեցին վերականգնման եռամյա շրջանում և առաջին հնգամյակի տարիներին (1953—1957 թթ.)։ Ագրարային ռեֆորմի իրականացման շնորհիվ երկրում վերացվեցին կալվածատիրական հողատիրությունը և ֆեոդալների դասակարգը։ Հողը վերջապես անցավ իր իսկական տիրոջ՝ չին գյուղացիության ձեռքը։ Վերացվեց նաև մյուս շահագործողական ուժը՝ կոմպրադորական բյուրոկրատական կապիտալը, որը սերտորեն կապված էր օտարերկրյա իմպերիալիստների հետ և նրանց հավատարիմ հենարանն էր երկրում։ Ընդունվեց ժողովրդական դեմոկրատական կոնստիտուցիան։

Հենվելով աշխատավոր գյուղացիության խանդավառության և ակտիվության վրա, նրա մասսայական շարժման վրա, որը հատկապես ուժգին վերելք ապրեց 1955 թվականի ձմռանը և 1956 թվականի գարնանը, կոմպարտիան չինական գյուղը տարավ սոցիալիստական համատարած կոոպերացման ճանապարհով։ Ուշիմ օգտագործելով ՍՍՌՄ-ում կոլեկտիվացման հարուստ փորձը, Կոմունիստական պարտիան կարճ ժամկետում հաղթանակ նվաճեց սոցիալիստական ռևոլյուցիայի ամենադժվարին բնագավառում՝ մանր գյուղացիական սեփականության վերափոխման գործում։

Կոոպերատիվների մեջ ընդգրկվել են. մոտ 123 միլիոն գյուղացիական տնտեսություններ կամ Չինաստանի ողջ գյուղացիական տնտեսությունների 98 տոկոսը։ Ստեղծված կոոպերատիվների մեծ մասը՝ 96 տոկոսը, պատկանում է բարձր տիպի կոոպերատիվների թվին։ Կոոպերատիվ արտելներում միավորվել են նաև 5 միլիոն արհեստավորներ կամ արհեստավորների 92 տոկոսը։

Սոցիալ-տնտեսական բարդ պայմաններում իրականացնելով սոցիալիստական միջոցառումները, Չինաստանի Կոմունիստական պարտիան բազմիցս

*հանդես է բերում իրեն հատուկ ստեղծագործ մոտեցում մարքս-լենինյան տեսության ընդհանուր ճշմարտությունները կիրառելու գործում։ Չին կոմունիստները, մասնավորապես, զգալի չափով հարստացրին սոցիալիստական շինարարության միջազգային փորձը մասնավոր կապիտալիստական արդյունաբերությունը համաժողովրդական սեփականության վերածելու հարցում։ Նրանք ճկունություն ցուցաբերեցին չինական հայրենասեր ազգային բուրժուազիային ներգրավելով կապիտալիստական արդյունաբերությունը սոցիալիստականի վերափոխելու գործի մեջ, պետական կապիտալիզմի տարբեր ձևերի կիրառման հիման վրա։ Ընդ որում չին կոմունիստները ղեկավարվեցին իր ժամանակին Վ. Ի. Լենինի արտահայտած այն մտքով, որ հնարավոր է պետական կապիտալիզմի ձևերն օգտագործել կապիտալիստական սեփականությունը համաժողովրդականի վերածելու համար։*

*Այժմ Չինաստանում հիմնականում ավարտված է կապիտալիստական արդյունաբերության ու առևտրի սոցիալիստական վերափոխումը։ Այն կատարվեց պետական-մասնավոր ձեռնարկություններ ստեղծելու և դրանք հետագայում լրիվին պետական-համաժողովրդական ձեռնարկությունների վերածելու միջոցով։ 70 հազար կապիտալիստական ձեռնարկություններ, որոնց արտադրանքը կազմում էր երկրի բոլոր մասնավոր կապիտալիստական ձեռնարկությունների համախառն արտադրանքի 99,9 տոկոսը և 1990 հազար մասնավոր առևտրական ձեռնարկություններ, ուր զբաղված էին երկրի մասնավոր առևտրական ձեռնարկություններում աշխատողների 85 տոկոսը, վերածված են պետական-մասնավոր կամ պետական-կոոպերատիվ ձեռնարկությունների։ Կոմունիստական պարտիան եռանդուն աշխատանք է կատարում նախկին կապիտալիստների և առևտրականների շրջանում՝ նրանց սոցիալիստական գաղափարախոսության ոգով վերադաստիարակելու համար։*

*Այսպիսով, Չինաստանի տնտեսության մեջ սոցիալիստական սեկտորը բացարձակ տիրապետող է հանդիսանում, իսկ կապիտալիստական և մենատնտես սեկտորները հիմնականում վերացված են։ Դրանով Չինաստանի ժողովրդական տնտեսության հետագա անընդհատ աճի համար ստեղծված է անհրաժեշտ սոցիալիստական բազա, որի վրա հենվում է նաև երկրում իշխող քաղաքական սոցիալիստական սիստեմը։*

*Չինաստանի առաջին հնգամյակի արդյունքները համոզիչ կերպով վկայում են այն մասին, որ սոցիալիստական հիմքերի վրա վերակենդանացած ժողովրդական տնտեսությունը ապրում է բուռն վերելք։ Չին աշխատավորներն իրենց սխրագործ աշխատանքի շնորհիվ գերակատարել են հնգամյակի պլանները։ Նախկինում հետամնաց ագրարային Չինաստանը վերածվում է ինդուստրիալ երկրի։ Երկրի տարբեր մասերում, առաջին հերթին օգտակար հանածոներով հարուստ արևմտյան և հյուսիսային նահանգներում, առաջին հնգամյակի տարիներին կառուցվում էին 825 խոշոր արդյունաբերական օբյեկտներ, որոնց զգալի մասը՝ Սովետական Միության օգնությամբ։ Կառուցված են նաև տասնյակ հազարավոր միջին և մանր օբյեկտներ։ Արդյունաբերական հսկաների թվում են վերակառուցված և ընդլայնված Անշանի մետաղաձուլական կոմբինատը, Ուխանի մետաղաձուլական կոմբինատը, Չանչունի, Պեկինի, Շանհայի ավտոմոբիլային, տրակտորաշինական, հաստոցաշինական և այլ գործարաններ, Սինցզյանի նավթահանքերը։ Նախկինում անմար-*



*դարնակ վայրերում կառուցվել են բանվորական քաղաքներ, սկիզբ է դրվել Չինաստանի անսպառ բնական հարստությունների լայն օգտագործմանը։ Իր մեծ առավելություններն է ցուցաբերում նաև կոոպերատիվ կարգը գյուղում։ Բարձր տեմպերով սկսեց աճել գյուղատնտեսական արտադրանքը։ Իմպերիալիզմի և գոմինդանականների տիրապետության շրջանում հացահատիկային և այլ կուլտուրաների բերքատվությունը շատ ցածր էր։ Պարտիայի և ժողովրդի համառ աշխատանքի շնորհիվ այդ բնագավառում ձեռք բերվեց առաջին մեծ հաջողությունը։ Հեկտարի միջին բերքատվությունը 10,9 ցենտներից (1949 թ.) հասցվեց 15,3 ցենտների (1957 թ.), հացահատիկի համախառն արտադրանքը 108 միլիոն տոննայից հասավ 185 միլիոն տոննայի։ Խիստ աճեց գյուղատնտեսական արտադրանքը նաև մյուս բնագավառներում, մասնավորապես անասնապահության մեջ։ Այսպես, 1957 թվականին խոզերի գլխաքանակը նախորդ տարվա համեմատությամբ ավելացավ 30 միլիոն գլխով։*

*Նշելով Չինաստանի կյանքում տեղի ունեցող այդ մեծ և ուրախալի փոփոխությունները, պետք է հիշատակել նաև այն նշանակալի աշխատանքը, որը կատարեցին և կատարում են կոմպարտիան և ժողովրդական կառավարությունը երկրի՝ նախկինում ճնշված և հետամնաց ազգային փոքրամասնությունների սոցիալիստական զարգացման համար։*

*Նրանք, հաշվի առնելով ՍՍՌՄ-ում ազգային հարցի լուծման հսկայական դրական փորձը, ՉԺՌ-ի գոյության հենց առաջին օրերից ձեռնամուխ եղան ազգային փոքրամասնությունների տնտեսական, սոցիալական և կուլտուրական հետամնացության արագ վերացման գործին։ Այժմ երկրի բնակչության 6 տոկոսը կազմող փոքր ազգությունները ակտիվորեն ներգրավվել են երկրի սոցիալիստական շինարարության ընդհանուր գործի մեջ։ Ազգային հարցի լուծման ընթացքում ժողովրդական իշխանությունը ելնում է լենինյան ազգային քաղաքականության սկզբունքներից, բոլոր ազգերի իրավահավասարության, ազգային ինքնորոշման, ազգային տերիտորիալ ինքնավարության և իշխանության տեղական ազգային մարմինների ստեղծման սկզբունքներից։ Այժմ այդ խնդիրները հաջողությամբ իրագործվում են։ Ազգային ինքնավարության մեջ ընդգրկված է ազգային փոքրամասնություններին պատկանող և խիտ կերպով ապրող բնակչության ճնշող մասը։ Ազգային շրջաններում հիմնականում ավարտված են դեմոկրատական և սոցիալիստական վերափոխումները, ինչպես, օրինակ, գյուղացիական և արհեստավորական տնտեսությունների կոոպերացումը և այլն։ Այստեղ կառուցվում են հարյուրավոր արդյունաբերական, լեռնային ձեռնարկություններ, էլեկտրակայաններ, ջրամբարներ, երկաթուղային, ավտոմոբիլային ճանապարհներ և այլն։ Հին և նոր բնակավայրերում բացված են բազմաթիվ ազգային դպրոցներ, հիվանդանոցներ, թատրոններ, լույս են տեսնում տասնյակ ազգային թերթեր և ամսագրեր։*

*Չինական կոմպարտիայի այդ ճիշտ ազգային քաղաքականության նվաճումները, անշուշտ, հարստացնում են ազգային հարցի լուծման միջազգային փորձը, նրանք հատկապես ուշագրավ են Ասիայի և Աֆրիկայի երկրների համար։*

*Այս փաստերը անվիճելիորեն վկայում են այն մասին, որ Չինաստանի աշխատավորները Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ վճռական հաջողություններ են նվաճել երկրում սոցիալիզմ կառուցելու գործում։ Ցեն-*

*դալիզմի և կապիտալիզմի կապանքներից ազատագրված երկրի արտադրողական ուժերն այժմ գտնվում են բուռն, չտեսնված աճի շրջանում։ Ստեղծելով սոցիալիստական ինդուստրացման նախնական հիմքը, չին ժողովուրդն առաջին թռիչքը կատարեց իր տնտեսության և կուլտուրայի բազմակողմանի զարգացման ուղղությամբ։ Չնայած ՉԺՌ-ի հռչակման օրից անցել է շատ կարճ պատմական ժամանակ, սակայն երկրի ժողովրդական տնտեսության և կուլտուրայի մակարդակը մի քանի անգամ գերազանցում է նախառևոլյուցիոն, գոմինդանական Չինաստանի զարգացման մակարդակը։ Եթե գոմինդանական Չինաստանում մաքսիմում արտադրվում էր (1943 թ.) 61,8 միլիոն տոննա ածուխ, 1,8 միլիոն տոննա չուգուն և 923 հազար տոննա պողպատ, ապա 1957 թվականին, այսինքն՝ առաջին հնգամյակի վերջին տարում, ածխի հանույթը հասավ 130 միլիոն տոննայի, իսկ չուգունի և պողպատի արտադրությունը համապատասխանորեն հավասար էր 5,5 միլիոն և 5,35 միլիոն տոննայի։ Առաջին հնգամյակի տարիներին արդյունաբերության համախառն արտադրանքը տարեկան աճում էր միջին հաշվով 19 տոկոսով, գյուղատնտեսությանը՝ 4,5 տոկոսով։*

*Չնայած այդ հսկայական առաջընթացին, Չինաստանի առջև դեռևս կանգնած են շատ մեծ խնդիրներ։ Անհրաժեշտ է ապահովել երկրի տնտեսության այնպիսի աննախընթաց վերելք, որը Չինաստանին հնարավորություն տա կարճ ժամկետում հասնել աշխարհի ամենազարգացած կապիտալիստական երկրների մակարդակին՝ արդյունաբերության համախառն արտադրանքի, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության, աշխատանքի արտադրողականության աճով, գիտության և տեխնիկայի զարգացմամբ և գերազանցել այդ մակարդակը։*

*Չինաստանի Կոմունիստական պարտիայի VIII համագումարի II նստաշրջանը, որը գումարվեց այս տարվա գարնանը, ուրվագծեց երկրում սոցիալիստական շինարարության վերելքի նոր, հոյակապ պատկերը։ Նա մշակեց պարտիայի գլխավոր գիծը։ Այդ գծի դեիզն է՝ «լարելով ողջ ուժերը, ձգտելով դեպի առաջ, կառուցել սոցիալիզմը, համաձայն՝ շատ, արագ, լավ, տնտեսվար սկզբունքի»։*

*Պարտիայի այս գլխավոր գծի հիմնական իմաստն այն է, որպեսզի լիովին գործողության մեջ դնելով բազմամիլիոն աշխատավոր մասսաների անսպառ նախաձեռնությունը և ստեղծագործական ավյունը, հասնել արտադրանքի և շինարարության աճի այնպիսի բարձր տեմպերի, որոնք մի քանի կամ տասնյակ անգամ կգերազանցեն հին Չինաստանի և կապիտալիստական երկրների արտադրության աճի տեմպերը։ Դրա շնորհիվ Չինաստանը ձեռք կբերի իրական հնարավորություն 10—20 տարում կամ ավելի կարճ ժամանակամիջոցում վերացնել իր հետամնացությունը և հավասարվել առաջավոր կապիտալիստական երկրների մակարդակին, այն մակարդակին, որի համար կապիտալիզմին անհրաժեշտ եղավ 100—200 տարի։*

*Որպես առաջնահերթ խնդիր պարտիան մասսաներին լոզունգ առաջադրեց՝ «մոտակա 15 տարում կամ ավելի մոտ ժամկետում հասնել և գերազանցել Անգլիայի մակարդակը պողպատի, չուգունի, գլանվածքի և արդյունաբերական արտադրանքի այլ տեսակների գծով»։*

*Այսպիսով, համագումարը ժողովրդի առջև դրեց մի նոր պատվավոր*



*խնդիր՝ տնտեսական, քաղաքական և գաղափարական ճակատներում սոցիալիստական ռևոլյուցիայի ավարտման հետ մեկտեղ ծավալել նաև տեխնիկական և կուլտուրական ռևոլյուցիա։ Այդ ռևոլյուցիայի հաղթանակը Չինաստանում կստեղծի ժամանակակից հզոր արդյունաբերություն, ժամանակակից գյուղատնտեսություն, գիտություն, երկրի ժողովրդական տնտեսությանը կտա մասնագիտական և կուլտուրական բարձրորակ կադրեր։*

*Չինաստանի Կոմունիստական պարտիայի այդ հիանալի նախագծումների մեջ շոշափելի կերպով երևան են գալիս սոցիալիզմի փայլուն ուրվագծերը։ Պարտիայի առաջադրած խնդիրներն ու կոչերը ամենալայն արձագանք են գտնում մասսաների մեջ, ստանում նրանց լրիվ հավանությունը, քանի որ պարտիան միշտ սերտորեն կապված է ժողովրդի հետ, իր միջոցառումները կենսագործում է մասսաների միջոցով։ Դրանումն է պարտիայի մեծ ուժը, սոցիալիզմի կառուցման երաշխիքը։*

*Չին ժողովուրդն ի վիճակի է կատարելու պարտիայի առաջադրած խնդիրները, քանի որ դրանց համար այժմ առկա են բոլոր բարենպաստ պայմանները։ Դա՝ սոցիալիստական սիստեմի առավելություններն են, որոնց շնորհիվ հին սիստեմի կապանքներից ազատագրվել են ժողովրդի անսահման ստեղծագործ ուժերը և ակտիվությունը, դա՝ պարտիայի մարքս-լենինյան համաճիշտ քաղաքականությունն է և աշխատավորական լայն մասսաների համախմբվածությունը պարտիայի շուրջը։ Դա՝ համաշխարհային սոցիալիստական լագերի առկայությունն է, որը չին ժողովրդին ապահովում է խաղաղ և անվտանգ աշխատանքի հնարավորություն, և եղբայրական սոցիալիստական պետությունների, առաջին հերթին Սովետական Միության կողմից Չինաստանին ցույց տրվող տնտեսական և այլ կարգի բազմակողմանի օգնությունն է։*

*Սովետական ժողովրդի օգնությամբ Չինաստանում այժմ կառուցվում են 211 խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ, որոնք կազմում են երկրի ինդուստրացման կորիզը։ ՍՍՌՄ-ի մեծ օժանդակության շնորհիվ Չինաստանում գործարկվեցին ատոմային առաջին ռեակտորը և ցիկլոտրոնը։ Ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրներն իրենց հերթին եղբայրական Չինաստանին տրամադրում են 33 խոշոր գործարանների լրիվ սարքավորում։*

*Այսօր Չինաստանում տիրում է սոցիալիստական ստեղծագործ աշխատանքի իսկական եռուզեռ։ Չին ժողովուրդը յոթմղոնանոց քայլերով առաջ է շարժվում դեպի սոցիալիզմ։ Երկիրը թևակոխել է այն շրջանը, երբ Մարքսի խոսքերով ասած «մեկ օրը հավասար կլինի 20 տարվան»։ Մարդիկ աշխատում են այնպիսի ոգևորությամբ, որ երկրորդ հնգամյակի պլանները որպես կանոն կատարվում են ժամկետներից շուտ։*

*Արդյունաբերության բնագավառում պարտիան կենտրոնական ենթակայության, խոշոր ձեռնարկությունների կառուցման հետ մեկտեղ իրականացնում է նաև տեղական արդյունաբերության զարգացման, միջին և մանր ձեռնարկությունների կառուցման քաղաքականություն։ Այդ ծրագրի իրագործումը հենվում է տեղական մարմինների և ժողովրդական մասսաների լայն նախաձեռնության և ակտիվության վրա։*

*Կենսագործելով պարտիայի գլխավոր գիծը, աշխատավորները պարտիական կազմակերպությունների գլխավորությամբ լայնորեն հայտաբերում և գործի են դնում նոր ռեսուրսներ։ Ընդլայնվում են հին արտադրական ձեռ-*

նարկությունները և կառուցվում են նորերը, հատկապես գյուղական վայրերում: Կառուցվում են տասնյակ հազարավոր տեղական միջին և մանր ձեռնարկություններ: Այսօր Չինաստանում առկա է մի նոր պատմական երևույթ, այն է՝ արդյունաբերության արտադրության բնագավառն ընդգրկվում են նաև գյուղացիները, որոնք գյուղատնտեսական աշխատանքի հետ միասին զբաղվում են մետաղաձուլությամբ, գյուղատնտեսական հումքի վերամշակմամբ և այլն: Այսպիսով, ռևոլյուցիոն չին գյուղացիությունը բանվոր դասակարգի հետ միասին մեծ դեր է խաղում երկրի ինդուստրացման համար մղվող պայքարում:

Ուշագրավ է, որ շատ միջին ու մանր ձեռնարկություններ ստեղծվել են ուսումնական հաստատությունների, հիմնարկների, զինվորական մասերի կողմից: Այժմ ավաններում, գյուղերում, շատ քաղաքներում գործում են մոտ 300 հազար միջին ու փոքր մետաղաձուլական հնոցներ, ցեմենտի և այլ գործարաններ, ածխահանքեր: Արդեն շահագործման են հանձնված մոտ 11 հազար փոքր ու միջին մետաղաձուլական գործարաններ, որոնք մոտ ապագայում երկրին կտան շուրջ 20 միլիոն տոննա չուգուն և պողպատ:

Երկրի ինդուստրացման համար սկսված համաժողովրդական պայքարում ձեռք են բերվել փայլուն հաջողություններ: Այդ տեսակետից 1958 թվականը իրավամբ կարելի է համարել բեկման տարի: Արտադրության զարգացման տեմպերն այս տարի կատարել են մի նոր ապշեցուցիչ թռիչք: Այսպես, սպասվում է, որ երկրորդ հնգամյակի առաջին տարում՝ 1958 թվականի վերջերին երկրի արդյունաբերության և գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը կաճի 60 տոկոսով՝ 1957 թվականի համեմատությամբ: Հատկապես մեծ են ծանր ինդուստրիայի աճի տեմպերը: 1958 թվականին կարտադրվի 10,7 միլիոն տոննա պողպատ՝ 2 անգամ ավելի, քան նախորդ տարում, 210 միլիոն տոննա ածուխ, 27,5 միլիարդ կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, 80 հազար մետաղամշակող հաստոցներ: Տեմպերի վիթխարի աճը պատկերացնելու համար կարելի է նշել, որ հին Չինաստանում 48 տարվա ընթացքում՝ 1901 թվականից մինչև 1948 թվականը, ձուլվել է ընդամենը 7.600 հազար տոննա պողպատ, այսինքն՝ ավելի քիչ, քան կտա սոցիալիստական Չինաստանի ինդուստրիան միայն 1958 թվականին: Այս տարվա նորակառույց խոշոր ձեռնարկությունների թիվը կհասնի մեկ հազարի: Սկսվել է ատոմային էներգիայի օգտագործումը, ստեղծվում են արդյունաբերական նոր ճյուղեր: Արդյունաբերության մեջ կատարված այդ մեծ թռիչքը վկայում է, որ պարտիայի կողմից առաջ քաշված լոզունգը՝ «15 տարում հասնել և անցնել Անգլիային», կիրագործվի շատ ավելի կարճ ժամկետներում: Ածխի հանույթի և հաստոցների արտադրանքի գծով Չինաստանը կհասնի Անգլիային արդեն այս տարի:

Վիթխարի նվաճումներ ձեռք կբերվեն նաև գյուղատնտեսական արտադրանքի աճի բնագավառում: Բոլոր հիմքերը կան սպասելու, որ այս տարի կարտադրվի 350 միլիոն տոննա հացահատիկ՝ ցորեն, բրինձ և այլն, այսինքն՝ 90 տոկոսով ավելի, քան 1957 թվականին: Դա երկու և կես անգամ գերազանցում է նախապատերազմյան մաքսիմումի՝ 1936 թվականի բերքը: Հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը հեկտարից կկազմի 30 ցենտներ, այսինքն՝ կգերազանցի առաջավոր շատ կապիտալիստական երկրների մակարդակը: Ցորենի արտադրանքի գծով ՉԺՌ-ն արդեն այս տարի անցավ Ամերիկայի Միացյալ Նահանգներից և աշխարհում գրավեց երկրորդ տեղը՝ ՍՍՌՄ-ից հետո: Չինաստանի բազմամիլիոն բնակչության ամեն մի



շնչին այս տարի կհասնի 500 կգ. ցորեն, իսկ առանձին նահանգներում անգամ 750 կգ.:

Միաժամանակ խորանում է սոցիալիստական ռևոլյուցիան գյուղում, որի նոր արտահայտությունը արտադրական կոմպլեքսային կոմունաների ստեղծումն է: Այդ կոմունաներն արդեն ցուցաբերեցին իրենց առավելությունները կոոպերատիվների համեմատությամբ, նպաստելով արտադրության ավելի արագ զարգացմանը:

Մեծ են հաջողությունները նաև կուլտուրայի և լուսավորության բնագավառում: Ուսուցման տարբեր ձևերի մեջ այժմ ընդգրկված են 200 միլիոն մարդ, այդ թվում 10 միլիոնը սովորում են միջնակարգ դպրոցներում: Չինաստանի բուհերում սովորում է 447 հազար ուսանող, երեք անգամ ավելի նախառևոլյուցիոն Չինաստանից:

Չինաստանի այսօրվա իրականությանը կարելի է լրիվ կերպով վերագրել Վ. Ի. Լենինի այն միտքը, որ՝ «հասել է հենց այն պատմական մոմենտը, երբ թեորիան վերածվում է պրակտիկայի, կենդանանում է պրակտիկայով, ուղղվում է պրակտիկայով. ստուգվում է պրակտիկայով, երբ առանձնապես ճիշտ են Մարքսի խոսքերը՝ «գործնական շարժման յուրաքանչյուր քայլ տասնյակ ծրագրերից ավելի կարևոր է...» (Երկեր, հ. 26, էջ 503):



Չինական ժողովրդական Ռեսպուբլիկայի պատմական նվաճումներն առաջացնում են եղբայրական ժողովուրդների, աշխարհի բոլոր ազնիվ մարդկանց ուրախությունն ու բերկրանքը, համակրանքը դեպի Չինաստանը: Աճել է Չինաստանի միջազգային հեղինակությունը որպես խաղաղության պատվարի, մեծացել է նրա ազդեցությունն Ասիայի ու Աֆրիկայի ժողովուրդների վրա, ժողովուրդներ, որոնք չին ժողովրդի օրինակի մեջ տեսնում են իրենց սեփական ապագան: Ամրապնդվում են և ընդլայնվում ՉԺՌ-ի միջազգային տնտեսական, առևտրական, կուլտուրական և այլ կապերը:

Սակայն ժողովրդական Չինաստանի այդ հսկայական վերելքը և հզորության աճը, նրա խաղաղասեր քաղաքականությունը և անխախտ բարեկամությունը Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների հետ առաջացնում են չին ժողովրդի ներքին և արտաքին թշնամիների և, հատկապես, նրանց հովանավորող ամերիկյան գիշատիչ իմպերիալիզմի անզոր կատաղությունն ու ատելությունը: Այդ թշնամիները դեռ երազում են վերականգնել հին հակաժողովրդական կարգերը Չինաստանում: Մինչև այսօր դեռ չեն վերացված սուր հակասությունները չին ժողովրդի և նրա թշնամիների միջև:

Չինաստանում իրագործվող սոցիալիստական վերափոխումները հանդիպեցին երկրի ներսում սոցիալիզմի թաքնված թշնամիների՝ աջ բուրժուական տարրերի կատաղի դիմադրությանը: 1957 թվականի գարնանը դեմոկրատական պարտիաներում, տեղ-տեղ նաև կոմպարտիայի կազմակերպություններում բուն դրած աջերն անցան բացահայտ գրոհի կոմպարտիայի, նրա լենինյան ղեկավարության և սոցիալիզմի կառուցման գծի դեմ: Այդ այն ժամանակն էր, երբ կոմպարտիայի կենտկոմը, ղեկավարվելով ժողովրդի ներսում եղած հակասությունների ճիշտ լուծման մասին ընկ. Մաո Ցզե-դունի դրույթով, ազդարարեց աշխատանքի ոճի կարգավորման կամպանիան, բոլոր կոմու-

նիստներին, աշխատավորներին, ինտելիգենցիային կոչ անելով լայնորեն և համարձակ կերպով ծավալել քննադատությունն ու ինքնաքննադատությունը եղած թերությունները վերացնելու և սոցիալիզմի կառուցման գործը բարելավելու, մասսաներին կոմունիստական ոգով դաստիարակելու համար: Օգտվելով դրանից, աջերը ձայնակցելով միջազգային ռևիզիոնիզմին, ճգնում էին հերքել մարքս-լենինյան մեծ տեսության ընդհանուր սկզբունքների և դրույթների կիրառելիությունը Չինաստանի համար, պահանջում էին մի կողմ նետել այդ սկզբունքները: Գրականության ասպարեզում աջերը հանդես եկան գրականության և արվեստի նկատմամբ պարտիական ղեկավարության դեմ, գովերգում էին սնանկացած բուրժուական ինդիվիդուալիզմը:

Աջերն ըստ էության բուրժուական նեխած գաղափարներ էին տարածում մասսաների մեջ, ձգտում էին վերականգնել կապիտալիզմը երկրում և կազմալուծել սովետա-չինական մեծ բարեկամությունը:

Սակայն աջերի հույսերն ամբողջապես ի դերև ելան: Կոմպարտիան հենվելով բանվոր դասակարգի և սոցիալիզմին հավատարիմ ողջ աշխատավոր մասսաների վրա, անհաշտ պայքար ծավալեց ընդդեմ աջերի: Բազմաթիվ ազատ դիսկուսիաներում աջերը լիովին մերկացրին իրենց որպես սոցիալիզմի թշնամիներ և ամերիկյան իմպերիալիզմի գործակալներ: Նրանք գլխովին ջախջախվեցին և մի կողմ նետվեցին սոցիալիզմի կառուցման ճանապարհից:

Աշխատանքի ոճի կարգավորման համար ծավալված շարժումը և պայքարը աջերի դեմ մեծագույն չափով նպաստեցին լայն մասսաների կոմունիստական դաստիարակության գործին:

Միաժամանակ, Չինաստանի կոմպարտիան՝ ՍՄԿՊ-ի և մյուս եղբայրական պարտիաների հետ միասին ակտիվորեն հանդես եկավ ի պաշտպանություն մարքսիզմ-լենինիզմի անաղարտության, մերկացնելով և ջախջախիչ հարվածներ հասցնելով միջազգային ռևիզիոնիզմին: Կոմպարտիայի VIII համագումարի երկրորդ նստաշրջանը խիստ կերպով դատապարտեց հարավսլավյան պարագլուխների դավաճանությունը մարքս-լենինյան գաղափարախոսությանը, միջազգային կոմունիստական շարժման նկատմամբ նրանց պառակտիչ վարքագիծը: Համագումարի արդյունքները մեկ անգամ ևս հաստատեցին, որ փառապանծ չինական կոմպարտիան լիովին հավատարիմ է մարքս-լենինյան ուսմունքին, պրոլետարական ինտերնացիոնալիզմին և սովետա-չինական բարեկամությանը և անհաշտ է մարքսիզմ-լենինիզմի թշնամիների նկատմամբ:

Հանդես գալով ժողովրդական ներկայացուցիչների Համաչինական ժողովի 4-րդ նստաշրջանում, Չժոու Էն-լայն ասաց. «Մենք պետք է դատապարտենք աջ տարրերի ռևիզիոնիստական հայացքները, որոնք մարքսիզմի համընդհանուր ճշմարտությունները և Սովետական Միության առաջավոր փորձը դիտում են որպես դոգմա և ժխտում են դրանք: ... Պետք է ամենայն որոշակիությամբ ասել, որ հետագայում մենք լրջորեն կսովորենք Սովետական Միությունից, կսովորենք բոլոր սոցիալիստական երկրներից»:

Սոցիալիզմի թշնամիների դեմ մղած պայքարում ավելի ամրապնդվեց չին ժողովրդի ներքին քաղաքական միասնությունը, որը կոփել է կոմունիստական պարտիան: Անգամ ժողովրդական Չինաստանին չհամակրող օտարերկրյա գործիչները ստիպված են ընդունել այդ փաստը: Այդ տեսակետից ուշագրավ է ֆիլիպինյան քաղաքական գործիչ Ռոսեսի այն հայտարարությունը, որը նա-



արել է վերջերս Չինաստան այցելելուց հետո: Նշելով, որ Չինաստանի «արդյունաբերական պրոգրեսը ֆանտաստիկ է», Ռոսեսը խոստովանում է, որ ժողովուրդը լիովին պաշտպանում է կոմպարտիայի և կառավարության միջոցառումներն ու քաղաքականությունը: «Բոլոր վայրերում, ուր մենք այցելեցինք,— ասում է նա,— շատ պարզ երևում է, որ կառավարությունն օգտվում է չին ժողովրդի օժանդակությունից: Անվիճելի է, որ կառավարությունը բարձրացրել է չինական մասսաների կյանքի ընդհանուր մակարդակը... Կարծես թե նրանք ավելի քան գոհ են, ապրելով կոմունիստների իշխանության տակ»: Շատ բազմանշանակալի խոստովանություն Ամերիկայի տիրապետության տակ հեծող երկրի ներկայացուցչի շուրթերին: Անգամ ամերիկյան կառավարությունը Չինաստանի «չճանաչման» վերաբերյալ իր տխրահռչակ մեմորանդումում ատամների կրճտոցով ստիպված է խոստովանել, որ չին ժողովուրդը հետևում է իր կոմունիստական պարտիային:

Չինական ժողովրդական Ռեսպուբլիկայի անշեղ առաջխաղացումը սոցիալիզմի ուղիով սրեց նաև անմիջական հակասությունները չին ժողովրդի և իմպերիալիզմի միջև: Ամերիկյան իմպերիալիստները շարունակում են հանդես գալ որպես Չինաստանի ամենաոխերիմ թշնամիներ: Նրանք ոչ միայն անասնական ատելությամբ են վերաբերվում չին ժողովրդին և նրա հաջողություններին, այլև սարսափում են այդ հաջողություններից, ողջ սոցիալիստական սիստեմի աճող հզորությունից, դրա մեջ տեսնելով իմպերիալիզմի, գաղութակալության և ագրեսիվ քաղաքականության պարտությունը:

Ահա թե ինչու ԱՄՆ-ի կառավարող ագրեսիվ շրջանները, օգտագործելով չին ժողովրդի թշնամի Չան Կայ-շիի գոմինդանական կլիկը, այժմ բացահայտ ագրեսիայի են դիմել չին ժողովրդի դեմ: Ամերիկյան կամակոր իմպերիալիստները չեն ուզում հաշտվել այն մտքի հետ, որ նրանց գաղութային տիրապետության դարը Չինաստանում վաղուց և անվերադարձ կերպով պատմության գիրկն է անցել: Նրանք ցանկանում են շրջել պատմության անիվը և Չինաստանում վերականգնել հին կարգերը:

Այդ նպատակով նրանք ապօրինի կերպով օկուպացրել են Չինաստանին պատկանող Տայվան, Պենխուլեդաո և մի շարք առափնյա կղզիներ և դրանք վերածել են ռազմական պրովոկացիաների և ագրեսիայի օջախի: Համառորեն շարունակելով իրենց վաղուց սնանկացած քաղաքականությունը Չինաստանի նկատմամբ, հրաժարվելով ճանաչել ՉԺՌ-ին և տրամադրել նրան իր օրինավոր տեղը ՄԱԿ-ում, ամերիկյան իմպերիալիստները ցինիկաբար 640 միլիոնանոց չին ժողովրդին հակադրում են ոչ ոքի չներկայացնող Չան Կայ-շիի ոհմակը:

Ձգտելով հավերժացնել Տայվանի անջատումը Չինաստանից, ԱՄՆ-ը առաջ են քաշում «երկու Չինաստանների» մասին իմպերիալիստական անհեթեթությունը:

Եվ այսօր ԱՄՆ-ն են, որ խանգարում են չին ժողովրդին ազատագրել իրեն պատկանող կղզիները: Չինաստանի ափերի մոտ կենտրոնացնելով 7-րդ ամերիկյան ռազմա-ծովային նավատորմը և հսկայական օդային ուժեր, ԱՄՆ-ի կառավարությունը ոտնահարելով միջազգային ամեն մի կանոն ՉԺՌ-ին լկտիաբար սպառնում է ատոմային ու ջրածնային պատերազմով այն դեպքում, եթե նա փորձի ազատագրել իր սեփական տերիտորիան, նույնիսկ առափնյա Կուեմոյ և Մացզու կղզիները, որոնք գոմինդանականները վեր են ածել ռազ-

մական հենակետերի՝ Չինաստանի մայր ցամաքը ռմբակոծելու համար։ Ամերիկյան օդային և ծովային ուժերը բացահայտորեն խախտում են ՉԺՌ-ի տերիտորիալ ջրերը և օդային տարածությունը։

ԱՄՆ-ի այդ ռազմական ավանտյուրան, որը հանդիսանում է իմպերիալիստների մերձավոր-արևելյան ավանտյուրայի շարունակությունը, նորից մեծ չափով ուժեղացրեց միջազգային լարվածությունը և լուրջ սպառնալիքի տակ դրեց խաղաղությունը Հեռավոր Արևելքում և ողջ աշխարհում։

Սակայն ԱՄՆ-ի կառավարող շրջանների պլանները դատապարտված են ձախողման։ Նրանց բնավ չհաջողվեց սարսափեցնել չին ժողովրդին և «կրակի դադարեցման» անվան տակ ստիպել նրան հրաժարվել առափնյա կղզիները և Տայվանը ազատագրելու հաստատ մտադրությունից։ Ի պատասխան ագրեսորների սպառնալիքների, ամբողջ չին ժողովուրդը ոտքի է կանգնել հայրենիքի պաշտպանության համար և այժմ լի է վճռականությամբ՝ կործանիչ հարված հասցնելու ագրեսորին։

Ամերիկյան ագրեսիան Հեռավոր Արևելքում առաջ բերեց աշխարհի բոլոր ազնիվ մարդկանց միահամուռ զայրույթը և ցասումը։ Խաղաղասեր մարդկությունը դատապարտում է Դալես-Էյզենհաուերի ավանտյուրիստական քաղաքականությունը։ Բոլոր խաղաղասեր մարդիկ ԱՄՆ-ի կառավարությունից պահանջում են վերջ դնել այդ վտանգավոր պրովոկացիաներին։ Էյզենհաուերի և Դալեսի ագրեսիվ կուրսը սուր կերպով քննադատում և դատապարտում են հենց ԱՄՆ-ում։

Ամերիկյան իմպերիալիզմին չի հաջողվի շրջել պատմության անիվը, քանի որ Չինաստանն այսօր՝ դա նախկին թույլ, հետամնաց, միայնակ երկիրը չէ։ Նա հզոր սոցիալիստական պետություն է։ Նրա կողքին կանգնած են նրա եղբայրները և դաշնակիցները՝ Եվրոպայի և Ասիայի սոցիալիստական երկրները։

ՉԺՌ-ի հռչակման 9-րդ տարեդարձի կապակցությամբ ընկերներ Մաո Ցզե-դունին, Լյու Շաո-ցիին և Չժոու Էն-լային ուղղված՝ ընկերներ Ն. Ս. Խրուշչովի և Կ. Ե. Վորոշիլովի ողջույնի մեջ ասված էր. «Սովետական և չին ժողովուրդների բարեկամությունը առհավետ ամրապնդված է կոմունիզմի համար մղվող պայքարում նպատակների միասնությամբ։ Մեր ժողովուրդների ընդհանուր գործի հաղթանակի հուսալի գրավականը Սովետական Միության և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կոմունիստական պարտիաների անսասան համախմբվածությունն է։ Նշանավոր իրադարձություն եղավ Սովետական Միության և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ղեկավար գործիչների վերջերս Պեկինում տեղի ունեցած հանդիպումը, որը համայն աշխարհի առջև վերստին ցուցադրեց մեր ժողովուրդների հայացքների լիակատար միասնությունը արդիականության կարևորագույն պրոբլեմներում։ Այդ հանդիպումը մի անգամ ևս ցույց տվեց Սովետա-չինական բարեկամության անխորտակելի ուժը, ցուցադրեց մեր ընդհանուր վճռականությունն ու պատրաստակամությունը՝ բոլոր երկրների խաղաղասեր ժողովուրդների հետ միասին պաշտպանել խաղաղության և միջազգային անվտանգության գործը, ցուցադրեց ագրեսորներին հարված հասցնելու վճռականությունը։

Կասկած չկա, որ ամերիկյան իմպերիալիստների ամեն մի փորձ՝ հարձակում գործելու չին ժողովրդի վրա, հետ կմղվի սոցիալիստական ողջ լագերի միահամուռ ուժերով։ Այդ կապակցությամբ Սովետական կառավարությունը



լուրջ նախազգուշացում է արել վերջերս ԱՄՆ-ի պրեզիդենտ Էյզենհաուերին ուղղված երկու ուղերձներում։ «Հարձակումը Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի վրա, որը հանդիսանում է մեր երկրի մեծ բարեկամը, դաշնակիցը և հարևանը,— ասված է Ն. Ս. Խրուշչովի ուղերձում,— դա հարձակում է Սովետական Միության վրա։ Հավատարիմ լինելով իր պարտքին մեր երկիրը ամեն ինչ կանի, որպեսզի ժողովրդական Չինաստանի հետ մեկտեղ պաշտպանի երկու պետությունների անվտանգությունը, խաղաղության շահերը Հեռավոր Արևելքում, խաղաղության շահերը ամբողջ աշխարհում»։ ՉԺՌ-ի դեմ ուղղված ԱՄՆ-ի խելակորույս իմպերիալիստական քաղաքականությունն անտարակույս կձախողվի։

Միայն Տայվանի ամերիկյան օկուպացիայի դադարեցումը և այդ շրջանից ամերիկյան զինված ուժերի հեռանալը կարող է կայուն խաղաղություն ապահովել Հեռավոր Արևելքում։

Աշխարհի բնակչության մեկ չորրորդը կազմող չին ժողովուրդը հաղթական երթով այսօր ընթանում է սոցիալիզմի կառուցման ուղիով և ոչ մի թշնամական ուժ չի կարող նրան ստիպել շեղվել այդ ճանապարհից։

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ*

## ԳԼՈՒԽ I

## ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՍԿԻԶԲԸ ԵՎ ՄԱՐՔՍԻԶՄԻ ՏԱՐԱԾՈՒՄԸ ՌՈՒՍԱՍՏԱՆՈՒՄ

## (1883—1894 ԹՎԱԿԱՆՆԵՐ)

### 1. ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ԵՎ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՄԱՍՍԱՆԵՐԻ ԴՐՈՒԹՅՈՒՆԸ ՌՈՒՍԱՍՏԱՆՈՒՄ XIX ԴԱՐԻ ԵՐԿՐՈՐԴ ԿԵՍԻՆ։

*Ցարական Ռուսաստանը Եվրոպայի ամենահետամնաց երկրներից մեկն էր։ Այնտեղ կապիտալիզմը համեմատաբար ուշ սկսեց զարգանալ։ Դեռ XIX դարի կեսերին Ռուսաստանում գոյություն ունեին ճորտատիրական կարգեր, երբ գյուղացիներին կարելի էր վաճառել ու գնել որպես անասուն, որպես իր։ Հարկադրական ճորտական աշխատանքը նվազ-արտադրողական էր, իսկ այդպիսի աշխատանքի վրա հիմնված գյուղատնտեսությունը՝ շատ հետամնաց։ Ինչպես հարկն է, չէր կարող զարգանալ նաև արդյունաբերությունը, որը կարիք էր զգում ազատ աշխատուժի և ներքին շուկայի՝ իր ապրանքները վաճառահանելու համար։ Ապրանքա-կապիտալիստական հարաբերությունների զարգացումը դրդում էր ոչնչացնել ճորտատիրական իրավունքը, բայց ճորտատեր-կալվածատերերը համառորեն դիմադրում էին դրան։*

*Ճորտատիրական կարգի փտածությունն ու երկրի զարգացման համար նրա վնասը ավելի ու ավելի շոշափելի էին դառնում։ Այդ բանն առանձնապես ակնառու կերպով ցույց տվեց Ղրիմի պատերազմը (1853—1856 թվականներ)։ 1861 թվականին տնտեսական անհրաժեշտության ճնշման և ծավալվող գյուղացիական հուզումների սպառնալիքի տակ ցարական կառավարությունն ստիպված եղավ վերացնել ճորտատիրական իրավունքը։*

*Ճորտատիրական իրավունքի անկումից հետո կապիտալիզմը Ռուսաստանում սկսեց բավական արագ զարգանալ, ամենից առաջ արդյունաբերության մեջ և տրանսպորտում։ 1866-ից մինչև 1890 թվականը ֆաբրիկաների ու գործարանների թիվը ավելացավ ավելի քան երկու անգամ՝ 2,5—3 հազարից հասնելով 6 հազարի։ Մեքենան աստիճանաբար դուրս էր մղում ձեռքի աշխատանքը։ Երևան եկան այն ժամանակվա համար հսկայական ֆաբրիկաներ ու գործարաններ՝ մեքենայական տեխնիկայով և հազարավոր բանվորներով։ 100-ից ավելի բանվոր ունեցող խոշոր ձեռնարկությունները 1890 թվականի մոտերքը կազմում էին բոլոր ձեռնարկությունների 7 տոկոսից պակաս, բայց տալիս էին ամբողջ արդյունաբերական արտադրանքի կեսից ավելին։ Երկաթուղային ցանցն աճեց ավելի քան յոթ անգամ՝ 4 հազարից հասնելով 29 հազար կիլոմետրի։ Արագորեն աճում էին մեծ քաղաքները՝ տնտեսական, քաղաքական ու կուլտուրական կյանքի կենտրոնները։ Առաջացան նոր արդյունաբերական շրջաններ՝ Դոնեցի ավազանը, Բաքվի նավթային շրջանը։ Այս բոլոր փոփոխությունները տեղի ունեցան քառորդ դարի ընթացքում, մարդկանց մեկ սերնդի աչքի առջև։*

*Կապիտալիզմի զարգացումը արմատական փոփոխություններ առաջ բերեց բնակչության դասակարգային կազմի մեջ։ Ճորտատիրական Ռուսաստանում կային երկու հիմնական դասակարգեր՝ կալվածատերերը և գյուղացիները։ Կապիտալիզմի զարգացման հետ մեկտեղ հասարակական կյանքի ասպարեզ եկան բուրժուազիան ու պրոլետարիատը։ Բուրժուազիան, որը որպես դասակարգ կազմավորվել էր դեռ ճորտատիրական կարգի ժամանակ, արագորեն աճում էր, հարստանում, ձեռք էր բերում տնտեսական մեծ ուժ։*

*Խոշոր արդյունաբերական կապիտալիստական արտադրության առաջացման ու զարգացման հետ միասին երևան եկավ և աճեց ժամանակակից արդյունաբերական պրոլետարիատը։ Միայն խոշոր ֆաբրիկաներում ու գործարաններում, հանքարդյունաբերության մեջ, երկաթուղիներում եղած բանվորների թիվը 1890 թվականին կազմում էր 1432 հազար մարդ՝ երկու անգամ ավելի, քան 1865 թվականին։ Արդյունաբերական բանվորների մոտ կեսը (48 տոկոսը) կենտրոնացած էր 500-ից ավելի բանվոր ունեցող խոշոր ձեռնարկություններում։ Ֆաբրիկա-գործարանային բանվորները կազմում էին վարձու աշխատանքի վիթխարի բանակի հիմնական կորիզը։ Լենինի հաշվումներով, XIX դարի վերջերին Ռուսաստանում կար մոտ 10 միլիոն վարձու բանվոր, հաշված խոշոր, մանր ու տնայնագործական արդյունաբերության մեջ, երկաթուղիներում, գյուղատնտեսության, շինարարության, անտառագործության մեջ և այլ ճյուղերում զբաղված բոլոր բանվորներին։*

*Խոշոր մեքենայական ինդուստրիայի և արդյունաբերական պրոլետարիատի երևան գալը դրական, առաջադիմական երևույթ էր։ Բայց Ռուսաստանը կապիտալիստական երկրի էր վերածվում աշխատավորների շահագործումն ուժեղացնելու հաշվին։ Ֆաբրիկաների ու գործարանների աճման, երկաթուղիների կառուցման, բանվորների քանակի ավելացման թվերի հետևում թաքնված էին ժողովրդի վիշտը, նրա արցունքներն ու արյունը։ Մասսաների դրությունն անտանելի էր մանավանդ այն պատճառով, որ կապիտալիստական շահագործումը միանում էր ճորտատիրական ճնշման մնացորդների հետ։*

*Ճորտատիրական իրավունքը վերացրին ճորտատեր-կալվածատերերը՝ ելնելով իրենց արտոնություններն ու իշխանությունը պահպանելու շահերից։ «Ազատագրման» ժամանակ գյուղացիներին ամենաանխիղճ կերպով կողոպտեցին։ Նախկինում գյուղացիների մշակած լավագույն հողի մեկ հինգերորդ մասից ավելին կալվածատերերը կտրեցին իրենց օգտին։ Իրենցից խլված հողը գյուղացիներն անվանեցին «օտրեզկաներ»։ Գյուղացիներին ստիպեցին մնացած հողը հետ գնել եռակի թանկ գնով։ «Ազատագրումից» հետո գրեթե կես*

* Գլուխներ «Սովետական Միության Կոմունիստական պարտիայի պատմություն» նոր գըրքից, որը պատրաստել է հեղինակային կոլեկտիվը հետևյալ կազմով՝ Բ. Ն. Պոնոմարյով (ղեկավար), Ի. Մ. Վոլկով, Մ. Ս. Վոլին, Վ. Ս. Զայցև, Ա. Պ. Կուչկին, Ի. Ի. Մինց, Լ. Ա. Սլեպով, Ա. Ի. Սոբոլև, Ա. Ա. Տիմոֆեևսկի, Վ. Մ. Խվոստով, Ն. Ի. Շատագին։

գար գյուղացիները կալվածատերերին վճարում էին քրտինքով ու արյունով ողողված իրենց հողերի համար։ Միայն 1907 թվականին ռևոլյուցիայի ճնշման տակ ցարական կառավարությունը վերացրեց ետգնման վճարները։

Կալվածատերերը պահպանեցին վիթխարի հողային հարստություններ և իշխանությունը։ Առաջին և ամենախոշոր կալվածատերը ինքը ցարն էր։ Միայն ցարական ընտանիքն ուներ 7 միլիոն դեսյատին հող, այսինքն՝ ավելի, քան ունեին կես միլիոն գյուղացիական ընտանիքները։ Պաշտոնական տվյալներով, 70-ական թվականների վերջերին մասնատիրական հողերի 91,5 միլիոն դեսյատին ընդհանուր քանակից ազնվական-կալվածատերերին պատկանում էր ավելի քան 73 միլիոն դեսյատին։ Խոշոր կալվածատիրական հողատիրությունը հանդիսանում էր կիսաճորտատիրական շահագործման հիմքը։ Գյուղացիները հարկադրված էին վարձակալել կալվածատերերի հողը ստրկական պայմաններով՝ իրենց գործիքներով ու ձիերով մշակել կալվածատիրական հողերը, կալվածատիրոջը տալ իրենց բերքի կեսը։ «Աշխատավճարը», «կիսբար» աշխատանքը, ետգնման վճարները և այլն նշանակում էին, որ գյուղում պահպանվել են ճորտատիրական լուրջ մնացուկներ։

Կապիտալիզմի զարգացումը տեղի էր ունենում ոչ միայն քաղաքում, այլև գյուղում։ Գյուղացիական տնտեսությունը գնալով ավելի շատ ապրանքներ էր արտադրում, գնալով ավելի ուժգնորեն էր ներքաշվում շուկային, զարգանում էր մրցակցությունը, տարածվում էին հողի վարձակալումն ու գնումը, գյուղատնտեսական արտադրությունը ավելի ու ավելի էր կենտրոնանում առավել ունևոր տնտեսատերերի ձեռքում։ Կապիտալիզմի ազդեցության տակ քայքայվում էր գյուղացիությունը՝ զատվում էին գյուղական բուրժուազիան (կուլակները) և գյուղական պրոլետարներն ու կիսապրոլետարները (չքավորությունը)։ XIX դարի վերջերին 10 միլիոն գյուղացիական ծխերից մոտավորապես 6,5 միլիոնը չքավորական, 2 միլիոնը միջակ, 1,5 միլիոնը կուլակային ծխերն էին։

Կալվածատերերն ու կուլակները սարկացնում էին գյուղացիներին, աղքատության ու մահացման մատնելով նրանց։ Վատ բերքն ու սովը հաճախակի երևույթ էին գյուղում։ 1891 թվականին բռնկեց սոսկալի սով, որն ընդգրկեց գրեթե 40 միլիոն գյուղացիների։ Կարիքը գյուղացիներին հարազատ գյուղերից քշում էր վաստակ որոնելու։ 90-ական թվականների վերջերին այդպիսի գյուղացիները վիթխարի թիվ էին կազմում. ամեն տարի գյուղից հեռանում էր 5—6 միլիոն մարդ։ Նրանց զգալի մասը ընդմիշտ հաստատվում էր քաղաքներում, ֆաբրիկաներում ու գործարաններում, դառնում բանվոր։

Դառն էր գյուղացու վիճակը։ Աներևակայելի ծանր պայմաններում էին ապրում նաև բանվորները, որոնք ամբողջովին գտնվում էին կապիտալիստի ու ցարական ադմինիստրացիայի իշխանության տակ։ Աշխատանքային օրը տևում էր 12—13 ժամ, իսկ տեքստիլ ֆաբրիկաներում հասնում էր մինչև 15—16 ժամի։ Չկար աշխատանքի ոչ մի պաշտպանություն։ Վարձման պայմանները չափազանց ծանր էին։ Աշխատավարձը աննշան էր, այն հազիվ էր բավականացնում աղքատիկ սննդի համար։ Բայց այդ չնչին աշխատավարձն էլ ամեն կերպ խուզում էին։ Բանվորին հաշվի մեջ խաբում էին, աշխատավարձը տալիս էին տարբեր ժամկետներում՝ ըստ ձեռնարկատիրոջ հայեցողության։ Բանվորն ստիպված էր ֆաբրիկայի խանութից մթերքներ վերցնել ապառիկ և եռապատիկ թանկ վճարել ամեն մի անպետք բանի համար։ Բանվորներին առանձնապես նեղում էին տուգանքները։ Հաճախ դրանք հասնում էին վաստա-



կի մեկ երրորդին, իսկ երբեմն էլ՝ 40 տոկոսին և դրվում էին ամեն մի առիթով։ Լայնորեն կիրառվում էր կանանց և երեխաների աշխատանքը։ Նրանք աշխատում էին նույնքան, որքան և տղամարդ բանվորները, բայց ստանում էին զգալիորեն ավելի քիչ։

Բանվորների մեծ մասը ապրում էր գործարանային կազարմաներում, երկհարկ կամ եռահարկ տախտակամածներ ունեցող ընդհանուր «ննջարաններում»։ Փոքրիկ խցերի անկյուններում ծվարում էին 3—4 ընտանիք։ Հանքափորները, որպես կանոն, ապրում էին հյուղերում կամ գետնափոր տներում։ Տաժանակիր աշխատանքը և մուրացիկ կյանքը նպաստավոր հող էին ստեղծում մասսայական հիվանդությունների համար, տանում էին դեպի բանվորների արագ հյուծում ու մահ, երեխաների բարձր մահացություն։

Ճորտատիրության մնացորդները առանձնապես իրենց զգալ էին տալիս երկրի հասարակական ու քաղաքական կյանքում։ Իր քաղաքական կարգով Ռուսաստանը բացարձակ միապետություն էր, այսինքն՝ իշխանությունն ամբողջովին և անբաժան կերպով պատկանում էր ցարին, որն իր հայեցողությամբ օրենքներ էր հրատարակում և մինիստրներ ու պաշտոնյաներ նշանակում, առանց վերահսկողության հավաքում և ծախսում էր ժողովրդական փողերը։ Ըստ էության ցարական միապետությունը ճորտատեր-կալվածատերերի դիկտատուրան էր, որոնք ունեին բոլոր քաղաքական իրավունքները, օգտվում էին բոլոր արտոնություններից, գրավում էին բոլոր հիմնական պաշտոնները պետության մեջ, ժողովրդական փողից ստանում էին բազմամիլիոն նպաստներ։ Ցարական կառավարությունը պաշտպանում էր խոշոր ֆաբրիկանտներին ու գործարանատերերին, ֆինանսական ու արդյունաբերական տուզերին։ Ժողովուրդը Ռուսաստանում ոչ մի քաղաքական իրավունք չուներ։ Չէր կարելի ազատ կերպով հավաքվել, արտահայտել սեփական կարծիքը և պահանջներ ներկայացնել, ազատ կերպով միավորվել միությունների ու կազմակերպությունների մեջ, ազատ կերպով թերթեր, ժուռնալներ, գրքեր հրատարակել։ Ցարին, կալվածատերերին, կապիտալիստներին ժողովրդից պաշտպանում էր ժանդարմների, գորոդովոյների, ստրաժնիկների, ուրյադնիկների, իսպրավնիկների, զեմստվային պետերի մի վիթխարի բանակ։

Ցարական կառավարությունը վախենում էր, որ գիտելիքների լույսը ժողովրդին անհնազանդ կդարձնի։ Այդ պատճառով նա ժողովրդին պահում էր խավարի ու տգիտության մեջ։ Ժողովրդական լուսավորության մինիստրությունը իրականում ժողովրդական գիտակցությունը մթագնելու օրգան էր։ Դպրոցի համար բաց էին թողնում գրոշներ. մեկ մարդու վրա տարեկան ծախսվում էր ընդամենը 80 կոպեկ։ «Խոհարարուհիների զավակներին», ինչպես արհամարհաբար անվանում էին բանվոր ու գյուղացի երիտասարդներին, թույլ չէին տալիս միջնակարգ և բարձրագույն դպրոց ընդունվել։ Բնակչության գրեթե չորս հինգերորդը անգրագետ էր։ Ցարիզմը ժողովրդին մատնում էր ոչ միայն նյութական, այլև հոգևոր թշվառության։

Ցարական Ռուսաստանը ժողովուրդների բանտ էր։ Ռուսաստանում ազգային ճնշման մեղավորներն էին շահագործող դասակարգերն ու ցարիզմը՝ իր ամբողջ պետական ապարատով։ Ոչ-ռուս ժողովուրդները, որոնք կազմում էին բնակչության մեծամասնությունը՝ 57 տոկոսը, միանգամայն իրավազուրկ էին, կրում էին անհամար ստորացումներ ու վիրավորանքներ։ Ցարական չինովնիկները դատ ու դատաստան էին անում նրանց նկատմամբ։ Ոչ-ռուս ժողովուրդ-

ների ազգային կուլտուրան ենթարկվում էր դաժան հալածանքների։ Անց էր կացվում շատ ժողովուրդների բռնի «ռուսացում», նրանց արգելում էին թերթեր ու գրքեր հրատարակել, երեխաներին սովորեցնել մայրենի լեզվով։ Շատ ազգություններ, հատկապես արևելքում, ամբողջովին անգրագետ էին։ Ցարական կառավարությունը դիտավորյալ կերպով ազգային թշնամանք էր հրահրում, ոչ-ռուս ժողովուրդներին պաշտոնապես անվանում էր «այլազգիներ», ջանում էր ռուսների մեջ արհամարհանք պատվաստել նրանց նկատմամբ՝ որպես ստորին ռասայի։ Ցարական իշխանությունները մի ժողովրդի գրգռում էին մյուսի դեմ, կազմակերպում էին հրեաների ջարդեր, կոտորած հայերի և ադրբեջանցիների միջև։ Ցարիզմը ոչ-ռուս ժողովուրդների դահիճն էր ու տանջողը։

Ճորտատիրության մնացորդներն արգելակում էին երկրի զարգացումը։ XIX դարի վերջերին գյուղատնտեսության մեջ զբաղված էր բնակչության մոտ հինգ վեցերորդ մասը։ Երկրում գերակշռում էր նվազ արտադրողական, մանր գյուղացիական տնտեսությունը։ Չնայած կապիտալիզմի աճմանը, Ռուսաստանը մնում էր իբրև տնտեսապես հետամնաց, գյուղատնտեսական մի երկիր։

1897 թվականի մարդահամարի տվյալները մոտավոր պատկերացում են տալիս այն ժամանակվա Ռուսաստանի դասակարգերի մասին։ Ռուսաստանում կար ընդամենը 125,6 միլիոն մարդ։ Բնակչության հիմնական մասսան կազմում էին գյուղացիները, նրանց երկու երրորդը չքավորներ էին, գյուղական պրոլետարներ ու կիսապրոլետարներ, ինչպես նրանց անվանում էր Լենինը։ Բնակչության մոտ մեկ հինգերորդը կազմում էին բանվորներն իրենց ընտանիքներով։ Մոտավորապես նույնքան էլ կազմում էին ունևոր խավերը՝ կուլակները, մանր ձեռնարկատերերը, բուրժուական ինտելիգենցիան, չինովնիկությունը և այլն։ Մոտավորապես երկու տոկոս էին կազմում խոշոր բուրժուազիան, կալվածատերերն ու բարձրաստիճան չինովնիկները։

Աշխատավոր մասսաները՝ բանվորները, գյուղական չքավորությունը, միջակ գյուղացիները, արհեստավորները, կազմում էին բնակչության գրեթե չորս հինգերորդը։ Եվ ժողովրդի այդ հսկայական մեծամասնությանը կեղեքում ու ստրկացնում էին մի բուռ կալվածատերեր ու կապիտալիստներ, որոնց հավատարիմ ծառան ու պահապանն էր ցարական կառավարությունը։ Գյուղի և քաղաքի միլիոնավոր ընչազուրկ ու ստրկացված մարդիկ վիթխարի ռևոլյուցիոն ուժ էին ներկայացնում։ Բայց այդ ուժը հարկավոր էր կազմակերպել և քաղաքականապես լուսավորել, նրան պարզորոշ ըմբռնել տալ իր շահերը և ճնշումից ազատագրվելու պայքարի ուղիները, համախմբել բանվոր դասակարգի շուրջը։

Ճորտատիրական իրավունքի վերացումը, չոչնչացնելով գյուղացիների ու կալվածատերերի միջև եղած հակասությունները, դրանց ավելացրեց դասակարգային նոր հակասություններ՝ բանվորների և կապիտալիստների միջև։ Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում սրեց դասակարգային բոլոր հակասությունները երկրում։ Աշխատավոր մասսաները տառապում էին թե՛ կապիտալիստական շահագործումից, և թե՛ ճորտատիրական ճնշման մնացորդներից։ Ժողովրդի և հասարակական ամբողջ զարգացման շահերը պահանջում էին ամենից առաջ ոչնչացնել ճորտատիրության մնացուկները, տապալել ցարական ինքնակալությունը։



XIX դարի վերջերին Ռուսաստանն այլևս այն չէր, ինչ 1861 թվականին։ Լենինն այսպես էր բնութագրում այն ժամանակ տեղի ունեցող պրոցեսները.

«Ճորտատիրական Ռուսաստանին գալիս էր փոխարինելու կապիտալիստական Ռուսաստանը։ Նստակյաց, ընկճված, իր գյուղին կառչած, տերտերներին հավատացող, «մեծավորից» վախեցող ճորտ գյուղացու փոխարեն հասունանում էր գյուղացիների նոր սերունդ, որոնք եղել էին արտագնաց զբաղմունքներում, քաղաքներում, սովորել էին մի որոշ բան թափառական կյանքի ու վարձու աշխատանքի դառը փորձից։ Խոշոր քաղաքներում, ֆաբրիկաներում ու գործարաններում բանվորների թիվը շարունակ ավելանում էր։ Հետզհետե սկսեցին կազմվել բանվորների միավորումներ՝ կապիտալիստների դեմ և կառավարության դեմ միատեղ պայքարելու համար։ Մղելով այդ պայքարը, ռուս բանվոր դասակարգն օգնում էր միլիոնավոր գյուղացիությանը՝ բարձրանալու, շտկվելու, իրենից դեն շպրտելու ճորտ ստրուկների սովորությունները» (Երկեր, հատ. 17, էջ 88—89)։

Այդ պրոցեսները տանում էին դեպի ռևոլյուցիոն շարժման ուժեղացումը Ռուսաստանում։

## 2. ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ԴԵՄՈԿՐԱՏՆԵՐՆ ՈՒ ՆԱՐՈԴՆԻԿՆԵՐԸ։ ԱՌԱՋԻՆ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ։

Ռևոլյուցիոն շարժումը Ռուսաստանում ունի հարուստ հերոսական պատմություն։ Ճորտատիրական ճնշումը, որը ժողովրդին դատապարտում էր տաժանակիր աշխատանքի ու թշվառության, կաշկանդում էր այն ամենը, ինչ կենդանի էր երկրում, դժգոհության ու բողոքի տրամադրություններ էր առաջացնում մասսաների մեջ։ Այդ տրամադրությունները պոռթկում էին բունտերի ու հուզումների ձևով։ Ռևոլյուցիոն միտքը Ռուսաստանում իր արմատներն ուներ ճորտատիրության դեմ գյուղացիական մասսաների մղած պայքարում։ Դասակարգային պայքարի հարուստ հողի վրա դեռևս ճորտատիրության ժամանակաշրջանում, XIX դարի 40—50-ական թվականներին, աճեցին այնպիսի մեծ ռևոլյուցիոն դեմոկրատներ, ինչպես՝ Բելինսկին, Գերցենը, Դոբրոլյուբովը, Չերնիշևսկին։ Նրանց գործունեությունը տոգորված էր խոր ատելությամբ դեպի ճորտատիրության բոլոր արտահայտությունները Ռուսաստանի հասարակական կյանքում և երկրի պրոգրեսիվ զարգացման ջերմ պաշտպանությամբ։ Նրանք անձնվիրաբար պայքարում էին ժողովրդի շահերի համար և աչքի ընկնող դեր խաղացին Ռուսաստանի ժողովուրդների ազատագրական շարժման մեջ։ XIX դարի երկրորդ կեսի ռուս առաջավոր մարդկանց վրա հատկապես ուժեղ ազդեցություն գործեց Ն. Գ. Չերնիշևսկին՝ նախամարքսյան ժամանակաշրջանի ամենաականավոր ռևոլյուցիոն մտածողը, ռուսական ռևոլյուցիոն դեմոկրատների ղեկավարը։

Ռևոլյուցիոն դեմոկրատները հաստատակամորեն ու հետաքրքրությամբ որոնում էին ճիշտ ռևոլյուցիոն տեսություն, որպես ժողովրդին ինքնակալությունից, շահագործումից ազատագրելու գործիք։ Նրանք արդարացի կերպով ժողովրդին համարում էին հասարակական զարգացման գլխավոր շարժիչ ուժը։ Բայց նրանք չէին տեսնում և դեռ չէին էլ կարող տեսնել բանվոր դասակարգի

պատմական դերը, մի դասակարգ, որն ընդունակ էր վերափոխելու հասարա-
կությունը։

Իրենց հայացքներով ռևոլյուցիոն դեմոկրատները ուտոպիստ-սոցիալիստ-
ներ էին։ Եվրոպայում ամենուրեք սոցիալական ճնշման դեմ ուղղված բողոքը
սկզբնական շրջանում առաջ բերեց ուտոպիական սոցիալիստական ուսմունք-
ներ։ Ուտոպիստ-սոցիալիստները դատապարտում էին կապիտալիզմը և երա-
զում էին լավագույն հասարակարգի մասին։ Բայց նրանք չէին կարող խկա-
կան ելք ցույց տալ, որովհետև չէին տեսնում այն հասարակական ուժը, որն
ընդունակ էր դառնալու մարդու կողմից մարդու շահագործումից զերծ նոր
հասարակության ստեղծողը։ Պաշտպանելով երկրի վերափոխումը գյուղացիա-
կան ռևոլյուցիայի միջոցով, ուտոպիստ-սոցիալիստները Ռուսաստանում
երազում էին գյուղացիական համայնքի միջոցով սոցիալիզմին անցնելու մա-
սին։ Ռևոլյուցիայից առաջ Ռուսաստանում գոյություն ունեցող գյուղական
համայնքի համար բնորոշ էր ընդհանուր հողատիրությունը։ Առանձին տնտե-
սատերեր հողն ստանում էին ժամանակավոր օգտագործման համար, ըստ
որում պարբերաբար կատարվում էին հողի հավասարեցուցիչ վերաբաժանում-
ներ։ Ահա այդ գյուղական համայնքն էլ ուտոպիստ-սոցիալիստները սխալ-
մամբ համարում էին սոցիալիզմի սաղմը։

Ճորտատիրական իրավունքի անկումից հետո ռևոլյուցիոն շարժումը Ռու-
սաստանում ուժեղացավ։ 70-ական թվականներին այդ շարժման մեջ գերա-
կշռում էին նարոդնիկները։ «Նարոդնիկներ» անունը կապված է այն բանի
հետ, որ առաջավոր, ռևոլյուցիոնորեն տրամադրված ինտելիգենտները, մանա-
վանդ սովորող երիտասարդությունը, «գնացին դեպի ժողովուրդ», դեպի գյուղ,
ենթադրելով, թե կարելի է գյուղացիներին ոտքի հանել ռևոլյուցիայի՝ ընդդեմ
ցարական ինքնակալության։ Ռևոլյուցիոն նարոդնիկությունը լայն հասարա-
կական շարժում էր՝ տարբեր հոսանքներով ու երանգներով, որոնք ներկա-
յացնում էին՝ Պ. Լ. Լավրովը, Մ. Ա. Բակունինը, Պ. Ն. Տկաչովը։ Բայց Ռու-
սաստանի զարգացման հարցում բոլոր նարոդնիկները ղեկավարվում էին
միևնույն հայացքներով։ Նրանք գյուղացիական դեմոկրատիայի գաղափարա-
խոսներն էին, հավատում էին ռուսական կյանքի առանձնահատուկ կառուց-
վածքին, գտնում էին, որ համայնքը երկրի սոցիալիստական զարգացման
ելակետը կհանդիսանա։ Այստեղից էլ նրանց հավատը Ռուսաստանում գյու-
ղացիական սոցիալիստական ռևոլյուցիայի հնարավորության նկատմամբ։ Եվ
այդ ոգեշնչում էր նրանց, հերոսական և անձնվեր պայքարի էր հանում ընդ-
դեմ ցարական ինքնակալության, կալվածատիրական ճնշման։ Նարոդնիկների
մեջ կային այնպիսի ականավոր ռևոլյուցիոներներ, ինչպես՝ Ժելյաբովը, Միշ-
կինը, Պերովսկայան։ Ցարական դահիճներն անողոքաբար դատաստան էին
տեսնում ռևոլյուցիոն նարոդնիկների հետ. նրանց կախում էին, փտեցնում
բանտերի զնդաններում։ Ռևոլյուցիոն նարոդնիկներից ոմանք Ռուսաստանի
ազատագրական շարժման պատմության մեջ առաջին անգամ աշխատանք
սկսեցին տանել ֆաբրիկա-գործարանային բանվորների շրջանում, թեև նրանք
չէին հասկանում պրոլետարիատի պատմական դերը։ Վ. Ի. Լենինը, որը ցույց
է տվել նարոդնիկության բարդ, հակասական բնույթը, բարձր էր գնահատում
նրա ռևոլյուցիոն, գյուղացիական դեմոկրատիզմը, ռևոլյուցիայի նրա կոչը։

70-ական թվականների նարոդնիկությունը կարևոր դեր խաղաց Ռուսաս-
տանի ռևոլյուցիոն շարժման զարգացման մեջ։ Բայց պայքարի այն ուղին,



որ ընտրել էին նարոդնիկները, և այն տեսությունը, որի վրա նրանք հենվում
էին, խորապես սխալ էին։ Շատ հարցերում նրանց հայացքները մի քայլ ետ
էին ռևոլյուցիոն դեմոկրատների համեմատությամբ։ Նարոդնիկները չունեին
մատերիալիստական հայացքներ, իդեալականացնում էին գյուղացուն, սխալ
էին հասկանում ժողովրդական մասսաների դերը պատմության մեջ։ Համայն-
քի, որպես երկրի սոցիալիստական զարգացման աղբյուրի վերաբերյալ սխալ
հայացքները առանձնապես վնասակար էին դառնում պատմական նոր պայ-
մաններում, երբ Ռուսաստանում սկսեց զարգանալ կապիտալիզմը և երևան
եկավ արդյունաբերական պրոլետարիատը։ Սակայն նարոդնիկները չհասկա-
ցան նոր պատմական պայմանները։ Նրանք պնդում էին, թե կապիտալիզմը
Ռուսաստանում «պատահական երևույթ է», և այդ կապակցությամբ ժխտում
էին բանվոր դասակարգի առաջավոր, ռևոլյուցիոն դերը հասարակության
զարգացման մեջ։

Կյանքը ցույց տվեց գյուղացու կոմունիստական բնազդների վերաբերյալ
նարոդնիկների պատկերացումների կատարյալ սնանկությունը։ Գյուղացիներն
անվստահությամբ էին վերաբերվում նարոդնիկների քարոզին, որը հեռու էր
իրենց շահերից։ Ցարական կառավարությունը հարյուրներով ձերբակալում էր
ռևոլյուցիոներներին։ «Դեպի ժողովուրդ գնալու» անհաջողությունը միանգա-
մից չխորտակեց նարոդնիկական պատրանքները։ 1876 թվականի վերջին
առաջացավ «Զեմլյա ի վոլյա» կազմակերպությունը, որը մշտական «բնակու-
թյուններ» ստեղծեց գյուղում՝ հուսալով շահել գյուղացիության վստահու-
թյունը և նրան ոտքի հանել ռևոլյուցիայի։ Բայց դա էլ հաջողություն չբերեց
նարոդնիկներին։ Պայքարի հետագա ուղիների վերաբերյալ վեճերը շարունակ-
վում էին։ 1879 թվականին «Զեմլյա ի վոլյա»-ն պառակտվեց։ Նարոդնիկ-
ների մի մասը մնաց քաղաքական ազատության համար մղվող պայքարի
ժխտման հին դիրքերում, գտնելով, որ այդպիսի պայքարը ձեռնտու է միայն
բուրժուազիային։ Նրանք քարոզում էին ամբողջ հողի, այդ թվում և կալվա-
ծատիրական հողի վերաբաժանում գյուղացիների միջև և ստեղծեցին «Չյոռնի
պերեդել» կազմակերպությունը։

Նարոդնիկների մեծ մասը միավորվեց «Նարոդնայա վոլյա» կազմակեր-
պության մեջ։ «Նարոդնայա վոլյա»-ն մի քայլ առաջ գնաց, անցնելով ցարա-
կան ինքնակալության դեմ քաղաքական պայքարի։ Բայց նարոդովոլեցները քա-
ղաքական պայքարը հասկանում էին ոչ թե որպես մասսաների պայքար, այլ
որպես դավադրություն՝ ցարական ինքնակալությունը տապալելու և իշխանու-
թյունը ռևոլյուցիոներների մի փոքր կազմակերպության կողմից գրավելու
նպատակով։ Նրանք որպես պայքարի միջոց ընտրեցին անհատական տեռորը,
այսինքն՝ ցարական իշխանության առանձին ներկայացուցիչների և հենց ցա-
րի սպանությունը, հուսալով կառավարությանն ահաբեկելու ու կազմալուծելու
միջոցով գրավել իշխանությունը։ Ընդ որում նարոդովոլեցները ելնում էին ակ-
տիվ «հերոսների» և պասիվ «ամբոխի» վերաբերյալ սխալ տեսությունից։ Այդ
տեսության համաձայն, պատմությունը կերտում են առանձին աչքի ընկնող ան-
հատները, որոնց հետևից հնազանդորեն գնում է մասսան՝ ժողովուրդը, «ամ-
բոխը»։ Նարոդովոլեցների տակտիկան կաշկանդում էր մասսաների ակտիվու-
թյունը, որով վնաս էր հասցնում ռևոլյուցիոն շարժմանը, մի վնաս, որ մաս-
սաների պայքարի զարգացման համեմատ գնալով ավելի զգալի էր դառնում։

Նարոդնիկությունը ռևոլյուցիոն շարժումը մտնում էր պարտության։ Սխալ

տեսությունը նարոդնիկներին մղեց սխալ ճանապարհի վրա: Նրանք չտեսան այն պատմական ուժը, որին վիճակված էր գլխավորել ժողովրդական մասսաների պայքարն ընդդեմ կալվածատերերի ու բուրժուազիայի և այն հասցընել մինչև վերջ: Այդ ուժը բանվոր դասակարգն էր:

Գիշատիչ շահագործումը և քաղաքական կատարյալ իրավազրկությունն առաջ էին բերում բանվորների բողոք: Արդեն 60-ական թվականներին տեղի են ունենում մի շարք հուզումներ ու գործադուլներ: Դրանք է՛լ ավելի շատ էին 70-ական թվականներին: Տասը տարվա ընթացքում՝ 1870—1879 թվականներին, ոչ լրիվ տվյալներով, եղել է բանվորների 326 գործադուլ և հուզում: Առայժմ դրանք հուսահատության հասցված մարդկանց բունտեր էին միայն, մարդիկ, որոնք փորձում էին դուրս գալ անտանելի դրությունից, դեռևս չիմանալով, թե ինչո՛ւ իրենք թշվառության մեջ են և ինչի պետք է ձգտեն:

Բանվորների տարերային պայքարը ներկայացնում էր գիտակցականության դրսևորման սաղմային ձև. բանվորները դադարում էին իրենց ճնշող կարգերի անսասանությանը հավատալուց, չէին ուզում հաշտվել ստրկական հնազանդության հետ, սկսում էին զգալ իրենց ճնշողներին կոլեկտիվ հակահարված տալու անհրաժեշտությունը: Պայքարի պրոցեսում բանվորական մասսայից սկսեցին զատվել ավելի առաջավոր ու գիտակից բանվորները: Նրանք դառնում էին ռևոլյուցիոներներ:

Ռևոլյուցիոն շարժման մեջ այն ժամանակ անբաժան կերպով իշխում էին նարոդնիկները, և բանվոր ռևոլյուցիոներներն ընկնում էին նրանց ազդեցության տակ, հարում էին նրանց: Բայց առաջավոր բանվորները հետաքրքրությամբ սովորում էին: Նրանք բուռն կերպով որոնում էին բանվորների թշվառ դրության պատճառները և նրանց ազատագրման ուղիները: Նրանք արդեն որոշ պատկերացում ունեին I Ինտերնացիոնալի և եվրոպական բանվորական պարտիաների գործունեության մասին: Նրանց սկսել էին հասնել Մարքսի և Էնգելսի ռուսերեն թարգմանված առաջին աշխատությունները: Նրանք Փարիզի Կոմունայի ծավալած վիթխարի պայքարի ժամանակակիցներն էին: Բանվոր ռևոլյուցիոները շատ է խորհել ռուս բանվորների մասսայական պայքարի փորձի մասին: Այդպիսի բանվորին արդեն չէր կարող բավարարել նարոդնիկական ուսմունքը, որը բանվորներին հատկացնում էր օժանդակ դեր ռևոլյուցիայի մեջ: Առաջավոր բանվորները փորձում են շոշափել ու գտնել պայքարի իրենց ուղիները, ստեղծել ինքնուրույն կազմակերպություն:

Առաջին այդպիսի կազմակերպությունը «Բանվորների հարավ-ռուսաստանյան միությունն» էր, որը ձևավորվեց Օդեսայում, 1875 թվականին: Նրա կազմակերպիչն էր նվիրված ռևոլյուցիոներ-ինտելիգենտ Ե. Օ. Զասլավսկին: Միության շարքերում կար մոտ 200 բանվոր: Միությունը կողմնակիցներ ուներ Դոնի Ռոստովում, Խարկովում, Օրյոլում, Տագանրոգում: Միությունը գոյություն ունեցավ մոտ մեկ տարի և ջախջախվեց ցարական ոստիկանության կողմից: «Բանվորների հարավ-ռուսաստանյան միությունը» իրեն նպատակ էր դրել «պրոպագանդել կապիտալի և արտոնյալ դասակարգերի ճնշումից բանվորների ազատագրման գաղափարը», միավորել բանվորներին «հաստատված տնտեսական ու քաղաքական կարգի դեմ ապագա պայքարի» համար: Նրա վրա դեռևս երևում էր նարոդնիկության ազդեցությունը, օրինակ՝ այն որոշման վրա, որի նպատակն էր գյուղերում բնակեցումներ կազմակերպել գյուղացիների մեջ աշխատանք տանելու համար: Բայց Միության պատմական լուրջ ծա-



ռայությունը քաղաքական պայքարի գաղափարների տարածումն էր բանվորական շարժման մեջ և պրոլետարիատի ինքնուրույն կազմակերպության ստեղծումը:

70-ական թվականների կեսերից Պետերբուրգի առաջավոր բանվորները նույնպես սկսեցին ստեղծել իրենց կազմակերպությունը՝ «Ռուս բանվորների հյուսիսային միություն» անունով, որը վերջնականապես ձևավորվեց 1878 թվականին: Նրա կազմակերպիչներն էին ականավոր բանվոր-ռևոլյուցիոներներ՝ Վիկտոր Օբնորսկին և Ստեպան Խալտուրինը: Այդ Միության երևան գալը նշանակում էր նոր խոշոր քայլ բանվորական շարժման զարգացման մեջ: Միության ծրագրում մատնանշվում էր, որ նա «իր խնդիրներով սերտորեն հարում է Արևմուտքի սոցիալ-դեմոկրատական պարտիային»: Միության նպատակն էր՝ «պետության գոյություն ունեցող քաղաքական ու տնտեսական կարգի տապալումը՝ որպես չափազանց անարդարացի կարգի»: Մերձավոր խնդիրն էր՝ քաղաքական ազատության նվաճումը: Միության ծրագրում դեռևս երևում էր նարոդնիկների ազդեցությունը. Միությունը գյուղացիական համայնքի մեջ էր տեսնում դեպի սոցիալիզմ տանող ուղին:

«Հյուսիսային միությունը» իր շարքերում միավորեց մոտ 200 բանվոր: Նա մասնակցեց մի քանի գործադուլների, հրատարակում էր թռուցիկներ, կազմակերպվածություն էր մտցնում պայքարի մեջ: Միությունը հեղինակություն էր վայելում բանվորների մեջ: «Հյուսիսային միությունը» ժանդարմների կողմից ջախջախվեց 1879—1880 թվականներին, բայց նրա գործը չկործանվեց: «Այսպես, ուրեմն, ձեզ է պատկանում վերջին խոսքը, բանվորնե՛ր, ձեզնից է կախված մեծ Միության բախտը և սոցիալական ռևոլյուցիայի հաջողությունը Ռուսաստանում» — Միության ծրագրի այս կրքոտ կոչը հասավ առաջավոր բանվորների գիտակցությանը:

Ռուսական բանվոր դասակարգը պայքարի պրոցեսում սկսեց աստիճանաբար առաջ քաշել լայն քաղաքական խնդիրներ. ձևավորվում էին նրա հիանալի մարտական, ռևոլյուցիոն հատկությունները: Բանվորների մեջ հանդես են գալիս խոշոր ռևոլյուցիոն գործիչներ: 1877 թվականին դատարանում նշանավոր ռուս բանվոր Պյոտր Ալեքսեևի մեծ մարգարեությունը հնչեց Մոսկվայի ջուլհակ ... մասին. «...կբարձրանա միլիոնավոր բանվոր դասակարգի պատմական դերի մասին. «...կբարձրանա միլիոնավոր բանվոր ժողովրդի ջլապինդ բազուկը, և դեսպոտիզմի լուծը, որը պաշտպանվում է զինվորների սվիններով, ջարդուփշուր կլինի...»: Երևան եկան պրոլետարիատի առաջին դասակարգային կազմակերպությունները: Բայց դրանք ինքնուրույն ուղիով բանվորական շարժման սոսկ սկզբնական քայլերն էին: Առաջավոր բանվորները մեծ դժվարությամբ էին ազատվում նարոդնիկական բեռից: Դրա ցայտուն օրինակն է Ս. Խալտուրինը, որը «Հյուսիսային միության» ջախջախման ազդեցության տակ հրաժարվեց մասսաների մեջ սիստեմատիկ աշխատանք կատարելուց և ընտրեց ինքնակալության դեմ պայքարի սխալ ուղին՝ անհատական տեռորը: Նարոդնիկության ընդհանուր հոսանքից պրոլետարական շիթը դեռևս չէր կարողանում զատվել:

Ընդհանուր-դեմոկրատական շարժումից զատվելու համար բանվոր դասակարգը պետք է գաղափարապես ու քաղաքականապես ինքնորոշվեր: Դրա համար բանվորական շարժումը պետք է հստակորեն իրեն հակադրեր նարոդնիկության մանր բուրժուական իդեոլոգիային և կանգներ մարքսիզմի հողի վրա, որը պրոլետարիատի իդեոլոգիան է:

*Մարքսը և Էնգելսը, պրոլետարիատի մեծ ուսուցիչները, XIX դարի կեսերին մեծագույն ռևոլյուցիոն հեղաշրջում կատարեցին գիտության մեջ: Մարքսը և Էնգելսը սոցիալիզմը ուտոպիայից վերածեցին գիտության: Նրանք հետազոտեցին կապիտալիզմը, հայտնագործեցին նրա զարգացման օրենքները և գիտականորեն ապացուցեցին, որ կապիտալիզմը, ինչպես և նրան նախորդած ճորտատիրական կարգը, պատմականորեն անցողիկ է, որ կապիտալիզմն ինքն է նախապատրաստում իր կործանման պայմանները: Կապիտալիզմի զարգացման հետ տեղի է ունենում արտադրության միջոցների համակենտրոնացում՝ մանր ու միջակ ձեռնարկություններն անընդհատ դուրս են մղվում և կլանվում խոշոր ձեռնարկությունների կողմից: Աշխատանքն ու արտադրությունն իրենց բնույթով ավելի ու ավելի հասարակական են դառնում, բայց ընդհանուր աշխատանքի արդյունքը յուրացնում են մի բուռ կապիտալիստներ, որոնց պատկանում են արտադրության միջոցները: Այսպես, կապիտալիզմն ինքն է ստեղծում սոցիալիզմի իրականացման նյութական պայմանը՝ խոշոր արտադրությունը: Արտադրության կապիտալիստական եղանակը սոցիալիստականով փոխարինելու համար արտադրության միջոցները կապիտալիստների դասակարգի մասնավոր սեփականությունից պետք է դառնան ամբողջ հասարակության սեփականությունը:*

*Բայց իշխող շահագործող դասակարգերը կամովին չեն հրաժարվի իրենց սեփականությունից, արտոնություններից ու իշխանությունից: Հարկավոր է հասարակական մի ուժ, որն ընդունակ լինի ոչնչացնել հին, շահագործող հասարակարգը և ստեղծել շահագործումից զերծ հասարակություն: Այդպիսի հասարակական ուժ է* պրոլետարիատը՝ *ժամանակակից բանվորների դասակարգը: Մարքսը և Էնգելսը հիմնավորեցին բանվոր դասակարգի՝ որպես կապիտալիզմի գերեզմանափորի և նոր, կոմունիստական հասարակարգ ստեղծողի համաշխարհային պատմական դերը: Կապիտալիզմն ինքն է ծնում պրոլետարներին՝ մարդկանց, որոնք զրկված են արտադրության միջոցներից և, գոյություն պահպանելու համար ստիպված են վաճառել իրենց աշխատուժը: Պրոլետարիատն աճում և զարգանում է կապիտալի աճմանը զուգընթաց: Աշխատավորների մնացած մասսայի հետ համեմատած նա առանձնահատուկ տեղ է գրավում: Բանվոր դասակարգը չունի մասնավոր սեփականություն, նա ոչնչով կապված չէ շահագործման վրա կառուցված հին հասարակարգի հետ, նա ռևոլյուցիայում ոչինչ չունի կորցնելու, բացի իր շղթաներից: Մեծ քաղաքների խոշոր ֆաբրիկաներում ու գործարաններում կատարվող ընդհանուր աշխատանքը միացնում է բանվորական մասսաներին, կարգապահ է դարձնում և համախմբում նրանց, սովորեցնում է համատեղ գործել: Ամեն քայլափոխին բանվորները բախվում են իրենց գլխավոր թշնամու՝ կապիտալիստների դասակարգի հետ: Պայքարը բանվորների և կապիտալիստների միջև ավելի ու ավելի է սրվում: Որպես կապիտալիստական հասարակության ամենաճնշված դասակարգը, պրոլետարիատը շահագրգռված է ամբողջ հասարակության արմատական վերակառուցմամբ, մասնավոր սեփականության, թշվառության և ճնշման լիակատար ոչնչացմամբ: Նա չի կարող ազատագրել իրեն, առանց ամեն տեսակ շահագործումից ազատագրելու նաև աշխատավորների մնացած ամբողջ մասսային: Ուստի պրոլետարիատը ամենառևոլյուցիոն և ամենաառաջավոր դասակարգն է:*

*Մարքսը և Էնգելսը գիտականորեն ապացուցեցին, որ կապիտալիստական*



*հասարակության զարգացումը և այնտեղ տեղի ունեցող դասակարգային պայքարը անխուսափելիորեն կհասցնեն կապիտալիզմի կործանմանը և պրոլետարիատի հաղթանակին: Այդ հաղթանակը կնվաճվի կապիտալիզմի դեմ մղվող վճռական ու անհաշտ պայքարում: Կապիտալիստական սեփականությունը հասարակական սեփականության վերածելու և կապիտալիստական արտադրական հարաբերությունները սոցիալիստական արտադրական հարաբերություններով փոխարինելու համար բանվոր դասակարգը, գլխավորելով բոլոր ճնշվածներին, պետք է կատարի սոցիալիստական ռևոլյուցիա և հաստատի իր քաղաքական տիրապետությունը՝* պրոլետարիատի դիկտատուրա, *որպեսզի ճնշի շահագործողների դիմադրությունը և ստեղծի նոր, անդասակարգ, կոմունիստական հասարակարգ:*

*Մարքսը և Էնգելսը սովորեցնում էին, որ բանվոր դասակարգի ուժը նրա կազմակերպվածության ու գիտակցականության մեջ է, իր նպատակների ու խնդիրների, պայքարի ուղիների և միջոցների պարզորոշ ըմբռնման մեջ: Հաղթելու համար բանվորական շարժումը պետք է զինվի գիտական սոցիալիզմի տեսությամբ: Այսպիսով, Մարքսը և Էնգելսը ապացուցեցին սոցիալիզմը բանվորական շարժման հետ միաձուլելու անհրաժեշտությունը, որովհետև միայն այդպիսի ձուլման դեպքում բանվորների դասակարգային պայքարը վեր է ածվում կապիտալիստական շահագործումից իր ազատագրման համար պրոլետարիատի մղած գիտակցական պայքարի: Բանվորական շարժման հետ սոցիալիզմի միաձուլումը իրականացնում է բանվոր դասակարգի պարտիան, որը ներկայացնում է ոչ թե բանվորների առանձին խմբերի շահերը՝ ըստ պրոֆեսիայի կամ ազգության, այլ ամբողջ պրոլետարիատի ընդհանուր շահերը: Պարտիան բանվորական շարժմանը պետք է ցույց տա նրա քաղաքական խընդիրներն ու վերջնական նպատակը: Հետևապես, կապիտալիզմը տապալելու և կոմունիզմը կառուցելու համար պրոլետարիատը պետք է ունենա իր սեփական ինքնուրույն պարտիան՝ կոմունիստական պարտիան:*

*Մարքսիզմը ազդեցիկ ուժ էր 70-ական թվականների արևմտաեվրոպական բանվորական շարժման մեջ: Այն որոշ ազդեցություն էր գործում Ռուսաստանի ռևոլյուցիոն շարժման վրա: Իրենք՝ գիտական կոմունիզմի ստեղծողներ Մարքսը և Էնգելսը կապ էին պահպանում շատ ռուսական ռևոլյուցիոներների հետ: Իրենց ամբողջ կյանքի ընթացքում նրանք չթուլացող հետաքրքրությամբ հետևում էին Ռուսաստանին, խորապես համոզված էին, որ գալիք ռուսական ռևոլյուցիան համաշխարհային նշանակություն կունենա, ուսումնասիրեցին ռուսաց լեզուն՝ երկիրն ու ժողովրդին ավելի լավ ճանաչելու համար: Մարքսը և Էնգելսը առաջին հարվածները հասցրին նարոդնիկական ուսմունքին: Էնգելսը Մարքսի անմիջական մասնակցությամբ գրած «Սոցիալական հարաբերությունները Ռուսաստանում» աշխատության մեջ քննադատության ենթարկեց նարոդնիկության հիմնական «սկզբունքները»՝ Ռուսաստանի զարգացման ուրույն ուղիների վերաբերյալ պատկերացումը, կապիտալիզմի զարգացման ժխտումը, գյուղացիական համայնքի իդեալականացումը, գալիք ռուսական ռևոլյուցիայի բուրժուական բնույթը չհասկանալը:*

*Մարքսի և Էնգելսի առանձին աշխատություններին ռուս առաջավոր մարդիկ սկսեցին ծանոթանալ դեռևս 1840—1850 թվականներին: Բայց ռուսական ռևոլյուցիոն շրջաններում մարքսիզմի հիմնադիրների երկերի տարածման սկիզբը վերաբերում է 70-ական թվականներին: Առանձնահատուկ նշանակու-*

թյուն ունեցավ «Կապիտալ»-ի առաջին հատորի 1872 թվականի ռուսերեն լեզվով հրատարակությունը, որն ընդհանրապես Կ. Մարքսի այդ գլխավոր աշխատության՝ աշխարհում առաջին թարգմանությունն էր։

««Կապիտալ»-ի լույս տեսնելուց հետո,—գրում էր Լենինը,—գրեթե խկույն ռուսական սոցիալիստների համար տեսական գլխավոր հարց դարձավ «Ռուսաստանի կապիտալիզմի բախտի» հարցը. այդ հարցի շուրջը կենտրոնանում էին ամենաթեժ վիճաբանությունները, նրանից կախված վճռվում էին ծրագրային ամենակարևոր դրույթները» (Երկեր, հատ. 1, էջ 335):

Այսպես, դեռևս ռևոլյուցիոն շարժման մեջ նարոդնիկության լիակատար տիրապետության շրջանում ռևոլյուցիոն մտքի և բանվորական շարժման ամբողջ ընթացքով հող նախապատրաստվեց Ռուսաստանում մարքսիզմի երևան գալու համար։ Մարքսիզմի տարածման, մանավանդ Ռուսաստանի բանվորական շարժման մեջ նրա հաղթանակի համար հարկավոր էր հաղթահարել նարոդնիկական հայացքները, գաղափարապես ջախջախել այդ հայացքները։

## 3. ՊԼԵԽԱՆՈՎԸ ԵՎ «ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱԶԱՏԱԳՐՈՒԹՅՈՒՆ» ԽՈՒՄԲԸ: ՄԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ ԽՄԲԱԿՆԵՐԸ ՌՈՒՍԱՍՏԱՆՈՒՄ: ԼԵՆԻՆԻ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՍԿԻԶԲԸ

1879—1880 թվականներին Ռուսաստանում ստեղծվեց ռևոլյուցիոն իրադրություն։ Ժողովրդական մասսաների դրությունը 1861 թվականի ռեֆորմից հետո վատացավ։ Դրա հետևանքով ուժեղացավ նրանց դժգոհությունը ամենավայրագ ճնշումից և ամենակատարյալ իրավազրկությունից։ Ամենևին ոչ լրիվ տվյալներով, 1877 թվականին, գյուղացիական հուզումներ տեղի ունեցան 11 նահանգում, 1880 թվականին դրանք ընդգրկեցին Եվրոպական Ռուսաստանի 34 նահանգ։ Աճում էր նաև բանվորական շարժումը։ 70-ական թվականների վերջերին խոշոր գործադուլներ տեղի ունեցան Պետերբուրգում։ Կալվածատերերի իշխող դասակարգի մեջ աճում էր սարսափը ռևոլյուցիայի հանդեպ։ Կառավարող վերնախավն սկսեց պատեպատ ընկնել. մերթ նա ուժեղացնում էր ոստիկանական տեռորը, մերթ կոնստիտուցիա խոստանում։

Սակայն բանվորները և գյուղացիները դեռ չէին հասունացել այն բանի համար, որ համարձակ ու վճռական մասսայական գործողություններով տապալեին ցարական ինքնակալությունը։ Գյուղացիությունը ելնում էր միայն անջատ-անջատ տարերային բունտերի, պրոլետարիատը միայն առաջին քայլերն էր անում իր ռևոլյուցիոն պայքարում։ Բուրժուազիան իրեն երկչոտ էր պահում, նվաստաբար ցարական կառավարությանը խնդրում էր մանր ռեֆորմների մասին, փաստորեն նպաստում էր ինքնակալության ամրապնդմանը։ Չկար մի ռևոլյուցիոն պարտիա, որը կապված լիներ մասսաների հետ, զինված լիներ ռևոլյուցիոն ճիշտ տեսությամբ, կարողանար ճիշտ գնահատել իրադրությունը և առաջադրել պայքարի՝ գիտականորեն հիմնավորված լոզունգներ։ Իսկ նարոդովոլեցներն ընտրեցին անհատական տեռորի խորապես սխալ ուղին։ 1881 թվականի մարտի 1-ին նրանց հաջողվեց սպանել ցար Ալեքսանդր II-ին։ Բայց նրա փոխարեն ցար դարձավ Ալեքսանդր III-ը։ Մի ցարին մյուսով փոխարինելուց ոչինչ չփոխվեց, բացի այն բանից, որ ինքնակալությունն սկսեց էլ ավելի ճնշել մասսաներին։ Ցարական կառավարությունը հարձակման անցավ։



Կտրված լինելով ժողովրդից, նարոդովոլեցները ջախջախվեցին։ Ռևոլյուցիոն մակընթացության ալիքն իջավ։

Պարտության ազդեցության տակ սկսվեց նարոդնիկության գաղափարական խոր ճգնաժամը։ Որոշ նարոդնիկներ ապարդյուն կերպով ջանում էին վերստեղծել նարոդովոլեցների կազմակերպությունը։ Իսկ նրանց մեծ մասը բոլորովին հրաժարվեց ռևոլյուցիոն պայքարից։ Այն ռևոլյուցիոներների առջև, որոնք չէին ուզում հրաժարվել պայքարից, ծառացան հետևյալ հարցերը՝ ինչո՞ւ ցարի սպանության հետևանքով Ռուսաստանում ռևոլյուցիա տեղի չունեցավ, որո՞նք են ռևոլյուցիոն շարժման հետագա հեռանկարները, որտե՞ղ է այն ռեալ ուժը, որը կարող է իրականացնել սոցիալիզմը, որո՞նք պետք է լինեն ռևոլյուցիոն պայքարի ուղիներն ու մեթոդները։ Բնական է, որ ռևոլյուցիոներների շրջանում ուժեղացան նոր ռևոլյուցիոն տեսության որոնումները։ Դեպի այդ էր մղում ամենից առաջ նարոդնիկությունից հիասթափվելը։ Ռևոլյուցիոն մտքի վրա լուրջ ազդեցություն էին գործում բանվորական շարժման զարգացումը Ռուսաստանում և արևմտաեվրոպական պրոլետարիատի հաջողությունները։

Ռևոլյուցիոն նարոդնիկների—«չյոռնոպերեդելցիների» մի փոքրիկ խումբ, որ հարկադրված էր տարագրվել արտասահման, սկսեց եռանդագին ուսումնասիրել մարքսիզմը և ուշադիր կերպով ծանոթանալ արևմտաեվրոպական բանվորական շարժմանը։ Խումբը լրջորեն կշռադատեց Ռուսաստանում տեղի ունեցող բանվորական գործադուլների նշանակությունը, մասնավորապես առաջավոր ռուսական պրոլետարների շրջանում կատարած իր սեփական աշխատանքի փորձը։ 1883 թվականի սեպտեմբերի 25-ին այդ խումբը հանդես եկավ իր կապերը նարոդնիկության հետ վերջնականապես խզելու և ռուսական բանվոր դասակարգի առանձին պարտիա կազմակերպելու վերաբերյալ ծրագրային հայտարարությամբ։ Խումբն իր հիմնական խնդիրները հայտարարեց՝ մարքսիզմի տարածումը, ռևոլյուցիոն միջավայրում իշխող նարոդնիկության քննադատությունը, ռուսական հասարակական կյանքի կարևորագույն հարցերի մշակումը մարքսիզմի և Ռուսաստանի աշխատավորների շահերի տեսակետից։ Այդպես առաջացավ ռուսական առաջին մարքսիստական կազմակերպությունը՝ «Աշխատանքի ազատագրություն» խումբը։ Նրա կազմի մեջ մտնում էին՝ Գ. Վ. Պլեխանովը, Պ. Բ. Աքսելրոդը, Լ. Գ. Դեյչը, Վ. Ի. Զասուլիչը և Վ. Ի. Իգնատովը։ Խմբի հիմնադիրն ու ղեկավարն էր մարքսիզմի տաղանդավոր տեսաբան և պրոպագանդիստ Գ. Վ. Պլեխանովը։

Հենց մարքսիզմի պրոպագանդայով էլ զբաղվեց «Աշխատանքի ազատագրություն» խումբը։ Այդ նպատակով խումբը ռուսերեն թարգմանեց, հրատարակեց և գաղտնի կերպով Ռուսաստանում տարածեց Մարքսի և Էնգելսի մի շարք երկերը՝ «Կոմունիստական պարտիայի մանիֆեստը», «Վարձու աշխատանք և կապիտալ»-ը, «Փիլիսոփայության աղքատությունը», «Լյուդվիգ Ֆոյերբախ»-ը, «Գիտական սոցիալիզմի զարգացումը», «Ծառ առևտրի ազատության մասին», «Ֆրիդրիխ Էնգելսը Ռուսաստանի մասին»։ Իրենց աշխատությունների ռուսերեն մի քանի հրատարակությունների առթիվ Մարքսը և Էնգելսը հատուկ առաջաբաններ գրեցին։ Պլեխանովը գրեց մի շարք աշխատություններ, որոնց մեջ փայլեցորեն պրոպագանդում ու պաշտպանում էր մարքսիզմը։ Պլեխանովի երկերում ռուսական ռևոլյուցիոներները գտան իրենց հուզող շատ հարցերի պատասխանը։ Այն ժամանակվա նրա աշխատությունները մեծ դեր խաղացին ռուսական մարքսիստների առաջին սերնդի դաստիարակման գործում։

*Ռուսական մարքսիստների առաջին երկը Պլեխանովի «Սոցիալիզմը և քա-
ղաքական պայքարը» բրոշյուրն էր, որը լույս տեսավ 1883 թվականի աշնանը։
Ռուսական ռևոլյուցիոն շարժման վերլուծման հիման վրա Պլեխանովը ցույց
տվեց Մարքսի այն դրույթի խոր կենսունակությունը, թե ամեն մի դասակար-
գային պայքար քաղաքական պայքար է։ Սոցիալիզմն ու քաղաքական պայ-
քարը ո՛չ միայն իրար չեն հակասում, այլև անբաժանելի են, պետք է սերտո-
րեն կապված, միաձուլված լինեն։ Դեպի սոցիալիզմ տանող ուղին անցնում է
բանվոր դասակարգի քաղաքական պայքարի միջով, պրոլետարիատի կողմից
քաղաքական իշխանությունը նվաճելու միջով։ Ռևոլյուցիոն շարժումը Ռու-
սաստանում կհասցնի սոցիալիզմի միաձուլմանը բանվորական շարժման հետ,
և այն ժամանակ այդ շարժումն անպարտելի կդառնա։*

*Նարոդնիկության սխալականությունը ապացուցելու համար անհրաժեշտ
էր հետազոտել Ռուսաստանում տեղի ունեցող տնտեսական պրոցեսները,
որոնք այն ժամանակ դեռ վատ էին ուսումնասիրված։ Պլեխանովի «Մեր տա-
րաձայնությունները» գիրքը, որը հրատարակվեց 1884 թվականին, Ռուսաստա-
նի էկոնոմիկայի մարքսիստական վերլուծման առաջին փորձն էր։*

*Պլեխանովը հերքեց նարոդնիկների հայացքները, որոնք պնդում էին, թե
կապիտալիզմը Ռուսաստանում «պատահական» երևույթ է, որը զարգացման
պայմաններ չունի, գտնում էին, որ կապիտալիզմը Ռուսաստանում անկում է,
հետադիմություն։ Ներքին շուկայի զարգացման, բանվորների թվի, տնայնա-
գործների, ֆաբրիկաների վերաբերյալ փաստերը վկայում էին, որ Ռուսաս-
տանն արդեն թևակոխել է կապիտալիզմի ուղին։ Սխալ է այս առթիվ տրտըն-
ջալ և հայտարարել «պրոլետարիատության խոցի» մասին, ինչպես վարվում
էին նարոդնիկները։ Ռևոլյուցիոներների խնդիրն է՝ կապիտալիզմի զարգա-
ցումն օգտագործել հօգուտ ռևոլյուցիայի և աշխատավորների։ Իսկ դրա հա-
մար ռևոլյուցիոներները պետք է հասկանան, որ կապիտալիզմը ծնում է հզոր
ռևոլյուցիոն ուժ՝ պրոլետարիատին, և հենվեն այդ ուժի վրա՝ ինքնակալու-
թյան ու կապիտալիզմի դեմ մղվող պայքարում։*

*Ամբողջովին սնանկ էին նարոդնիկների այն հայացքները, թե գյուղա-
ցիական համայնքը պատվար է կապիտալիզմի դեմ և կամուրջ սոցիալիզմին
անցնելու համար։ Գյուղացիական համայնքն անցյալում գոյություն է ունե-
ցել շատ երկրներում և քայքայվել է կապիտալիզմի հարվածների տակ։ Հա-
մայնքի քայքայման բացահայտ նշաններ կային նաև Ռուսաստանում։ Հա-
մայնքի ներսում զատվում էին չքավորությունն ու կուլակները։ Իրենց հողը
մշակելու միջոցներ չունենալով, չքավորներն այն տալիս էին կուլակներին,
իսկ իրենք նրանց մոտ վարձվում էին որպես բատրակներ կամ գնում այլ
վայրեր՝ վաստակ որոնելու։ Չքավորությունն արդեն կախման մեջ էր գտնվում
կուլակից և վաշխառուից. համայնքը նրա համար բեռ էր դառնում։ Իսկ ցա-
րական կառավարության համար համայնքը ձեռնտու էր՝ որպես համապարտ
երաշխավորության հիման վրա հարկեր կորզելու միջոց։ Այդպիսի համայնքը
սոցիալիզմի սաղմ կամ բազա չէր և չէր էլ կարող լինել։*

*Պլեխանովը ցույց տվեց, թե ինչպես խորապես սխալվում են նարոդնիկ-
ները, որոնք ժխտում են բանվոր դասակարգի առաջավոր, ռևոլյուցիոն դերը
հասարակության վերափոխման գործում։ Ոչ թե գյուղացիներին, այլ բանվոր-
ներին է պատկանում առաջավոր, ռևոլյուցիոն դերը։ Գյուղացիները վարում
են մանր տնտեսություն և փոշիացած են։ Նրանք ավելի ընդունակ են գի-*



*տակցական քաղաքական նախաձեռնության և ավելի դժվարությամբ են ըն-
կալում սոցիալիստական ուսմունքը, ավելի դժվար են ենթարկվում կազմա-
կերպման։ Այլ է խոշոր արտադրության հետ կապված պրոլետարիատը։ Նա
շարունակ աճում է քանակապես, հեշտությամբ է ընկալում սոցիալիզմի գա-
ղափարները և ընդունակ է կազմակերպման։ Ռևոլյուցիոներների խնդիրն է՝
զարգացնել բանվորների գիտակցությունը, ինքնագործունեությունն ու կազ-
մակերպումը։ Պետք է բոլոր ջանքերը գործադրել բանվորական սոցիալիստա-
կան պարտիա ստեղծելու համար։ Այժմ ռևոլյուցիոներների գլխավոր գործն է՝
սոցիալիստական պրոպագանդան բանվորների շրջանում։*

*Պլեխանովը քննադատության ենթարկեց հասարակության մասին նարոդ-
նիկների սխալ հայացքները։ Իր աշխատություններում նա հարստացրեց
մարքսիստական մատերիալիզմը։ Այդ տեսակետից առանձնապես կարևոր
նշանակություն ունեցավ նրա «Պատմության նկատմամբ մոնիստական հա-
յացքի զարգացման հարցի շուրջը» գիրքը, որը հրատարակվեց 1895 թվակա-
նին։ Նարոդնիկները ժխտում էին հասարակության զարգացման օբյեկտիվ
օրենքների գոյությունը և գտնում էին, թե պատմությունը կերտում են առան-
ձին աչքի ընկնող անհատները, հերոսները, թե աշխարհը կառավարում են
գաղափարները։ Նրանք վճռական դեր էին հատկացնում ինտելիգենցիային և
հայտարարում, թե նրա կամքից է կախված պատմության անիվն այս կամ
այն կողմ շրջելը։ Բայց հասարակության զարգացումը որոշվում է ոչ թե աչքի
ընկնող անհատների ցանկություններով ու գաղափարներով, այլ հասարակա-
կան կյանքի նյութական պայմանների զարգացմամբ, հասարակական արտա-
դրության եղանակների մեջ կատարված փոփոխություններով։ Ժողովուրդը—
ահա ով է պատմության իսկական կերտողը։ Գաղափարները միայն այն ժա-
մանակ են դառնում նյութական ուժ, երբ տիրապետում են մասսաներին։ Աչքի
ընկնող անհատները լուրջ դեր են խաղում միայն այնչափով, որչափով նրանք
ճիշտ են արտահայտում հասարակության զարգացման հասունացած պահանջ-
ները։ Ամենաաչքի ընկնող անհատները դատապարտված են պարտության,
եթե չեն հասկանում պատմական պայմանները, եթե գործում են հասարա-
կության պահանջներին հակառակ։ Հասարակությունը վերափոխելու նպատա-
կով պատմական զարգացման օրենքների ճիշտ իմացությունը տալիս է միայն
մարքսիզմը։ Պլեխանովի «Պատմության նկատմամբ մոնիստական հայացքի
զարգացման հարցի շուրջը» գիրքը մեծ նշանակություն ունեցավ գիտական,
մատերիալիստական աշխարհայացքի պրոպագանդայի գործում։ Այդ գրքով,
նշել է Լենինը, «դաստիարակվել է ռուս մարքսիստների մի ամբողջ սերունդ»*
(Երկեր, հատ. 16, էջ 350)։

*Ռուսաստանի մարքսիստական բանվորական շարժման զարգացման գոր-
ծում լուրջ դեր խաղաց «Աշխատանքի ազատագրություն» խմբի ծրագիրը։
Ծրագիրը իր ժամանակի համար հիմնականում ճիշտ է որոշել ռուսական
մարքսիստների զարգացման ուղին և խնդիրները։ Այնտեղ ընդգծվում էր, որ
միայն բանվոր դասակարգն է հանդիսանում սոցիալիզմի համար ինքնուրույն
մարտնչող։ Պրոլետարիատի վերջնական նպատակն է՝ կապիտալիզմի փոխա-
րինումը նոր հասարակարգով՝ կոմունիզմով։ Այդ նպատակին հասնելու նախ-
նական պայմանը բանվոր դասակարգի կողմից քաղաքական իշխանության
նվաճումն է։ Ծրագրում ազդարարվեց ռևոլյուցիոն բանվորական պարտիայի*

*ստեղծման անհրաժեշտությունը, մի պարտիա, որի առաջին քաղաքական խնդիրը ինքնակալության տապալումն է:*

*«Աշխատանքի ազատագրություն» խումբը ջախջախեց նարոդնիկական այն պատրանքը, թե այն ժամանակ գյուղացիության ուժերով հնարավոր էր Ռուսաստանի անցումը անմիջականորեն սոցիալիզմին: Այդպիսի պատկերացումը սխալ էր թե՛ տեսականորեն, թե՛ պատմականորեն: Ռևոլյուցիոն պայքարի ամենակենսական խնդիրը ճորտատիրության մնացորդների վերացումն էր, ինքնակալության տապալումը. հետևապես, երկիրն անմիջականորեն կանգնած էր բուրժուական, և ոչ թե սոցիալիստական ռևոլյուցիայի առջև: Այս ցուցումն է ռուսական առաջին մարքսիստական խմբի անվիճելի ծառայությունը:*

*Բայց խումբը պարզորոշ չէր պատկերացնում դասակարգերի տեղաբաշխումը առաջիկա բուրժուական ռևոլյուցիայի մեջ և չկարողացավ տալ ռևոլյուցիայի մեջ գյուղացիության տեղի ու դերի ճիշտ գնահատականը, անհետևողական ու հակասական դիրք գրավեց այդ հարցում: Իր մի քանի երկերում Պլեխանովը սխալ կերպով հայտարարում էր, թե պրոլետարիատն իր քաղաքականության մեջ պետք է կողմնորոշվի դեպի բուրժուազիան, իսկ գյուղացիության ռևոլյուցիոն դերն անտեսում էր: Արտահայտվում էր նաև այն միտքը, թե առայժմ լիբերալ բուրժուազիային չպետք է վախեցնել սոցիալիզմի «կարմիր ուրվականով» և թե այդ պատճառով հարկավոր է այնպիսի ծրագիր, որի տակ ստորագրեին նաև լիբերալները: Ապագա բանվորական պարտիան Ռուսաստանում պատկերացվում էր այն սոցիալ-դեմոկրատական պարտիաների նմանությամբ, որ այն ժամանակ կային Արևմտյան Եվրոպայում: Այս բոլոր սխալ հայացքները հետագայում այն դերը խաղացին, որ խմբի գործիչները հեռացան մարքսիզմից և անցան օպորտունիզմի լագերը:*

*«Աշխատանքի ազատագրություն» խումբը աչքի ընկնող դեր խաղաց Ռուսաստանի պատմության մեջ: Պլեխանովի տեսական աշխատությունները լըցրին հարստացրին ռուսական կուլտուրան: Մարքսիզմը դարձավ ռուսական* հոսանքը: *Ռուսաստանի ռևոլյուցիոն հասարակական և ռևոլյուցիոն մտքի ժամանակաշրջման մեջ նարոդնիկության անբաժան տիրապետության ժամանակաշրջանը վերջացավ: Մարքսիստական քննադատության գիպուկ հարվածների տակ խորտակվում էին այն ժամանակվա ռևոլյուցիոն իդեոլոգիայի նարոդնիկական տրադիցիոն հիմքերը:*

*Սակայն նարոդնիկության գաղափարական ջախջախումը դեռ ամենևին էլ ավարտված չէր: Նա դեռ մեծ ազդեցություն էր վայելում ռևոլյուցիոն ինտելիգենցիայի ու առաջավոր բանվորների շրջանում և գլխավոր գաղափարական արգելքն էր մարքսիզմի ճանապարհին: Ռուսական առաջին մարքսիստները գործում էին ծանր իրադրության մեջ: Նարոդնիկության ազդեցությունը դեռ ուժեղ էր: Մարքսիզմն իր համար ճանապարհ էր հարթում մարտերով, ավելի ու ավելի խոր թափանցելով նարոդնիկական կազմակերպությունների մեջ: Դրա վկայություններից մեկն է Ալեքսանդր Իլյիչ Ուլյանովի (Լենինի ավագ եղբոր) խմբի գործունեությունը: Խմբի ծրագրում երևում է մարքսիզմի ազդեցությունը. սոցիալիզմը դիտվում է որպես կապիտալիզմի անխուսափելի արդյունք, լուրջ նշանակություն է տրվում բանվորներին՝ որպես սոցիալիստական պարտիայի կորիզի: Բայց քաղաքական պայքարն ըմբռնվում է դեռևս նարոդովոլական-տեռորիստական ոգով: Ինքը՝ խումբն իրեն անվանում էր «Նարոդնայա վոլյա» պարտիայի տեռորիստական ֆրակցիա»: 1887 թվականի մարտի 1-ին ցարի դեմ խմբի կազմակերպած մահափորձը անհաջողություն կրեց, խմբի ղեկավարները, այդ թվում նաև Ա. Ի. Ուլյանովը, մահապատժի ենթարկվեցին:*



*Միայն նարոդնիկության դեմ մղվող պայքարում մարքսիզմը կարող էր աճել և ամրապնդվել Ռուսաստանում:*

*«Աշխատանքի ազատագրություն» խմբի գործունեությունը ճանապարհ հարթեց Ռուսաստանում մարքսիստական բանվորական պարտիա ստեղծելու համար: Բայց խումբը գործնականորեն կապված չէր մասսայական բանվորական շարժման հետ: Ռուսաստանի բանվորական շարժման և պրոլետարական պարտիայի պատմության մեջ այդ առաջին մարքսիստական կազմակերպության բռնած տեղը ճշտիվ որոշել է Լենինը.*

> *««Աշխատանքի ազատագրություն» խումբը սոսկ տեսականորեն հիմնեց սոցիալ-դեմոկրատիան և առաջին քայլն արեց դիմավորելու բանվորական շարժումը»* (Երկեր, հատ. 20, էջ 342):

*Նարոդնիկության տեսության ու պրակտիկայի քննադատական վերանայումը, որը հասցրեց արտասահմանում «Աշխատանքի ազատագրություն» խմբի առաջացմանը, տեղի էր ունենում նաև Ռուսաստանում: Ռևոլյուցիոնոըեն տրամադրված երիտասարդության գաղտնի ժողովներում տաք վեճեր էին տեղի ունենում, շարունակվում էին նոր ուղիների համառ որոնումները: Ռևոլյուցիոն շրջանների վրա մեծ ազդեցություն էր գործում «Աշխատանքի ազատագրություն» խումբը, որն իր գործունեությամբ լըջորեն խախտել էր նարոդնիկության ազդեցությունը: Ռևոլյուցիոն միտքը զարգանում էր բանվորական շարժման հողի վրա, որը շարունակում էր աճել, չնայած Ռուսաստանում տիրող դաժան քաղաքական ռեակցիային: 80-ական թվականներին տեղի ունեցան 446 գործադուլ և հուզում, 90-ական թվականների առաջին կեսին՝ 232 գործադուլ 157 հազար բանվորի մասնակցությամբ:*

*Իր կազմակերպվածությամբ առանձնապես աչքի ընկավ Մորոզովի՝ Օրեխովո-Զուևոյում գտնվող ֆաբրիկայում 1885 թվականի հունվարին տեղի ունեցած գործադուլը: Գործադուլը գլխավորում էին տաղանդավոր ղեկավարներ Պյոտր Մոիսեենկոն և Վասիլի Վոլկովը: Մոիսեենկոն առաջներում «Հյուսիսային միության» անդամ էր, ճաշակել էր բանտն ու աքսորը: Առավել ակտիվ բանվորների գաղտնի խորհրդակցությունում հաստատվեցին գործարանատիրոջը ներկայացվելիք պահանջները՝ նախկին գնահատումները վերականգնելու և տուգանքները կրճատելու մասին: Բանվորների տոկունությունն ու անվեհերությունը ապշեցրին հասարակական լայն շրջաններին, վախեցրին ցարական կառավարությանը: Գործադուլը ճնշեցին զինված ուժով: Մոտ 600 բանվորի արտաքսեցին, 33-ին նստեցրին մեղադրյալների աթոռին: Բայց դատարանում բանվորների նկատմամբ գործադրվող ծաղր ու ծանակի այնպիսի ցնցող պատկեր բացվեց, որ նույնիսկ ցարական դատարանի երդվյալները մեղադրանքի բոլոր 101 կետերին պատասխանեցին՝ «Ո՛չ, մեղավոր չէ»: «Մոսկովսկիե վեդոմոստի» ռեակցիոն թերթը չարությամբ գրում էր «Ռուսիայում հայտնված բանվորական հարցի պատվին ողջույնի հարյուր մեկ կրակոցի» մասին: Չնայած գործադուլի պարագլուխներ Մոիսեենկոն և Վոլկովը դատարանով արդարացվեցին, բայց ժանդարմները նրանց բաց չթողեցին իրենց

ճանկերից: Նրանց աքսորեցին: Վոլկովը շուտով մեռավ: Մոիսեենկոն հետագայում դարձավ բոլշևիկ:

Մորոզովյան գործադուլը վկայում էր բանվորների դասակարգային համերաշխության և գիտակցականության արթնացման մասին: Բանվորներն զգացին ղեկավարության և կազմակերպության նշանակությունը: Երբ Վոլկովին ու Մոիսեենկոյին դատարանի դահլիճը մտցրին, այնտեղ գտնվող բոլոր բանվորները ոտքի կանգնեցին և խոր գլուխ տվեցին նրանց:

Ցարական կառավարությունն ստիպված եղավ տուգանքների մասին շուտով օրենք հրատարակել, որը փոքր-ինչ սահմանափակեց կապիտալիստների կամայականությունը:

Մորոզովյան գործադուլը խոշոր դեր խաղաց Ռուսաստանի բանվորական շարժման մեջ: Լենինն այն բնութագրել է որպես մասսայական գործադուլ՝ հատ ու կենտ սոցիալիստների մասնակցությամբ: Մորոզովյան գործադուլը պերճախոս կերպով ցույց էր տալիս, թե ինչ ահեղ ուժ կարող է դառնալ ամուր կազմակերպության կողմից ղեկավարվող բանվոր դասակարգը:

Պրոլետարիատի պայքարի զարգացումն իր ներգործությունն ունեցավ դեպի մարքսիզմը ռևոլյուցիոն մտքի առաջընթացի վրա: «Աշխատանքի ազատագրություն» արտասահմանյան խմբի հետ մեկտեղ մարքսիստներ հանդես եկան նաև Ռուսաստանի ներսում, ամենից առաջ Պետերբուրգում: Այստեղ 1883/84 թվականի ձմռանն առաջացավ մարքսիստական մի կազմակերպություն, որն ընդունեց «Ռուս սոցիալ-դեմոկրատների պարտիա» անունը և պատմության մեջ մտավ որպես Բլագոևի խումբ: Նրա կազմակերպիչն էր Պետերբուրգի համալսարանի ուսանող, բուլղար Դ. Բլագոևը՝ հետագայում Բուլղարիայի Սոցիալ-դեմոկրատական, իսկ ապա նաև Կոմունիստական պարտիայի հիմնադիրը:

Բլագոևի խմբի և «Աշխատանքի ազատագրություն» խմբի միջև շուտով կապ հաստատվեց: Բլագոևի խումբը մարքսիզմի պրոպագանդա ծավալեց Պետերբուրգի բանվորների և ուսանողների շրջանում: Նա կազմակերպեց մոտ 15 բանվորական խմբակ: 1885 թվականին խումբը գաղտնի կերպով հրատարակեց «Ռաբոչի» թերթի երկու համար: Դա առաջին սոցիալ-դեմոկրատական բանվորական թերթն էր Ռուսաստանում:

Ցարական ոստիկանությունը գտավ խմբի հետքը և 1887 թվականի սկզբին ջախջախեց այն: Բայց Բլագոևի խմբի եռամյա գործունեությունը անհետ չանցավ: Նրա ցանած սերմերը տվեցին իրենց ծիլերը: Խումբը բանվորների շրջանում մարքսիզմի սիստեմատիկ պրոպագանդայի սկիզբը դրեց երկրի քաղաքական կենտրոնում՝ Պետերբուրգում:

1885 թվականի աշնանը Պետերբուրգում առաջանում է դարձյալ մի մարքսիստական կազմակերպություն, որն ավելի ուշ ընդունում է «Սանկտ-Պետերբուրգի գործարանային բանվորների ընկերություն» անունը: Նրա կազմակերպիչն էր Պ. Վ. Տոչիսկին: Բլագոևի և Տոչիսկու խմբերը դեռևս գործում էին անջատ-անջատ, նրանք միմյանց հետ կապված չէին և նույնիսկ իրար չգիտեին: «Ընկերության» ծառայությունը առաջավոր բանվորների հետ ամուր կազմակերպական կապեր հաստատելն է: Նրա խմբակներում են դաստիարակվել այնպիսի հիանալի բանվորներ, ինչպես՝ Ն. Ա. Աֆանասևը (Կլիմանովը) և Վ. Ա. Շելգունովը: Տոչիսկին, Շելգունովը և Կլիմանովը հետագայում դարձան բոլշևիկյան պարտիայի անդամներ:



1888 թվականին ոստիկանությունը ջախջախեց «ընկերությունը»: Ջերբակալությունից խուսափած բանվորներն ապահովեցին հաջորդական կապը նոր կազմակերպության հետ, որը ստեղծվեց 1888—1889 թվականներին: Իր կազմակերպչի անունով նա հայտնի է որպես Մ. Ի. Բրուսնևի խումբ: Աստիճանաբար Բրուսնևի խումբը ձևավորվեց և դարձավ կուռ կազմակերպություն: Պետերբուրգի գրեթե բոլոր շրջաններում կային այդ խմբին պատկանող խըմբակներ: Ընդամենը կար 20 խմբակ՝ յուրաքանչյուրում 6—7 բանվոր: Ստեղծվեց առաջին մարքսիստական խմբակը բանվորուհիների շրջանում:

Բրուսնևականները ձգտում էին մերձենալ բանվորների հետ: Մի քանի գործադուլների կապակցությամբ նրանք կոչեր հրատարակեցին: 1891 թվականին առաջավոր բանվորները մասնակցեցին դեմոկրատ գրող Շելգունովի թաղմանը: Այն պսակի վրա, որ նրանք տանում էին, գրված էր. «Ն. Վ. Շելգունովին, ազատության ու եղբայրության ուղին ցույց տվողին, Պետերբուրգի բանվորներից»: Նույն թվականին բրուսնևականները Ռուսաստանում առաջին անգամ կազմակերպեցին Մայիսի 1-ի տոնակատարությունը: Քաղաքից դուրս տեղի ունեցած գաղտնի ժողովին հավաքվել էին 70—80 բանվորներ: Բանվորներն իրենք հանդես եկան ճառերով, որոնք հետո գաղտնի տպագրվեցին և լայնորեն տարածվեցին: Դրանք առաջավոր բանվորների առաջին սոցիալ-դեմոկրատական ցույցերն էին, երբ դեռ մասսայական շարժում չկար:

1892 թվականին Բրուսնևի խումբը ջախջախվեց ժանդարմների կողմից: Անվնաս մնաց միայն մի փոքրիկ կորիզ, որը պահպանեց կապերը որոշ բանվորական խմբակների հետ:

80-ական թվականների վերջերին մարքսիզմը տարածվում է Ռուսաստանի մի շարք շրջաններում: Մարքսիստական խմբակներ են երևան գալիս Մոսկվայում: Մարքսիզմի պրոպագանդայի շրջաններից մեկն է դառնում Պովոլժիեն՝ Կազանը, Սամարան (Կույբիշև), Նիժնի Նովգորոդը (Գորկի): Այստեղ ռևոլյուցիոներների՝ մարքսիզմին անցնելու վրա մեծ ազդեցություն գործեց տաղանդավոր ու նվիրված ռևոլյուցիոներ Ն. Ե. Ֆեդոսեևը, որը հետագայում զոհ գնաց սիբիրյան աքսորում: Մարքսիստական խմբակներ են առաջանում Ուկրաինայում՝ Կիևում, Խարկովում, Օդեսայում, Եկատերինոսլավում (Դնեպրոպետրովսկ):

Ռուսական առաջին մարքսիստների թվին էր պատկանում Վլադիմիր Իլյիչ Լենինը (Ուլյանովը), բոլշևիկների պարտիայի, կոմունիստների պարտիայի հիմնադիրն ու առաջնորդը: Տակավին տասնյոթ տարեկան պատանի, 1887 թվականին նա մասնակցեց Կազանի ուսանողների ռևոլյուցիոն ելույթին, ձերբակալվեց և արտաքսվեց: Այսպես Լենինը ոտք դրեց ռևոլյուցիոն պայքարի ուղին: Ամեն տեսակ կամայականության ու ճնշման նկատմամբ ունեցած կրքոտ ատելությունը և հասարակ աշխատավորի նկատմամբ տածած ջերմ սերը Լենինին դարձրին ռևոլյուցիոներ: Նա իր ամբողջ կյանքը նվիրաբերեց աշխատավորներին ճնշումից ու շահագործումից ազատագրելու պայքարին, մարդկության երջանիկ ապագայի համար մղվող պայքարին: Լենինը յուրացրեց իր նախորդ ռուսական ռևոլյուցիոներների մեծագույն հերոսության և անձնազոհության տրադիցիաները, բայց գնաց այլ, նրանց սխալներից զերծ ուղիով, ռևոլյուցիոն մարքսիզմի ուղիով:

Ուսումնասիրելով Մարքսի և Էնգելսի երկերը, Լենինը դարձավ համոզված մարքսիստ: 1888 թվականի վերջին նա մասնակցեց Կազանի մարքսիս-

տական խմբակներից մեկին: 1889 թվականին նա տեղափոխվեց Սամարա և
այնտեղ կազմակերպեց մարքսիստական խմբակ, կապեր հաստատեց Նիժնի
Նովգորոդի, Վլադիմիրի, Պետերբուրգի մարքսիստների հետ: Արդեն այն ժա-
մանակ Լենինն աչքի ընկնող դեր էր խաղում մարքսիզմը Ռուսաստանում
տարածելու գործում: Մարքսիզմի մեջ Լենինը տեսնում էր աշխարհի ռևոլյու-
ցիոն վերափոխման, աշխատավորներին տնտեսական, քաղաքական ու հոգևոր
ստրկությունից ազատագրելու հզոր զենք:

Լենինի համար խորթ էր մարքսիստական տեսության գրքային, վերա-
ցական ըմբռնումը: Նրա համար մարքսիզմը միշտ էլ ոչ թե մեռած դոգմա
էր, այլ ռևոլյուցիոն գործողության կենդանի ուղեցույց: Արդեն իր ռևոլյու-
ցիոն գործունեության սկզբում Լենինը, տիրապետելով մարքսիզմին, ձեռնա-
մուխ եղավ ռուսական մարքսիստների կարևորագույն տեսական խնդրի լուծ-
մանը՝ այն ժամանակվա Ռուսաստանի հասարակական-տնտեսական կարգի,
նրա տնտեսական զարգացման և դասակարգային փոխհարաբերությունների,
բազմակողմանի հետազոտմանը: Առանց այդպիսի աշխատանքի չէր կարելի
մինչև վերջը ջախջախել նարոդնիկությունը և գիտականորեն մշակել բան-
վորական պարտիայի ծրագիրն ու տակտիկան Ռուսաստանում:

1893 թվականի գարնանը Լենինը «Տնտեսական նոր շարժումներ գյու-
ղացիական կյանքում» հոդվածում—նրա պահպանված գրական աշխատու-
թյուններից առաջինում—շարադրեց մի շարք կարևոր մտքեր: Նա ապացու-
ցում էր, որ գյուղացիության ընդերքում հասունացել են տնտեսական խոր
պառակտում և դասակարգային հակասություններ, որ գյուղացիությունը
տրոհվում է երեք հիմնական խմբի՝ չքավոր, միջակ և ունևոր խմբերի, որ
կապիտալիզմը Ռուսաստանում զարգանում է անզուսպ թափով: Այդ հոդ-
վածը ցույց է տալիս, թե երիտասարդ Լենինը մարքսիզմի մեթոդը ինչպիսի
վարպետությամբ էր ինքնուրույն կերպով կիրառում ռուսական կյանքի ամե-
նաբարդ հարցերը վերլուծելու համար:

1883—1894 թվականները Ռուսաստանում սոցիալ-դեմոկրատական շարժ-
ման դանդաղ և դժվարին աճման ժամանակաշրջան էր: Նոր, մարքսիստական
ուսմունքի կողմնակիցները շատ քիչ էին: Ամբողջ հսկայական երկրում մոտ
մի տասնյակ փոքրիկ մարքսիստական խմբեր ու խմբակներ կային խոշոր
քաղաքներում: Այդ խմբակներն զբաղվում էին միայն առաջավոր բանվորների
շրջանում պրոպագանդա մղելով, նրանք մասսաների մեջ քաղաքական աշ-
խատանք չէին տանում: Սոցիալ-դեմոկրատիան այն ժամանակ, ինչպես
գրում էր Լենինը, արգանդային զարգացման պրոցես էր ապրում:

Նարոդնիկների հետ տեղի ունեցած գաղափարական գոտեմարտերում
կոփվում էին առաջին ռուսական մարքսիստները: Գիտական սոցիալիզմի
ուսմունքը պայծառ լույսով լուսավորեց նրանց հետագա պայքարի ուղին,
նրանք իրենց գիտելիքները տարան բանվորներին: Ռևոլյուցիոն խմբակներում
սուր պայքար էր տեղի ունենում մարքսիստների և նարոդնիկների միջև: Գնա-
լով ավելի մեծ թվով առաջավոր բանվորներ և ինտելիգենտ ռևոլյուցիոներ-
ներ էին դառնում համոզված մարքսիստներ: 80-ական թվականների վերջե-
րի, 90-ական թվականների սկզբների մարքսիստների սերնդից են դուրս եկել
պարտիայի նշանավոր գործիչներ՝ Մ. Ն. Լյադովը, Ա. Վ. Լունաչարսկին,
Լ. Բ. Կրասինը, Գ. Մ. Կրժիժանովսկին, Վ. Կ. Կուռնատովսկին, Վ. Լ. Շան-
ցերը (Մարատ), Ն. Ա. Սեմաշկոն, Պ. Ի. Ստուչկան, Մ. Ֆ. Վլադիմիրսկին,



Վ. Վ. Վորովսկին, Մ. Գ. Ցխակայան, Ա. Դ. Ցյուրուպան և շատ ուրիշներ:
Մարքսիզմի գաղափարների ազդեցության ներքո այդ տարիներին աճում էին
ապագա պրոլետարական գրողներ Ա. Մ. Գորկին և Ա. Ս. Սերաֆիմովիչը:
Մարքսիզմը նկատելի ուժ էր դառնում երկրի գաղափարական ու քաղաքական
կյանքում: Նարոդնիկության ազդեցությունը լրջորեն խախտվեց:

## ՀԱՄԱՌՈՏ ԵԶՐԱԿԱՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

XIX դարի երկրորդ կեսին ցարական Ռուսաստանում կապիտալիզմի
զարգացման և արդյունաբերական պրոլետարիատի երևան գալու կապակցու-
թյամբ ավելի ու ավելի ուժգնորեն էր բորբոքվում ռևոլյուցիոն պայքարը:
Այդ պայքարն իր արտահայտությունն էր գտնում բանվորական շարժման,
գյուղացիական հուզումների և ռևոլյուցիոն կազմակերպությունների գործու-
նեության մեջ:

Սկզբնական շրջանում սոցիալիզմն ու բանվորական շարժումը Ռուսաս-
տանում գոյություն ունեին անջատ-անջատ, ինչպես իր ժամանակին այն բո-
լոր երկրներում, որոնք առաջին անգամ էին մտել ռևոլյուցիոն շարժման մեջ:
Ռուսաստանի բանվորական շարժման հողի վրա և արևմտաեվրոպական պրո-
լետարիատի հաջողությունների ազդեցության տակ Ռուսաստանում աստի-
ճանաբար ստեղծվեցին առաջին մարքսիստական կազմակերպությունները:
1883 թվականին Պլեխանովի կազմակերպած «Աշխատանքի ազատագրություն»
խումբը գաղափարական լուրջ հարված հասցրեց նարոդնիկությանը և առաջին
քայլն արեց դեպի բանվորական շարժումը:

Մարքսիզմը Ռուսաստանում զարգանում և ամրապնդվում էր նարոդնի-
կության դեմ մղած պայքարում: Բայց հին և իրենց դարն ապրող հայացք-
ներն առանց համառ ու կատաղի դիմադրության երբեք իրենց տեղը չեն զի-
ջում: Պահանջվեցին նարոդնիկության դեմ վճռական գաղափարական պայ-
քարի տարիներ, մինչև որ մարքսիզմը հաղթանակեց և դարձավ Ռուսաստանի
բանվորական շարժման տեսական հիմքը:

Մարքսիստական առաջին խմբերն ու խմբակները դեռևս կապված չէին
բանվորական շարժման հետ: Մինչև 90-ական թվականների կեսերը մարք-
սիզմը Ռուսաստանում մնում էր բանվորական շարժման հետ չկապված գա-
ղափարական մի հոսանք: Պրոլետարական պայքարի զարգացումը և մարք-
սիստական կազմակերպությունների գործունեությունը պայմաններ նախա-
պատրաստեցին գիտական սոցիալիզմը մասսայական բանվորական շարժման
հետ միացնելու համար, Ռուսաստանում մարքսիստական պարտիայի առա-
ջացման համար: Մարքսիստական պարտիայի ստեղծման խնդիրը լուծեց
Լենինը:

Նոր դարաշրջան էր սկսվում Ռուսաստանի բանվոր դասակարգի և ռևո-
լյուցիոն շարժման պատմության մեջ:

## ԳԼՈՒԽ II

# ՊԱՅՔԱՐ ՌՈՒՍԱՍՏԱՆՈՒՄ ՄԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ՍՏԵՂԾՄԱՆ ՀԱՄԱՐ։ ՌՍԴԲՊ ԿԱԶՄՎԵԼԸ։ ԲՈԼՇԵՎԻԶՄԻ ԱՌԱՋԱՑՈՒՄԸ

(1894—1904 ԹՎԱԿԱՆՆԵՐ)

### 1. ՄԱՐՔՍԻԶՄԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ԷՏԱՊԻ ՍԿԻԶԲԸ։ ԼԵՆԻՆԻ ՊԱՅՔԱՐԸ ՆԱՐՈԴՆԻԿՈՒԹՅԱՆ ԵՎ «ԼԵԳԱԼ ՄԱՐՔՍԻԶՄԻ» ԴԵՄ։ ՊԵՏԵՐԲՈՒՐԳԻ «ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ԱԶԱՏԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՔԱՐԻ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ»։ ՌՍԴԲՊ I ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ։

XIX դարի 90-ական թվականներին կապիտալիզմը Ռուսաստանում նոր հաջողությունների հասավ։ Դա արդյունաբերական վերելքի ժամանակն էր։ Առանձնապես բուռն թափով էր զարգանում երկաթուղային շինարարությունը։ 1890—1900 թվականների ընթացքում կառուցվեց ավելի քան 21 հազար վերստ երկաթուղի։ Այդ կապակցությամբ արագորեն աճեցին մետալուրգիան և վառելիքային արդյունաբերությունը։ Սկսվեց բարձր շահույթներ հետապնդող օտարերկրյա կապիտալների ուժգին ներհոսումը։ Մեկ տասնամյակի ընթացքում արտադրության ծավալը և բանվորների ընդհանուր թիվը կրկնապատկվեցին։ Միայն արդյունաբերության մեջ մտան մոտ մեկ միլիոն նոր բանվորներ։ Արդյունաբերական բանվորների կեսը ժառանգական պրոլետարներ էին, որոնց հայրերն արդեն աշխատել էին ֆաբրիկաներում։

70—80-ական թվականների տարերային գործադուլները նախապատրաստեցին բանվորական մասսաների արթնացումը գիտակցական պայքարի։ Բանվորական շարժման վերելքի նախօրյակին, 1893 թվականի աշնանը, ռևոլյուցիոն աշխատանքին մասնակցելու համար Սամարայից Պետերբուրգ տեղափոխվեց Վ. Ի. Լենինը։ Պետերբուրգի խմբակներում Լենինի ունեցած արդեն առաջին ելույթները վկայում էին, որ ռևոլյուցիոն շարժման մեջ հանդես է եկել ականավոր մի գործիչ, խոր տեսաբան և փայլուն կազմակերպիչ, անխորտակելի եռանդով ու երկաթե կամքով օժտված մի աննկուն ռևոլյուցիոներ, որը ջերմորեն հավատում է բանվորական գործի անպարտելիությանը և այդ հավատով վարակում է ուրիշներին։ Շուտով Լենինը դարձավ Պետերբուրգի մարքսիստների հանրաճանաչ ղեկավարը։

Լենինը մարքսիստների առջև խնդիր դրեց՝ ստեղծել ինքնուրույն մարքսիստական բանվորական պարտիա։ Պարտիան վիճակված էր կառուցել ընդհատակի դաժան պայմաններում, ոստիկանական անընդհատ հետապնդումների կրակի տակ։ Ռուսական մարքսիստները իրենց պարտիան ստեղծում էին այն սուր պայքարում, որ նրանք մղում էին ոչ միայն նարոդնիկների դեմ, այլև քաղաքական մյուս հոսանքների և բանվորական շարժման մեջ օպորտունիզմի դրսևորումների դեմ, որոնք պրոլետարիատի արմատական շահերը զոհաբերում են նրա րոպեական օգուտին։ Առաջ մարքսիզմի համար մղվող պայքարում գլխավոր դեր էր խաղում «Աշխատանքի ազատագրություն» խումբը։ Այժմ այդ պայքարում վճռական նշանակություն ձեռք բերեցին Ռուսաստանում աճած մարքսիստական լուրջ կադրերը։



Մարքսիզմի հաստատման ճանապարհին գաղափարական գլխավոր խոչընդոտը մնում էր նարոդնիկությունը։ Հարկավոր էր մինչև վերջ ջախջախել այն՝ մարքսիզմի հաղթանակն ու պրոլետարական պարտիայի ստեղծումն ապահովելու համար։ Զգտելով կասեցնել մարքսիզմի ազդեցության արագ աճումը ռևոլյուցիոն շրջաններում, նարոդնիկներն արշավանք սկսեցին մարքսիզմի դեմ։ Ի պատասխան դրան երևան եկան ռուս մարքսիստների բազմաթիվ նամակ-բողոքներ, որոնց մեջ աչքի էին ընկնում Ն. Ե. Ֆեդոսեևի նամակները։ Այդ անլեգալ նամակները ձեռքից-ձեռք էին անցնում և ագահությամբ կարդացվում ընդհատակյա ռևոլյուցիոն խմբակներում։

Նարոդնիկության դեմ մղվող գաղափարական պայքարում աչքի ընկնող դեր խաղաց Լենինի «Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպե՞ս են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ» գիրքը, որը գաղտնի տպագրվեց 1894 թվականի գարնանն ու ամռանը։ Այդ գրքում քննադատության ենթարկվեցին նարոդնիկության աշխարհհայացքը, տնտեսական հայացքները, քաղաքական պլատֆորմն ու տակտիկան։

Պատմության նկատմամբ նարոդնիկների իդեալիստական հայացքներին
Լենինը հակադրեց հասարակական կյանքի մարքսիստական, մատերիալիս-
տական ըմբռնումը։ Պատմության ընթացքը պայմանավորվում է ոչ թե առան-
ձին անհատների սուբյեկտիվ ցանկություններով, այլ հասարակության զար-
գացման օբյեկտիվ օրենքներով։ Մարքսիստական գիտությունը բացահայտում
է կապիտալիզմի օրոք եղած հակասությունների բոլոր ձևերը և պրոլետարիա-
տին ցույց է տալիս կապիտալիստական շահագործումից ազատվելու ելքը։
Ռուս սոցիալիստների խնդիրներն են՝ մարքսիստական տեսության մշակումը,
նրա տարածումը բանվորական մասսաների մեջ, բանվոր դասակարգի կազ-
մակերպումը։ Մարքսիստների տեսական աշխատանքն ու պրակտիկ գործու-
նեությունը պետք է անխզելի լինեն՝ տեսությունը պետք է ծառայի պրակտի-
կային, պատասխանի կյանքի առաջադրած հարցերին և ստուգվի պրակտիկայի
տվյալներով։ Միայն այդ դեպքում մարքսիստները կդառնան պրոլետարիատի
իսկական գաղափարական ղեկավարներ, որոնք զերծ են դոգմատիզմից ու
աղանդավորականությունից։

Լենինը ցույց տվեց, որ նարոդնիկությունը խոր փոփոխություններ է կրել,
ռևոլյուցիոնից դարձել է լիբերալ, և մինչև վերջը մերկացրեց 90-ական թվա-
կանների նարոդնիկներին։ Նարոդնիկները (Միխայլովսկին, Վորոնցովը և
ուրիշներ) սկսեցին պնդել, թե կապիտալիզմը կարող է «ժողովրդական կյան-
քի մեջ մուտք գործել»՝ առանց գյուղացիներին քայքայելու և առանց աշ-
խատավորներին շահագործելու։ Նրանք գովաբանում էին կուլակային տնտե-
սությունների զարգացումը, սքողում էին դասակարգային հակասությունները
գյուղում և չքավորության սարկացումը կուլակների կողմից։ Նրանք առաջար-
կում էին այնպիսի մանր ռեֆորմների չնչին ծրագիր, որոնք, չդիպչելով գյու-
ղում տեղի ունեցող շահագործման հիմքերին, գյուղացիներին շեղում էին
ռևոլյուցիոն պայքարից և կարող էին օգուտ բերել միայն հարուստ, կուլա-
կային տնտեսություններին։ Նարոդնիկները հրաժարվեցին ցարիզմի դեմ պայ-
քարելուց։ Այժմ նրանք բոլոր հույսերը դնում էին ցարական կառավարու-
թյան վրա, որն իբր թե վեր է կանգնած դասակարգերից և այդ պատճառով
էլ ընդունակ է օգնություն ցույց տալու աշխատավորներին։
Նարոդնիկության այդպիսի վերասերումը կապված էր այն բանի հետ, որ

գյուղացիությունը շերտավորվել էր չքավորության և կուլակության։ Եթե 70-ական թվականների ռևոլյուցիոն նարոդնիկներն արտացոլում էին գյուղացիական լայն մասսաների տրամադրությունները, ապա 90-ական թվականների լիբերալ նարոդնիկները իրականում կուլակության շահերի արտահայտիչներն էին։ Հետևապես, նարոդնիկները ժողովրդի կեղծ «բարեկամներն» են։ Ժողովրդի իսկական ներկայացուցիչները մարքսիստներն են, որոնք կոչ են անում տապալել ցարիզմը, ոչնչացնել կալվածատիրական սարկությունն ու կապիտալիստական շահագործումը։

«Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպե՞ս են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ» գրքում Լենինը նշեց Ռուսաստանի բանվոր դասակարգի՝ որպես ժողովրդի քաղաքական առաջնորդի պատմական ուղին, առաջ քաշեց պրոլետարիատի հեգեմոնիայի (ղեկավար դերի) գաղափարը, դրեց ռևոլյուցիոն պայքարում պրոլետարիատի դաշնակիցների հարցը։ Լենինը Ռուսաստանի մարքսիստներից առաջինն էր, որ առաջադրեց բանվոր դասակարգի և գյուղացիության ռևոլյուցիոն դաշինքի՝ որպես ցարիզմի, կալվածատերերի և բուրժուազիայի տապալման գլխավոր միջոցի գաղափարը։ Ցարական ինքնակալության դեմ մղվող պայքարում բանվոր դասակարգի դաշնակիցը գյուղացիությունն է, դեմոկրատական ժողովրդական լայն մասսաները։ Բանվոր դասակարգը կապիտալիզմի դեմ հանդես է գալիս ոչ թե որպես միայնակ մարտիկ, այլ երկրի աշխատավորության և շահագործվող մասսաների հետ միասին։

Այդ պատմական խնդիրները լուծելու համար պրոլետարիատին հարկավոր է մարքսիստական պարտիա, որը գիտակցականություն ու կազմակերպվածություն կհաղորդի բանվորական շարժմանը։ Ուստի ռուսական մարքսիստների առաջնահերթ խնդիրն է՝ անջատ-անջատ մարքսիստական խմբակներից կազմակերպել միասնական սոցիալիստական բանվորական պարտիա։ Եթե մարքսիստներն ստեղծեն այնպիսի ամրակուռ կազմակերպություն՝ պարտիա, որը բանվորների անջատ-անջատ բունտերն ու գործադուլները փոխարկի պրոլետարիատի գիտակցական դասակարգային պայքարի,

> «այն ժամանակ,— գրում էր Լենինը,— ռուսական ԲԱՆՎՈ՛ՐԸ, բոլոր դեմոկրատական տարրերի գլուխ անցած ոտքի ելնելով՝ կտապալի աբսոլյուտիզմը և ՌՈՒՍԱԿԱՆ ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏԻՆ (ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ պրոլետարիատի հետ կողք-կողքի) բացահայտ քաղաքական պայքարի ուղիղ ճանապարհով կառաջնորդի դեպի ՀԱՂԹԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՆ» (Երկեր, հատ. 1, էջ 382)։

Լենինյան այս գաղափարները լուրջ ավանդ էին մարքսիստական տեսության մեջ։ Լենինը մարքսիստներին, առաջավոր բանվորներին դաստիարակում էր այն ըմբռնումով, որ ժողովրդական լայն մասսաների, առաջին հերթին գյուղացիության մեջ թաքնված են վիթխարի ռևոլյուցիոն հնարավորություններ։

90-ական թվականներին ռևոլյուցիոն մարքսիզմը Ռուսաստանում ուներ նաև մի այլ հակառակորդ, այսպես կոչված՝ «լեգալ մարքսիստները»։ Դրանք բուրժուական ինտելիգենտներ էին, որոնք լեգալ, այսինքն՝ ցարական կառավարության թույլատրած թերթերում ու ժուռնալներում իրենց հայացքները անց էին կացնում մարքսիզմի դրոշի ներքո։ Պաշտպանելով երկրի կապիտալիստական զարգացման շահերը, «լեգալ մարքսիստները» յուրովի քննադատում





էին նարոդնիկներին՝ որպես մանր արտադրության պաշտպանների։ Այդպիսի քննադատության համար էլ նրանք փորձում էին հարմարեցնել մարքսիզմը, բայց միայն թե ամեն մի ռևոլյուցիոնությունից զտված մարքսիզմը։ «Լեգալ մարքսիստների» պարագլուխ Պ. Բ. Ստրուվեն գովաբանում էր կապիտալիզմը և բուրժուական կարգերի դեմ ռևոլյուցիոն պայքար մղելու փոխարեն կոչ էր անում «ընդունել մեր անկուլտուրականությունը և սովորել կապիտալիզմից»։ Այսպիսով, «լեգալ մարքսիստները» բուրժուական իդեոլոգիայի արտահայտիչներն էին։ Նրանք ձգտում էին մարքսիզմն ու բանվորական շարժումը հարմարեցնել բուրժուազիայի շահերին։

Նարոդնիկության դեմ մղած պայքարում ռևոլյուցիոն մարքսիստները ժամանակավոր համաձայնություն կնքեցին «լեգալ մարքսիստների» հետ, սկսեցին իրենց երկերը զետեղել «լեգալ մարքսիստների» խմբագրած ժուռնալներում։ Միաժամանակ Լենինը «Նարոդնիկության տնտեսական բովանդակությունն ու նրա քննադատությունը պ-րն Ստրուվեի գրքում» (1895 թ.) աշխատության մեջ վճռական քննադատության ենթարկեց «լեգալ մարքսիզմը» սոցիալիստական ռևոլյուցիայի և պրոլետարիատի դիկտատուրայի ուսմունքի՝ մարքսիզմի հիմունքները ռևիզիայի ենթարկելու համար։ «Լեգալ մարքսիզմը» բնութագրելով որպես մարքսիզմի արտացոլում բուրժուական գրականության մեջ, Լենինը «լեգալ մարքսիստներին» մերկացրեց որպես լիբերալ բուրժուազիայի գաղափարախոսների։ «Լեգալ մարքսիստների» լենինյան բնութագիրը հետագայում ամբողջովին հաստատվեց. նրանք դարձան ականավոր կադետներ (այդպես էր կոչվում ռուսական լիբերալ բուրժուազիայի գլխավոր պարտիան), իսկ հետո՝ թունդ սպիտակգվարդիականներ։

Նարոդնիկները մարքսիզմի բացահայտ թշնամիներն էին։ Ի դեմս «լեգալ մարքսիստների»՝ ռուս մարքսիստներն առաջին անգամ հանդիպեցին դիմակավորված թշնամիների, որոնք իրենց անվանում էին Մարքսի ուսմունքի կողմնակիցներ, իսկ իրականում ամլացնում էին մարքսիզմի ռևոլյուցիոն բովանդակությունը։ Մարքսիզմի խեղաթյուրման նման փորձերը տարածվեցին նաև Արևմտյան Եվրոպայում։ «Լեգալ մարքսիզմի» դեմ Լենինի մղած պայքարն ունեցավ միջազգային նշանակություն, հանդիսանալով մարքսիստական տեսության աղճատումների նկատմամբ գաղափարական անհաշտության օրինակ։

Մարքսիզմի զարգացման և մարքսիստական կադրերի գաղափարական-տեսական դաստիարակության գործում աչքի ընկնող նշանակություն ունեցավ Լենինի «Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում» գիրքը, որը հրատարակվեց 1899 թվականին։ Այդ գիրքն ավարտեց նարոդնիկության գաղափարական ջախջախումը։

Ուսումնասիրելով վիթխարի փաստական նյութ, Լենինն արեց մի շարք շատ կարևոր եզրակացություններ. Ռուսաստանը դարձել է կապիտալիստական երկիր. գնալով ավելի են սրվում հակասությունները կապիտալիզմի և ճորտատիրության մնացուկների միջև. կապիտալիզմի զարգացումը քայքայում է ինքնակալական կարգի հիմքերը. երկրում հասունանում են օբյեկտիվ պայմաններ՝ այդ կարգը լիկվիդացնելու համար. հասարակության մեջ ուժեր են ձևավորվում ռևոլյուցիայի համար — վճռական դերը պատկանում է բանվոր դասակարգին, պրոլետարիատի ուժը պատմական շարժման մեջ անհամեմատ ավելի մեծ է, քան նրա բաժինը՝ բնակչության ընդհանուր մասսայի մեջ. բան-

*վոր դասակարգի դաշնակիցը գյուղացիությունն է, նրա ռևոլյուցիոնությունը խոր տնտեսական արմատներ ունի։ Ռուսաստանի տնտեսական զարգացման և դասակարգային փոխհարաբերությունների՝ Լենինի տված վերլուծության հիման վրա մշակվեցին մարքսիստական պարտիայի ծրագիրն ու տակտիկան։*

*Ռուսական մարքսիստները լենինյան գաղափարները մտցրին բանվորական շարժման պրակտիկայում։ Լենինը Պետերբուրգի մարքսիստների առջև խնդիր դրեց՝ անցնել բանվորական մասսաների մեջ քաղաքական ագիտացիա մղելուն։ 1894 թվականի դեկտեմբերին Սեմյաննիկովսկի գործարանի (այժմ Վ. Ի. Լենինի անվան գործարան) բանվորների հուզումների կապակցությամբ Լենինը այդ գործարանի բանվոր Ի. Վ. Բաբուշկինի մասնակցությամբ գրեց բանվորներին ուղղված մի դիմում, որը մի քանի օրինակով տարածվեց գործարանում։ Սոցիալ-դեմոկրատները մասնակցեցին նաև Նովի պորտում, Տորնտոնի (այժմ Է. Թելմանի անվան) ֆաբրիկայում, Պուտիլովի (այժմ Կիրովի) գործարանում և շատ ուրիշ ձեռնարկություններում տեղի ունեցած գործադուլներին։ Տնտեսական պահանջները քաղաքական պահանջների հետ զուգակցող թռուցիկները չտեսնված ոգևորություն էին առաջացնում բանվորների մեջ, բարձրացնում էին նրանց ռևոլյուցիոն գիտակցությունը։ Բանվորական մասսաների քաղաքական դաստիարակման ու կազմակերպման ուղղությամբ մարքսիստների ծավալած գործունեությունն ընդունեց մշտական ու սիստեմատիկ բնույթ։ Այսպես, Լենինի ղեկավարությամբ շրջադարձ կատարվեց առաջավոր բանվորների փոքրիկ խմբակներում տարվող պրոպագանդայից դեպի բանվոր դասակարգի լայն մասսաների մեջ մղվող ագիտացիան։*

*Մասսաների մեջ աշխատանք ծավալելու նպատակով Պետերբուրգի մարքսիստական խմբակները Լենինի նախաձեռնությամբ միավորվեցին մի միասնական սոցիալ-դեմոկրատական անլեգալ կազմակերպության մեջ, որը 1895 թվականի վերջին ընդունեց «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միություն» անունը։ Միությունը կառուցված էր ցենտրալիզմի, խիստ կարգապահության և մասսաների հետ սերտ կապի սկզբունքներով։ Կազմակերպության կորիզի մեջ մտնում էին 15—17 մարդ, որոնք բաշխված էին երեք շրջանների միջև։ Հիմք էին հանդիսանում եղած բանվորական խմբակները։ Միությունը ղեկավարում էր կենտրոնական խումբը Վ. Ի. Լենինի գլխավորությամբ, որը միաժամանակ նրա բոլոր հրատարակությունների խմբագիրն էր։ «Պայքարի Միության» կազմի մեջ մտնում էին՝ Գ. Մ. Կրժիժանովսկին, Ն. Կ. Կրուպսկայան, Յու. Օ. Մարտովը, Ա. Ն. Պոտրեսովը, Ս. Ի. Ռադչենկոն, Վ. Վ. Ստարկովը, Ա. Ա. Վանեևը և ուրիշներ։*

*Անհանգստացած «Պայքարի միության» գործունեությունից, ցարական կառավարությունը դաժան հարված հասցրեց նրան։ 1895 թվականի դեկտեմբերի լույս 9-ի գիշերը ձերբակալվեց միության ղեկավարությունը Լենինի գլխավորությամբ և մոտ քառասուն ակտիվ աշխատողներ։ 1896 թվականի ընթացքում ոստիկանությունը դարձյալ մի շարք հարձակումներ գործեց, միության շարքերից շարունակ խլելով նորանոր մարտիկների։ Մեկ տարուց ավելի Լենինն անցկացրեց բանտում։ Բայց այստեղ էլ նա չէր դադարեցնում իր ռևոլյուցիոն գործունեությունը, շարունակում էր օգնել «Պայքարի միությանը», թռուցիկներ էր գրում, կազմեց պարտիայի ծրագրի նախագիծը։ 1897 թվականին Լենինին ուղարկեցին սիբիրյան հեռավոր աքսոր։ Միության շատ ակտիվ գործիչներ նույնպես աքսորվեցին։ Որքան էլ ծանր լինեին այդ կորուստները,*



*ցարիզմը չկարողացավ լիկվիդացնել միությունը — այնքան խորն էին նրա արմատները բանվորական շարժման մեջ։*

*1896 թվականը լուրջ հաղթանակ բերեց «Պայքարի միությանը»։ Ամռանը գործադուլ արեցին Պետերբուրգի ավելի քան 30 հազար բանվորներ։ Կանգ առան գրեթե բոլոր տեքստիլ ֆաբրիկաները։ Չնայած հիմնական կորիզի ձերբակալմանը, միությունը ղեկավարում էր գործադուլը։ Մեկ ամսվա ընթացքում հրատարակվեց 13 թռուցիկ։ Ցարական կառավարությունը, ձերբակալելով ավելի քան հազար բանվոր, փորձում էր ոչ միայն դաժան ռեպրեսիաներով ընկճել գործադուլը, այլև գաղափարապես քայքայել շարժումը այն կեղծ հավաստիացումներով, թե իրեն «հավասարապես թանկ են ինչպես ֆաբրիկանտների, այնպես էլ բանվորների գործերը»։ Այդ մանյովրը «Պայքարի միությունն» անմիջապես մերկացրեց մի թռուցիկում։ Գործադուլի լուրը տարածվեց ամբողջ երկրում և նրա սահմաններից հեռու։ Անհանգստացած գործադուլային պայքարի թափից, ցարական կառավարությունը շուտով հարկադրված եղավ աշխատանքային օրը օրենսդրական կարգով սահմանափակել 11,5 ժամով։*

*Պետերբուրգի 1895—1896 թվականների գործադուլները, հատկապես 1896 թվականի գործադուլը, Ռուսաստանի պատմության մեջ բացեցին մի նոր ժամանակաշրջան՝ ժողովրդական ռևոլյուցիայի նախապատրաստման ժամանակաշրջանը։ Բանվորական մասսաներն առաջին անգամ պայքարի*
*ղեկավարությամբ: Պրոլե-*
*ելան սոցիալ-դեմոկրատական կազմակերպության*
*տարիատը հանդես եկավ որպես լուրջ քաղաքական ուժ, որպես հզոր ռևոլյու-*
*ցիոն գործոն։ Մասսայական սոցիալ-դեմոկրատական բանվորական շարժման*
*առաջացումով Ռուսաստանի քաղաքական կյանքի կարևորագույն հարցը դար-*
*ձավ այն հարցը, թե ո՛վ կտանի իր հետևից գյուղացիությանը՝ բանվոր դա-*
*սակարգը, թե՞ լիբերալ բուրժուազիան։*

*«Պայքարի միությունը» դաստիարակեց մի խումբ առաջավոր պրոլետար-*
*ներ, պարտիայի կառուցողներ, որոնք անդուլ աշխատանք էին կատարում*
*մասսաների մեջ։ Միության ակտիվ գործիչներն էին հետևյալ խոշոր գործա-*
*րանների բանվորները՝ Օբուխովի գործարանի (այժմ «Բոլշևիկ» գործարան)*
*բանվոր Վ. Ա. Շելգունովը, Սեմյաննիկովսկի գործարանի բանվոր Ի. Վ. Բա-*
*բուշկինը, Պուտիլովի գործարանի բանվորներ՝ Ն. Գ. Պոլետաևը (հետագայում*
*Երրորդ Պետական դումայի դեպուտատ), Մ. Ի. Կալինինը և ուրիշներ։*

*Լենինի ղեկավարությամբ Պետերբուրգի «Բանվոր դասակարգի ազատա-*
*գրության պայքարի միությունը» Ռուսաստանում առաջինն սկսեց իրականաց-*
*նել սոցիալիզմի միացումը բանվորական շարժման հետ, տնտեսական պա-*
*հանջների համար բանվորների մղած պայքարը կապակցելով ցարիզմի և կա-*
*պիտալիստական շահագործման դեմ մղվող քաղաքական պայքարի հետ։ Այդ*
*միությունը, ինչպես գրում էր Լենինը, բանվորական շարժման վրա հենվող*
*և պրոլետարիատի դասակարգային պայքարը ղեկավարող ռևոլյուցիոն պար-*
*տիայի առաջին լուրջ սաղմն էր:*

*Պետերբուրգի «Պայքարի միությունը» հսկայական ազդեցություն գործեց*
*Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական շարժման զարգացման վրա։ Նրա օրի-*
*նակով միություններ սկսեցին ստեղծվել նաև մյուս քաղաքներում։ Մոսկվա-*
*յում կազմակերպվեց «Բանվորական միությունը»։ Սոցիալ-դեմոկրատական*

*խմբեր ստեղծվեցին Տուլայում, Իվանովո-Վոզնեսենսկում, Յարոսլավլում, Կոստրոմայում, Վլադիմիրում, Դոնի Ռոստովում և այլ քաղաքներում: Սոցիալ-դեմոկրատական կազմակերպություններ առաջացան Ուկրաինայում և Անդրկովկասում: Նրանցից շատերն ընդունեցին «Պայքարի միություն» անունը: Նրանց հիմնական խնդիրներից մեկը դարձավ գործադուլային պայքարի կազմակերպումը: Նրանք ձգտում էին յուրաքանչյուր գործադուլ վերածել պրոլետարիատի դասակարգային պայքարի դպրոցի: Այսպես էր ստեղծվում գործադուլներին սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների ակտիվ մասնակցության տրադիցիան: Սոցիալ-դեմոկրատներն սկսեցին բանվորների հետ ապրել միևնույն կյանքով:*

*Սոցիալ-դեմոկրատական շարժումը զարգանում է նաև արևմտյան ազգային շրջաններում: 1893 թվականին հիմնադրվում է Լեհական Թագավորության սոցիալ-դեմոկրատիան: 1897 թվականին կազմակերպվում է «Ռուսաստանի և Լեհաստանի ընդհանուր հրեական բանվորական միությունը» (Բունդը): 90-ական թվականների երկրորդ կեսին առաջին սոցիալ-դեմոկրատական կազմակերպություններն են երևան գալիս Լատվիայում:*

*Խմբակային պրոպագանդայից բանվոր դասակարգի մասսաների մեջ մղվող ագիտացիային անցնելը տեղի էր ունենում ոչ առանց պայքարի՝ կազմակերպությունների ներսում: Ոմանք համառորեն կառչում էին պրոպագանդայի և կազմակերպության հնացած խմբակային ձևերից: Ուրիշները կողմնակից էին ագիտացիային անցնելուն, բայց դրա հետ մեկտեղ մոռանում էին պրոլետարիատի քաղաքական խնդիրները և առաջարկում էին սահմանափակվել միայն տնտեսական ագիտացիայով, ստեղծել գանձարկղներ և դրանց նման կազմակերպություններ բանվորների տնտեսական կարիքները հոգալու համար, իսկ քաղաքական պայքարը վերապահել լիբերալներին:*

*Այսպիսով, Ռուսաստանում սոցիալ-դեմոկրատական շարժման հենց արշալույսին առաջացավ մի վտանգավոր տենդենց՝ կառուցել պրոլետարիատի նեղ-պրոֆեսիոնալ և ոչ թե քաղաքական կազմակերպություն, բանվորական շարժմանը տալ բացառապես տնտեսական բնույթ: Նման հայացքների կողմնակիցներին անվանեցին «էկոնոմիստներ»: Նրանք հենվում էին Ռուսաստանում «լեգալ մարքսիստների» և Արևմուտքում «ռեֆորմիստների» գաղափարների վրա և գործնականում բանվորական շարժումը ենթարկում էին լիբերալ բուրժուազիային:*

*Լենինը և նրա կողմնակիցները եռանդուն պայքար մղեցին Ռուսաստանի բանվորական շարժման մեջ օպորտունիզմի այդ առաջին արտահայտությունների դեմ: Պրոլետարիատի ինքնուրույն պարտիայի անհրաժեշտության վերաբերյալ Մարքսի եզրակացությունը Լենինը համարում էր միջազգային բանվորական շարժման հաստատուն նվաճումը: Հենվելով այդ եզրակացության վրա, նա ձեռնամուխ եղավ պարտիայի ստեղծմանը Ռուսաստանում, անհաշտ կերպով մարտնչելով նրա ինքնուրույնության նկատմամբ կատարվող ամենաաննշան ոտնձգությունների դեմ: Այդ պայքարը մեծ նշանակություն ունեցավ բոլշևիկների ապագա պարտիայի կադրերի ձևավորման համար, բոլշևիզմի սաղմնավորման համար: Հենց այդպես էր գնահատում Լենինը այդ պայքարի պատմական իմաստը, երբ հետագայում գրում էր. «Բոլշևիկները «կայուն» չեն, նրանք աճել են 1894—1914 թթ. օպորտունիզմի դեմ մղվող պայքարից»* («Լենինյան ժողովածու» XIV, էջ 317):



*Լենինի գործունեությունը 90-ական թվականներին, նրա առաջ քաշած գաղափարները, նրա անհաշտ պայքարը մարքսիստական թեորիայի աղճատումների դեմ, պարտիական կադրերին և բանվորական մասսաներին ռևոլյուցիոն ոգով դաստիարակելը—այս բոլորը դրեց* մարքսիզմի զարգացման նոր, լենինյան էտապի *սկիզբը:*

*Սոցիալ-դեմոկրատական շարժումը զգալի հաջողություններ էր ձեռք բերում: Ռևոլյուցիոն մարքսիստների առաջ ծառացավ գոյություն ունեցող սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները պարտիայի մեջ միավորելու խնդիրը: Այդպիսի միավորումը գաղափարապես նախապատրաստել էր լենինյան «Պայքարի միությունը»: Ձեռնարկվեցին նաև գործնական քայլեր համագումար հրավիրելու ուղղությամբ: 1896 թվականի ամռանը միության անդամ Ն. Կ. Կրուպսկայան այդ նպատակով բանակցություններ էր վարում մյուս քաղաքների սոցիալ-դեմոկրատների հետ: Լենինը, որ գտնվում էր աքսորում, գրեց «Ռուսական սոցիալ-դեմոկրատների խնդիրները» բրոշյուրը, որտեղ Պետերբուրգի «Պայքարի միության» փորձով հիմնավորեց բանվորական պարտիայի մարքսիստական պլատֆորմը:*

*Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիայի I համագումարը տեղի ունեցավ գաղտնի, Մինսկում, 1898 թվականի մարտի 1—3-ը: Համագումարում կային ընդամենը 9 մասնակիցներ, որոնք ներկայացնում էին Պետերբուրգի, Մոսկվայի, Կիևի և Եկատերինոսլավի «Պայքարի միությունները», Բունդը և Կիևի «Ռաբոչայա գազետա»-ի խումբը: Համագումարը որոշում ընդունեց Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիայի ստեղծման մասին և ընտրեց երեք հոգուց բաղկացած Ցենտրոնական Կոմիտե: Նրա անունից հրապարակվեց մի մանիֆեստ, որը դրական դեր խաղաց որպես բացահայտ հայտարարություն պարտիայի նպատակների մասին: Սակայն մանիֆեստում անտեսված էին մի շարք արմատական պրոբլեմներ, որ Լենինը առաջադրել էր իր աշխատություններում, այն է՝ պրոլետարիատի կողմից քաղաքական իշխանությունը նվաճելու, բանվոր դասակարգի ղեկավար դերի և ցարիզմի դեմ մղվող պայքարում նրա դաշնակիցների պրոբլեմները:*

*Համագումարը հռչակեց պարտիայի ստեղծումը, որը հսկայական քաղաքական և ռևոլյուցիոն-պրոպագանդիստական նշանակություն ունեցավ: Պարտիայի ստեղծման վերաբերյալ հաղորդագրությունը ամենուրեք սոցիալ-դեմոկրատները դիմավորեցին մեծ ցնծությամբ: Կայացած համագումարի լուրը խրախուսում և քաջալերում էր պարտիական կադրերին՝ ընդհատակյա ռևոլյուցիոն աշխատանքի դժվարին պայմաններում, լայն հեռանկար բացում նրանց համար: Տեղական սոցիալ-դեմոկրատական կազմակերպություններն սկսեցին կոչվել ՌՍԴԲՊ կոմիտեներ: ՌՍԴԲՊ-ն ավելի ու ավելի հայտնի և հանրաճանաչ է դառնում բանվորական մասսաների մեջ:*

*Սակայն փաստորեն պարտիա չստեղծվեց: Սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները չունեին միասնական ծրագիր, կանոնադրություն և տակտիկա, չկար մեկ կենտրոնից ցույց տրվող ղեկավարություն, չկար գաղափարական ու կազմակերպական միասնություն: I համագումարից անմիջապես հետո ցարական ոստիկանությունը ձերբակալեց Կենտկոմի երկու անդամների և շատ քաղաքների աչքի ընկնող սոցիալ-դեմոկրատների: Ուժեղացան գաղափարական տատանումները, ավելացավ օպորտունիստական տարրերի ազ-*

դեցությունը։ Զգացվում էր Լենինի գլխավորած ռևոլյուցիոն մարքսիստների ամուր կորիզի բացակայությունը, որոնք գտնվում էին աքսորում։

Ծանր պայմաններում էր ծնունդ առնում մարքսիստական պարտիան Ռուսաստանում։

## 2. ՄԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԱԶՄՈՒՅՄԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՊԼԱՆԸ։ ԼԵՆԻՆՅԱՆ «ԻՍԿՐԱ»-Ի ՊԱՅՔԱՐԸ ՊԱՐՏԻԱՅԻ ՍՏԵՂԾՄԱՆ ՀԱՄԱՐ։

Բանվորական պարտիա ստեղծելու անհրաժեշտությունը գնալով ավելի ու ավելի սուր էր դառնում։ XX դարի սկզբներին ցարական Ռուսաստանում բավականաչափ դյուրավառ նյութ էր կուտակվել ռևոլյուցիոն պայթյունի համար։

1900—1903 թվականներին համաշխարհային տնտեսական ճգնաժամ բռնկեց։ Ռուսաստանում այդ ճգնաժամն առանձնապես սուր և հիվանդագին ձևով արտահայտվեց։ Նրա հարվածների տակ կործանվում էին մանր ու միջին ձեռնարկությունները։ Փակվեցին մոտ երեք հազար ֆաբրիկաներ ու գործարաններ։ Ուժեղացավ արդյունաբերության համակենտրոնացումը, արագորեն աճում էին կապիտալիստների մոնոպոլիստական միավորումները, որոնք տիրապետություն էին հաստատել արդյունաբերության լեռնահանքային, մետալուրգիական, մեքենաշինական և այլ ճյուղերում։ Կապիտալիզմը Ռուսաստանում դառնում էր իմպերիալիստական։

Ճգնաժամն է՛լ ավելի շիկացրեց հողը երկրում։ Աճեց գործազրկությունը։ Գործազուրկները հազարներով վերադառնում էին «տուն»՝ վատ բերքից տուժած և սովահար գյուղը։ Բանվորներն սկսեցին անցնել պայքարի նոր ձևերին՝ տնտեսական գործադուլներից քաղաքական գործադուլներին ու ցույցերին։ 1901 թվականի փետրվար-մարտ ամիսներին ՌՍԴԲՊ կոմիտեների կոչով Պետերբուրգի, Մոսկվայի, Խարկովի, Կիևի և մյուս խոշոր քաղաքների փողոցները դուրս եկան հազարավոր բազմություններ «Կորչի՛ միապետությունը» լոզունգով։ Շատ քաղաքներում տեղի ունեցան մայիսմեկյան ցույցեր ու գործադուլներ։ Օբուխովի գործարանի բանվորների բազմահազար կոլեկտիվի գործադուլը վերաճեց ընդհարման՝ ոստիկանության ու զորքերի հետ։ Բանվորները տոկունորեն դիմադրում էին, բայց ուժերը չափազանց անհավասար էին, և ցարական իշխանությունները դաժանորեն դատաստան տեսան օբուխովցիների հետ։ Հերոսական «օբուխովյան պաշտպանությունը» բարձրացրեց պրոլետարիատի մարտական ոգին։

1902 թվականը բանվորական շարժման հետագա վերելքի տարի էր։ Գործադուլներ ու ցույցեր տեղի ունեցան Պետերբուրգում, Մոսկվայում, Կիևում, Բաքվում, Բաթումում, Նիժնի Նովգորոդում, Սորմովոյում, Օդեսայում, Սարատովում և այլ քաղաքներում։ Առանձնահատուկ նշանակություն ունեցավ Դոնի Ռոստովում տեղի ունեցած խոշոր գործադուլ-ցույցը։ Գործադուլը ղեկավարում էր ՌՍԴԲՊ Կոմիտեն։ Մի քանի օր շարունակ տեղի էին ունենում բանվորների բազմահազարանոց միտինգներ, բանվորներ, որոնք ագահությամբ լսում էին սոցիալ-դեմոկրատների ճառերը։ Ոստիկանությունն անզոր գտնվեց արգելելու փողոցային ժողովներն ու միտինգները և միայն կանչված զորքերի օգնությամբ հաշիվ տեսավ բանվորների հետ։

1903 թվականին բանվորական շարժման ալիքը է՛լ ավելի բարձրացավ։



Շատ քաղաքներում տեղի ունեցան մայիսմեկյան գործադուլներ ու ցույցեր։ 1903 թվականի ամռանը ՌՍԴԲՊ կոմիտեների ղեկավարությամբ ընդհանուր քաղաքական գործադուլներ տեղի ունեցան երկրի հարավում՝ Անդրկովկասում (Բաքու, Թիֆլիս, Բաթում, Ճիաթուրի, Անդրկովկասյան երկաթուղի) և Ուկրաինայում (Օդեսա, Կիև, Եկատերինոսլավ, Նիկոլաև և այլ քաղաքներ)։ Այդ գործադուլներին մասնակցեց ավելի քան 200 հազար բանվոր։ Ռուսաստանի բանվոր դասակարգը ռևոլյուցիոն պայքարի էր ելնում ցարական իշխանության դեմ։

Վախեցած բանվորական շարժման աճումից, ցարիզմը փորձում էր ամեն տեսակ միջոցներով կանգնեցնել այն։ Պրոլետարիատի պայքարին ցարական կառավարությունը սկսեց ավելի ու ավելի հաճախ պատասխանել գնդակներով ու մտրակով, բանտով և աքսորով։ Միաժամանակ ցարիզմը փորձում էր բանվորներին շեղել ռևոլյուցիոն պայքարից։ Ցարական պահնորդական բաժանմունքը իր գործակալների օգնությամբ որոշ քաղաքներում ստեղծեց այնպիսի կազմակերպություններ, որոնք ճգնում էին բանվորներին ներշնչել, թե իբր ցարական կառավարությունն ինքը պատրաստ է օգնել նրանց տնտեսական պահանջները բավարարելու գործում, միայն թե բանվորները քաղաքականության մեջ չխառնվեն։ Ցարիզմի այդ քաղաքականությունն ստացավ «ոստիկանական սոցիալիզմ» կամ զուբատովշչինա անունը՝ նրա նախաձեռնող, ժանդարմական գնդապետ Զուբատովի ազգանունով։ Բայց բանվոր դասակարգի աճող ռևոլյուցիոն շարժումը իր ճանապարհից սրբեց ու դեն շպրտեց այդ ոստիկանական կազմակերպությունները։

Պրոլետարիատի պայքարի ազդեցության տակ շարժվել սկսեցին նաև մյուս դասակարգերն ու սոցիալական խավերը։ Պայքարի ելավ անսահման կարիքից հուսահատված գյուղացիությունը։ Այդ պայքարը մեծ ուժով արտահայտվեց 1902 թվականին Պոլտավայի, Խարկովի, Սարատովի նահանգներում, որտեղ գյուղացիներն սկսեցին հրդեհել կալվածատիրական կալքերը, գրավել կալվածատիրական հողերը, դիմադրություն ցույց տալ ոստիկաններին ու զորքերին։ Ծավալվեց ուսանողական շարժումը։ Ի պատասխան ոստիկանական վայրագ դատաստանի, ուսանողները 1901/02 թվականի ձմռանը դասադուլներ կազմակերպեցին մի շարք քաղաքներում։

Սկսեց շարժվել նաև լիբերալ բուրժուազիան։ Բայց, անտեսապես կապված լինելով ցարիզմի հետ և վախենալով մասսաների շարժումից, բուրժուազիան անընդունակ էր փոքրիշատե վճռական ելույթների։ Լիբերալները սահմանափակվում էին այն բանով, որ ցարին ուղղում էին փոքր ռեֆորմներ անցկացնելու վերաբերյալ զանազան միջնորդություններ։

Ռևոլյուցիայի մոտալուտ լինելը զգացվում էր ամենուրեք։ Պրոլետարիատը պետք է ռևոլյուցիայի դիմավորեր կազմ ու պատրաստ, ունենալով աշխատավորների պայքարը գլխավորելու ընդունակ մարտական մարքսիստական պարտիա։

Սոցիալ-դեմոկրատական շարժումը XIX դարի վերջին զգալիորեն ծավալվեց։ Կոմիտեներ ու խմբեր կային Պետերբուրգում, Մոսկվայում, Տուլայում, Տվերում (Կալինին), Իվանովո-Վոզնեսենսկում, Յարոսլավլում, Կոստրոմայում, Նիժնի Նովգորոդում, Սարատովում, Կիևում, Եկատերինոսլավում, Օդեսայում, Խարկովում, Նիկոլաևում, Բաքվում, Թիֆլիսում, Բաթումում, Գոմելում, Վիտեբսկում, Ուֆայում և այլ քաղաքներում, Դոնբասում և Սիբիրում։

Բայց այդ բոլոր կազմակերպությունները միմյանց հետ կապված չէին։ Կոմիտեները չունեին սիստեմատիկ գործունեության մտածված պլան, սահմանափակվում էին միայն տեղական նեղ-պրակտիկ աշխատանքով, իրենց առջև չդնելով համառուսաստանյան լայն քաղաքական խնդիրներ։ Տնայնագործականության և վատ կոնսպիրացիայի հետևանքով հաճախ ոստիկանությունը ջախջախում էր սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները։ Այս բոլորի հետևանքով չկար հաջորդականություն աշխատանքի մեջ։ Կազմակերպական մասնատվածությունն ուժեղանում էր սոցիալ-դեմոկրատների շրջանում եղած գաղափարական տարընթացությամբ։ Չկար բանվորական շարժման խնդիրների, դրանց լուծման ուղիների և միջոցների միասնական ըմբռնում։ Սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները ակնհայտորեն ետ էին մնում մասսաների տարերային վերելքից։ Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատիան ապրում էր տարընթացության և տատանումների ժամանակաշրջան։ Կազմակերպական անջատվածությունն ու գաղափարական տարաձայնությունն այնքան մեծ էին, որ միասնական կենտրոնացած պարտիա ստեղծելու խնդիրը անասելի դժվար էր։

Հատուկ վտանգ էին ներկայացնում «էկոնոմիստները»։ Նրանք ունեին մամուլի իրենց օրգանները՝ «Ռաբոչայա միսլ» թերթը Ռուսաստանում և «Ռաբոչեե դելո» ժուռնալը արտասահմանում։ «Էկոնոմիստները» հայտարարում էին. «Պայքար տնտեսական դրության համար, պայքար կապիտալի դեմ ամենօրյա կենսական շահերի հողի վրա և գործադուլներ՝ որպես այդ պայքարի միջոցներ—ահա բանվորական շարժման նշանաբանը»։ Որոշ «էկոնոմիստներ» այդ օպորտունիստական գաղափարը պաշտպանում էին ավելի քողարկված ձևով, քարոզելով «ստադիաների տեսությունը»։ Այդ «տեսության» համաձայն, բանվոր դասակարգն իր տնտեսական պայքարում նախ առաջ է քաշում գործադուլների ազատության պահանջը և այնուհետև անցնում է միությունների ազատության պահանջին և, վերջապես, զգուշորեն մոտենում է ամբողջությամբ վերցրած քաղաքական ազատության մտքին։

«Էկոնոմիստների» հայացքներն առավել ցայտուն կերպով արտահայտվեցին մի փաստաթղթում, որն ստացավ «Քրեդո» (հավատո հանգանակ) անունը։ «Քրեդո»-ի հեղինակներն էին Կուսկովան և Պրոկոպովիչը, որոնք հետագայում դարձան կադետներ, իսկ սովետական ժամանակ՝ սպիտակ էմիգրանտներ։ «Բանվորներին՝ տնտեսական, իսկ լիբերալներին՝ քաղաքական պայքարը»,—հայտարարում էին նրանք։ «Էկոնոմիստները» ժխտում էին պրոլետարիատի ինքնուրույն քաղաքական դերը, ժխտում էին բանվոր դասակարգի ինքնուրույն քաղաքական պարտիայի անհրաժեշտությունը։ Այդ օպորտունիստական գաղափարների քարոզը սպառնում էր պրոլետարիատին դարձնել բուրժուազիայի քաղաքական հավելուկը։

XIX դարի վերջին «էկոնոմիստները» գերակշռում էին սոցիալ-դեմոկրատական շարժման մեջ։ «Էկոնոմիզմի» առաջացումը Ռուսաստանում պայմանավորված էր նույն պատճառներով, ինչ և օպորտունիզմի երևան գալը ամեն մի կապիտալիստական երկրում, այն է՝ բանվորական շարժման մեջ բուրժուական ազդեցության թափանցումով, որը հեշտանում էր պրոլետարիատի տարասեռ կազմի, իսկ Ռուսաստանում նաև բնակչության կազմում մանր բուրժուազիայի մասսայի գերակշռության հետևանքով։ Բացի դրանից, «էկոնոմիզմի» ուժեղացմանը նպաստում էր նաև այն, որ մարքսիստական կադ-



րերի զգալի մասը գտնվում էր բանտերում ու աքսորավայրերում, իսկ նարոդնիկության դեմ մարքսիզմի տարած հաղթանակի ազդեցության տակ սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները հորդած երիտասարդությունը, որ դուրս էր եկել ինտելիգենցիայից, բավականաչափ մարքսիստական կոփվածք և քաղաքական փորձ չուներ։

«Էկոնոմիզմը» միջազգային օպորտունիզմի ռուսական տարատեսակն էր։ 90-ական թվականներին մարքսիզմն արդեն առաջատար ուժ էր Արևմտյան Եվրոպայի բանվորական շարժման մեջ, և մարքսիզմի թշնամիներն սկսեցին գունափոխվել։ Նրանք հանդես եկան Մարքսին «քննադատելու ազատության» լոզունգով, պահանջում էին նրա ուսմունքի վերանայում (ռևիզիա)։ Ռևիզիոնիստները ժխտում էին սոցիալիզմի անհրաժեշտությունն ու անխուսափելիությունը գիտականորեն հիմնավորելու հնարավորությունը և հայտարարեցին, թե սնանկ է բանվորական շարժման «վերջնական նպատակ» բուն հասկացությունը, այսինքն՝ կոմունիզմը։ Նրանք ժխտում էին մասսաների աճող թշվառությունը և կապիտալիստական հակասությունների սրումը։ Նրանք պահանջում էին հրաժարվել մարքսիզմի այնպիսի հիմնական դրույթներից, ինչպես՝ դասակարգային պայքարի տեսությունը, սոցիալիստական ռևոլյուցիան, պրոլետարիատի դիկտատուրան։ Ռևիզիոնիզմի առաջնորդ գերմանական սոցիալ-դեմոկրատ Բեռնշտայնը հայտարարում էր. «Վերջնական նպատակը ոչինչ է, շարժումը՝ ամեն ինչ», այսինքն՝ օպորտունիստների համար գլխավորը տիրող շահագործողական դասակարգերից ռեֆորմներ, բանվորների համար աննշան բարելավումներ ձեռք բերելն էր, առանց դիպչելու կապիտալիզմի հիմքերին։ Օպորտունիստները ձգտում էին սոցիալ-դեմոկրատիան սոցիալական ռևոլյուցիայի պարտիայից վերածել սոցիալական ռեֆորմների պարտիայի։ Պրոլետարիատի արմատական շահերին դավաճանող նույնպիսի ռեֆորմիստներ էին «էկոնոմիստները»։

«Էկոնոմիստների» դեմ վճռականորեն հանդես եկավ Լենինը։ Ի պատասխան «Քրեդո»-ի, 1899 թվականին նա գրեց «Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատների բողոքը», որը հաստատվեց սիբիրյան աքսորում գտնվող տասնյոթ մարքսիստների ժողովում։ Իրենց ծրագրային հայտարարության մեջ ռևոլյուցիոն մարքսիստները կոչ էին անում անհաշտ կռիվ հայտարարել «էկոնոմիզմի» բոլոր գաղափարների դեմ։ «Բողոքը» լայնորեն տարածվեց սոցիալ-դեմոկրատական կազմակերպություններում և նշանակալից դեր խաղաց Ռուսաստանում մարքսիստական պարտիայի կառուցման գործում։ «Էկոնոմիստների» դեմ պայքար սկսվեց տեղական մի շարք սոցիալ-դեմոկրատական կազմակերպություններում։ Արտասահմանում նրանց դեմ հանդես եկավ Պլեխանովը։

Անհրաժեշտ էր ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատական բոլոր ուժերը միավորել և պայքարի հանել այնպիսի չարիքի դեմ, ինչպես՝ տնայնագործականությունը, գաղափարական տատանումները, «էկոնոմիզմը»։ Դեռ աքսորավայրում Լենինը եկավ այն եզրակացության, որ մարքսիստական պարտիայի ստեղծման գործում վճռական դեր պետք է խաղա համառուսական քաղաքական թերթը։ Լենինը 1900 թվականին, հենց որ վերջացավ իր աքսորի ժամկետը, եռանդուն կերպով ձեռնամուխ եղավ թերթի կազմակերպմանը։ Նա շրջագայեց մի շարք քաղաքներ, բանակցություններ վարելով շատ սոցիալ-դեմոկրատների հետ, ներգրավելով և կազմակերպելով ապագա թերթի կողմնակիցներին։ Հող նախապատրաստելով Ռուսաստանում, Լենինը մեկնեց ար-

տասահման, որպեսզի այնտեղ կազմակերպի թերթի հրատարակումը։ Այդպիսի թերթ դարձավ «Իսկրա»-ն՝ ռևոլյուցիոն մարքսիստների համառուսական քաղաքական առաջին թերթը։ Նրա խմբագրության մեջ մտնում էին Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների ներկայացուցիչներ՝ Լենինը, Մարտովը, Պոտրեսովը և «Աշխատանքի ազատագրություն» խմբի անդամներ՝ Պլեխանովը, Աքսելրոդն ու Զասուլիչը։ «Իսկրա»-ի իսկական ոգեշնչողը, կազմակերպիչն ու ղեկավարը Լենինն էր։

1900 թվականի դեկտեմբերի 11-ին արտասահմանում լույս տեսավ «Իսկրա»-ի առաջին համարը։ Որպես բնաբան վերցվել էին դեկաբրիստների՝ Պուշկինին տված պատասխանի հետևյալ բառերը՝ «Կայծից բո՛ց կբռնկի»։ Ռուսական մարքսիստները հաստատուն կերպով կանգնած էին Մարքսի հռչակած «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» մեծ լոզունգի հողի վրա և իրենց դիտում էին որպես միջազգային բանվորական շարժման ջոկատներից մեկը։ Դրա հետ միասին նրանք ուղղակի հայտարարեցին, որ Ռուսաստանի բանվոր դասակարգը հանդես է գալիս իբրև նախորդ ռևոլյուցիոն սերունդների շարունակող և խոր համոզմունք էին հայտնում, որ հենց պրոլետարիատը կլուծի Ռուսաստանի ռևոլյուցիոն պայքարի պատմության կտակած խնդիրը։

«Իսկրա»-ի գլխավոր խնդիրը որոշվեց Լենինի գրած «Մեր շարժման կենսական խնդիրները» առաջնորդող հոդվածում։ Այդ խնդիրը Ռուսաստանում մարքսիստական պարտիա ստեղծելն էր։ Առանց այդպիսի պարտիայի, մատնանշում էր Լենինը, պրոլետարիատն՝ անընդունակ է բարձրանալու մինչև գիտակցական դասակարգային պայքարը, բանվորական շարժումը դատապարտված է անզորության և բանվոր դասակարգին երբեք չի հաջողվի կատարել իր պատմական մեծ խնդիրը՝ ազատագրել իրեն և Ռուսաստանի բոլոր աշխատավորներին քաղաքական ու տնտեսական ստրկությունից։

«Մեր առաջ,— գրում էր Լենինը,— իր ամբողջ ուժով կանգնած է թշնամու ամրոցը, որտեղից մեր գլխին ռումբերի և գնդակների տարափ է տեղում, խլելով մեր լավագույն մարտիկների կյանքը։ Մենք պետք է գրավենք այդ ամրոցը, և մենք կգրավենք այն, եթե արթնացող պրոլետարիատի բոլոր ուժերը միացնենք ռուս ռևոլյուցիոներների բոլոր ուժերին և դարձնենք մի պարտիա, որին կձգտի այն ամենը, ինչ Ռուսաստանում կենդանի է ու ազնիվ» (Երկեր, հատ. 4, էջ 477)։

Հենց պարտիայի ստեղծմանն էլ իր ուժերը նվիրեց «Իսկրա»-ն։

Իսկ ինչպե՞ս կարելի էր այն ժամանակվա իրադրության մեջ ապահովել պարտիայի ստեղծումը։ Այդ հարցին Լենինը պատասխան տվեց «Ինչի՞ց սկսել» հոդվածում, որը հրապարակվեց «Իսկրա»-ում 1901 թվականի մայիսին։ Այս հոդվածում առաջ քաշվեց մարքսիստական պարտիայի կառուցման լենինյան նշանավոր պլանը։ Գլխավորն այն է, գրում էր Լենինը, որ մասսաները պայքարի են նետվում, իսկ ռևոլյուցիոներները չունեն ղեկավարների և կազմակերպիչների շտաբ։ Եվ այն հարցին, թե «Ինչի՞ց սկսել», նա պատասխանեց՝ համառուսական քաղաքական թերթ հիմնադրելուց։ Այդպիսի թերթը կապահովի բանվորական շարժման ներսում եղած թշնամիների գաղափարական ջախջախումը և կպաշտպանի ռևոլյուցիոն տեսության անաղարտությունը։ Նա կնպաստի այն բանին, որ սահմանվի պարտիայի ծրագրային նպատակների ու տակտիկական խնդիրների, նրա պրակտիկ գործունեության եղանակների միասնական ըմբռնում։ Թերթը կլինի նաև տեղական կազմակերպությունները միասնական պարտիայի մեջ կազմակերպորեն միավորելու հզոր գործիք։ Թերթի՝ որպես համապարտիական գործի, շուրջը կառաջանա գործակալների ցանց, որոնք կոչված են նյութեր մատակարարել նրան, տարածել այն, կապել բանվորների հետ։ Թերթի կողմնակիցների կազմակերպությունը կդառնա ապագա պարտիայի միջուկը, կորիզը։



«Իսկրա»-ն իր գործունեությունն սկսում էր այնպիսի իրադրության մեջ, երբ ինքնակալության հանդեպ զայրույթը ընդգրկել էր հասարակության լայն շրջանները։ Սոցիալ-դեմոկրատական շարժման մեջ կային շատ տարբեր խմբեր, և նրանցից յուրաքանչյուրը հայտարարում էր, թե միակ ճիշտը իր հանձնարարած ուղին է։ Այդ շարժմանը մասնակցում էին նաև մանրբուրժուական ինտելիգենտները, որոնց, ըստ էության, խորթ էին պրոլետարիատի սոցիալիստական նպատակները, բայց մինչև որոշ ժամանակ նրանք հանդիսանում էին բանվոր դասակարգի ուղեկիցները, որքանով խոսքը վերաբերում էր ցարիզմի դեմ պայքարելուն։ Անհրաժեշտ էր համախմբել բոլոր ռևոլյուցիոն-մարքսիստական տարրերին, իսկ դրա համար սահմանազատվել ամեն տեսակ ուղեկիցներից, օպորտունիստական տարրերից, հստակորեն որոշել իր դիրքը։ Եվ «Իսկրա»-ն ազդարարեց.

«Նախքան միանալը և միանալու համար՝ մենք սկզբից պետք է վճռական կերպով և որոշակիորեն սահմանազատվենք» (Լենին, Երկեր, հատ. 4, էջ 455)։

Առաջին հերթին հարկավոր էր սահմանազատվել «էկոնոմիստներից՝» որպես հիմնական խոչընդոտից մարքսիստական պարտիայի ստեղծման ճանապարհին։ «Իսկրա»-ն եռանդուն պայքար ծավալեց նրանց դեմ։

Ռևոլյուցիոն մարքսիստական պարտիայի համար մղվող պայքարում աչքի ընկնող դեր խաղաց Լենինի «Ի՞նչ անել» գիրքը, որը լույս տեսավ 1902 թվականի մարտին։

Այն ելակետային դրույթը, որով տոգորված է Լենինի ամբողջ գիրքը, պարտիայի՝ որպես բանվորական շարժումը ռևոլյուցիոնացնող, ղեկավարող և կազմակերպող ուժի գաղափարն է։

Լենինը ցույց տվեց, որ «էկոնոմիզմը» մարքսիզմի վատթարագույն ծաղրանկարն է։ «էկոնոմիստները» պնդում էին՝ քանի որ պատմության մեջ ամեն ինչ կատարվում է անխախտելի օրենքներով, ապա, հետևապես, գիտակից տարրերի դերը հասարակական զարգացման մեջ չնչին է։ Դեռ ավելին, ամեն մի գիտակից պլանաչափ գործունեություն ավելորդ է, նույնիսկ վնասակար, որովհետև դա ինչ-որ բռնություն է պատմության օբյեկտիվ ընթացքի նկատմամբ։ Ուստի, ինչպես հայտարարում էին «էկոնոմիստները», պարտիան չի կարող գիտակցաբար ուղղություն տալ տարերային բանվորական շարժմանը, այլ պետք է պասսիվորեն սպասի, մինչև որ պրոլետարիատն ինքն աստիճանաբար հանգի սոցիալիզմին։

Բայց մարքսիզմը ոչ մի ընդհանուր բան չունի տարերայնության օպորտունիստական փիլիսոփայության հետ, որը բանվորների աչքում արժեքազրկում է տեսությունը, գիտակցականությունը։ Մարքսիզմը ոչ միայն չի ժխտում, այլ, ընդհակառակը, հսկայական նշանակություն է տալիս ժողովրդի առաջավոր գործիչների գիտակցականությանը, եռանդին, վճռականությանը։ Ճիշտ տեսությունը հզոր զենք է. նա օգնում է ճանաչելու ներկան և կանխա-

տանելու ապագան, հեշտացնում և արագացնում է պրոլետարիատի կողմից իր նպատակին հասնելը: Լենինը գրում էր.

«...առաջավոր մարտիկի դերը կատարել կարող է միայն այն պարտիան, որ ղեկավարվում է առաջավոր տեսությամբ» (Երկեր, հատ. 5, էջ 488):

Այդպիսի առաջավոր ռևոլյուցիոն տեսություն, ռևոլյուցիոն գործողության հուսալի ուղեցույց է մարքսիզմը:

Պրոլետարիատը պայքար է մղում ոչ միայն քաղաքականության և էկոնոմիկայի բնագավառում, այլև տեսության, իդեոլոգիայի բնագավառում: Իդեոլոգիական պայքարը բանվոր դասակարգի համար ունի բացառիկ, կենսականորեն կարևոր նշանակություն: Բանն այն է, որ կապիտալիստական հասարակության մեջ գոյություն ունի երկու իդեոլոգիա՝ բուրժուական և սոցիալիստական: Բանվոր դասակարգի հասարակական դրությունը նրան ձգում է դեպի սոցիալիզմը: Բայց բուրժուազիան, որպես տիրապետող դասակարգ, բոլոր ուժերով ձգտում է պրոլետարիատին պատվաստել իր իդեոլոգիան. «էկոնոմիստները» այդ գործում օգնում են բուրժուազիային, ժխտելով բանվոր դասակարգի մեջ սոցիալիստական գիտակցություն մտցնելու անհրաժեշտությունը, հայտարարելով, թե սոցիալիստական իդեոլոգիան ինքն իրեն է առաջանում տարերային բանվորական շարժումից: Սակայն սոցիալիստական իդեոլոգիան, այսինքն՝ մարքսիզմը, առաջանում է գիտության զարգացման պրոցեսում և բանվորական շարժման մեջ մտցվում է պարտիայի կողմից:

«...Ամեն մի խոնարհում բանվորական շարժման տարերայնության առջև,—գրում էր Լենինը,—«գիտակցական տարրի դերի, սոցիալ-դեմոկրատիայի դերի ամեն մի նվազեցում նշանակում է դրանով իսկ,— միանգամայն անկախ նրանից, ցանկանո՞ւմ է արդյոք նվազեցնողն այդ, թե ոչ, — բուրժուական իդեոլոգիայի ազդեցության ուժեղացում բանվորների վրա» (Երկեր, հատ. 5, էջ 505):

Սոցիալիստական և բուրժուական իդեոլոգիայի միջև տեղի է ունենում անհաշտ պայքար: Լենինը մատնանշում էր .

«Հարցը դրվում է միայն այսպես. բուրժուակա՞ն, թե՞ սոցիալիստական իդեոլոգիա: Միջինը չկա այստեղ... Ուստի սոցիալիստական իդեոլոգիայի ամեն մի նվաստացում, ամեն մի հեռացում նրանից՝ ինքնին նշանակում է բուրժուական իդեոլոգիայի ուժեղացում» (Նույն տեղը, էջ 507):

Հետևապես, հրամայաբար անհրաժեշտ է անընդհատ և վճռական պայքար մղել պրոլետարիատի մեջ թափանցող բուրժուական գաղափարների դեմ: Այդ պայքարը մղում է մարքսիստական պարտիան, որի կարևորագույն խնդիրն է՝ պրոլետարիատի գաղափարական ինքնուրույնության պահպանումը, սոցիալիստական իդեոլոգիայի տարածումը բանվոր դասակարգի մեջ: Պարտիան պրոլետարիատի գիտակից մասն է, որը սոցիալիստական գիտակցություն է մտցնում տարերային բանվորական շարժման մեջ:

Լենինը պարզաբանում էր, որ տարերայնության առջև խոնարհվելը պրոլետարիատի քաղաքական պարտիային վերածում է բանվորական շարժման պասսիվ ուժի: Այդպիսի պարտիան քարշ է գալիս բանվորական շարժման պոչից և բնորոշին նման չէ այդ շարժման ղեկավար շտաբի: Փաստորեն պրո-



լետարիատը մնում է առանց պարտիայի և դրանով իսկ զինաթափվում դասակարգային թշնամիների հանդեպ:

«Էկոնոմիստները» քարոզում էին խորապես սխալ ու վնասակար հայացքներ պրոլետարիատի քաղաքական պայքարի վերաբերյալ ընդհանրապես, Ռուսաստանի բանվոր դասակարգի քաղաքական խնդիրների վերաբերյալ հատկապես: Նրանք սոցիալ-դեմոկրատիային խորհուրդ էին տալիս բացառապես զբաղվել «ձեռնարկատերերի ու կառավարության դեմ բանվորների տնտեսական պայքարի» կազմակերպումով և դրանով իսկ «բուն տնտեսական պայքարին հաղորդել քաղաքական բնույթ»: Բայց ձեռնարկատերերի ու կառավարության դեմ մղվող տնտեսական պայքարը բանվորական շարժումը սահմանափակում է միայն աշխատուժի վաճառքի ձեռնտու պայմանների հարցերով, մինչդեռ պրոլետարիատը շահագրգռված է շահագործողական կարգի լիակատար ոչնչացումով և այն սոցիալիզմով փոխարինելով:

Հանուն սոցիալիզմի հաջողությամբ պայքարելու համար պրոլետարիատին անհրաժեշտ է բարձր դասակարգային քաղաքական գիտակցություն: Այդպիսի գիտակցություն պրոլետարիատի մեջ դաստիարակում է մարքսիստական պարտիան, որը սովորեցնում է նրան գիտել և ճիշտ գնահատել բոլոր դասակարգերին՝ նրանց կյանքի բոլոր արտահայտություններով, սովորեցնում է իր տեսակետից արձագանքել կամայականության ու ճնշման բոլոր դեպքերին, որ դասակարգին էլ որ դրանք վերաբերելիս լինեն:

Ռուսաստանի բանվոր դասակարգը, գրում էր Լենինը, պետք է հանդես գա որպես դեմոկրատիայի համար պայքարող առաջավոր մարտիկ, որպես ցարիզմի դեմ մղվող համաժողովրդական պայքարի կազմակերպիչ և ղեկավար: Դրա համար պրոլետարիատը պետք է ունենա այնպիսի պարտիա, որը լինի իր դասակարգի իսկական ավանգարդը: Իսկապես ավանգարդ դառնալու համար պարտիան պարտավոր է կազմակերպել ցարիզմի բազմակողմանի քաղաքական մերկացումներ և օգտագործել ժողովրդի այդ ամենաոխերիմ թշնամու դեմ ուղղված բողոքի բոլոր արտահայտությունները, պետք է բոլորի առջևում լինի ամեն մի համադեմոկրատական հարցի լուծման համար մղվող պայքարում, անշեղորեն պաշտպանելով պրոլետարիատի շահերը և նրա սոցիալիստական նպատակները: Այս է մարքսիստական պարտիայի՝ որպես իր ազատագրության համար պայքարող բանվոր դասակարգի քաղաքական ղեկավարի, կարևորագույն խնդիրներից մեկը:

«...Սոցիալ դեմոկրատի իդեալը պետք է լինի,— մատնանշում էր Լենինը,— ոչ թե տրեդ-յունիոնի քարտուղարը, այլ ժողովրդական տրիբունը, որը գիտե արձագանքել կամայականության ու ճնշման բոլոր և ամեն տեսակ արտահայտություններին, որտեղ էլ թեկուզ նրանք տեղի ունենան, որ խավին կամ դասակարգին էլ նրանք վերաբերեն,— որը գիտե ընդհանրացնել այդ բոլոր արտահայտությունները ոստիկանական բռնության և կապիտալիստական շահագործման մի ընդհանուր պատկերի մեջ,— որը գիտե օգտվել ամեն մի մանրուքից՝ բոլորի առաջ շարադրելու համար իր սոցիալիստական համոզմունքները և իր դեմոկրատական պահանջները, որպեսզի ամենքին և ամեն մեկին պարզաբանի պրոլետարիատի ազատագրական պայքարի համաշխարհային-պատմական նշանակությունը» (Երկեր, հատ. 5, էջ 561):

ժողովրդական տրիբունի լենինյան այս նշանավոր բնորոշումով էր ղեկա-

վարվում պարտիան, դաստիարակելով իր անդամներին, պահանջելով նրանցից, որ նրանք դառնան քաղաքական գործիչներ։ Պարտիական կազմակերպությունները սովորում էին կազմակերպել մասսաներին, պարզաբանելով նրանց բանվոր դասակարգի սոցիալիստական համոզմունքներն ու դեմոկրատական պահանջները։

«Էկոնոմիստների» ստրկամտությունը տարերայնության առջև քիչ վնաս չէր հասցնում նաև պրոլետարիատի կազմակերպական խնդիրների բնագավառում։ «Էկոնոմիստները» արդարացնում էին տնայնագործականությունը, նրանք ձգտում էին ստեղծել նեղ-պրոֆեսիոնալ տիպի կազմակերպություններ։ Լենինը դառնությամբ գրում էր, որ այն ժամանակվա սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների գործունեությունը հիշեցնում է մահակներով զինված գյուղացիների արշավանքը ժամանակակից զորքի դեմ։ Ցարիզմի և կապիտալիզմի դեմ մղած կռվում հաղթելու համար բանվոր դասակարգին հարկավոր էր իր ուժերի ամուր կազմակերպություն։

«...Տվե՛ք մեզ ռևոլյուցիոներների կազմակերպություն և մենք շուռ կտանք Ռուսաստանը»—ազդարարեց Լենինը (նույն տեղը, էջ 622):

Ռուսաստանի բանվոր դասակարգը իր պատմական խնդիրները կկարողանա կատարել միայն մարտական, կենտրոնացած, ռևոլյուցիոն, մասսաների հետ անխզելիորեն կապված մարքսիստական պարտիայի առկայության դեպքում։ Այդպիսի պարտիան կապահովի ռևոլյուցիոն բանվորական շարժման ամրությունն ու կայունությունը։ Անսահմանորեն նվիրված լինելով ռևոլյուցիային, նա կվայելի բանվորական ամենալայն մասսաների նույնպիսի անսահման վստահությունը։ Այդպիսի պարտիա կառուցելու համար հարկավոր են պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներների կադրեր, որոնք ամբողջովին նվիրվեին ռևոլյուցիոն աշխատանքին, համառությամբ և սիստեմատիկորեն իրենց մեջ մշակեին դրա համար անհրաժեշտ հատկություններ։ Պայքարի ընթացքում կստեղծվի փորձված և երկարատև քաղաքական դպրոցում սովորած առաջնորդների լավ համերաշխ կոլեկտիվ, առանց որոնց «անհնարին է ժամանակակից հասարակության մեջ որևէ դասակարգի տոկուն պայքարը» (Երկեր, հատ. 5, էջ 614):

Մարքսիստական պարտիան, գրում էր Լենինը, դա «սոցիալիստական բանվորական շարժման բարձրագույն ձևն է»։ Ռուսաստանում բանվորական շարժման առանձնահատկությունն այն էր, որ այդ շարժման մեջ ամենից առաջ ստեղծվեց բանվոր դասակարգի քաղաքական կազմակերպություն, որ այն ժամանակ պրոլետարիատը, բացի սոցիալ-դեմոկրատիայից, այլ դասակարգային կազմակերպություններ չուներ։ Բայց Լենինը կանխատեսում էր, որ բանվորական շարժման մեջ երևան կգան զանազան կազմակերպություններ։ Նա մատնանշում էր, որ բանվոր դասակարգի պարտիական կազմակերպությանը պետք է շրջապատեն նրա մյուս կազմակերպությունները՝ արհեստակցական, կուլտուր-լուսավորական և այլն։ Պարտիան, որպես դասակարգային կազմակերպության բարձրագույն ձև, կոչված է ղեկավարելու պրոլետարիատի մնացած բոլոր կազմակերպությունները։

Լենինը ցույց տվեց, որ Ռուսաստանի բանվոր դասակարգի ռևոլյուցիոն մարքսիստական պարտիայի առջև ծառացած են մեծագույն պատմական խնդիրներ։ Նա մարգարեաբար գրում էր.

«Պատմությունն այժմ մեր առջև դրել է մերձավորագույն մի խնդիր, որն ամենառևոլյուցիոնն է հանդիսանում որևէ այլ երկրի պրոլե-



տարիատի բոլոր մերձավորագույն խնդիրներից։ Այդ խնդրի իրականացումը, ոչ միայն եվրոպական, այլ նաև (կարող ենք մենք այժմ ասել) ասիական ռեակցիայի ամենահզոր հենցուկի խորտակումը ռուսական պրոլետարիատին կդարձներ միջազգային ռևոլյուցիոն պրոլետարիատի ավանգարդ» (նույն տեղը, էջ 492):

Վ. Ի. Լենինի «Ի՞նչ անել» գիրքը հսկայական դեր խաղաց «էկոնոմիզմի» գաղափարական ջախջախման, մարքսիզմի հիման վրա պարտիական կադրերի համախմբման, ՌՍԴԲՊ II համագումարի նախապատրաստման և Ռուսաստանում ռևոլյուցիոն մարքսիստական պարտիայի ստեղծման գործում։ Նրանում Լենինը ուժեղ հարված հասցրեց արևմտա-եվրոպական սոցիալ-դեմոկրատական պարտիաներում տեղ գտած ռևիզիոնիստներին՝ ի դեմս Բեռնշտայնի և նրա կողմնակիցների, մերկացրեց նրանց օպորտունիզմը և դավաճանությունը բանվոր դասակարգի շահերին։

Պատմական նոր դարաշրջանում, երբ մոտենում էին բուրժուազիայի դեմ պրոլետարիատի ռևոլյուցիոն մարտերը, Լենինը նոր ձևով դրեց բանվոր դասակարգի պարտիայի հարցը։ Արևմտաեվրոպական սոցիալիստական պարտիաները ղեկավարում էին պրոլետարիատի դասակարգային պայքարի ոչ բոլոր դրսևորումները։ Նրանք սահմանափակվում էին պառլամենտական գործունեությամբ։ Նրանց մեջ գնալով ավելի ուժգնորեն էր արտահայտվում օպորտունիզմը, նրանք պարտիական կադրերին ու բանվորական մասսաներին սիստեմատիկորեն չէին նախապատրաստում ռևոլյուցիայի համար։

Լենինը մարքսիստներից առաջինը տեսավ, որ բանվոր դասակարգին հարկավոր է նոր տիպի պարտիա։ Նոր տիպի պարտիայի, նրա բնույթի, բանվորական շարժման մեջ նրա դերի, նրա գործունեության հիմնական սկզբունքների վերաբերյալ իր հայացքները Լենինը շարադրեց «Ի՞նչ անել» գրքում։

«Ի՞նչ անել» գրքի պատմական նշանակությունն այն է, որ այնտեղ Լենինը մարքսիզմի պատմության մեջ առաջին անգամ մշակեց ռևոլյուցիոն մարքսիստական պարտիայի, նոր տիպի պարտիայի վերաբերյալ ուսմունքի հիմունքները.

Հիմնավորեց այն արմատական մարքսիստական դրույթը, թե մարքսիստական պարտիան բանվորական շարժման միացումն է սոցիալիզմի հետ.

Բացահայտեց գիտական սոցիալիզմի տեսության մեծագույն նշանակությունը տարերային բանվորական շարժման և պարտիայի ամբողջ գործունեության համար.

Մշակեց պարտիայի հարցը՝ որպես պրոլետարիատի քաղաքական առաջնորդի, որպես բանվորական շարժման ղեկավար ուժի, որը միավորում և ուղղություն է տալիս պրոլետարիատի դասակարգային պայքարին.

Ապացուցեց, որ անհրաժեշտ է պարտիայի ամբողջ աշխատանքը վերակառուցել մասսաներին ռևոլյուցիայի համար դաստիարակելու և նախապատրաստելու ոգով.

Ցույց տվեց, որ օպորտունիզմի գաղափարական ակունքներն են՝ ամենից առաջ բանվորական շարժման տարերայնության առջև խոնարհվելը և բանվորական շարժման մեջ սոցիալիստական գիտակցության դերի նսեմացումը։

Լենինյան «Իսկրա»-ն բարձր պարզեց մարքսիզմի ռևոլյուցիոն տեսության համար մղվող պայքարի դրոշը։ Օպորտունիստների դեմ ռևոլյուցիոներների միջազգային ճակատամարտում ռուսական մարքսիստները տեղ գրավեցին

*առաջին շարքում։ Պաշտպանելով մարքսիզմի անաղարտությունը, Լենինը ամբողջ ուժով ընդգծեց տեսության հետագա մշակման, այն պրակտիկ շարժման փորձով հարստացնելու անհրաժեշտությունը։ «Դեռևս «Իսկրա»-ի նախապատրաստման ժամանակաշրջանում Լենինը գրում էր.*

> *«Մենք Մարքսի թեորիայի վրա բնավ էլ չենք նայում որպես մի ինչ-որ ավարտուն և անձեռնմխելի բանի. մենք համոզված ենք, ընդհակառակը, որ այն դրել է միայն անկյունաքարերն այն գիտության, որը սոցիալիստները* պետք է *առաջ շարժեն բոլոր ուղղություններով, եթե նրանք չեն ցանկանում կյանքից ետ մնալ»* (Երկեր, հատ. 4, էջ 262)։

*Լենինը պարզաբանում էր, որ մարքսիզմի ընդհանուր սկզբունքները յուրաքանչյուր երկրում պետք է կիրառվեն՝ հաշվի առնելով նրա առանձնահատկությունները, որ ռուսական սոցիալիստները պետք է ինքնուրույնաբար մշակեն մարքսիստական թեորիան։ Հենց իր՝ Լենինի գործունեությունը մարքսիզմի նկատմամբ այդպիսի ստեղծագործական մոտեցման օրինակ էր։*

*Ռևոլյուցիոն մարքսիստական պարտիայի ստեղծման համար լուրջ վտանգ էր ներկայացնում նարոդնիկությունը, որ կրկին աշխուժացել էր ռևոլյուցիոն վերելքի ազդեցության տակ։ 1901 թվականի վերջին նարոդնիկական զանազան խմբերի բեկորները միավորվեցին սոցիալիստ-ռևոլյուցիոներների պարտիայի մեծադղորդ անվան տակ։ 1901—1902 թվականներին էսեռները կատարեցին մի շարք տեռորիստական ակտեր, մասնավորապես սպանեցին ցարական երկու մինիստրի։ Նարոդովոլեցության դավադրական-տեռորիստական տրադիցիաները, էսեռների զուտ արտաքին որոշ ռևոլյուցիոնությունն ազդեցություն էին գործում ռևոլյուցիոն ինտելիգենցիայի, բանվորների մի մասի և նույնիսկ ոչ-բավականաչափ կայուն ու սկզբունքորեն հետևողական սոցիալ-դեմոկրատների վրա։*

*«Իսկրա»-ն էսեռներին ամենախիստ քննադատության ենթարկեց։ Ժխտելով պրոլետարիատի, գյուղացիության և ինտելիգենցիայի միջև եղած դասակարգային տարբերությունները, էսեռները վնասում էին բանվոր դասակարգի կողմից իր ղեկավար դերը ռևոլյուցիոն պայքարում պարզելուն։ Քարոզելով ինտելիգենցիայի մենամարտ ինքնակալության դեմ, նրանք ռևոլյուցիոներների ուժերը շեղում էին դեպի անօգուտ տեռորիստական ակտերը և վիժեցնում մասսաների ռևոլյուցիոն պայքարի կազմակերպման գործը։ Առաջադրելով «հողի սոցիալիզացիայի» պահանջը, նրանք բանվորներին ու գյուղացիներին խաբում էին այն դատողություններով, թե իբր կապիտալիզմը պահպանելու դեպքում էլ կարելի է սոցիալիզմ մտցնել՝ հողի մասնավոր սեփականությունը վերացնելու և այն գյուղացիների միջև հավասար բաժանելու միջոցով։*

*«Իսկրա»-ի հիմնական խնդիրներից մեկը պարտիայի ծրագրի նախագծի մշակումն էր։ Որոշելով պարտիայի նպատակներն ու խնդիրները, ծրագիրը պետք է բաժան-բաժան սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները գաղափարապես ցեմենտեր մի միասնական պարտիայի մեջ։ 1902 թվականի հունիսին ծրագրի նախագիծը հրապարակվեց։ Նրա մեջ ճշգրիտ ու պարզորոշ կերպով որոշված են. բանվորական շարժման վերջնական նպատակը՝ կապիտալիզմի փոխարինումը սոցիալիզմով, դեպի այդ նպատակը տանող ուղիները՝ սոցիալիստական ռևոլյուցիան և պրոլետարիատի դիկտատուրան, բանվորական պարտիայի մերձավորագույն խնդիրները Ռուսաստանում՝ ռևոլյուցիոն*



*ճանապարհով ինքնակալության տապալումը, դեմոկրատական ռեսպուբլիկայի հաստատումը։*

*«Իսկրա»-ն հանդես եկավ երկրում տիրող ռևոլյուցիոն վերելքի իրադրության մեջ, առաջադրելով ցարիզմի դեմ համաժողովրդական պայքար կազմակերպելու քաղաքական լայն պլան։ Նրա գործունեությունը լուրջ դեր խաղաց գալիք ռևոլյուցիան նախապատրաստելու գործում։*

*«Իսկրա»-ն իր գլխավոր խնդիրներից մեկն էր համարում այն ժամանակվա սոցիալ-դեմոկրատական կոմիտեները վերածել պրոլետարիատի դասակարգային պայքարի ղեկավարների ու կազմակերպիչների իսկական շտաբների։ Ի տարբերություն արևմտաեվրոպական սոցիալիստական պարտիաների, որոնք սահմանափակվում էին խաղաղ պառլամենտական գործունեությամբ, «Իսկրա»-ն ռևոլյուցիոն պայքարի կոչ էր անում, բարձրացնում էր այնպիսի ռևոլյուցիոն մեթոդների նշանակությունը, ինչպես քաղաքական գործադուլներն ու ցույցերը։ Իսկրայական կոմիտեների դերը բանվորական շարժման մեջ շարունակ աճում էր, ուժեղանում էր նրանց ազդեցությունն ու ղեկավարությունը։ Գտնվելով բանվորական շարժման կենտրոնում, ՌՍԴԲՊ կոմիտեներն ամրապնդում էին իրենց կապերը մասսաների հետ, դաստիարակում էին մասսաների իսկական ղեկավարներ։*

*«Իսկրա»-ն հետևողականորեն պայքարում էր պրոլետարիատի կողմից մասսաների ռևոլյուցիոն պայքարը ղեկավարելու համար։ Նա սոցիալ-դեմոկրատների առջև խնդիր դրեց՝ «գնալ բնակչության բոլոր դասակարգերի մեջ»։ Նրա ազդեցության տակ սոցիալ-դեմոկրատական կազմակերպություններն ընդլայնեցին իրենց աշխատանքի ասպարեզը։*

*«Իսկրա»-ն հատուկ ուշադրություն էր նվիրում գյուղացիությանը՝ որպես պրոլետարիատի դաշնակցի։ «Իսկրա»-ն բանվոր դասակարգին կոչ էր անում ամեն կերպ աջակցել գյուղացիական շարժմանը։ Երբ 1902 թվականի գարնանը գյուղացիական հուզումներ սկսվեցին, սոցիալ-դեմոկրատները դրանք դիմավորեցին, պարզորոշ կերպով հասկանալով իրենց խնդիրները։ 90-ական թվականներին սոցիալ-դեմոկրատական գաղափարները գյուղ էր տանում «անկարգություններին» մասնակցելու համար քաղաքից արտաքսված բանվորը։ Այժմ ՌՍԴԲՊ կոմիտեներն անմիջականորեն են կապվում գյուղի հետ. երևան են գալիս գյուղացիներին ուղղված թռուցիկներ, կազմակերպվում են գյուղացիների շրջանում սոցիալ-դեմոկրատական պրոպագանդա մղող խմբեր։ Որքան էլ համեստ լինեին այդ առաջին հաջողությունները, դրանք վիթխարի սկզբունքային նշանակություն ունեցան՝ որպես գյուղացիների բազմամիլիոն մասսայի մեջ դասակարգային պայքարի գաղափարների և քաղաքական գիտակցականության պլանաչափ տարածման սկիզբ։*

*1903 թվականին հրատարակված «Գյուղական չքավորությանը» բրոշյուրում Լենինը միլիոնավոր գյուղացիների համար մատչելի լեզվով շարադրեց բանվորական պարտիայի քաղաքականությունը, գյուղի չքավորներին պարզաբանեց, թե ինչպիսին պետք է լինի նրանց դիրքը ռևոլյուցիոն պայքարում։*

> *«...Բոլոր ռուսական բանվորները և ամբողջ գյուղական չքավորությունը պետք է* երկու ձեռքով երկու կողմի վրա պայքար մղեն—մեկ *ձեռքով՝ պայքար ընդդեմ բոլոր* բուրժուաների՝ *բոլոր բանվորների հետ դաշնակցած, մյուս ձեռքով՝* պայքար գյուղերում ընդդեմ ատիճանա-

վորների, ընդդեմ կալվածատեր-ճորտատերերի՝ բոլոր գյուղացիների հետ դաշնակցած...

Առաջին քայլը գյուղում՝ դա գյուղացու լիակատար ազատությունն է, նրան լիակատար իրավունքներ տալը, գյուղացիական կոմիտեների հիմնումը՝ «օտրեզկաները» վերադարձնելու համար։ Իսկ մեր վերջին քայլը թե՛ քաղաքում և թե՛ գյուղում կլինի հետևյալը. կալվածատերերից ու բուրժուազիայից կխլենք բոլոր հողերն ու բոլոր ֆաբրիկաները և կկառուցենք սոցիալիստական հասարակություն» (Երկեր, հատ. 6, էջ 518, 532)։

Սոցիալ-դեմոկրատական աշխատանքը ծավալվեց բանակում։ 1902 թվականի դեկտեմբերին առաջացավ «Ռազմա-ռևոլյուցիոն կազմակերպություն»-ը, որը սերտորեն հարեց ՌՍԴԲՊ-ին։ Աճեց սոցիալ-դեմոկրատիայի ազդեցությունը սովորող երիտասարդության շրջանում։ Բարձրագույն դպրոցում ստեղծվեցին սոցիալ-դեմոկրատական խմբեր։ 1902 թվականի սկզբին կայացած Համառուսաստանյան ուսանողական համագումարը որոշում ընդունեց ըստ հնարավորին ավելի սերտորեն հարել ՌՍԴԲՊ-ին։

«Իսկրա»-ն անհրաժեշտ էր համարում օգտագործել լիբերալ բուրժուազիայի օպոզիցիոն շարժումը։ Քանի դեռ լիբերալները ձևավորված քաղաքական խումբ չէին, «Իսկրա»-ն խրախուսում էր նրանց միջավայրում դժգոհության ու բողոքի դրսևորումը, միաժամանակ քննադատելով լիբերալների կիսատ-պռատությունն ու երկչոտությունը։ Երբ 1902 թվականին երևան եկավ իր «Օսվոբոժդենիե» արտասահմանյան օրգանն ունեցող լիբերալների քաղաքական խումբը՝ Պ. Ստրուվեի գլխավորությամբ, որը հավակնում էր ղեկավարել ազատագրական շարժումը, «Իսկրա»-ի գլխավոր խնդիրը դարձավ լիբերալիզմի հակառևոլյուցիոնության մերկացումը։

Ազգային ճնշման ամեն մի դրսևորում հանդիպում էր «Իսկրա»-ի վճռական հակահարվածին։ Նա հանդես եկավ ֆինն ժողովրդի օրինական իրավունքների պաշտպանությամբ, զայրույթով նշավակելով ցարական շայկայի բռնությունները։ Նա մերկացնում էր գաղութային զավթումների քաղաքականությունը Հեռավոր Արևելքում, հանցավոր հայտարարեց ռուսական ցարիզմի և եվրոպական իմպերիալիստների կազմակերպած պատերազմը չին ժողովրդի դեմ։

Այսպես, լենինյան «Իսկրա»-ն, անշեղորեն ու հետևողականորեն ընդլայնելով բանվոր դասակարգի ներգործությունը երկրի հասարակական կյանքի բոլոր բնագավառների վրա, քաղաքական դժգոհություն էր արթնացնում բնակչության տարբեր խավերի մեջ։ «Իսկրա»-ն կառուցում էր ամեն տեսակ տնտեսական, քաղաքական, սոցիալական ու ազգային ճնշման դեմ պայքարող պարտիա, բանվոր դասակարգին դաստիարակում էր որպես ցարիզմի դեմ մղվող համաժողովրդական պայքարի ղեկավար։

«Իսկրա»-ն հետևողականորեն կենսագործում էր լենինյան կազմակերպական պլանը։ «Նամակ ընկերոջը մեր կազմակերպական խնդիրների մասին» բրոշյուրում Լենինը առաջարկեց ՌՍԴԲՊ տեղական կազմակերպության կառուցման հետևյալ սխեման։ Յուրաքանչյուր քաղաքում պետք է լինի տեղական շարժման գլուխ կանգնած մեկ պարտիական կոմիտե։ Անհրաժեշտ է վերջ տալ տեղական կազմակերպությունների աննորմալ ու վնասակար բաժանմանը երկու կոմիտեի, երկու մասի՝ բանվորական և ինտելիգենտական, ինչպես այդ անում էին «էկոնոմիստները»։ Կոմիտեի մեջ պետք է լինեն բանվորական



շարժման բոլոր գլխավոր ղեկավարները, որոնք ամենից շատ կապեր ունեն մասսաների հետ և ամենից ավելի հեղինակավորն են նրանց շրջանում։ Կոմիտեին ենթարկված են երկու տեսակ կազմակերպություններ։ Նախ՝ շրջանային խմբերն ու գործարանային ենթակոմիտեները։ Յուրաքանչյուր գործարան պետք է լինի մեր ամրոցը, պահանջում էր Լենինը։ Այդ շրջանային ու գործարանային խմբերը կոմիտեին կապում են բանվորական մասսաների հետ։ Երկրորդ, բուն կոմիտեին կից պարտիայի զանազան պահանջմունքները հոգացող խմբերը՝ պրոպագանդիստների, տրանսպորտային, տպարանային խմբերը, կոնսպիրատիվ բնակարաններ նախապատրաստող, լրտեսներին հետևող խմբերը, երիտասարդության, աջակցող չինովնիկների խմբերը և այլն։ Այդ խմբերից մի քանիսը մտնում են պարտիական կազմակերպության մեջ, մյուսները հարում են նրան, գտնվում են նրա ազդեցության տակ։ Այսպիսով, պարտիայի յուրաքանչյուր տեղական կազմակերպություն պետք է բաղկացած լիներ ղեկավար կադրերից, գերազանցապես պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներներից, և ծայրամասային խմբակների ու խմբերի լայն ցանցից։ Կազմակերպության այդպիսի կառուցումն ապահովում էր անհրաժեշտ ցենտրալիզմ, կարգապահություն, սերտ կապ մասսաների հետ, մանևրականություն և ճկունություն։ Լենինյան պլանի հիման վրա սկսվեց սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների վերակառուցումը։

«Իսկրա»-ի շուրջն ստեղծվեց պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներների ամուր կազմակերպություն։ Ստեղծվեց «Իսկրա»-ի ռուսական կազմակերպություն և «Ռուսական ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատների արտասահմանյան լիգա»։ Ընդհատակի դաժան պայմաններում, բազմաթիվ թշնամիների դեմ մղվող պայքարում կոփվեցին անձնվեր և պրոլետարիատի գործին նվիրված, սկզբունքորեն կայուն և կարգապահ, օպորտունիստական ամեն տեսակ աղանդության նկատմամբ անհաշտ, մասսաների հետ անխզելիորեն կապված պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներների կադրեր։ Այդպիսի պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներներ էին՝ Ի. Վ. Բաբուշկինը, Ն. Է. Բաումանը, Ռ. Ս. Զեմլյաչկան, Մ. Մ. Լիտվինովը, Մ. Ի. Կալինինը, Ն. Կ. Կրուպսկայան, Ս. Գ. Շահումյանը, Գ. Ի. Պետրովսկին, Օ. Ա. Պյատնիցկին, Յա. Մ. Սվերդլովը, Ի. Վ. Ստալինը, Ե. Դ. Ստասովան և շատ ուրիշ իսկրայականներ։ Պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներների իսկրայական կազմակերպությունը աչքի ընկնող դեր խաղաց պարտիայի ստեղծման և զարգացման գործում։

Պարտիայի ստեղծման համար մղված պայքարում «Իսկրա»-ն հանդես էր գալիս որպես մի միասնական ամբողջություն։ Սակայն պարտիայի ծրագրային և տակտիկական հայացքների մշակման պրոցեսում Լենինը հարկադրված էր խմբագրության ներսում հաղթահարել լուրջ երերումներ ու տատանումներ։ Խմբագրությունում տարաձայնություններ երևան եկան լիբերալ բուրժուազիայի նկատմամբ ունենալիք վերաբերմունքի հարցի շուրջը։ Լենինը կողմնակից էր լիբերալների քաղաքական թուլակամությունն ու երկչոտությունը վճռաբար քննադատելուն, նրանց հակառևոլյուցիոնությունը մերկացնելուն։ Պլեխանովն ու Աքսելրոդը լիբերալներին դիտում էին որպես ռևոլյուցիայի մեջ դաշնակիցների։

Սուր վիճաբանություններ առաջացան ծրագրի հարցերի շուրջը։ Պլեխանովը տատանումներ ցուցաբերեց պրոլետարիատի դիկտատուրայի հարցում։ Միայն Լենինի շնորհիվ ծրագրի նախագծում հստակ կերպով ձևակերպվեց

*պրոլետարիատի դիկտատուրայի վերաբերյալ մարքսիզմի հիմնական դրույթը։ Պլեխանովը պրոլետարիատին լուծում էր աշխատավորների ընդհանուր մասսայի մեջ և չէր ընդգծում, որ բանվոր դասակարգը կարող է և պետք է իր շուրջը միավորի կապիտալի կողմից բոլոր հարստահարվածներին։ Նրա մոտ բացակայում էր նաև այն միտքը, թե պարտիան պետք է ղեկավարի պրոլետարիատի դասակարգային պայքարը։ Լենինի պնդումով ծրագրի նախագծում պարզորոշ կերպով արտահայտվեցին պարտիայի պրոլետարական բնույթը և բանվոր դասակարգի հեգեմոնիայի գաղափարը, ճշգրիտ կերպով մատնանշվեց պարտիայի ավանգարդային, ղեկավար դերը բանվորական շարժման մեջ։*

*Սուր պայքար ծավալվեց ագրարային ծրագրի հարցերի շուրջը։ Լենինը առաջ քաշեց գյուղում ճորտատիրության մնացորդները ոչնչացնելու, մասնավորապես «օտրեզկաները» գյուղացիներին վերադարձնելու պահանջը։ Միևնույն ժամանակ Լենինը գտնում էր, որ ռևոլյուցիոն գյուղացիական շարժման ծավալման պայմաններում «օտրեզկաները» գյուղացիներին վերադարձնելու պահանջը անհրաժեշտ կլինի փոխարինել հողի ազգայնացման ծրագրով։ Հողի ազգայնացման վերաբերյալ լենինյան առաջարկի դեմ դուրս եկան Պլեխանովը, Աքսելրոդը և Մարտովը, ինչը վկայում էր նրանց կողմից ռևոլյուցիայի մեջ բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի նշանակությունը թերագնահատելու մասին։*

*Խմբագրության ներսում տեղի ունեցած վիճաբանություններում արդեն այն ժամանակ երևան եկավ երկու քաղաքական գիծ՝ ռևոլյուցիոն-մարքսիստական և օպորտունիստական։ Կարևորագույն սկզբունքային հարցերի շուրջը տեղի ունեցող սուր բախումները երբեմն սպառնում էին կազմալուծել «Իսկրա»-ի ղեկավարների կոլեկտիվը, բայց բանն այն ժամանակ պառակտման չհասավ։*

*Լենինի ղեկավարությունն ապահովեց «Իսկրա»-ի ռևոլյուցիոն-մարքսիստական դիրքավորումը բանվորական շարժման բոլոր հարցերում։ Լենինը հետագայում հին «Իսկրա»-ն բնութագրում էր որպես իր ուղղությամբ միանգամայն բոլշևիկյան թերթ։*

> *«Բոլշևիզմը,— գրում էր Լենինը,— երեք տարվա ընթացքում, 1900—1903, վարեց հին «Իսկրա»-ն և պայքարի դուրս եկավ մենշևիզմի դեմ իբրև մի ամբողջական ուղղություն»* (Երկեր, հատ. 16, էջ 61)։

*«Իսկրա»-ն իր աշխատանքն սկսում էր գաղափարական տատանումների և կազմակերպական քաոսի պայմաններում։ «Իսկրա»-ի գրեթե եռամյա գործունեության հետևանքով գաղափարապես և կազմակերպորեն նախապատրաստվեց ռևոլյուցիոն մարքսիստական պարտիայի ստեղծումը։ 1902 թվականի երկրորդ կեսին՝ 1903 թվականի սկզբին, բոլոր կոմիտեները (բացի Վորոնեժի կոմիտեից, որտեղ դեռևս տեր ու տնօրեն էին «էկոնոմիստները») միացան «Իսկրա»-ին։ «Իսկրա»-ի հաղթանակն անհրաժեշտ էր ամրապնդել պարտիայի համագումարում։*

## 3. ՌՍԴԲՊ II ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ։ ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ ՊԱՐՏԻԱՅԻ ԱՌԱՋԱՑՈՒՄԸ։

*ՌՍԴԲՊ II համագումարն իր նիստերը գումարում էր գաղտնի, սկզբում Բրյուսելում, այնուհետև՝ Լոնդոնում 1903 թվականի հուլիսի 17-ից մինչև օգոստոսի 10-ը։ Համագումարում կար 43 պատգամավոր, որոնք ներկայացնում էին 26 կազմակերպություն և ունեին 51 վճռական ձայն։ Խնամքով նախապատրաստելու, լրիվ ներկայացուցչության, լուծման ենթակա հարցերի լայն շրջանի տեսակետից ՌՍԴԲՊ II համագումարը չտեսնված մի երևույթ էր ռուսական ռևոլյուցիոն շարժման ամբողջ պատմության մեջ։ Համագումարի նախօրյակին և նրա աշխատանքի ժամանակ հարավում անցավ ընդհանուր գործադուլների վիթխարի ալիք։ Պատգամավորները համագումար եկան՝ իրենց հետ բերելով մոտեցող ռևոլյուցիոն փոթորկի շունչը։*

*ՌՍԲԴՊ II համագումարի գլխավոր խնդիրը, ինչպես մատնանշում էր Լենինը, իսկական ռևոլյուցիոն բանվորական պարտիայի ստեղծումն էր այն սկզբունքային ու կազմակերպական հիմունքներով, որ առաջադրել ու մշակել էր «Իսկրա»-ն։ Այդ խնդիրը լուծվում էր օպորտունիզմի դեմ մղվող սուր պայքարում։*

*«Իսկրա»-ն համագումարում մեծամասնություն ուներ՝ 33 ձայն։ Հակաիսկրայականներն ունեին 8 ձայն (3 «էկոնոմիստ» և 5 բունդական)։ «Հարավային բանվոր» խմբի հետևից գնում էին տատանվողները՝ ցենտրիստները, կամ «ճահիճը», ինչպես նրանց անվանում էր Լենինը. նրանք ունեին 10 ձայն։ Թեև համագումարի մեծամասնությունը պատկանում էր «Իսկրա»-ի կողմնակիցներին, բայց իրենց իսկրայականների շարքը դասողներից ոչ բոլորն էին իսկական իսկրայական-լենինյաններ։ Կայուն և հետևողական իսկրայականները՝ Լենինի կողմնակիցները, ունեին 24 ձայն. Մարտովի հետևից գնացող, այսպես կոչված, «մեղմ» իսկրայականները՝ ապագա մենշևիկները, ունեին 9 ձայն։ Հակաիսկրայականները փորձում էին իրենց նպատակների համար օգտագործել իսկրայականների միջև եղած ամեն մի տարաձայնություն։*

*Պարտիան ստեղծելու գործում համագումարն ստիպված էր հաղթահարել մի այնպիսի արգելք, ինչպես խմբակայնությունը։ Ռուսաստանում սոցիալ-դեմոկրատիայի զարգացման յուրահատկությունն այն էր, որ այդ ժամանակ գոյություն ունեին զանազան խմբակներ, որոնք տարբեր կերպ էին հասկանում պարտիայի քաղաքականության ամենաընդհանուր հիմունքները։ Համագումարը պետք է նեղ խմբակային կապերը փոխարիներ պարտիական լայն կապով, ստեղծեր մի պարտիա, որտեղ բոլոր կազմակերպությունները գաղափարապես և կազմակերպորեն սերտորեն կապված լինեին միմյանց հետ։ Պարտիայի կողմից խմբակների այդ կլանումը տեղի էր ունենում հիվանդագին կերպով, և համագումարում պարտիական սկզբունքները հաճախ բախվում էին խմբակայնության հետ։*

*Համագումարն իր աշխատանքն սկսեց պարտիայի մեջ Բունդի տեղի հարցից։ Դա պատահական չէր։ «Իսկրա»-ն պաշտպանում էր Ռուսաստանում ապրող բոլոր ազգերի առաջավոր բանվորներին միասնական, կենտրոնացած պարտիայի մեջ համախմբելու գաղափարը։ Բունդը ձգտում էր պարտիան կառուցել ֆեդերատիվ սկզբունքներով, պարտիան դիտելով որպես համապարտիական ղեկավարությունից անկախ ազգային կազմակերպությունների գումար։ Այդպիսի կազմակերպությունները միմյանց հետ թույլ կապված կլինեին և համախմբված պրոլետարական պարտիա չէին ներկայացնի։*

*Լենինը և նրա կողմնակիցներն անհաշտ պայքար էին մղում բունդական կազմակերպական նացիոնալիզմի դեմ, պարզաբանելով ֆեդերացիայի ամբողջ վնասը, որն օրինականացնում է խորթացումը պարտիայի ներքին կյանքում և հակասում է ցենտրալիզմի սկզբունքին։ Համագումարը մերժեց պարտիայի կառուցման գործում ֆեդերացիայի նացիոնալիստական սկզբունքը։ Ցեն-*

*րալիզմի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի հիմունքներով պարտիայի ստեղծման լենինյան գաղափարը հաղթանակեց։*

*Դրանից հետո համագումարը քննության առավ պարտիական ծրագրի հարցը։*

*Սուր պայքար սկսվեց ծրագրի այն դրույթի շուրջը, որ վերաբերում էր պրոլետարիատի դիկտատուրային։ Օպորտունիստների լիդերները՝ բունդական Լիբերը և «էկոնոմիստներ» Ակիմովն ու Մարտինովը, կատաղի կերպով դիմադրում էին պրոլետարիատի դիկտատուրայի վերաբերյալ դրույթը ծրագրի մեջ մտցնելուն, ընդ որում նրանք վկայակոչում էին արևմտաեվրոպական սոցիալիստական պարտիաների ծրագրերը, որոնցում չէր դրված պրոլետարիատի դիկտատուրայի նվաճման խնդիրը։ Համագումարը վճռական հարված հասցրեց օպորտունիստներին և հաստատեց պրոլետարիատի դիկտատուրայի վերաբերյալ արմատական մարքսիստական դրույթը։*

*«Էկոնոմիստները» հանդես էին գալիս ծրագրում ամրապնդված այն դրույթի դեմ, որ վերաբերում էր պարտիայի ղեկավար դերին բանվորական շարժման մեջ և համագումարին առաջարկեցին «տարերայնության տեսության» ոգով մի շարք ուղղումներ։ Համագումարը մերժեց նրանց բոլոր ուղղումները։*

*Օպորտունիստներն առանձնապես համառորեն էին առարկում գյուղացիական հարցին վերաբերող պահանջների դեմ։ Գյուղացիության ոչ-ռևոլյուցիոն լինելու վերաբերյալ պնդումներով նրանք քողարկում էին այն բանը, որ իրենք չեն կամենում և նույնիսկ վախենում են մասսաներին ոտքի հանել ռևոլյուցիայի համար։ Ըստ էության օպորտունիստները հարձակվում էին ռևոլյուցիայի մեջ պրոլետարիատի ղեկավար դերի դեմ, բանվորների և գյուղացիների դաշինքի դեմ։*

*Հանդես գալով ի պաշտպանություն ագրարային ծրագրի, Լենինն ընդգծեց, որ ճորտատիրության մնացորդները ոչնչացնելու պահանջը կրում է ռևոլյուցիոն բնույթ։*

> *«Մենք հավատում ենք,— ասում էր նա,— թե քանի որ սոցիալ-դեմոկրատիան պայքարի է դուրս եկել այժմ հանուն գյուղացիական շահերի, մենք ապագայում հաշվի կառնենք այն հարցը, որ գյուղացիական մասսան կսովորի նայել սոցիալ-դեմոկրատիայի վրա, որպես իր շահերի պաշտպանի վրա»* (Երկեր, հատ. 6, էջ 634)։

*Լուրջ վեճեր բորբոքվեցին ազգային ծրագրի շուրջը։ Մի այնպիսի բազմազգ երկրի համար, ինչպիսին Ռուսաստանն էր, ազգային հարցի վերաբերյալ ճիշտ ռևոլյուցիոն ծրագիրն ու քաղաքականությունն ունեին բացառիկ նշանակություն։ «Իսկրա»-ն առաջ քաշեց ազգերի ինքնորոշման իրավունքը ճանաչելու պահանջը։ Այդ լոզունգը Ռուսաստանի ճնշված ազգություններին պետք է գրավեր պրոլետարիատի կողմը՝ որպես ազգային ճնշման դեմ հետևողականորեն պայքարող մարտիկի, նպաստեր բանվոր դասակարգի դաստիարակմանը պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով։*

*Իսկրայական ծրագրին բունդականները հակադրեցին կուլտուր-ազգային ավտոնոմիայի պահանջը։ Դա խորապես օպորտունիստական և նացիոնալիստական մի պահանջ էր. դա բանվորներին սահմանազատում էր ըստ ազգային կուլտուրայի հատկանիշի և քայքայում պրոլետարիատի ինտերնացիոնալ դասակարգային միասնությունը, սահմանափակում էր տարբեր ազգերի աշխատավորների շահերը միայն կուլտուրայի հարցերով և շեղում նրանց ռևոլյու-*



*ցիայի համար, ամբողջ պետության դեմոկրատական վերակառուցման համար մղվող պայքարից։ Սխալ դիրք գրավեցին լեհական սոցիալ-դեմոկրատիայի ներկայացուցիչները։ Նրանք սխալ կերպով գտնում էին, թե ազգերի ինքնորոշման իրավունքի լոզունգը ձեռնտու կլինի լեհական նացիոնալիստներին և առաջարկում էին հանել այդ լոզունգը։*

*Լենինյան գաղափարները և ազգային հարցի վերաբերյալ ՌՍԴԲՊ II համագումարի ընդունած պարտիայի ծրագիրը մի հարված էին նացիոնալիզմին և խոշոր քայլ ազգային հարցի վերաբերյալ մարքսիստական տեսության և պարտիայի քաղաքականության մշակման գործում։*

*Իսկրայականները ետ մղեցին օպորտունիստների բոլոր գրոհները։ Համագումարը հաստատեց իսկրայական ծրագիրը, որը բաղկացած էր երկու մասից՝ մաքսիմում-ծրագրից և մինիմում-ծրագրից։ Մաքսիմում-ծրագրում խոսվում էր պարտիայի վերջնական նպատակի՝ սոցիալիստական հասարակարգի կառուցման մասին, նրա իրականացման պայմանի՝ սոցիալիստական ռևոլյուցիայի և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման մասին։ Մինիմում-ծրագրում խոսվում էր պարտիայի մերձավոր խնդիրների՝ ցարիզմի տապալման, բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի, դեմոկրատական ռեսպուբլիկայի հաստատման, ութժամյա աշխատանքային օրվա, բոլոր ազգերի լիակատար իրավահավասարության և նրանց ինքնորոշման իրավունքի, գյուղում ճորտատիրության մնացորդների ոչնչացման մասին։*

*II համագումարի ընդունած ծրագիրը ռևոլյուցիոն պրոլետարական պարտիայի մարքսիստական ծրագիր էր, որն արմատապես տարբեր էր արևմտաեվրոպական պարտիաների ծրագրերից։ Այն ժամանակ դա բանվորական պարտիայի՝ աշխարհում միակ ծրագիրն էր, որտեղ ձևակերպված է պրոլետարիատի դիկտատուրայի գաղափարը։ ՌՍԴԲՊ ծրագիրը ռուսական մարքսիստների տևական աշխատանքի հանրագումարն էր, որը լրջորեն հարըստացրեց մարքսիզմը։ Այդ ծրագիրը որոշեց պարտիայի հետևողական մարքսիստական քաղաքականությունը և նպաստեց պրոլետարիատին իշխանության համար մղվող ռևոլյուցիոն պայքարի ոգով դաստիարակելուն։ Պարտիան կարող էր օրինական կերպով հպարտանալ այդպիսի ծրագրով։ Նրա հիման վրա կազմավորվեց և ամրապնդվեց բոլշևիկների պարտիան։ Ղեկավարվելով այդ ծրագրով, պարտիան հաջողությամբ պայքարեց Ռուսաստանում բուրժուա-դեմոկրատական և սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար։*

*Համագումարը նշեց «Իսկրա»-ի աչքի ընկնող ծառայությունները օպորտունիզմի դեմ մղվող պայքարում, մարքսիզմի պաշտպանության ու զարգացման, պարտիայի կառուցման գործում և «Իսկրա»-ն հայտարարեց պարտիայի կենտրոնական օրգանը։ Դրանով իսկ համագումարն իսկրայական ուղղությունը ճանաչեց որպես ամբողջ պարտիայի ուղղություն։*

*Պարտիայի կանոնադրությունը, հատկապես պարտիայի անդամությանը վերաբերող առաջին պարագրաֆը քննարկելիս դրսևորվեցին երկու խիստ հակադիր մոտեցում պարտիայի հարցին։ Լենինն առաջարկեց առաջին պարագրաֆի հետևյալ ձևակերպումը՝ «Պարտիայի անդամ է համարվում ամեն ոք, ով ընդունում է նրա ծրագիրը և օժանդակում է պարտիային ինչպես նյութական միջոցներով, այնպես էլ պարտիական կազմակերպություններից որևէ մեկին անձամբ մասնակցելով»։ Ի հակակշիռ Լենինի, Մարտովը մտցրեց իր ձևակերպումը, որի համաձայն պարտիայի անդամ է «համարվում ամեն ոք, ով ընդու-*

*նում է նրա ծրագիրը, օժանդակում է պարտիային նյութական միջոցներով և նրան կանոնավոր կերպով անձնական աջակցություն է ցույց տալիս նրա կազմակերպություններից մեկի ղեկավարությամբ»: Այսպես, ուրեմն, Լենինը պարտիայի անդամությունը որոշելիս պնդում էր «պարտիական կազմակերպություններից որևէ մեկին անձամբ մասնակցելու» վրա, իսկ Մարտովն առաջարկում էր սահմանափակվել «կանոնավոր անձնական աջակցությամբ»:*

*Լենինը պարտիան դիտում էր որպես կազմակերպված մի ամբողջություն: Պարտիայի յուրաքանչյուր անդամ պարտադիր կերպով պետք է լինի պարտիական կազմակերպություններից որևէ մեկի անդամ: Դրանով ապահովվում է պարտիայի բոլոր անդամների ինչպես մարքսիստական դաստիարակությունն ու բարձր կարգապահությունը, այնպես էլ պարտիայի իսկական վերահսկողությունն ու հաստատուն ղեկավարությունը նրա յուրաքանչյուր անդամի գործունեության նկատմամբ: Պարտիան այդ դեպքում կներկայացնի միասնական պլանով գործող պարտիական կազմակերպության մարմնացում:*

*Մարտովն առաջարկում էր պարտիայի մեջ ընդունել բոլոր ցանկացողներին՝ չպարտավորեցնելով նրանց լինելու նրա կազմակերպություններից որևէ մեկի անդամ և չսահմանափակելով պարտիական կարգապահության շրջանակներով: Մարտովն ու նրա համախոհները հետևում էին II Ինտերնացիոնալի սոցիալ-դեմոկրատական պարտիաներում ընդունված բաց դռների քաղաքականությանը, մի բան, որը թուլացնում էր դեպի պրոլետարիատի պարտիական կազմակերպության խիստ կայունությունը: Մարտովականների կարծիքով ամեն մի գործադուլավոր կամ ինտելիգենտ իրավունք ուներ իրեն հաշվել պարտիայի մեջ, եթե նույնիսկ չէր մտնում և չէր ուզում մտնել պարտիական կազմակերպություններից որևէ մեկի մեջ: Այսպիսով, պարտիան կկորցներ իր հստակ կազմակերպական սահմանները, դառնալով խայտաբղետ, հեղհեղուկ ու չձևավորված մի բան:*

*Անդամության լենինյան հասկացությունը պահպանում էր մարքսիստական պարտիայի գծի կայունությունը և նրա սկզբունքների անաղարտությունը, դժվարացնում էր երերուն տարրերի մուտքը նրա մեջ:*

*«Մեր խնդիրն է,— ասում էր Լենինը,— պահպանել մեր պարտիայի ամրությունը, կայունությունն ու մաքրությունը: Մենք պետք է աշխատենք պարտիայի անդամի կոչումն ու նշանակությունն ավելի, ավելի ու ավելի բարձրացնել,— և այս պատճառով էլ ես դեմ եմ Մարտովի ձևակերպմանը»* (Երկեր, հատ. 6, էջ 642):

*Լենինը նախազգուշացնում էր այն վտանգից, որ պարտիան կարող է աղտոտվել ամեն տեսակ անկայուն, տատանվող և օպորտունիստական տարրերով: Այդ վտանգը, որ սպառնում էր ամեն մի երկրի բանվորական պարտիային, առանձնապես լուրջ էր Ռուսաստանում, որը գտնվում էր բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի նախօրյակին, որի հետևանքով էլ պարտիայի մեջ էին ձգտում մտնել մանրբուրժուական տարրերը: Պարտիայի մեջ ընդունվողներին խնամքով ընտրելու և պարտիայի անդամի կոչման նկատմամբ բարձր պահանջկոտության վերաբերյալ լենինյան ցուցումը դարձավ բոլշևիկների պարտիայի հիմնական կազմակերպական սկզբունքներից մեկը:*

*Կանոնադրության առաջին պարագրաֆի շուրջը տեղի ունեցած պայքարի սկզբունքային իմաստը հանգում էր այն հարցին, թե ինչպիսին պետք է լինի պարտիան: Լենինյանները կողմնակից էին մոնոլիտ ու մարտական, հստակ*



*կազմակերպված ու կարգապահ ռևոլյուցիոն պրոլետարական պարտիայի, մարտովականները՝ հեղհեղուկ ու խայտաբղետ, չձևավորված, մանրբուրժուական, օպորտունիստական պարտիայի: Լենինը հանդես էր գալիս պարտիայի այնպիսի ներքին կարգ ու կանոնի օգտին, որն ապահովեր նրա հետևողական ռևոլյուցիոն բնույթը: Ահա թե ինչու մարտովյան ձևակերպմանը սարի նման պաշտպան էին կանգնում բոլոր օպորտունիստական տարրերը՝ բունդականները, «էկոնոմիստները», ցենտրիստները, «մեղմ» իսկրայականները: Ակիմովից մինչև Տրոցկին բոլոր օպորտունիստների միավորման հետևանքով համագումարը 28 ձայնի մեծամասնությամբ ընդդեմ 22-ի և 1-ի ձեռնպահությամբ ընդունեց կանոնադրության առաջին պարագրաֆը Մարտովի ձևակերպումով:*

*Այդ հարցում օպորտունիստների տարած ժամանակավոր հաղթանակը լենինյաններին չսասանեց: Սուր պայքար ծավալվեց պարտիական կենտրոնների դերի հարցի շուրջը: Օպորտունիստները ամեն կերպ ձգտում էին նվազեցնել Կենտրոնական Կոմիտեի ղեկավար դերը: Նրանք առաջարկում էին սահմանափակել Կենտկոմի իրավունքը՝ ցրելու տեղական կոմիտեները, պարտիական կազմակերպությունների համար պարտադիր համարել Կենտկոմի միայն այն որոշումները, որոնք ունեն համապարտիական բնույթ: Համագումարը մերժեց այդ առաջարկները: Կանոնադրության մեջ ուղղակի ասված էր, որ Կենտկոմը «միավորում և ուղղություն է տալիս պարտիայի ամբողջ պրակտիկ գործունեությանը», բաշխում է պարտիայի ուժերն ու միջոցները, կազմակերպում է պարտիայի զանազան հիմնարկներ և ղեկավարում նրանց գործունեությունը, որ «Կենտկոմի բոլոր որոշումները պարտադիր են բոլոր կազմակերպությունների համար...»* («ՍՄԿՊ-ն համագումարների, կոնֆերենցիաների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում», Հայպետհրատ, 1954, I մ., էջ 51): *Այս բոլոր դրույթները մնացել են պարտիայի բոլոր հետագա կանոնադրություններում: Այսպիսով, կայուն իսկրայականները պարտիայի կառուցման գործում պաշտպանեցին ցենտրալիզմի սկզբունքը ի հակակշիռ ավտոնոմիզմի և ֆեդերալիզմի օպորտունիստական սկզբունքի:*

*Պարտիայի կանոնադրության համար Լենինի կողմից ղեկավարվող իսկրայականների մղած պայքարի նշանակությունը վիթխարի է: Լենինն ու նրա կողմնակիցները համագումարում պաշտպանեցին իսկրայական կազմակերպական պլանը: Այդ պլանի հիման վրա Ռուսաստանում առաջացավ և ամրապնդվեց ռևոլյուցիոն մարքսիստական պարտիան, բոլշևիկների պարտիան:*

*Կանոնադրությունը հաստատելու կապակցությամբ համագումարն ընդունեց մի շարք որոշումներ, որոնց նպատակն էր ամրապնդել պարտիականությունը: Համագումարը որոշեց վերացնել աննորմալ դրությունն արտասահմանում, որտեղ կար երկու կազմակերպություն՝ «էկոնոմիստական» «Ռուսական սոցիալ-դեմոկրատների արտասահմանի միությունը» և իսկրայական «Ռուսական ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատիայի արտասահմանյան լիգան», և «Լիգան» ճանաչվեց որպես ՌՍԴԲՊ միակ արտասահմանյան կազմակերպությունը: Ի նշան բողոքի, երկու «էկոնոմիստներ»՝ արտասահմանյան «Միության» ներկայացուցիչները, հեռացան համագումարից:*

*Բունդը համագումարում պահանջում էր իրեն ճանաչել որպես հրեական պրոլետարիատի միակ ներկայացուցիչ: Դա կնշանակեր պարտիական կազմակերպություններում բանվորներին բաժանել ըստ ազգային հատկանիշի, հրաժարվել պրոլետարիատի միասնական դասակարգային կազմակերպություննե-*

րից։ Բունդը հրեական նացիոնալիստական կազմակերպություն էր։ Համագումարը մերժեց Բունդի պահանջները։ Այն ժամանակ հինգ բունդականներ նույնպես հեռացան համագումարից, հայտարարելով, թե Բունդը դուրս է գալիս ՌՍԴԲՊ-ից։ Համագումարից յոթ օպորտունիստների հեռանալը փոխեց ուժերի հարաբերակցությունը հօգուտ կայուն իսկրայականների։

Ծրագրային, տակտիկական ու կազմակերպական հարցերում իսկրայական սկզբունքների տարած հաղթանակը պետք էր ամրապնդել խմբակայնությունը վճռականորեն լիկվիդացնելով և այնպիսի ղեկավարություն ընտրելով, որն ապահովեր պարտիայի ամբողջ գործունեության հետևողական ռևոլյուցիոն ուղղությունը։ Լենինյանները պաշտպանում էին Կենտկոմի այնպիսի կազմը, որը բաղկացած լիներ կայուն և հետևողական ռևոլյուցիոներներից։ Մարտովականները ձգտում էին, որ Կենտկոմում գերակշռեն անկայուն, օպորտունիստական տարրերը։ Կայուն իսկրայականները առաջարկեցին խմբագրությունն ընտրել հետևյալ կազմով՝ Լենին, Մարտով, Պլեխանով։ Մարտովականները պնդում էին, որ պահվի խմբագիրների ամբողջ նախկին վեցյակը։

Պատգամավորների մեծամասնությունը հաստատակամորեն պաշտպանեց իսկրայական պարտիականության հաղթանակն ամրապնդելու լենինյան պլանը։ Խմբագրությունն ընտրվեց հետևյալ կազմով՝ Լենին, Մարտով, Պլեխանով։ Կենտրոնական Կոմիտեում ընտրվեցին՝ Կրժիժանովսկին, Լենգնիկը, Նոսկովը։ Բայց Մարտովը հրաժարվեց խմբագրությունում աշխատելուց, իսկ նրա կողմնակիցները չմասնակցեցին Կենտկոմի ընտրություններին։

Կենտրոնների հարցի վերաբերյալ իր քվեարկությամբ համագումարն ամրապնդեց լենինյան սկզբունքների հաղթանակը պարտիայի մեջ։ Այդ պահից Լենինի կողմնակիցներին, որոնք պարտիայի ղեկավար օրգանների ընտրությունների ժամանակ մեծամասնություն ստացան, սկսեցին անվանել բոլշևիկներ, իսկ Լենինի հակառակորդներին՝ մենշևիկներ։ Համագումարում տեղի ունեցած մարտերում ծնված «բոլշևիկ» բառը համազոր դարձավ բանվոր դասակարգի գործին, կոմունիզմի գործին մինչև վերջ նվիրված հետևողական մարքսիստ-ռևոլյուցիոներ հասկացությանը։

Համագումարում բոլշևիկների տարած հաղթանակը նախապատրաստված էր սոցիալ-դեմոկրատական շարժման ամբողջ նախընթաց զարգացմամբ։ Համագումարում ներկայացված էին պարտիական այնպիսի կադրեր, որոնք ձևավորվել էին օպորտունիստների դեմ մղած սկզբունքային սուր պայքարում։ Մարտովականների մտադրությունը՝ պարտիայի ղեկավարությունը հանձնել անկայուն ու տատանվող տարրերին, չէր կարող նրանցից չվանել իսկրայական գծի հետևողական կողմնակիցներին։ Համագումարում խայտաբղետ օպորտունիստական տարրերի ստեղծված միավորման դեմ պարտիայի շահերը եռանդուն կերպով պաշտպանում էին խոշորագույն կոմիտեների ներկայացուցիչները՝ Պետերբուրգի կոմիտեից՝ Ա. Վ. Շոտմանը, Մոսկվայի կոմիտեից՝ Ն. Է. Բաումանը, Բաքվի կոմիտեից՝ Բ. Մ. Կնունյանցը, Դոնի կոմիտեից՝ Ս. Ի. Գուսևը, Կիևի կոմիտեից՝ Պ. Ա. Կրասիկովը, Օդեսայի կոմիտեից՝ Ռ. Ս. Զեմլյաչկան, «Հյուսիսային Միությունից»՝ Լ. Մ. Կնիպովիչը և Ա. Մ. Ստոպանին, Տուլայի կոմիտեից՝ Ս. Ի. Ստեպանովը և Դ. Ի. Ուլյանովը (Լենինի եղբայրը) և այլ կոմիտեների ներկայացուցիչներ։

Համագումարի աշխատանքի ընթացքում ավելի ու ավելի պարզորոշ էր գծագրվում Լենինի աչքի ընկնող դերը պարտիայի համար մղվող պայքարում։



Լենինի շուրջը միավորվեցին բոլոր նրանք, ովքեր մինչև վերջ պաշտպանում էին իսկրայական մարքսիստական պարտիա ստեղծելու գործը։

Ռևոլյուցիոն մարքսիստական պարտիայի, բոլշևիկների պարտիայի ստեղծումը ՌՍԴԲՊ II համագումարի հիմնական արդյունքն է։ Բանվորական շարժումը Ռուսաստանում անցավ երկար ու փշոտ ճանապարհ՝ սկսած բանվորների առաջին միություններից ու մարքսիստական խմբակներից, մինչև որ մշակեց իր բարձրագույն ձևը՝ ինքնուրույն քաղաքական պարտիան։ Այդ պարտիան ստեղծվեց լենինյան «Իսկրա»-ի մշակած գաղափարական ու կազմակերպական սկզբունքների հիման վրա, նրա հիմնական կադրերը պայքարում կոփված պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներներ էին, նրա ղեկավարները բոլշևիկ-լենինյաններն էին։

Բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պարտիայի երևան գալը կարևորագույն ուղենիշ էր Ռուսաստանի պատմության մեջ։ 90-ական թվականների կեսերից պրոլետարիատը հանդես եկավ որպես լուրջ քաղաքական ուժ երկրի կյանքում։ Իսկ իր պարտիայի ստեղծումով նա սկսեց դառնալ բոլոր աշխատավորների առաջնորդը։ ՌՍԴԲՊ ծրագրում բանվոր դասակարգը, ընչազուրկ գյուղացիական մասսաները և ճնշված ազգությունները գտան իրենց նվիրական իղձերի արտահայտությունը։ Եթե լիբերալները սահմանափակվում էին չափավոր կոնստիտուցիայի ցանկությամբ՝ պահպանելով ցարական միապետությունը, իսկ էսեռներն ավելի հեռու չէին գնում քաղաքական ազատության անորոշ պահանջից, ապա բանվորական պարտիան մասսաներին կոչ էր անում տապալել ցարական ինքնակալությունը և պաշտպանում էր ամբողջ պետական ու հասարակական կյանքի լիակատար դեմոկրատացումը, նպատակ ունենալով պայքարել հանուն սոցիալիստական ռևոլյուցիայի ու պրոլետարիատի դիկտատուրայի, հանուն հասարակությունը սոցիալիզմի հիմունքներով արմատապես վերակառուցելու։ ՌՍԴԲՊ-ն Ռուսաստանում միակ պարտիան էր, որի գործունեությունն ամբողջովին համապատասխանում էր երկրի և ժողովրդի շահերին։

II համագումարն ունի համաշխարհային-պատմական նշանակություն։ Այդ համագումարը շրջադարձային կետ էր միջազգային բանվորական շարժման մեջ։ Արևմտյան Եվրոպայում բանվորական պարտիաներն ստեղծվեցին կապիտալիզմի համեմատաբար խաղաղ զարգացման պայմաններում, երբ բուրժուական ռևոլյուցիաների դարաշրջանն արդեն ավարտվել էր, իսկ սոցիալիստական ռևոլյուցիայի դարաշրջանը դեռ չէր սկսվել։ Այդ իրադրության մեջ աստիճանաբար զարգացան բուրժուական լեգալությունից այլասերված և իրենց միջավայրում օպորտունիզմի հետ հաշտված պառլամենտական պարտիաներ։ Ռուսաստանում Բանվորական պարտիան ստեղծվում էր ռևոլյուցիայի հասունացման պայմաններում։ Նրա առջև ծառացել էին մասսաներին այդ ռևոլյուցիային նախապատրաստելու խնդիրները։ Ոստիկանական հետապընդումների կրակի տակ, օպորտունիզմի զանազան դրսևորումների դեմ մղած սուր պայքարում պարտիան կոփվում էր որպես մինչև վերջը ռևոլյուցիոն ուժ։

Ռուսաստանում մարքսիստական պարտիան երևան եկավ պատմական նոր դարաշրջանի՝ իմպերիալիզմի դարաշրջանի սկզբին, երբ պրոլետարիատը կանգնած էր ռևոլյուցիոն ճակատամարտերի շեմքին։ II Ինտերնացիոնալի պարտիաները չկարողացան տալ նոր խնդիրների ճիշտ, մարքսիստական լուծումը, նրանք բանվոր դասակարգին չէին նախապատրաստում ռևոլյուցիոն մարտերի՝ հանուն կապիտալիստական լծի տապալման և պրոլետարիատի դիկ-

*տատուրայի հաստատման։ Էնգելսի մահից հետո (1895 թվական) II Ինտեր-*
*նացիոնալի ղեկավարությունը գնալով ավելի էր թեքվում օպորտունիզմի կող-*
*մը։ XX դարի սահմանագլխին օպորտունիզմի դեմ մղած արդեն առաջին մար-*
*տերը ավարտվեցին նրանով, որ արևմտա-եվրոպական պարտիաների լիդեր-*
*ները փաստորեն ենթարկվեցին մարքսիզմի թշնամիներին, որոնք քարոզում*
*էին հրաժարվել սոցիալիստական ռևոլյուցիայից և համաձայնության գալ*
*բուրժուազիայի հետ։ II Ինտերնացիոնալում ռևոլյուցիոն տարրերը այնքան*
*թույլ էին, որ դրությունը փոխել չէին կարող։*

*Միմիայն ռուսական մարքսիստ-բոլշևիկները Լենինի գլխավորությամբ*
*գտնվեցին նոր դարաշրջանի խնդիրների բարձրության վրա, ճիշտ պատասխան*
*տալով բանվորական շարժման արմատական պրոբլեմներին։ Նրանք որոշեցին*
*պարտիայի՝ որպես պրոլետարիատի քաղաքական առաջնորդի, դերը, խնդիր*
*դրեցին աշխատավոր մասսաներին նվաճել բանվոր դասակարգի կողմը, նպա-*
*տակ ունենալով կատարել սոցիալիստական ռևոլյուցիա և հաստատել պրոլե-*
*տարիատի դիկտատուրա։ Որպես բանվորական շարժման ամենահրամայական*
*խնդիրներից մեկը, նրանք առաջ քաշեցին օպորտունիզմի դեմ վճռական պայ-*
*քարը և ցույց տվեցին այդպիսի հետևողական ու անհաշտ պայքարի օրինակ։*
*Նրանք ստեղծեցին մի պարտիա, որը բանվոր դասակարգին սիստեմատիկորեն*
*դաստիարակում էր ռևոլյուցիոն ոգով, որի մեջ ձևավորվում էին ղեկավարների*
*այնպիսի կադրեր, որոնք սերտորեն կապված էին մասսաների հետ և կարո-*
*ղանում էին ազդել նրանց վրա։*

*Բոլշևիզմը հանդիսացավ ամենառևոլյուցիոն և ամենահետևողական*
*մարքսիստական ուղղությունը միջազգային բանվորական շարժման մեջ։*
*Լենինի և նրա ղեկավարած մարքսիստների գործունեության հետևանքով առա-*
*ջին անգամ Ռուսաստանում առաջացավ նոր տիպի պարտիա, որը անհաշտ*
*էր օպորտունիզմի նկատմամբ, ռևոլյուցիոն՝ բուրժուազիայի նկատմամբ, սո-*
*ցիալական ռևոլյուցիայի և պրոլետարիատի դիկտատուրայի պարտիա՝ բոլշե-*
*վիկների պարտիա։*

*«Բոլշևիզմը,— ասում էր Լենինը,— որպես քաղաքական մտքի հո-*
*սանք և որպես քաղաքական պարտիա, գոյություն ունի 1903 թվակա-*
*նից»* (Երկեր, հատ. 31, էջ 9)։

## 4. ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ ՀԱՆՈՒՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ, ԸՆԴԴԵՄ ՄԵՆՇԵՎԻԿՆԵՐԻ.

*II համագումարից հետո դրությունը պարտիայի ներսում բարդանում էր*
*նրանով, որ պառակտում տեղի ունեցավ հենց իրենց՝ իսկրայականների մեջ.*
*«էկոնոմիստները» մինչև վերջ մերկացվել էին որպես օպորտունիստներ և ջախ-*
*ջախվել։ Հանձինս մենշևիկների պարտիան գործ ուներ նոր օպորտունիստների*
*հետ, բայց մենշևիկների իսկական օպորտունիստական էությունը դեռևս չէր*
*մերկացվել։ Յուրաքանչյուր իսկրայական պետք է իրեն պարզ հաշիվ տար, որ*
*պարտիային լուրջ վտանգ է սպառնում մենշևիկների կողմից։*

*Կատաղի, համառ պայքար սկսվեց ռևոլյուցիոներների՝ բոլշևիկների և*
*օպորտունիստների՝ մենշևիկների միջև, որը տևեց մի շարք տարիներ։ Այդ*
*պայքարը վիթխարի նշանակություն ունեցավ պարտիայի բախտի, ռևոլյու-*
*ցիայի և երկրի զարգացման համար։ Լենինն ու բոլշևիկները ձգտում էին հաս-*



*նել այն բանին, որ պարտիան գործեր համագումարի հաստատած ռևոլյուցիոն*
*մարքսիստական ծրագրի հիման վրա, կենսագործեր այդ ծրագիրը։ Մենշևիկ-*
*ները ձգտում էին պարտիային մղել օպորտունիզմի ուղին։ Հրաժարվելով հա-*
*մագումարի որոշումներին ենթարկվելուց, նրանք միևնույն ժամանակ սկրտ*
*չարին բացեիբաց կոչ անել իրենց կողմնակիցներին՝ խզելու կապերը պար-*
*տիայի հետ, բացեիբաց չհռչակեցին նոր պարտիայի ստեղծումը։ Մենշևիկ-*
*ների համագումարից անմիջապես հետո պարտիայից գաղտնի ստեղծեցին*
*իրենց հակապարտիական ֆրակցիոն կազմակերպությունը Մարտովի, Տրոց-*
*կու և Աքսելրոդի գլխավորությամբ։ Նրանք իրենց նպատակ դրին պարտիա-*
*կան կենտրոնները բոյկոտելու և պարտիական աշխատանքը կազմալուծելու*
*միջոցով զավթել պարտիայի ղեկավարությունը։ Մենշևիկները, ինչպես գրում*
*էր Մարտովը, «ապստամբություն բարձրացրին լենինիզմի դեմ»։*

*Մենշևիկները պարտիայի դեմ մղվող պայքարի հենակետ դարձրին «Ար-*
*տասահմանյան լիգան», որտեղ առանձնապես ուժեղ էին խմբակային տրա-*
*դիցիաները, գերակշռում էին ինտելիգենտները և բացակայում էր անմիջական*
*կապը բանվորական մասսայի հետ։ Հետզհետե մենշևիկները զավթեցին բոլոր*
*պարտիական կենտրոնները՝ 1903 թվականի նոյեմբերին՝ «Իսկրա»-ն, իսկ*
*1904 թվականի հուլիսին՝ Կենտկոմը։ Դա նրանց հաջողվեց ոչ թե այն պատ-*
*ճառով, որ նրանք կարողացան գաղափարապես նվաճել պարտիան, համոզել*
*նրան, որ իրենք իրավացի են, այլ պարտիական կենտրոններում գտնվող*
*հաշտվողականների օգնության հետևանքով։*

*Որպես հաշտվողականության մունետիկ հանդես եկավ Պլեխանովը, որը*
*համագումարում պաշտպանում էր Լենինին, բայց համագումարից անմիջապես*
*հետո պահանջեց խմբագրություն վերադարձնել նախկին մենշևիկ խմբագիր-*
*ների ամբողջ քառյակին։ Լենինը չէր կարող հաշտվել համագումարի կամքի*
*այդպիսի խախտման հետ և դուրս եկավ խմբագրությունից։ Լենինը կոոպ-*
*տացիայի ենթարկվեց Կենտկոմում և այնտեղից պայքար մղեց օպորտունիստ-*
*ների դեմ։ Պլեխանովը բոլոր նախկին խմբագիրներին միանձնաբար կոոպ-*
*տացիայի ենթարկեց «Իսկրա»-ի խմբագրության մեջ։ Իր գործողությունները*
*նա բացատրեց «Ինչ չանել» հոդվածում։ Պլեխանովը գրում էր, թե հանուն*
*հաշտության պարտիայի մեջ, պետք է զիջումներ անել օպորտունիստներին։*
*Դա նշանակում էր սկզբունքային դիրքերը հանձնել իր հակառակորդներին։*
*Պլեխանովի հոդվածը հրճվանքով դիմավորեցին ռևոլյուցիոն մարքսիստական*
*պարտիայի բոլոր հակառակորդները։ Բուրժուական լիբերալ Ստրուվեն այդ*
*հոդվածը գնահատեց որպես «նշանակալից շրջադարձ»։*

*Հենց իր՝ Պլեխանովի գործունեությունը «ինչ չանելու» ցայտուն օրինակ*
*էր։ Սկսելով այն հայտարարությունից, թե անհրաժեշտ է զիջել մենշևիկներին,*
*թե և նրանք կանգնած են սխալ դիրքի վրա, Պլեխանովը շուտով վերջացրեց*
*նրանով, որ ինքը դարձավ թունդ մենշևիկ։ Պարտիական կադրերը անձամբ*
*համոզվում էին, թե ինչպես հիմնական սկզբունքային հարցերում օպորտու-*
*նիզմի նկատմամբ ցուցաբերած զիջողականությունից ծնունդ է առնում օպոր-*
*տունիզմի հաղթանակը։*

*Պլեխանովի հեռանալը մարքսիզմից բացատրվում է ամենից առաջ այն*
*բանով, որ նա չհասկացավ բանվոր դասակարգի նոր խնդիրները պատմական*
*նոր դարաշրջանում։ Ազդեց նաև նրա բազմամյա կտրվածությունը Ռուսաս-*
*տանի բանվորական շարժումից։ Պլեխանովի ուխտազանցության մեջ լուրջ դեր*

*խաղացին անցյալում, դեռ II համագումարից առաջ նրա ունեցած տատանումներն ու սխալները։*

*№ 52-ից «Իսկրա»-ն դադարեց ռևոլյուցիոն մարքսիզմի մարտական օրգանը, պարտիայի համար մղվող պայքարի օրգանը լինելուց։ Մենշևիկները, զավթելով «Իսկրա»-ն, այն վերածեցին պարտիայի դեմ մղվող պայքարի օրգանի, օպորտունիզմի քարոզի ամբիոնի՝ ամենից առաջ կազմակերպական հարցերի բնագավառում։ Իրենք՝ մենշևիկներն ստիպված էին ընդունել, որ «հին և նոր «Իսկրա»-ի միջև անդունդ կա»։ Խախտվում էին պարտիականության հիմքերը։ Պարտիայի որոշումների կատարման պարտադիր լինելու պահանջը հայտարարվեց «բյուրոկրատիզմ» և «ֆորմալիզմ», փոքրամասնության ենթարկումը մեծամասնությանը դիտվում էր որպես պարտիայի անդամի կամքի և ազատության «կոպիտ մեխանիկական» ճնշում, պարտիական կարգապահությունը քամահրվում էր որպես «ճորտատիրական իրավունք»։ Մենշևիկները պարտիային քաշում էին ետ, դեպի կազմակերպական մասնատվածություն ու սանձարձակություն, դեպի խմբակայնությունն ու տնայնագործականությունը։*

*Անհրաժեշտ էր վճռական ճակատամարտ տալ մենշևիկներին, մերկացնել նրանց հայացքների օպորտունիզմը կազմակերպական հարցերում, ցույց տալ մենշևիզմի ամբողջ վտանգավորությունը պարտիայի համար։ Այդ խնդիրը կատարեց Լենինը «Մի քայլ առաջ, երկու քայլ ետ» գրքում, որը լույս տեսավ 1904 թվականի մայիսին։ Պարտիայի վերաբերյալ մարքսիստական ուսմունքը այդ գրքում հետագա զարգացում ստացավ։ Նշնելով մարքսիստական պարտիայի՝ որպես պրոլետարիատի քաղաքական առաջնորդի, վերաբերյալ հայացքներից, Լենինը մշակեց բոլշևիկյան պարտիայի հետևյալ կազմակերպական սկզբունքները։*

*1)* **Մարքսիստական պարտիան** *բանվոր դասակարգի մի մասն է, նրա* **առաջավոր ջոկատը**։ *Պարտիան չի կարելի շփոթել ամբողջ դասակարգի հետ։ Պարտիան ստեղծվում է բանվոր դասակարգի լավագույն, ամենից ավելի գիտակից, կազմակերպված ու անձնազոհ, ռևոլյուցիոն գործին անսահմանորեն նվիրված մարդկանց ընտրելու միջոցով։*

*Պրոլետարիատը միատարր չէ, նրա մեջ կան խավեր, որոնք տարբերվում են իրենց գիտակցականության մակարդակով և կենսափորձով։ Ավելին, բանվոր դասակարգի շարքերը կապիտալիզմի պայմաններում շարունակ համալրվում են քայքայված գյուղացիներից և մանր արհեստավորներից եկած մարդկանցով։ Առաջավոր տարրերի և բանվորների մնացած մասսայի միջև տարբերությունն անխուսափելի է։ Ի՞նչ կդառնար պարտիան, եթե սկսեր իր շարքերն ընդունել բոլոր ցանկացողներին անխտիր։ Պարզ է, որ նա ի վիճակի չէր լինի կատարելու առաջավոր ջոկատի դերը։*

*Պարտիայի վերաբերյալ մենշևիկյան հայացքների հիմնական արատն այն էր, որ նրանք շփոթում էին պարտիան և դասակարգը։ Իրենց այն պահանջով, թե պետք է յուրաքանչյուր գործադուլավորի իրավունք վերապահել՝ իրեն հայտարարելու պարտիայի անդամ, մենշևիկները ջնջում էին ամեն մի սահման առաջավոր տարրերի և բանվորների մնացած մասսայի միջև։ Այն ժամանակ պարտիան քարշ կգար սակավ զարգացած խավերի հետամնաց տրամադրությունների պոչից, փոխանակ ամբողջ բանվոր դասակարգին բարձրացնելու նրա առաջավոր ջոկատի գիտակցականության մակարդակին։ Դա կհասցներ*



*այն բանին, որ պարտիան անխուսափելիորեն կկորցներ իր ավանգարդային դերը։*

*Պարտիան պրոլետարիատի գիտակցականության բարձրագույն արտահայտությունն է, նա իր մեջ ամփոփում է բանվոր դասակարգի ամենահարուստ փորձն ու ռևոլյուցիոն տրադիցիաները։ Պարտիան զինված է առաջավոր, ռևոլյուցիոն տեսությամբ՝ հասարակական զարգացման ու դասակարգային պայքարի օրենքների իմացությամբ, ուստի և ի վիճակի է ղեկավարելու բանվոր դասակարգին։*

*2) Պարտիան բանվոր դասակարգի ոչ միայն առաջավոր,* **այլև կազմակերպված ջոկատն է**։ *Պարտիան միայն այն ժամանակ կկարողանա կատարել առաջավոր ջոկատի իր դերը, եթե կազմակերպված լինի որպես բանվոր դասակարգի մի միասնական, ընդհանուր ջոկատ՝ զոդված կամքի միասնությամբ, գործողությունների միասնությամբ, կարգապահության միասնությամբ։*

*Պրոլետարիատի գործողությունների միասնության համար անհրաժեշտ է կամքի միասնություն, իսկ միասնական կամքն աներևակայելի է առանց կազմակերպության։ Պարտիան, որպես բանվոր դասակարգի գիտակից ջոկատ, նրա կազմակերպվածության մարմնացումն է։ Պարտիան կկարողանա կատարել բանվոր դասակարգի պայքարի ղեկավարման իր խնդիրները, եթե նա լինի համախմբված կազմակերպություն։*

*Մենշևիկները փորձում էին պարտիային վախեցնել նրանով, թե ինտելիգենտներից շատերը պարտիայից դուրս կմնան, որովհետև նրանք նեղվում են պարտիական կարգապահությունից և չեն ցանկանում պարտիական կազմակերպության մեջ մտնել։ Բայց բանվոր դասակարգի պարտիային պետք չեն ինդիվիդուալիստորեն տրամադրված ինտելիգենտներ։ Պրոլետարիատը չի վախենում կազմակերպությունից ու կարգապահությունից։ Բանվորների ամբողջ կյանքը նրանց կազմակերպության է վարժեցնում։ Կապիտալիստական խոշոր արտադրությունը միավորում և կարգապահության է վարժեցնում պրոլետարիատին, դասակարգային պայքարն օգնում է հեշտությամբ յուրացնել կազմակերպության ու կարգապահության անհրաժեշտությունը։ Ուստի առաջավոր բանվորը գնահատում է կազմակերպությունը, հասկանում է նրա նշանակությունը պայքարում։*

*Պրոլետարիատը միատարր չէ ո՛չ միայն գիտակցականության մակարդակով, այլև կազմակերպվածության աստիճանով։ Կազմակերպվածությունն ու գիտակցականությունը սերտորեն կապված են միմյանց հետ։ Որքան ավելի բարձր է գիտակցականությունը, այնքան ավելի կատարյալ է կազմակերպությունը։ Բանվորների մեջ կան նաև բոլորովին հետամնաց, անկազմակերպ տարրեր և այնպիսի՝ սակավ զարգացած տարրեր, որոնց համար մատչելի է միայն արհեստակցական կազմակերպությունը։ Պարտիան, որպես բանվոր դասակարգի առաջավոր ջոկատ, պրոլետարիատի ամենակատարյալ դասակարգային կազմակերպությունն է։*

*3) Պարտիան ամուր և համախմբված կազմակերպություն կլինի միայն այն պայմանով, եթե կառուցվի* **ցենտրալիզմի** *սկզբունքներով։ Ցենտրալիզմի սկզբունքը նշանակում է պարտիայի ղեկավարում կենտրոնից, որն իրականացնում է պարտիայի համագումարը, իսկ համագումարների միջև՝ Կենտրոնական Կոմիտեն, փոքրամասնության խստիվ ենթարկում մեծամասնությանը,*

ստորին կազմակերպությունների ենթարկում վերադաս կազմակերպություններին:

Ցարական ինքնակալության պայմաններում պարտիայի անլեգալ գոյության պատճառով պարտիական կազմակերպությունները չէին կարող կառուցվել ընտրովիության սկզբունքներով. նրանք կառուցվում էին վերևից և ունեին խիստ կոնսպիրատիվ բնույթ: Բայց Լենինը գտնում էր, որ երբ պարտիան լեգալ դառնա, պարտիական կազմակերպությունները կկառուցվեն դեմոկրատական ցենտրալիզմի հիման վրա:

Մենշևիկները դեմագոգիկ կերպով հայտարարում էին, թե ցենտրալիզմը իբր պարտիային վերածում է «ֆաբրիկայի», իսկ նրա անդամներին՝ «փոքրիկ անիվների ու պտուտակների»: Իրականում մենշևիկները դուրս էին գալիս պարտիական կարգապահության դեմ, նրանք պարտիային քաշում էին ետ՝ դեպի այն ժամանակները, երբ յուրաքանչյուր կազմակերպություն գործում էր ըստ իր հայեցողության, իր նկատմամբ չճանաչելով ոչ մի իշխանություն՝ ի դեմս համապարտիական օրգանների:

«...Առաջ,—գրում էր Լենինը,—մեր պարտիան ձևականորեն կազմակերպված ամբողջություն չէր, այլ սոսկ մասնավոր խմբերի գումար, ուստի և այլ հարաբերություններ այդ խմբերի միջև, բացի գաղափարական ներգործությունից, չէր էլ կարող լինել: Այժմ մենք դարձանք կազմակերպված պարտիա, իսկ այս հենց նշանակում է իշխանության ստեղծում, գաղափարների հեղինակության վերածում իշխանության հեղինակության, պարտիական ստորին ինստանցիաների ենթարկում բարձրագույն ինստանցիաներին» (Երկեր, հատ. 7, էջ 470—471):

Առանց կենտրոնից ցույց տրվող միասնական ղեկավարության բանվոր դասակարգի պարտիան չի կարող իսկական պարտիա լինել, չի կարող կատարել պրոլետարիատի դասակարգային պայքարի ղեկավարման իր խնդիրները:

4) Միասնական ու կենտրոնացած պարտիան աներևակայելի է առանց կարգապահության: Կազմակերպությունը և կարգապահությունը սերտորեն կապված են միմյանց հետ: Ամուր կազմակերպությունն անհնարին է առանց խիստ կարգապահության: Քննարկման ու քննադատության ազատություն, գործողության միասնություն—Լենինը այսպես էր բնորոշում կարգապահությունը բանվորական պարտիայի մեջ: Որոշումն ընդունելուց հետո պարտիայի բոլոր անդամները պետք է գործեն որպես մեկ մարդ, որովհետև կազմակերպվածությունը գործողության միասնություն է:

Մենշևիկները, բոյկոտելով համագումարի և Կենտկոմի որոշումները, իրականում քայքայում էին կարգապահությունը պարտիայի մեջ: Նրանք քարոզում էին, թե համագումարի որոշումները պարտադիր չեն պարտիայի անդամների համար, մանավանդ «ընտրյալների»՝ լիդերների համար: Բայց բանվոր դասակարգի պարտիայի մեջ չի կարող այնպիսի կարգ սահմանվել, երբ նրա որոշումները պարտիայի շարքային անդամների համար պարտադիր են, իսկ ղեկավարների համար՝ ոչ պարտադիր: Այդպիսի «կարգը» լուրջ սպառնալիք է ստեղծում պարտիայի միասնության համար:

«Ամեն մի պրոլետարական կազմակերպություն և կարգապահություն,— գրում էր Լենինը,— թվում է ճորտատիրական իրավունք ինտելիգենտական ինդիվիդուալիզմին, որն արդեն իրեն ցույց տվեց §1-ի վերաբերյալ վեճերում, իր հակումը երևան բերելով դեպի օպորտունիստական դատողությունն ու անիշխանական ֆրազը» (Երկեր, հատ. 7, էջ 456):



Պարտիայի իսկական միասնությունը ոչ միայն գաղափարական միասնությունն է, այլև կազմակերպության միասնությունը, որն աներևակայելի է առանց պարտիայի բոլոր անդամների համար պարտադիր միասնական կարգապահության:

5) Մարքսիստական պարտիան մարմնացումն է այն կապի, որ ունի առաջավոր ջոկատը բանվոր դասակարգի միլիոնավոր մասսաների հետ:

Լենինը բացահայտեց մենշևիկների այն պնդումների արատավորությունը, թե առաջավոր տարրերի առանձնացումը կենտրոնացած ու կարգապահ կազմակերպության մեջ թուլացնում է նրանց կապերը մասսաների հետ, թե այդպիսի սկզբունքներով կառուցված պարտիան կկտրվի մասսաներից:

«Ընդհակառակը,— պատասխանում էր Լենինը,— որքան ավելի ամուր լինեն իսկական սոցիալ-դեմոկրատներ ունեցող մեր պարտիական կազմակերպությունները, որքան պակաս լինեն պարտիայի ներսում երերունությունն ու անկայունությունը, այնքան ավելի լայն, ավելի բազմակողմանի, ավելի հարուստ և ավելի արդյունավետ կլինի պարտիայի ազդեցությունը նրան շրջապատող, նրա ղեկավարած բանվորական մասսաների տարրերի վրա» (նույն տեղը, էջ 325):

Պարտիայի անդուլ հոգսը անպարտիական մասսաների հետ կապերի բազմապատկումն ու ամրապնդումն է, իր դասակարգի վստահության նվաճումը: Առանց բանվորական մասսաների հետ կապն ամրապնդելու, առանց նրանց աջակցության մարքսիստական պարտիան չի կարող զարգանալ:

6) Պարտիան ամրապնդվում է և նրա կապերը մասսաների հետ բազմապատկվում են, եթե նրա մեջ կենսագործվում են ներպարտիական դեմոկրատիան և ինքնաքննադատությունը:

Անհրաժեշտ է ամեն կերպ բարձրացնել պարտիայի բոլոր անդամների ակտիվությունը, հասնել այն բանին, որ նրանք բոլորը մասնակցեն պարտիական կյանքի կարևորագույն հարցերի քննարկմանը:

«Որպեսզի միայն խոսքով չդառնանք մասսաների պարտիա,— գրում էր Լենինը,— մենք պետք է ավելի ու ավելի լայն մասսաների մասնակից դարձնենք բոլոր պարտիական գործերին...» (նույն տեղը, էջ 131):

Մարքսիստական պարտիան իր պարտականությունն է համարում կատարել «ինքնաքննադատության և սեփական մինուսների անողոք մերկացման աշխատանք» (նույն տեղը, էջ 255), դա համարելով իր գործունեության մեջ եղած թերությունների հաղթահարման և պարտիական կադրերի դաստիարակման կարևորագույն միջոցը:

7) Մարքսիստական պարտիան պրոլետարիատի դասակարգային կազմակերպության բարձրագույն ձևն է:

Լենինը պարզաբանում էր, որ մենշևիկները, ջնջելով պարտիայի՝ որպես քաղաքական կազմակերպության, և բանվոր դասակարգի միջև եղած սահմանները, իրականում ժխտում էին պարտիայի՝ որպես բանվորական շարժման ղեկավար կազմակերպության, նշանակությունը:

Մարքսիստական պարտիան միավորում է բանվոր դասակարգի առավել գիտակից և կազմակերպված տարրերին: Նա զինված է հասարակական զար-

*գացման օրենքների իմացությամբ, ունի պարզորոշ ծրագիր և ճկուն տակտիկա։ Այդպիսի պարտիան բանվոր դասակարգի լիդերների դաստիարակման ամենալավագույն դպրոցն է. նրա շարքերում առաջավոր բանվորները ձեռք են բերում տեսական գիտելիքներ և քաղաքական փորձ, որոնք անհրաժեշտ են պրոլետարիատի դասակարգային պայքարի բոլոր դրսևորումները ղեկավարելու համար։ Մասնակցելով պրոլետարիատի ամենօրյա պայքարին, անսասանորեն պաշտպանելով նրա արմատական շահերը, պարտիան, նրա կոմիտեներն ու գործիչները նվաճում են բանվորական մասսաների վստահությունը։ Այդ բոլորը հնարավորություն է տալիս պարտիային՝ որպես քաղաքական կազմակերպության, ապահովելու պրոլետարիատի մնացած բոլոր կազմակերպությունների ղեկավարումը, նրանց համերաշխ ու համաձայնեցված գործողությունների մշակումը, նրանց գործունեության ուղղումը մեկ միասնական նպատակի՝ շահագործողական կարգի տապալմանը և սոցիալիստական կարգերի հաստատմանը։*

*Լենինը ցույց տվեց, որ մենշևիկների հայացքները, որոնք իրենց արտահայտությունը գտան կանոնադրության առաջին պարագրաֆի վերաբերյալ դիսկուսիայում, վերաճեցին մի ամբողջ օպորտունիստական սիստեմի։ Մենշևիկների կազմակերպական օպորտունիզմի հիմնական գծերն են՝ թշնամանքը դեպի ցենտրալիզմը, առելությունը դեպի կարգապահությունը, կազմակերպական հետամնացության պաշտպանությունը, բանվորական պարտիայի դռների լայն բացումը մանրբուրժուական, օպորտունիստական տարրերի համար, պարտիայի՝ որպես պրոլետարիատի դիկտատուրայի, բանվոր դասակարգի՝ սոցիալիզմի համար մղած պայքարում նրա գործիքի, դերի ժխտումը։*

*Կազմակերպության հարցերի նկատմամբ բոլշևիկների ու մենշևիկների մոտեցման արմատական հակադրությունը պարտիայի կառուցման գործում եղած երկու հակադիր տենդենցների արտահայտությունն էր։ Բոլշևիկները պրոլետարական կազմակերպվածության ու կարգապահության ներկայացուցիչներն էին, իսկ մենշևիկները՝ բուրժուական-ինտելիգենտական ինդիվիդուալիզմի կողմնակիցները։*

*Մարքսիզմի պատմության մեջ առաջին անգամ տրվեց կազմակերպական օպորտունիզմի սպառիչ քննադատությունը, ցույց տրվեց կազմակերպության նշանակությունը նվաճելու հատուկ վտանգավորությունը բանվորական շարժման համար։ Լենինն իր աշխատության մեջ հսկայական ուժով բացահայտում է մարքսիստական պարտիայի վիթխարի նշանակությունը բանվոր դասակարգի մղած պայքարում, հատկապես պատմական նոր ժամանակաշրջանում, երբ Ռուսաստանում բարձրանում էր մեծագույն ժողովրդական ռևոլյուցիան, իսկ կապիտալիստական աշխարհը հասունացել էր սոցիալիստական հեղաշրջման համար։*

> *«Պրոլետարիատն այլ զենք չունի իշխանության համար մղվող պայքարում, բացի կազմակերպությունից։ Բուրժուական աշխարհում տիրող անարխիական մրցակցության գերիշխանությամբ բաժան-բաժան, կապիտալի համար կատարվող հարկադրական աշխատանքից ճզմված, շարունակաբար լիակատար թշվառության, վայրենացման և այլասերման «հատակը» նետվող պրոլետարիատը կարող է դառնալ և անխուսափելիորեն կդառնա անհաղթելի ուժ միայն շնորհիվ այն բանի, որ նրա գաղափարական միավորումը մարքսիզմի սկզբունքներով ամրապնդվում է այն կազմակերպության նյութական միասնությամբ, որը միլիոնավոր աշխատավորներ է միացնում, ստեղծելով բանվոր դասակարգի բանակ։ Այդ բանակին չի դիմանա ո՛չ ռուսական ինքնակալության զառամած իշխանությունը, ո՛չ էլ միջազգային կապիտալի զառամող իշխանությունը* (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 7, էջ 535—536)։



*«Պրոլետարիատն այլ զենք չունի իշխանության համար մղվող պայքարում, բացի կազմակերպությունից»—լենինյան այդ դրույթը դարձավ բոլշևիզմի անկյունաքարերից մեկը։*

*Պարտիայի համար մղած պայքարում պարտիական կադրերը ցուցաբերեցին հասունություն և լենինյան կազմակերպական գաղափարների խոր ըմբռնում։ Շատ կոմիտեներ հանդես եկան մենշևիկյան «Իսկրա»-ի սուր քննադատությամբ։ Ուրալի կոմիտեները պարտիայի, նրա կազմակերպական հիմունքների հարցը ուղղակի կապում էին պրոլետարիատի դիկտատուրայի համար մղվող պայքարի խնդիրների հետ։ «Պրոլետարիատի նախապատրաստումը դիկտատուրայի համար,— գրում էին ուրալցիները,— այնպիսի կարևոր կազմակերպական խնդիր է, որ դրան պետք է ենթարկվեն մյուս բոլոր խնդիրները։ Նախապատրաստումը, ի միջի այլոց, այն է, որ պետք է տրամադրություն ստեղծել ուժեղ, տիրական պրոլետարական կազմակերպության օգտին, վեր հանել նրա ամբողջ նշանակությունը»* («Третий съезд РСДРП», сборник документов и материалов, Госполитиздат, 1955, стр. 146)։

*Լենինին վիճակվեց հանուն պարտիայի պայքար մղել արևմտաեվրոպական սոցիալ-դեմոկրատական պարտիաների ղեկավարության աջակցության բացակայության և նույնիսկ ուղղակի թշնամանքի պայմաններում։ II Ինտերնացիոնալի լիդերները հանդես եկան Լենինի դեմ, որը մարքսիզմի մեջ նոր խոսք էր ասել պարտիայի դերի, նրա բնույթի ու կազմակերպության սկզբունքների մասին, պարտիայի կադրերին օպորտունիզմի դեմ մղվող վճռական ու անհաշտ պայքարում դաստիարակելու մասին։ Բոլշևիկների դեմ մղած պայքարում մենշևիկները կարող էին հենվել այն ժամանակ ճանաչված այնպիսի հեղինակությունների վրա, ինչպես Ա. Բեբելը, Կ. Կաուցկին։*

*Բոլշևիկները արժանի պատասխան տվեցին II Ինտերնացիոնալի լիդերներին։ Մի շարք հոդվածներում, մասնավորապես 1904 թվականին II Ինտերնացիոնալի Ամստերդամի կոնգրեսում ունեցած ելույթներում, բոլշևիկներն ուղղակի հայտարարեցին, թե պարտիայի կանոնադրության առաջին պարագրաֆի լենինյան ձևակերպումը հաշվի է առել գերմանական սոցիալ-դեմոկրատների տխուր փորձը։ Գերմանական սոցիալ-դեմոկրատիայի կանոնադրությունը չէր պահանջում, որ պարտիայի անդամը պատկանի պարտիական կազմակերպություններից որևէ մեկին, և դա օպորտունիստական տարրերը լայնորեն օգտագործեցին ի վնաս պարտիայի։*

*Բոլշևիկները հրաժարվում էին պարտիան II Ինտերնացիոնալի պարտիաների օրինակով և նմանողությամբ կառուցելուց։ Ուշադիր կերպով ուսումնասիրելով ու քննադատորեն վերամշակելով միջազգային և ռուսական բանվորական շարժման փորձը, նրանք Լենինի առաջնորդությամբ համարձակորեն կառուցում էին նոր տիպի պարտիա։*

*1904 թվականի ամռանը պարտիայի վիճակը շատ ծանր էր։ Մենշևիկյան լիդերները, զավթելով պարտիական կենտրոնները, սկսեցին պառակտել տեղական պարտիական կազմակերպությունները։ Մենշևիկների կազմալուծիչ*

աշխատանքը քայքայում էր բանվոր դասակարգի գործողությունների միասնությունը։ Այդպիսի դրությունը անհանդուրժելի էր մանավանդ այն պատճառով, որ երկրում ստեղծված ռևոլյուցիոն իրադրությունը պահանջում էր համախմբել պարտիայի ուժերը և ապահովել պրոլետարիատի մարտական միասնությունը։

Պարտիան համախմբելու գործում մեծ դեր խաղաց 1904 թվականի օգոստոսին Լենինի ղեկավարությամբ Շվեյցարիայում տեղի ունեցած 22 բոլշևիկների խորհրդակցությունը։ Այդ խորհրդակցությունում ընդունված «Պարտիային» դիմումը պարտիական կազմակերպություններին կոչ էր անում պայքարել III համագումարի հրավիրման համար, որը կսանձահարի մենշևիկներին և կստեղծի պարտիայի կամքին համապատասխանող նոր ղեկավարություն։

1904 թվականի սեպտեմբեր-դեկտեմբերին կայացան երեք կոնֆերենցիաներ՝ հարավային, կովկասյան և հյուսիսային կոնֆերենցիաները, որտեղ ներկայացված էին 13 կոմիտեներ։ Այդ կոնֆերենցիաներում ձևավորվեց մեծամասնության կոմիտեների բյուրո (ՄԿԲ) Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ։ 1904 թվականի դեկտեմբերի 22-ին լույս տեսավ «Վպերյոդ»-ի՝ հին «Իսկրա»-ի գործի արժանավոր շարունակողի, առաջին համարը։ Թերթի խմբագրության մեջ մտնում էին՝ Վ. Ի. Լենինը, Ա. Վ. Լունաչարսկին, Վ. Վ. Վորովսկին, Մ. Ս. Օլմինսկին։

Բոլշևիկների հետևից էին գնում հիմնական արդյունաբերական շրջանները և խոշոր կենտրոնները՝ Պետերբուրգը, Մոսկվան, Ռիգան, Բաքուն, Եկատերինոսլավը, Օդեսան, Դոնբասը, Կենտրոնական-արդյունաբերական շրջանը, Ուրալը։ Պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներների հիմնական կադրերը ամբողջովին պաշտպանում էին Լենինին։ Բոլշևիզմի համար մղվող պայքարում աճեցին նոր պարտիական ուժեր։ Պարտիան, նրա հսկայական մեծամասնությունը քննադատաբար ստուգեց այնպիսի ղեկավարների, ինչպես՝ Պլեխանովը, Աքսելրոդը, Մարտովը, մերժեց նրանց և համախմբվեց Լենինի շուրջը՝ որպես իր առաջնորդի։

## ՀԱՄԱՌՈՏ ԵԶՐԱԿԱՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Ռուսական ռևոլյուցիային նախորդող տասնամյակը (1894—1904 թվականներ) ժողովրդի կյանքում կատարված խոշոր փոփոխությունների ժամանակ էր։ Լենինը նշում էր, որ բանվոր դասակարգի՝ որպես ամենահզոր ռևոլյուցիոն ուժի, հանդես գալով սկսվեց ռուսական պատմության նոր դարաշրջանը։

90-ական թվականների կեսերին ավարտվեց ռուսական ռևոլյուցիոներների կողմից ճիշտ, իսկապես գիտական ռևոլյուցիոն տեսության որոնումների կեսդարյա պատմությունը։ Անհամար զոհերի, զանազան տեսություններ պրակտիկայում ստուգելու և քննադատաբար զուգադրելու գնով ռևոլյուցիոն միտքն ու բանվորական շարժումը Ռուսաստանում հանգեցին մարքսիզմին։ Առաջ է գալիս սոցիալ-դեմոկրատիայի հետ կապված մասսայական բանվորական շարժումը։ Սոցիալ-դեմոկրատիայի մեջ ծնունդ են առնում երկու հոսանք՝ ռևոլյուցիոն-մարքսիստական և օպորտունիստական հոսանքները։ Լենինը բարձրացնում է մարքսիզմի համար մղվող անհաշտ պայքարի դրոշը, Պետերբուրգում ստեղծում է «Պայքարի միությունը»՝ մարքսիստական պարտիայի սաղմը Ռուսաստանում։ Սկսվեց մարքսիզմի զարգացման նոր, լենինյան էտապը։



XX դարի սկզբին Ռուսաստանում հասունանում էր ռևոլյուցիան, բանվոր դասակարգը կռում էր իր գաղափարական-քաղաքական զենքը գալիք մարտերի համար։ Լենինի ղեկավարած «Իսկրա»-ն հաղթական պայքար մղեց «էկոնոմիստների» դեմ, նախապատրաստեց մարքսիստական պարտիայի ստեղծումը։ ՌՍԴԲՊ II համագումարը դրեց բոլշևիկների պարտիայի, սոցիալական ռևոլյուցիայի և պրոլետարիատի դիկտատուրայի պարտիայի գոյության սկիզբը։

II համագումարում և նրանից հետո բոլշևիկները վճռական պայքար ծավալեցին մենշևիկների դեմ։ Մենշևիզմի դեմ բոլշևիզմի մղած պայքարը մեծագույն պատմական նշանակություն ունեցավ։ Դա պայքար էր հանուն նոր տիպի մարքսիստական պարտիայի, հանուն բանվոր դասակարգի ղեկավար դերի, ինքնակալության ու կապիտալիզմի դեմ մղվող ռևոլյուցիոն մարտերում։ Դա պայքար էր օպորտունիզմի դեմ միջազգային բանվորական շարժման մեջ։

Այդ պայքարի կրակում Լենինն ստեղծեց պարտիայի՝ որպես պրոլետարիատի դիկտատուրայի համար, հաղթական կոմունիստական ռևոլյուցիայի համար մղվող պայքարում բանվոր դասակարգի հիմնական զենքի վերաբերյալ ուսմունքը։ Ի դեմս Լենինի հանդես եկավ պրոլետարիատի մեծ առաջնորդը, Մարքսի և Էնգելսի ուսմունքի արժանավոր շարունակողը։ Լենինի երկերը կազմեցին պարտիայի վիթխարի գաղափարական հարստությունը, նրա անսասան տեսական հիմքը։

Ռուսաստանում բանվոր դասակարգի ռևոլյուցիոն մարքսիստական պարտիայի երևան գալը մեծագույն նշանակություն ունեցավ մեր երկրի և ամբողջ միջազգային բանվորական շարժման հետագա բախտի համար։ Պատմության մեջ առաջին անգամ ամենաճնշված և ամենառևոլյուցիոն դասակարգը՝ պրոլետարիատը, մտավ ռևոլյուցիայի մեջ, ունենալով իր ինքնուրույն մարքսիստական պարտիան։

---

# ՍՍՌՄ-Ի ՀԻՄՆԱԿԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԽՆԴԻՐԸ

Լ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ, Մ. ՉԱՐՅԱՆ

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան մարդկության պատմության մեջ առաջին անգամ հիմք դրեց սոցիալիզմի կառուցմանը։ Մեր երկրում ստեղծվեց Սովետական, Սոցիալիստական պետություն։ Լիկվիդացվեցին շահագործող դասակարգերը և ընդմիշտ վերացվեց վարձու ստրկությունը։ Արտադրամիջոցները դարձնելով հանրային սեփականություն՝ Սովետական պետությունն ապահովեց երկրի արտադրողական ուժերի հզոր վերելքը, լայն հնարավորություններ ընձեռեց սովետական ժողովուրդների տնտեսական ու քաղաքական զարգացման, գիտության ու կուլտուրայի ծաղկման և դեպի կոմունիզմ առաջընթացի համար։*

*Սոցիալիստական ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման պարտիայի լենինյան գլխավոր գծի անշեղ կիրառման շնորհիվ վերափոխվեց մեր երկրի դեմքը։ ՍՍՌՄ-ը չտեսնված կարճ ժամանակում ունեցավ արդյունաբերական այնպիսի զարգացում, որի համար բուրժուական երկրներին հարկավոր եղան շատ տասնամյակներ։ 1913 թվականի համեմատությամբ ՍՍՌՄ-ի ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1957 թվականին աճեց 33 անգամ, այդ թվում արտադրության միջոցների արտադրությունը՝ 74 անգամ։ Էլեկտրաէներգիայի արտադրությունը 1,9 միլիարդ կիլովատ ժամից հասավ 210 միլիարդ կիլովատ ժամի, իսկ մեքենաշինության մետաղամշակման արտադրանքը 1957 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, աճեց ավելի քան երկու հարյուր անգամ։*

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սոցիալիզմի կառուցման բնագավառում ձեռք բերված հաջողությունները հիմք հանդիսացան ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդրի լուծման համար, սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցումը իրականացնելու համար։ ՍՍՌՄ-ի հիմնական տնտեսական խնդրի լուծումը ունի խոշոր նշանակություն մեր երկրի հզորությունն է՛լ ավելի բարձրացնելու, աշխատավորության կենսական հարաճուն պահանջմունքները լիովին բավարարելու, տնտեսության սոցիալիստական համաշխարհային սիստեմն ամրապնդելու համար։*

*Կապիտալիզմը, որի հիմքում ընկած է արտադրամիջոցների մասնավոր սեփականությունը, խոշորագույն արգելք է դարձել մարդկության առաջադիմության համար։ Նա ռեակցիոն բոլոր միջոցներով ձգտում է պահպանել կապիտալի տիրապետությունը, իր և գաղութային երկրների աշխատավորության վայրագ շահագործման միջոցով ապահովել մոնոպոլիստների բարձր շահույթները։ Կապիտալիստական երկրների բանվոր դասակարգն ավելի ու*



*ավելի վճռականորեն է հակադրվում իմպերիալիզմի և մոնոպոլիստների քաղաքականությանը, պայքարում է իր կենսապայմանների բարելավման համար, խաղաղության ու սոցիալիզմի համար։*



*Ցարական Ռուսաստանը, որտեղ առաջին անգամ հաղթանակեց Սոցիալիստական Ռևոլյուցիան, կապիտալիստորեն միջին զարգացած երկիր էր։ Նա տեխնիկա-տնտեսական տեսակետից խիստ ետ էր մնում առավել զարգացած կապիտալիստական երկրներից։*

*1913 թվականին Ռուսաստանի ժողովրդական տնտեսության ընդհանուր համախառն արտադրանքում արդյունաբերական արտադրանքը կազմում էր 42,1 տոկոս, իսկ գյուղատնտեսականինը՝ 57,9 տոկոս։ Ռուսաստանն իր տերիտորիայով աշխարհում գրավում էր առաջին տեղը, բնակչության քանակով՝ երրորդ տեղը, մինչդեռ արդյունաբերական արտադրանքի ծավալով նա գրավում էր աշխարհում 5-րդ և Եվրոպայում՝ 4-րդ տեղը։ Համաշխարհային արդյունաբերական արտադրանքում ցարական Ռուսաստանի բաժինը կազմում էր 2,6 տոկոս։ Վ. Ի. Լենինը «Ինչպես ավելացնել ամեն մի շնչին սպառման չափերը Ռուսաստանում» իր հոդվածում (1913 թ.) նշել է. «...Ռուսաստանը մնում է անհավատալիորեն, չտեսնված կերպով հետամնաց երկիր, աղքատ ու կիսավայրենի, որը սարքավորված է ժամանակակից արտադրության միջոցներով չորս անգամ ավելի վատ, քան Անգլիան, հինգ անգամ ավելի վատ, քան Գերմանիան, տասն անգամ ավելի վատ, քան Ամերիկան» (Երկեր, հ. 19, էջ 353—354)։*

*Ցարական Ռուսաստանն առաջավոր կապիտալիստական երկրներից*
*խիստ ետ էր մնում նաև տնտեսապես՝ բնակչության մեկ շնչին ընկնող ար-*
*տադրանքի արտադրության չափով։ Բնորոշն այն է, որ տարիների ընթաց-*
*քում այդ հետամնացությունը ոչ թե նվազում, այլ ավելի ու ավելի խորա-*
*նում էր։ Եթե 1900 թվականին բնակչության մեկ շնչին ընկնող չուգունի*
*ձուլմամբ ցարական Ռուսաստանը ԱՄՆ-ից ետ էր մնում 8 անգամ, Ֆրան-*
*սիայից՝ 3 անգամ և Գերմանիայից՝ 6 անգամ, ապա 1913 թվականին նա*
*ետ էր մնում ԱՄՆ-ից՝ 11 անգամ, Ֆրանսիայից՝ 4 անգամ, Գերմանիայից՝*
*8 անգամ։ Մեկ շնչին ընկնող պողպատի ձուլմամբ Ռուսաստանն ԱՄՆ-ից ետ*
*էր մնում 1900 թվականին 7,7 անգամ, իսկ 1913 թվականին՝ 11 անգամ։ Ցա-*
*րական Ռուսաստանը չուներ արդյունաբերական այնպիսի կարևոր ճյուղեր,*
*ինչպիսիք են՝ տրակտորային ու ավտոմոբիլային արտադրությունը, հաստո-*
*ցաշինությունը, քիմիական, ավիացիոն, արհեստական մետաքսի, ալյումինի*
*և այլնի արտադրությունը։*

*Անդրադառնալով Ռուսաստանի քաղաքական ու տնտեսական վիճակին,*
*Վ. Ի. Լենինը 1917 թվականի սեպտեմբերին, «Սպառնացող աղետը և ինչպես*
*պայքարել նրա դեմ» հոդվածում գրել է. «Ռևոլյուցիան արեց այն, որ Ռու-*
*սաստանը մի քանի ամսում իր քաղաքական կարգերով հասավ առաջավոր*
*երկրներին։*

*Բայց այդ քիչ է։ Պատերազմն անողոք է. նա հարցը դնում է անողոք*
*կտրականությամբ՝ կա՛մ կործանվել, կա՛մ հասնել առաջավոր երկրներին և*
*նրանցից առաջ անցնել նաև տնտեսապես» (Երկեր, հ. 25, էջ 466)։*

Առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմի և քաղա-
քացիական կռիվների հետևանքով Ռուսաստանը տնտեսապես է՛լ ավելի թու-
լացավ: 1920 թվականին Ռուսաստանի ամբողջ արդյունաբերությունը գրեթե
7 անգամ քիչ արտադրանք էր տալիս, քան 1913 թվականին: Չուգունի ձու-
լումը 1920 թվականին կազմում էր նախապատերազմյան մակարդակի 7,1
տոկոսը, իսկ ձուլվում էր ընդամենը 200 հազար տոննա պողպատ: Այսպի-
սով, Սովետական Միությանը վիճակվեց առաջավոր կապիտալիստական
երկրների հետ մրցակցության դուրս գալ արտադրության ծայր աստիճանի
թույլ զարգացած մակարդակի պայմաններում: Սակայն կապիտալիզմի
նկատմամբ սոցիալիստական հասարակարգի վիթխարի առավելությունների
շնորհիվ ՍՍՌՄ-ը կարողացավ պատմական կարճ ժամկետում լիկվիդացնել
նախկինից ժառանգած հետամնացությունը և դառնալ հզոր ինդուստրիալ եր-
կիր: Արդեն 1937 թվականին ՍՍՌՄ-ը արդյունաբերական արտադրանքի բա-
ցարձակ ծավալով աշխարհում գրավում էր երկրորդ տեղը և Եվրոպայում՝
առաջին տեղը: Չնայած դրան, բնակչության մեկ շնչին ընկնող արտադրան-
քի արտադրությամբ ՍՍՌՄ-ը դեռ ետ էր մնում առավել զարգացած կապի-
տալիստական երկրներից:

1939 թվականին, երբ ՍՍՌՄ-ը հիմնականում ավարտել էր ժողովրդա-
կան տնտեսության տեխնիկական վերակառուցումը, Սովետական Միության
Կոմունիստական պարտիայի XVIII համագումարը սովետական ժողովրդի
առաջ դրեց գործնական խնդիր՝ տնտեսական տեսակետից հասնել և առաջ
անցնել Եվրոպայի առավել զարգացած կապիտալիստական երկրներից և
ԱՄՆ-ից: Ոգեշնչված համագումարի պատմական որոշումներով, սովետական
ժողովուրդը ձեռնամուխ եղավ ՍՍՌՄ-ի տնտեսական խնդրի լուծմանը, սա-
կայն մեր երկրի վրա հիտլերյան Գերմանիայի հարձակման հետևանքով տա-
սից-տասնմեկ տարով ընդհատվեց այդ խնդրի լուծումը: Մոտավոր հաշիվնե-
րը ցույց են տալիս, որ եթե պատերազմի հետևանքով մեր տնտեսական շի-
նարարությունը չընդհատվեր, ապա արտադրության աճի այն տեմպերը,
որոնց մենք հասել էինք հետպատերազմյան շրջանում, Սովետական Միու-
թյանը հնարավորություն կտային 1960 թվականին արդեն հասնելու ԱՄՆ-ի
արդյունաբերության մի շարք ճյուղերի արտադրանքի մակարդակին և անց-
նելու մի շարք կարևորագույն ճյուղերի արտադրանքի մակարդակից:

Հաղթանակորեն ավարտելով Հայրենական Մեծ պատերազմը, սովետա-
կան ժողովուրդը նորից վերադարձավ իր խաղաղ, ստեղծագործական աշ-
խատանքին: Արդեն 1955 թվականին ՍՍՌՄ-ում արտադրվեց 3,2 անգամ
ավելի արդյունաբերական արտադրանք, քան 1940 թվականին: 1955 թվակա-
նին ՍՍՌՄ-ում ձուլվում էր ավելի շատ պողպատ, արտադրվում ավելի շատ
էլեկտրաէներգիա, քան Անգլիայում և Արևմտյան Գերմանիայում միասին
վերցրած: Հետպատերազմյան հնգամյա պլանների հաջող կատարումը նշանա-
կալի քայլ հանդիսացավ ՍՍՌՄ-ի հիմնական տնտեսական խնդրի լուծման
ուղղությամբ: Հինգերորդ հնգամյակի տարիներին բնակչության մեկ շնչին
ընկնող չուգունի ձուլումը ավելացավ 60 տոկոսով, պողպատինը՝ 52, քա-
րածխի արդյունահանումը՝ 37, նավթինը՝ 72, էլեկտրաէներգիայի արտա-
դրությունը՝ 71, բամբակյա գործվածքների արտադրությունը՝ 40, բրդյա
գործվածքներինը՝ 48, շաքարինը՝ 24 տոկոսով:

Հենվելով տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների և



ՍՍՌՄ-ի ձեռք բերած խոշոր հաջողությունների վրա, պարտիայի XX համա-
գումարն անհրաժեշտ համարեց ամենայն հետևողականությամբ շարունակել
պայքարը պատմական կարճ ժամկետում, տնտեսական մրցակցության ճա-
նապարհով, լուծելու Սովետական Միության գլխավոր տնտեսական խնդիրը՝
հասնել և անցնել կապիտալիստական առավել զարգացած երկրներից՝ բնակ-
չության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրության տեսակետից: Հա-
մագումարի պատմական այս որոշումը իրագործվում է մեծ հաջողությամբ:

Բնակչության մեկ շնչին ընկնող տարբեր արդյունքների արտադրության
չափով ՍՍՌՄ-ը կապիտալիստական գլխավոր երկրներին հասնելու և անց-
նելու է տարբեր ժամկետներում, նայած այս կամ այն արտադրանքի ար-
տադրության ընդլայնման հնարավորություններին ու նրանց կարևորությանը:

Ներկայումս Սովետական Միության խնդիրն է՝ առավել զարգացած կա-
պիտալիստական երկրներին հասնել բնակչության մեկ շնչին ընկնող արդյու-
նաբերության արտադրության այնպիսի արդյունքների չափով, որոնք խիստ
կարևոր նշանակություն ունեն մեր երկրի էկոնոմիկայի զարգացման համար:
Առաջին հերթին դա վերաբերում է մեկ շնչին ընկնող պողպատի, երկաթի,
էլեկտրաէներգիայի, գունավոր մետաղների, քիմիական արդյունաբերության
արտադրանքի, ցեմենտի և այլնի արտադրությանը:

Տվյալ երկրում բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտա-
դրության չափը չպետք է նույնացնել շնչին ընկնող սպառման չափի հետ,
թեև, սպառման չափը վերջին հաշվով պայմանավորված է արտադրության
ծավալով: Միևնույն հավասար պայմաններում արտադրության ծավալի ավե-
լացման հետ միասին բարձրանում է բնակչության մեկ շնչին ընկնող սպառ-
ման չափը, սակայն սպառման չափը պայմանավորվում է նաև արտադրու-
թյան եղանակով, արտադրության միջոցների սեփականության ձևով, ար-
տադրության նպատակով: Հաճախ կապիտալիստներն ընդլայնում են ար-
տադրության այնպիսի ճյուղեր, արտադրում են մեծ քանակի այնպիսի ապ-
րանքներ, որոնք ոչ մի օգտակարություն չունեն հասարակության համար,
բայց կապիտալիստներին բերում են մեծ շահույթ: Այսպիսին է, օրինակ,
ռազմական արդյունաբերության արտադրանքը: Հայտնի է, որ չուգունի,
պողպատի, էլեկտրաէներգիայի, քիմիական արդյունաբերության արտադր-
րանքի զգալի մասը ծախսվում է ռազմական նպատակներով, չի մտնում
բնակչության անձնական կամ հասարակական օգտակար սպառման ոլորտը,
թեև հաշվվում է բնակչության մեկ շնչին ընկնող չափի մեջ: Պետք է նկատի
ունենալ, որ արտադրության արտադրանքի համեմատելի ավելի մեծ մասը
սպառում են շահագործող դասակարգերը, քանի որ բանվոր դասակարգի
սպառման չափը որոշվում է աշխատավարձի այն քանակով, որով նա կարող
է ձեռք բերել սպառման առարկաներ: Առավել վատագույն պայմաններում են
գտնվում գաղութային ու կիսագաղութային երկրների ժողովուրդները, որոնց
հաշվին հարստացել են մետրոպոլիաների կապիտալիստները: Եթե վերցնենք
բնակչության մեկ շնչին ընկնող եկամուտը գլխավոր կապիտալիստական և
նրանց նախկին գաղութային երկրներում, ապա կստանանք հետևյալ պատ-
կերը.

### Բնակչության մեկ շնչի եկամուտը
(դոլարներով 1949 թ.)

| ԱՄՆ | Անգլիա | Հոլանդիա | Ֆիլիպիններ | Հնդկաստան | Ինդոնեզիա |
|---|---|---|---|---|---|
| 1453 | 775 | 502 | 44 | 54 | 25 |

ազգային եկամուտը ... ԱՄՆ-ում բնակչության մեկ շնչի տա- Բերված թվերը ցույց են տալիս, որ ԱՄՆ-ում բնակչության մեկ շնչի տա- րեկան միջին եկամուտը 35 անգամ բարձր էր, քան Ֆիլիպիններում, Անգլիա- յում ավելի քան 14 անգամ բարձր, քան Հնդկաստանում, Հոլանդիայում՝ 20 անգամ, քան Ինդոնեզիայում։

Սոցիալիստական հասարակարգում արտադրության միջոցները պատկա- նում են ամբողջ հասարակությանը. արտադրության նպատակը ամբողջ հա- սարակության անդամների հարաճուն պահանջմունքների բավարարումն է, արտադրության արտադրանքի բաշխումը կատարվում է ըստ աշխատանքի։ արտադրության արտադրանքի բաշխումը կատարվում է ըստ աշխատանքի։ Այս է պատճառը, որ սոցիալիզմի ժամանակ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի ավելացմամբ անընդհատ բարձրանում է շնչին ընկնող սպառ- ման չափը։

Սոցիալիզմն առաջ բերեց էկոնոմիկայի զարգացման այնպիսի տեմպ, որը չի իմացել և չէր կարող իմանալ կապիտալիզմն իր ամբողջ գոյության ընթացքում։ Դեռ 1847 թվականին Ֆ. Էնգելսը գրել է. «Մասնավոր սեփակա- նության ճնշումից ազատված խոշոր արդյունաբերությունը կզարգանա այն- պիսի չափով, որոնց համեմատությամբ այժմյան նրա վիճակը շնչին կթվա, ինչպես հանդիսանում է մեզ համար մանուֆակտուրան մեր ժամանակի խո- շոր արդյունաբերության համեմատությամբ» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., изд. I, т. V, стр. 447)։

Շնորհիվ արդյունաբերության արտադրության աճի բարձր տեմպերի, ՍՍՌՄ-ում կարճ ժամանակի ընթացքում վիթխարի չափով ավելացավ ար- դյունաբերական արտադրանքի ծավալը և զգալիորեն աճեց բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրության չափը։

### Բնակչության մեկ շնչին ընկնող ծանր արդյունաբերության արտադրանքը ՍՍՌՄ-ում և գլխավոր կապիտալիստական երկրներում:

| Արտադրանքի տեսակը | Չափի միավոր | Ռուսաստան 1913 թ. | ՍՍՌՄ 1956 թ. | ԱՄՆ 1956 թ. | Անգլիա, ԳՖՌ, Ֆրանսիա 1955 թ. | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| Էլեկտրաէներգիա | կվժ. | 14 | 894 | 4067 | 1739 | 1530 | 1141 |
| Ածուխ (քարածխի վերածած) | կգ. | 214 | 1830 | 2847 | 4388 | 3157 | 1302 |
| Չուգուն | » | 28 | 173 | 410 | 247 | 330 | 252 |
| Պողպատ | » | 29 | 242 | 622 | 392 | 427 | 290 |
| Նավթ (առանց գազի) | » | 56 | 417 | 2104 | 1 | 63 | 20 |
| Ցեմենտ | » | 12,2 | 124 | 321 | 248 | 373 | 248 |



Աղյուսակից երևում է, որ հեռու չէ այն ժամանակը, երբ Սովետական Միությունը մեկ շնչին ընկնող արդյունաբերության արտադրանքի չափով ոչ միայն կհասնի ու կանցնի Եվրոպայի գլխավոր կապիտալիստական երկըր- ներից, այլ նաև ԱՄՆ-ից։ Դրա երաշխիքն այն է, որ ՍՍՌՄ-ում բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերության արտադրանքն աճում է ավելի բարձր տեմպով, քան կապիտալիստական բոլոր երկրներում։ Այսպես, օրինակ՝ եթե բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի 1929 թվականի մակարդակը ընդունենք 100, ապա 1956 թվականին ՍՍՌՄ-ում այդ կազմում էր 1607, ԱՄՆ-ում 174, Անգլիայում՝ 164։ Բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքը 1913 թվականից մինչև 1955 թվականը ԱՄՆ-ում աճեց 2 — 3 անգամ, Անգլիայում՝ 1,6 անգամ, Ֆրան- սիայում՝ 1,8 անգամ, իսկ ՍՍՌՄ-ում՝ 19,4 անգամ։

Շնորհիվ արդյունաբերական արտադրանքի այդպիսի արագ աճի, կարճ ժամանակում խիստ կրճատվեց ՍՍՌՄ-ի և ԱՄՆ-ի մեկ շնչին ընկնող արդյու- նաբերական արտադրանքի չափի միջև եղած տարբերությունը։ Այդ երևում է հետևյալ աղյուսակից։

| Արտադրանքի տեսակը | Քանի՞ անգամ ԱՄՆ-ում մեկ շնչին ընկնող արտադրանքը ավելի էր ՍՍՌՄ-ում մեկ շնչին ընկնող արտադրանքից | | | |
|---|---|---|---|---|
| | 1929 | 1937 | 1950 | 1957 |
| Էլեկտրաէներգիա | 24 | 5,2 | 5,4 | 4,3 |
| Ածուխ | 18,2 | 4,8 | 2,7 | 1,4 |
| Նավթ | 12,7 | 7,8 | 8,4 | 4 3 |
| Չուգուն | 13,6 | 3,3 | 3,7 | 2,3 |
| Պողպատ | 15,2 | 3,7 | 3,8 | 2,4 |
| Ցեմենտ | 17,3 | 4,7 | 4,5 | 2,1 |

բնակչության մեկ շնչին ընկնող արդյու- Աղյուսակը ցույց է տալիս, որ բնակչության մեկ շնչին ընկնող արդյու- նաբերական արտադրանքով ԱՄՆ-ի գերազանցությունը ՍՍՌՄ-ի նկատմամբ խիստ չափով նվազել է։

Կապիտալիստական երկրներում մեկ շնչին ընկնող արտադրանքը աճում է խոշոր իմպերիալիստական երկրներում, մետրոպոլիաներում։ ՍՍՌՄ-ում, շնորհիվ Կոմունիստական պարտիայի ու Սովետական իշխանության կողմից լենինյան ազգային քաղաքականության ճիշտ իրականացման, բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքն առանձնապես առավել չափով զարգացավ ցարական Ռուսաստանի ժամանակ ճնշված և հետամնաց ազգերի մոտ։ Այսպես, օրինակ, բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրա- էներգիայի արտադրությունը 1928 թվականից մինչև 1955 թվականը աճեց (կվտ ժամերով)՝ Ղազախական ՍՍՌ-ում 1,2-ից մինչև 682 (550 անգամ), Ուզբեկական ՍՍՌ-ում 8,2-ից մինչև 541 (66 անգամ), Կիրգիզական ՍՍՌ-ում 0,9-ից մինչև 272 (305 անգամ), Թուրքմենական ՍՍՌ-ում 11-ից մինչև 295 (26 անգամ)։ Անդրկովկասյան ռեսպուբլիկայում բնակչության մեկ շնչին ընկ- նող էլեկտրազինվածությունը նույն թվականներին աճեց՝ Հայկական ՍՍՌ-ում 21-ից մինչև 1410 (67 անգամ), Վրացական ՍՍՌ-ում 15,5-ից մինչև 565 (36,6 անգամ), Ադրբեջանական ՍՍՌ-ում 179-ից մինչև 1390 (7,7 անգամ)։

ՍՍՌՄ-ի հիմնական տնտեսական խնդրի լուծումը չի սահմանափակվում բնակչության մեկ շնչին ընկնող ծանր արդյունաբերության արտադրանքի ավելացմամբ միայն։ Այդ խնդրի լուծումը իր մեջ պարունակում է նաև բնակչության մեկ շնչին ընկնող անձնական սպառման առարկաների արտադրության և սպառման չափերով գլխավոր կապիտալիստական երկրներին հասնելու ու անցնելու պահանջը։ Ելնելով դրանից, Կոմունիստական պարտիան ու Սովետական իշխանությունը մեծ ուշադրություն են դարձնում թեթև և սննդի արդյունաբերության զարգացման վրա։ Այստեղ ևս խիստ չափով կրճատվում է ՍՍՌՄ-ի և ԱՄՆ-ի բնակչության մեկ շնչին ընկնող անձնական սպառման առարկաների չափի տարբերությունը։

Բնակչության մեկ շնչին ընկնող սպառման միջոցները ՍՍՌՄ-ում և գլխավոր կապիտալիստական երկրներում (1955 թ.)

| Արտադրանքի տեսակը | Չափի միավոր | Ռուսաստան | ՍՍՌՄ | ԱՄՆ | Անգլիա | Ֆրանսիա | ԳՖՀ |
|---|---|---|---|---|---|---|---|
| Միս | կգ. | — | 32,0 | 103,0 | 29,4 | 56,3 | 39,6 |
| Կաթ | » | — | 218 | 339 | 210 | 451 | 338 |
| Կենդանական յուղ | » | — | 2,9 | 4,4 | 0,6 | 7,1 | 6,8 |
| Շաքարավազ | » | 8,5 | 17,3 | 12,2 | 11,8 | 33,8 | 22,8 |
| Բամբակե գործվածքներ | ք. մ. | 16,2 | 23,1 | 56,2 | 32,3 | 24,8 | 28,3 |
| Բրդե գործվածքներ | մետր | 0,6 | 1,3 | 1,7 | 5,0 | 2,9 | 2,6 |
| Կաշվե կոշիկներ | զույգ | 0,4 | 1,4 | 3,5 | 2,0 | 1,4 | 1,5 |
| Սառնարաններ | 1000 մարդուն հատով | — | 0,77 | 24,3 | 9,8 | 5,7 | — |
| Հեռուստացույցներ | » | — | 2,5 | 47,8 | 34,7 | 4,6 | 6,1 |
| Ռադիոընդունիչներ | » | — | 18,0 | 88,7 | 33,8 | 28,0 | 54,2 |
| Լվացքի մեքենաներ | » | — | 0,44 | 26,5 | 18,0 | 5,5 | — |
| Ավտոմոբիլներ | » | — | 2,3 | 55,5 | 24,3 | 16,7 | 17,4 |

Աղյուսակից երևում է, որ բնակչության մեկ շնչին ընկնող մթերային ապրանքների արտադրության չափով ՍՍՌՄ-ը ընդհուպ մոտեցել է Եվրոպայի գլխավոր կապիտալիստական երկրներին, սակայն դեռևս զգալիորեն ետ է մնում ԱՄՆ-ից։

1958 թվականի մայիսին ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի պլենումը որոշում ընդունեց «Բնակչության պահանջմունքները և ժողովրդական տնտեսության կարիքները բավարարելու համար, քիմիական արդյունաբերության և առանձնապես սինթետիկ նյութերի ու դրանցից պատրաստված առարկաների արտադրության զարգացումն արագացնելու մասին»։ Ըստ այդ որոշման, 1959—1965 թթ. քիմիական կարևորագույն նյութերի արտադրությունը կավելանա առնվազն 2—3 անգամ, իսկ արհեստական ու սինթետիկ թելերի և պլաստմասսայի արտադրությունը՝ 4,5—8 անգամ։ Այդ որոշման իրականացումը զգալի չափով կբարձրացնի մեր երկրի բնակչության մեկ շնչին ընկնող սինթետիկ նյութերից արտադրվող առարկաների չափը։

Պարտիայի ու կառավարության ձեռնարկած միջոցառումների իրականացման շնորհիվ մեր երկրի կոլտնտեսություններն ու սովետական տնտեսությունները վերջին տարիներին զգալիորեն ավելացրին հացահատիկի, մսի, կաթի և գյուղատնտեսական այլ մթերքների արտադրությունը։



Սովետական Միության աշխատավորները այժմ հաջողությամբ լուծում են պարտիայի առաջադրած խնդիրը՝ բնակչության մեկ շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ, ամենակարճ ժամկետում, հասնել Ամերիկայի Միացյալ Նահանգներին։ Այս խնդրի լուծման հիմնական գրավականը՝ սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման արագ տեմպերն են։ Եթե 1950 թվականից մինչև 1953 թվականը ՍՍՌՄ-ում գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրանքի աճի տարեկան միջին տեմպը 1,6 տոկոս էր, իսկ ԱՄՆ-ում՝ 1,72 տոկոս, ապա վերջին չորս տարում Սովետական Միությունում այդ արտադրանքի տարեկան միջին աճը հասավ 7,1 տոկոսի, իսկ ԱՄՆ-ում իջավ մինչև 1,1 տոկոսի։

Բնակչության մեկ շնչին ընկնող մսի ու կաթի արտադրությամբ ԱՄՆ-ին հասնելու համար հարկավոր է, որ մենք գյուղատնտեսության հողատարածության յուրաքանչյուր 100 հեկտարից ունենանք միս՝ 42 ցենտներ (սպանդանոցային քաշով) և կաթ՝ 141 ցենտներ։ 1956 թվականին գյուղատնտեսության հողատարածության 100 հեկտարից ՍՍՌՄ-ում ստացվեց միս՝ 13,3 ցենտներ, կաթ՝ 100 ցենտներ, իսկ ԱՄՆ-ում համապատասխանորեն՝ միս 33 ցենտներ և կաթ 111 ցենտներ։

Արդեն 1957 թվականին մեր երկրի շատ կոլտնտեսություններ, սովետական տնտեսություններ գյուղատնտեսական հողատարածության յուրաքանչյուր 100 հեկտարից ստացան 100 և ավելի ցենտներ միս և 400 — 500 ցենտներ կաթ։ Ամբողջ Ուկրաինական ռեսպուբլիկան յուրաքանչյուր 100 հեկտարից ստացավ 66 ցենտներ միս (կենդանի քաշով) և մոտ 300 ցենտներ կաթ, այսինքն՝ ավելի, քան ԱՄՆ-ը։ 1957 թվականին ՍՍՌՄ-ում կաթի համախառն արտադրանքը հասավ 54,7 միլիոն տոննայի, ԱՄՆ-ում արտադրված 57,5 միլիոն տոննայի դիմաց։ Ներկայումս կաթի արտադրությամբ Սովետական Միությունը հասել է ԱՄՆ-ի կաթի արտադրության ծավալի 95 տոկոսին, իսկ յուղի արտադրությամբ մենք արդեն անցել ենք Միացյալ Նահանգներից։ Բնակչության մեկ շնչին ընկնող կաթի արտադրությամբ մենք ԱՄՆ-ին ոչ միայն կհասնենք, այլև կանցնենք 1958 թվականին։

Մոտակա տարիներում ՍՍՌՄ-ի հիմնական տնտեսական խնդիրը հաջողությամբ լուծվելու է նաև հացահատիկի արտադրության բնագավառում։ Որպեսզի բնակչության մեկ շնչին ընկնող հացահատիկի արտադրությամբ անցնենք ԱՄՆ-ից, անհրաժեշտ է ՍՍՌՄ-ի հացահատիկի արտադրությունը հասցնել տարեկան 12 միլիարդ փթի։

Ամբողջությամբ վերցրած գյուղատնտեսության արտադրության բնագավառում ևս Սովետական Միությունը վերջին տարիներս նկատելիորեն արագացրել է ՍՍՌՄ-ի հիմնական տնտեսական խնդրի լուծման տեմպերը։

Բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի ավելացման գործում վճռական դերը պատկանում է աշխատանքի արտադրողականությանը։ «Կապիտալիզմը կարող է վերջնականապես հաղթվել և կհաղթվի նրանով,— ասում է Վ. Ի. Լենինը,— որ սոցիալիզմն ստեղծում է նոր, շատ ավելի բարձր՝ աշխատանքի արտադրողականություն» (Երկեր, հ. 29, էջ 523)։ Աշխատանքի արտադրողականության անշեղ աճը սոցիալիզմի տնտեսական օրենքն է։ Արդյունքների առատությունը, որ անհրաժեշտ է սոցիալիզմից դեպի կոմունիզմ անցումն իրականացնելու համար, կարելի է ստեղծել, առաջին հերթին, աշխատանքի արտադրողականության ավելի ու ավելի բարձր մա-

կարդակի հասնելու միջոցով: «Ես ուզում եմ մի անգամ ևս ընդգծել,— ասում
է ընկ. Ն. Ս. Խրուշչովը,— որ արդյունաբերության, գյուղատնտեսության, գի-
տության, կուլտուրայի հետագա զարգացման, երկրի պաշտպանության ամ-
րապնդման և ժողովրդի բարեկեցության վերելքի համար անհրաժեշտ մեր
կուտակումների գլխավոր աղբյուրը՝ աշխատանքի արտադրողականության
անշեղ աճն է: Աշխատանքի արտադրողականության բարձրացումը սոցիա-
լիստական տնտեսության զարգացման արմատական հարցն է և շարունակ
պետք է նրա վրա բևեռված լինի մեր բոլոր աշխատողների ուշադրությունը»
(Ն. Ս. Խրուշչով, Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի Հոբելյանական սեսիայում):
1940—1954 թթ. բնակչության մեկ շնչին հասնող արդյունաբերական ար-
տադրանքի աճի մոտ 70 տոկոսը ստացվեց աշխատանքի արտադրողակա-
նության բարձրացման, իսկ մոտ 30 տոկոսը բանվորների քանակի ավելաց-
ման հաշվին:

Աշխատանքի արտադրողականության աճի տեմպով ՍՍՌՄ-ը աշխար-
հում գրավում է առաջին տեղը: 1913 թվականի համեմատությամբ, 1956
թվականին արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունն
աճեց ՍՍՌՄ-ում՝ 9 անգամ, ԱՄՆ-ում՝ 2,2 անգամ, Անգլիայում՝ մոտ 1,4,
Ֆրանսիայում՝ 1,8 անգամ: Արդյունաբերության մեջ, աշխատանքի արտա-
դրողականության աճի տեմպը ՍՍՌՄ-ում բարձր է ԱՄՆ-ից՝ 2,5 անգամ և
Անգլիայից՝ 3 անգամ: Աշխատանքի արտադրողականության միջին տարե-
կան աճի տեմպը արդյունաբերության մեջ ՍՍՌՄ-ում կազմում է 6 — 8 տո-
կոս, ԱՄՆ-ում 1,5 — 2 տոկոս:

Բնակչության մեկ շնչին ընկնող արդյունքների արտադրության աճը
կախված է նաև արդյունաբերական բանվորների քանակից, նրանց աճից ու
որակավորումից: Հետևապես, որպեսզի բնակչության մեկ շնչին ընկնող
արդյունաբերական արտադրանքի չափով հասնենք ու անցնենք ԱՄՆ-ից, ան-
հրաժեշտ է ոչ միայն բարձրացնել աշխատանքի արտադրողականության մա-
կարդակը, որը հանդիսանում է հիմնական գործոնը, այլև ավելացնել բան-
վորների քանակը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում:

Այստեղից հասկանալի է դառնում, թե որքան կարևոր նշանակություն ունի
ժողովրդական տնտեսության նյութական բարիքներ ստեղծող ոլորտներում
աշխատողների քանակի աճը:

ՍՍՌՄ-ի հիմնական տնտեսական խնդրի լուծման համար Սովետական
Միությունն ունի նյութական բոլոր նախադրյալները: Ներկայումս մենք
ունենք հզոր սոցիալիստական ինդուստրիա, որը հագեցված է առաջավոր
տեխնիկայով: Մեր արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը զարգա-
նում են այնպիսի տեմպերով, ինչպիսիք կապիտալիզմը չի իմացել նույնիսկ
իր վերելքի ժամանակաշրջանում: Միայն 1958 թվականի առաջին կիսամյակի
ընթացքում, այսինքն՝ կես տարում, մեզ մոտ արտադրվել է 245 միլիոն տոն-
նա ածուխ, ավելի շատ, քան ամբողջ 1949 թվականին, արտադրվել է 27,0
միլիոն տոննա պողպատ, որքան 1950 թվականին, 19,3 միլիոն տոննա չու-
գուն և 21,3 միլիոն տոննա գլանվածք, այսինքն՝ ավելի, քան ամբողջ 1950
թվականին: 1958 թվականի առաջին կիսամյակին արտադրվեց 114 միլիարդ
կվտ-ժամ էլեկտրաէներգիա, այսինքն՝ ավելի, քան 1951 թվականին, համար-
յա նույնքան տրակտորներ և ավելի շատ նավթ (54,0 միլիոն տոննա), քան
ամբողջ 1953 թվականին:



Բարձր տեմպերով աճում է մեր երկրի էլեկտրաէներգիայի արտադրու-
թյունը: Միայն Կույբիշևի էլեկտրակայանը տալիս է հինգ անգամ ավելի
էլեկտրաէներգիա, քան տալիս էին նախառևոլյուցիոն Ռուսաստանի բոլոր
էլեկտրակայանները միասին վերցրած: Այժմ էլեկտրաէներգիայի արտադրու-
թյամբ Սովետական Միությունը գրավում է առաջին տեղը Եվրոպայում և
երկրորդ տեղը՝ աշխարհում: Շնորհիվ արդյունաբերության այդպիսի աճի,
համաշխարհային արդյունաբերական արտադրության մեջ Սովետական
Միության բաժինը 1917 թվականին 2—3 տոկոսից բարձրացավ և 1956 թվա-
կանին հասավ 19,8 տոկոսի: ՍՍՌՄ-ը արդյունաբերական արտադրանքի ծա-
վալով գրավում է Եվրոպայում առաջին և աշխարհում երկրորդ տեղը:

ՍՍՌՄ-ի հիմնական տնտեսական խնդրի լուծման գործում վճռական
դեր ունեն կադրերը: Մեր տնտեսության զարգացման բոլոր էտապներում
կադրերն են վճռել գործի հաջողությունը: Այդ պատճառով պարտիան միշտ
էլ մեծ ուշադրություն է դարձնում կադրերի պատրաստմանը: Միայն
1955/56 ուսումնական տարում, մեր երկրի բոլոր բարձրագույն ուսումնական
հաստատություններում սովորում էին 1.867 հազար ուսանողներ, այսինքն՝
երկու անգամ շատ, քան Եվրոպայի բոլոր կապիտալիստական երկրներում
միասին վերցրած: Եթե 1928 թվականին մենք ունեինք 98 հազար ինժեներ
ու տեխնիկ, ապա ներկայումս ունենք 1.600 հազարից ավելի: Անգլիական
քիմիական կոնցեռնի նախագահ Ա. Ֆլեկի տվյալներով տեխնիկական մաս-
նագիտությամբ բարձրագույն ուսումնական հաստատություններ ավարտող-
ներից՝ բնակչության մեկ միլիոն մարդուն ընկնում է ՍՍՌՄ-ում՝ 280, ԱՄՆ-
ում՝ 137, Անգլիայում՝ 57 մարդ:

ՍՍՌՄ-ի հիմնական տնտեսական խնդրի լուծման գործում կարևոր դերը
պատկանում է գիտությանը: Սովետական գիտնականները գյուտարարների ու
նորարարների հետ միասին հաջողությամբ լուծում են միջուկային էներ-
գիայի, ռեակտիվ տեխնիկայի, տելեմեխանիկայի, ռադիոտեխնիկայի ու
էլեկտրոնիկայի, էներգետիկայի ու քիմիայի, ավտոմատիկայի և գիտության
ու տեխնիկայի մյուս ճյուղերի հետագա զարգացման ամենաբարդ պրոբ-
լեմները:

Սովետական գիտնականների, կոնստրուկտորների, ինժեներների ու
տեխնիկների հիանալի նվաճումների ու հայտնագործությունների հիման վրա
մեր երկիրը մարդկության պատմության մեջ առաջին անգամ արձակեց երկ-
րի արհեստական արբանյակներ՝ նոր դարագլուխ բաց անելով տիեզերական
տարածության ուսումնասիրման ասպարեզում: Նրանց միջոցով առաջին ան-
գամ ՍՍՌՄ-ում խաղաղ նպատակներով օգտագործվեց ատոմի էներգիան և
գնալով այդ ավելի է ընդլայնվում:

Ներկայումս սովետական գիտնականների ձեռք բերած նվաճումների
շնորհիվ հնարավոր է դառնում ուժերի և միջոցների նվազագույն ծախսումով
ավելի կարճ ժամանակամիջոցում ձեռք բերել արտադրողական ուժերի զար-
գացման առավել նշանակալի արդյունքներ և կրճատել ՍՍՌՄ-ի հիմնական
տնտեսական խնդրի լուծման ժամանակը:

Սովետական Միությունն ունի բնական անսպառ հարստություններ,
որոնք հնարավորություն են տալիս զարգացնելու էկոնոմիկան այն ուղղու-
թյամբ, որը մեզ անհրաժեշտ է: Մեր երկրի ընդերքում կան բոլոր տեսակի
հանածոները, ընդ որում՝ մեծ պաշարներով: 1956 թվականին ՍՍՌՄ-ում

կենտրոնացված էր երկաթի հանքաքարի հետախուզված համաշխարհային պաշարների 41, մարգանեցի հանքաքարի 88, կալիական աղերի 54 տոկոսը, ֆոսֆորի հումքի գրեթե երրորդ մասը, տորֆի 60 տոկոսը, ածխի ընդհանուր երկրաբանական համաշխարհային պաշարի 57 տոկոսը և նավթի ու բնական գազի վիթխարի պաշարներ: Սովետական Միությունն աշխարհում առաջին տեղն է գրավում երկաթի ու մարգանեցի հանքաքարի, ածխի, պղնձի, բոքսիտների, նիկելի, վոլֆրամի, կապարի, սնդիկի, փայլարի, ցինկի, կալիական աղերի հետախուզված պաշարներով: Մենք ունենք հսկայական հիդրոռեսուրսներ, գյուղատնտեսական հողեր, հարուստ անտառներ:

Սոցիալիստական արտադրական հարաբերությունների պայմաններում այդ բոլորը հնարավորություն են տալիս մոտակա հնգամյակներում վիթխարի չափերով ընդլայնելու արդյունաբերական արտադրանքի ծավալը և մեծ չափերով ավելացնելու բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի չափը:

Ընկ. Ն. Ս. Խրուշչովը 1957 թվականի նոյեմբերի 6-ին կայացած ՍՍՌՄ Գերագույն Սովետի Հոբելյանական սեսիայում խոսելով մեր երկրում Կոմունիստական շինարարության հեռանկարների ու խնդիրների մասին, նշեց, որ նախնական հաշվումներով, որոնք ճշգրտում կպահանջեն, նկատի է առնվում, որ մոտավորապես 15 տարում ՍՍՌՄ-ի արդյունաբերական արտադրանքի տարեկան արտադրությունը կհասնի հետևյալ մակարդակին. երկաթահանքի հանույթը 250 — 300 միլիոն տոննա, չուգունի ձուլումը՝ 75 — 85 միլիոն տոննա, պողպատինը՝ 100 — 120 միլիոն տոննա, ածխի հանույթը՝ 600 — 750 միլիոն տոննա, նավթինը՝ 350 — 400 միլիոն տոննա, գազի հանույթն ու արտադրությունը՝ 270—320 միլիարդ խորանարդ մետր, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 800—900 միլիարդ կիլովատ ժամ, ցեմենտի արտադրությունը՝ 90—110, շաքարինը՝ 9—10 միլիոն տոննա, բրդե գործվածքներինը՝ 550—650 միլիոն մետր, կաշվե կոշկեղենինը՝ 600—700 միլիոն զույգ:

Եթե հաշվի առնենք մեր և կապիտալիստական գլխավոր երկրների արդյունաբերության զարգացման տեմպերը, բնակչության աճը և մյուս պայմանները, ապա մոտավոր հաշիվները ցույց են տալիս, որ այդ պայմաններում, որպեսզի բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի չափով ՍՍՌՄ-ը հասնի Արևմտյան Եվրոպայի կապիտալիստական երկրների մակարդակին՝ կպահանջվի մոտ մեկ ու կես հնգամյակ, իսկ ԱՄՆ-ի մակարդակին՝ մոտավորապես երկուսից երեք հնգամյակ:

Ներկայումս արդեն ՍՍՌՄ-ը անցել է ԱՄՆ-ից մեկ շնչին ընկնող մարգանեցի հանքաքարի, նիկելի, քրոմի, ազբեստի, շաքարի ճակնդեղի, շաքարի, ցորենի, տարեկանի, գարու, կարտոֆիլի, վուշի արտադրության չափերով, խոզերի ու ոչխարների գլխաքանակով և այլն: Մոտակա տարիներին մենք անցնելու ենք ԱՄՆ-ից մեկ շնչին ընկնող երկաթահանքի, ածխի, ցեմենտի, բրդյա գործվածքների, մսի, կաթի և այլնի արտադրությամբ:

Անկասկած է, որ մեր ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, սոցիալիստական լագերի մյուս երկրների բարեկամական համագործակցությամբ և փոխօգնությամբ, ՍՍՌՄ-ի հիմնական տնտեսական խնդիրը կլուծի պատմական կարճ ժամանակամիջոցում և մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ աշխարհում կգրավի առաջին տեղը:

---

# ԽՍՏՈՐԵՆ ՊԱՀՊԱՆԵԼ ՊԵՏԱԿԱՆ ԵՎ ՖԻՆԱՆՍԱԿԱՆ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ

Ա. ՇԵԿՈՅԱՆ

Սովետական Սոցիալիստական պետությունը իրագործում է քաղաքական և տնտեսական միասնական ղեկավարություն, նա պլանաչափ կերպով կազմակերպում է հասարակական արտադրությունը և ժողովրդական եկամտի բաշխումը, ղեկավարում է երկրի ամբողջ տնտեսական կյանքը և հանդիսանում է նրա էկոնոմիկական զարգացման շարժիչ ուժը:

Սոցիալիստական պետությունը ելնելով իր հզոր էկոնոմիկական դիրքերից, հենվելով տնտեսության սոցիալիստական սիստեմի և արտադրության գործիքների ու միջոցների սոցիալիստական սեփականության վրա, ամենօրյա տնտեսական գործունեություն է ծավալում:

Սովետական ֆինանսները սոցիալիստական պետության այդ տնտեսական գործունեության միջոցն են հանդիսանում, ընդգրկելով հասարակական վերարտադրության բոլոր կողմերը: Դրա հետ միաժամանակ ֆինանսները կազմում են պետության էկոնոմիկական գործունեության հատուկ ճյուղը և սոցիալիստական պետության էկոնոմիկական գործունեության մյուս ճյուղերի նկատմամբ ունեն որոշ ինքնուրույնություն: Դա պետական ապարատի սիստեմում արտահայտվում է այն բանով, որ ստեղծվում է հատուկ ֆինանսական ապարատ (ֆինանսների մինիստրություն, բանկեր, խնայողական դրամարկղներ, ապահովագրության օրգաններ) և առանձնացվում են տնտեսական, պլանային, կառավարչական, վերահսկիչ ապարատի հատուկ ֆինանսական օղակներ (մինիստրությունների կազմակերպությունների ֆինանսական բաժիններ և վարչություններ): Այդ բանն արտահայտվում է նաև պլանավորման սիստեմում այնպես, որ բոլոր ձեռնարկությունները, հիմնարկները և կազմակերպությունները հատուկ ֆինանսական պլաններ են կազմում, եկամուտների և ծախսերի բալանսներ, նախահաշիվներ, կապիտալ ներդրումների ֆինանսական պլաններ, ապահովագրական օրգանների ֆինանսական պլաններ և այլն:

Ֆինանսների կիրառումը և միաժամանակ ֆինանսները, որպես սոցիալիստական պետության տնտեսական գործունեության հատուկ ճյուղ հանդիսանալու ելակետը պայմանավորված է դրամական հարաբերությունների առկայությամբ:

Սովետական ֆինանսները պետության կողմից դրամի պլանաչափ օգտագործման ձևերի և մեթոդների մի ամբողջական սիստեմն է: Պարտիան և կառավարությունը օգտագործել են ՍՍՌՄ-ի ֆինանսական սիստեմը, որպես մեր երկրում սոցիալիզմի կառուցման համար մղվող պայքարի կարևորագույն

լծակ և շարունակում են օգտագործել այն՝ կոմունիզմի կառուցման համար:

Լենինի աշխատություններում և Կոմունիստական պարտիայի որոշումներում ֆինանսական հարցերին մեծ ուշադրություն է նվիրված:

Դեռ 1918 թվականի մայիսին Սովետների ֆինանսական բաժինների ներկայացուցիչների Համառուսական համագումարում Վլադիմիր Իլյիչ Լենինն ասել է. «Մենք պետք է ամեն կերպ պայքարենք ամուր ֆինանսական վերափոխությունների համար, սակայն պետք է հիշել, որ ամեն տեսակի ռադիկալ ռեֆորմները մի կողմից անհաջողության կմատնվեն, եթե մենք հաջողություն չունենանք ֆինանսական քաղաքականության մեջ (Լենին, ռուս. հրատ. 27, էջ 347):

Պարտիան ու Կառավարությունը ֆինանսական հարցերին այդքան մեծ ուշադրություն են նվիրել և նվիրում են նրա համար, որ Սովետական պետությունը ֆինանսական սիստեմի օգնությամբ բաշխում և վերաբաշխում է ժողովրդական եկամուտը և ուղղում վերահսկում արտադրության, ապրանքաշրջանառության վրա:

Ֆինանսական սիստեմի հիմքն է կազմում ՍՍՌՄ-ի Պետական բյուջեն: Սովետական բյուջեի էությունն ամբողջովին որոշվում է սոցիալիստական պետության էությամբ: Սովետական պետությունը կազմակերպում ու ղեկավարում է ամբողջ տնտեսական շինարարությունը, մեր Հայրենիքի պաշտպանությունը և ամբողջ կուլտուր-կրթական աշխատանքը:

ՍՍՌՄ-ի բյուջեում իր արտահայտությունն է գտնում սոցիալիզմի երկրի տնտեսական և քաղաքական հզորությունը: Պետական բյուջեի մեջ շաղկապվում են տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր լարերը: Սակայն բյուջեն—դա համապետական կենտրոնացված ֆինանսական այն պլանն է, որի հիման վրա պետությունն իր ձեռքումն է կենտրոնացնում երկրի բոլոր կարիքները բավարարելու համար անհրաժեշտ դրամական միջոցները:

Սովետական բյուջեի նպատակը հենց այն է, որպեսզի պետության տրամադրության տակ կենտրոնացնի ժողովրդական եկամտի մի մասը՝ պետական ֆունկցիաներն իրագործելու և բյուջետային միջոցները երկրի արտադրողական ուժերի զարգացման նպատակով սոցիալիստական շինարարությունը ֆինանսավորելու, հանրային հարստությունը ավելացնելու, աշխատավորության նյութական և կուլտուրական մակարդակը բարձրացնելու, ՍՍՌՄ-ի անկախությունն ամրացնելու և նրա պաշտպանունակությունն ուժեղացնելու համար:

Սովետական բյուջեն սերտորեն կապված է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հետ: Բյուջեի կատարումն ու ժողովրդատնտեսական պլանի իրագործումը գտնվում են միմյանցից փոխադարձ կախման մեջ:

Տնտեսության սոցիալիստական սիստեմը անսահմանափակ հնարավորություններ է ընձեռում արտադրությունը ռացիոնալ կերպով վարելու, արտադրողական ուժերը անընդհատ և արագընթաց զարգացնելու համար:

Արտադրական միջոցների հանրային սեփականության ձևը և տնտեսության վարման պլանային սիստեմն իրենց էությամբ բացառում են արտադրության անարխիան, հետևաբար՝ պետական կարգապահությունը խստորեն պահպանելու և տնտեսվարության սոցիալիստական մեթոդները ճիշտ կիրառելու դեպքում՝ բացառվում են արտադրողական ուժերի և մարդկային աշխատանքի պտուղների հափշտակման հնարավորությունները:



Տնտեսության սոցիալիստական պլանային ղեկավարումը լայն հնարավորություններ է ստեղծում ժողովրդական տնտեսության բոլոր ռեսուրսներն արտադրության մեջ ընդգրկելու և նրանց խնայողաբար, ռացիոնալ օգտագործման համար:

Պարտիայի և Կառավարության կողմից տնտեսության զարգացման առաջադրած խնդիրները պահանջում են մոբիլիզացնել հսկայական ռեսուրսներ, ավելացնել սոցիալիստական կուտակումները, բարձրացնել ժողովրդական տնտեսության բոլոր ձեռնարկությունների ու ճյուղերի շահավետությունը, խստորեն պահպանել պետական կարգապահությունը և կիրառել նյութական արժեքների ու պետական միջոցների խնայողության ռեժիմ:

⁂

Միութենական ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնումը, արդյունաբերության և շինարարության կառավարման վերակառուցումը, կոլտնտեսային կարգի հետագա զարգացման միջոցառումները և մեքենա-տրակտորային կայանների վերակազմումը նոր խոշոր առաջընթաց քայլ են կոմունիզմի համար մղվող պայքարում: Պարտիայի և կառավարության միջոցառումները, որոնք ելնում են միջազգային և ներքին իրադրության կոնկրետ պայմաններից, հանդիսանում են սովետական ժողովրդի պայքարի ծրագիրը՝ հանուն սոցիալիստական էկոնոմիկայի հետագա հուժկու վերելքի և աշխատավորների կենսամակարդակի առավել բարձրացման:

Իրագործելով այդ միջոցառումները, պարտիան և կառավարությունը հատուկ ուշադրություն են նվիրում ժողովրդական տնտեսության պլանային սկզբունքների ճշգրիտ կիրառմանը, մեկ միասնական պլանի անշեղ պահպանմանը և այդ հիման վրա՝ երկրի արտադրողական ուժերի ճիշտ տեղաբաշխմանն ու ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համաչափ զարգացմանը:

Արդյունաբերության և շինարարության կառավարման վերակառուցման հետևանքով հնարավորություններ են ստեղծվել մեր էկոնոմիկայի նոր վերելքի և տնտեսական բոլոր ճյուղերի բազմակողմանի և արագ զարգացման, արտադրության մեջ նորագույն տեխնիկայի ներդրման, արտադրական և ֆինանսական պլանների կատարման ու գերակատարման համար: Եթե արդյունաբերության համախառն արտադրանքի պլանը 1956 թվականի երկրորդ կիսամյակում կատարվել էր 102 տոկոսով, ապա 1957 թվականին այն կատարվեց 104 տոկոսով, ինքնարժեքի գերպլանային իջեցումը 1957 թվականին ՍՍՌՄ-ում կազմեց մոտ 4 միլիարդ ռուբլի:

Ժողովրդական տնտեսության հարաճուն պահանջմունքներն անխափան կերպով ֆինանսավորելու և ամբողջ երկրի տնտեսության զարգացման գործում անհրաժեշտ համամասնություններ ապահովելու համար անհրաժեշտ է, ինչպես նշեց ընկ. Ն. Ս. Խրուշչովը ՍՍՌՄ Գերագույն Սովետի յոթերորդ սեսիայում տված իր զեկուցման մեջ, այսուհետև ևս պահպանել կենտրոնացված ֆինանսական պլանավորումը և դրամական անհրաժեշտ ռեսուրսների կենտրոնացումը պետական բյուջեում:

Ֆինանսների կենտրոնացված սիստեմը ապահովում է ճիշտ համամասնություններ ժողովրդական տնտեսության զարգացման գործում, տնտեսու-

*թյան ճյուղերի, առանձին տնտեսական շրջանների և միութենական ռեսպուբլիկաների միջև ազգային եկամտի բաշխման ու վերաբաշխման գործում, ելնելով համապետական շահերից, ծանր արդյունաբերության առավել զարգացման անհրաժեշտությունից։*

*Ֆինանսական սիստեմի կենտրոնացումը պայմանավորված է ֆինանսական ու վարկային միասնական քաղաքականության պահպանման ու ամրապնդման անհրաժեշտությամբ, ֆինանսական օրենսդրության հիմնական դրույթների միասնությամբ։*

*Սոցիալիստական պլանավորման լենինյան սկզբունքը (դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը) լիակատար հնարավորություն է տալիս ճիշտ շաղկապելու տնտեսության ղեկավարման ու պլանավորման կենտրոնացած ձևը, աշխատավորական մասսաների ստեղծագործական նախաձեռնության հետ։ Մեր պարտիան և սովետական կառավարությունը միշտ էլ պայքարել և պայքարում են այդ սկզբունքի խեղաթյուրման դեմ։ Պայքարել և պայքարում են ինչպես նրանց դեմ, որոնք փորձ են անում նսեմացնելու մասսաների ներքևից եկող ստեղծագործող ակտիվությունը, նախաձեռնությունը, նույնպես և նրանց դեմ, ովքեր թուլացնում են պլանային սկզբունքը, ոտնահարում են պետական օրենքները և խախտում պետական կարգապահությունը։*

*Կենսագործելով ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումները, պարտիան և կառավարությունը վճռական պայքար են մղում պետական կարգապահության խախտումների դեմ։ Պարտիան և Կառավարությունը մինիստրությունների և գերատեսչությունների ղեկավարների ուշադրությունն են հրավիրում այն բանի վրա, որ անթույլատրելի է խախտել պետական կարգապահությունը, կանխում են գերատեսչական և տեղայնական տրամադրությունների դրսևորումները։ Մինիստրությունների, գերատեսչությունների և ձեռնարկությունների ղեկավարները պետք է հիշեն, որ պետական կարգապահության խախտումը կարող է կազմալուծել մեր պլանային սոցիալիստական էկոնոմիկան և վնաս հասցնել ժողովրդական տնտեսությանը։*

*Մեծ խնդիրներ են դրված ֆինանսա-վարկային սիստեմի առջև։ Այն պետք է նպաստի արտադրության և ներտնտեսային կուտակումների ավելացմանը, կապիտալ ներդրումների էֆեկտիվության բարձրացմանը, ձեռնարկությունների և տնտեսական կազմակերպությունների նյութական ու ֆինանսական ռեսուրսների լավագույն օգտագործմանը, արտադրության շահութաբերության բարձրացմանը և դրամական միջոցների ճիշտ բաշխմանն ու օգտագործմանը։ Այդ խնդիրների լույսի տակ անհրաժեշտ է արմատապես բարելավել մեր տնտեսական կազմակերպությունների, ինչպես նաև ֆինանսական օրգանների գործունեությունը։*

*Անհրաժեշտ է ուժեղացնել ռեսպուբլիկական և տեղական ֆինօրգանների տնտեսագիտական հետազոտությունները, բարձրացնել նրանց դերը ձեռնարկությունների ու կազմակերպությունների ֆինանսական գործունեությունը վերահսկելու և վերջիններիս գործնական օգնություն ցույց տալու գործում։ Դրա հետ միասին պետք է բարձրացնել ձեռնարկությունների և կառույցների ղեկավարների պատասխանատվությունը արտադրական և ֆինանսական պլանների կատարման համար։ Մինիստրությունների, գերատեսչությունների, ձեռնարկությունների և կառույցների ղեկավարներն իրենց գործունեության ընթացքում պետք է խստիվ ղեկավարվեն հաստատված պլաններով, ապահովելով արտադրության անշեղ աճը և աշխատանքի արտադրողականության բարձրացումը, ժողովրդական տնտեսության ռեզերվների առավել լրիվ օգտագործումը, արդյունաբերության և շինարարության աշխատանքի որակական ցուցանիշների սիստեմատիկ բարելավումը։*



*Պետական կարգապահության կոպիտ խախտում պետք է համարել այն, որ մի շարք ձեռնարկություններում, կառույցներում և տնտեսական որոշ կազմակերպություններում թույլ են տալիս աշխատավարձի ֆոնդի գերածախս։ 1957 թվականին շինարարության բանվորների աշխատավարձի ֆոնդի գերածախսը ռեսպուբլիկայում, կատարված փաստական աշխատանքի համեմատությամբ, կազմեց 24 միլիոն ռուբլի։ Աշխատավարձի ֆոնդի գերածախսի հիմնական պատճառն այն է, որ արտադրական նորմաները չեն կատարվել և աշխատավարձի աճն առաջ է անցել աշխատանքի արտադրողականության աճից։ Այսպես, օրինակ՝ 1957 թվականին ժողտնտխորհի ձեռնարկություններն աշխատանքի արտադրողականության պլանը կատարեցին 100,9 տոկոսով, մինչդեռ միջին աշխատավարձը, պլանով նախատեսվածի համեմատությամբ, աճեց 101,2 տոկոսով։*

*Աշխատանքի արտադրողականության պլանի թերակատարումը հետևանք է շատ կառույցներում արտադրության կազմակերպման գործում եղած լուրջ թերությունների, մեխանիզմների վատ օգտագործման։ Աշխատավարձի ֆոնդի գերածախսի տեղիք տվեց և այն, որ որոշ շինարարական աշխատանքներ, որոնք անորակ էին կատարվել, երկրորդ անգամ կատարվեցին։*

*Շինարարական կազմակերպությունները դեռևս վատ են օգտագործում եղած մեխանիզմները, բավական է ասել, որ 1957 թվականին միայն Շինարարության մինիստրության գծով շինարարական սարքի մեխանիզմները պարապուրդ են տվել 7373 մարդ-օր։ Աշխատավարձի ֆոնդի գերածախսի մի զգալի մասը տեղի է ունեցել գնահատման գործող նորմաները խախտելու, փաստորեն չկատարված աշխատանքները կատարվածների մեջ մտցնելու, ինչպես նաև հաստիքային կարգապահությունը խախտելու և բանվորների թվի հաշվին վարչա-կառավարչական ապարատում ավելորդ աշխատողներ պահելու հետևանքով։*

*Պետական կարգապահության այդ խախտումները տեղի են ունեցել ինչպես վերադաս շինարարական կազմակերպությունների, այնպես էլ ֆինանսավարկային օրգանների և, հատկապես, Կոմունալ բանկի թույլ հսկողության հետևանքով։*

*Ժողտնտխորհի ձեռնարկությունները և կազմակերպությունները կառավարման նոր սիստեմին անցնելու հետևանքով 1957 թվականին բարելավեցին իրենց աշխատանքը։ Ժողտնտխորհի ձեռնարկությունները 1957 թվականին համախառն արտադրանքի պլանը կատարեցին 102 տոկոսով, ապրանքային արտադրանքի պլանը՝ 101,9 տոկոսով։ Սակայն ժողտնտխորհի ձեռնարկությունները դեռևս չեն կարողանում լրիվ օգտագործել բոլոր այն հնարավորությունները, որոնք բխում են արդյունաբերության և շինարարության կառավարման վերակառուցումից։*

*Պետական կարգապահության խախտում պետք է համարել նաև այն, որ շատ մինիստրություններ և ձեռնարկություններ համաչափ չեն կատարում պլանները։ Ժողտնտխորհի սիստեմի 32 ձեռնարկություններ թերակատարել են իրենց արտադրական պլանները և 58 միլիոն ռուբլու պակաս ար-*

տադրանք են տվել: Գործերի վիճակն առանձնապես վատ է Թեթև արդյունաբերության վարչությունում, որի 6 ձեռնարկություններ 26,4 միլիոն ռուբլու պակաս արտադրանք են տվել:

Առանձին ձեռնարկությունների արտադրանքի ինքնարժեքի թանկացման, կորուստների ու անարտադրողական ծախսերի ավելացման և իրացման պլանի թերակատարման հետևանքով չկատարվեցին բյուջեով սահմանված պարտավորությունները, և Ժողտնտխորհն ամբողջությամբ վերցրած 1957 թ. բյուջեին պակաս տվեց 9,2 միլիոն ռուբլի:

Կորուստների և անարտադրողական ծախսերի գումարը Ժողտնտխորհի ձեռնարկություններում կազմեց 44,3 միլիոն ռուբլի, որից միայն վճարված տուգանքներն ու տույժերը, դուրս եկած ստացածը, կազմում են 15,5 միլիոն ռուբլի: Միայն Թեթև արդյունաբերության վարչության ձեռնարկությունների վճարած տույժերն ու տուգանքները կազմում են մոտ 9 միլիոն ռուբլի:

Այդպիսի մեծ չափերի հասնող տույժերն ու տուգանքները արդյունք են ոչ այլ ինչի, քան պետական կարգապահության կոպիտ խախտման: Շատ տնտեսավարներ կոպիտ կերպով խախտում են և չեն կատարում իրենց վրա հատուկ պայմանագրերով վերցրած պարտավորությունները, որի հետևանքով և ստիպված բանկին ու մատակարարներին վճարում են մեծ գումարների հասնող տուգանք և տույժեր:

Այս ամենը խոսում է այն մասին, որ պլանի կատարումը և պետական կարգապահության պահպանումը մի շարք ձեռնարկությունների ղեկավարների համար դեռևս չի դարձել աշխատանքի հիմնական օրենք:

Որոշ ձեռնարկություններ համախառն արտադրանքի պլանը կատարում են պլանով չնախատեսված աշխատանքների հաշվին: Օրինակ, Հայէլեկտրո գործարանը համախառն արտադրանքի պլանը կատարել է 100,6 տոկոսով, սակայն պլանի այդ կատարումը պայմանավորված է եղել ավելի քան 6 միլիոն ռուբլու այլ, պլանով չնախատեսված աշխատանքների կատարումով:

Մեքենաշինության և հաստոցաշինության վարչության ձեռնարկությունները համախառն արտադրանքի 1957 թվականի պլանը կատարեցին 100,2 տոկոսով, սակայն արտադրանքի հիմնական տեսակները թերակատարեցին: Թիթեղագլանման գործարանը աշտարակային կռունկների թողարկման պլանը թերակատարեց 66,7 տոկոսով, ամբարձիչներինը՝ 19,2 տոկոսով և գյուղատնտեսական մեքենաներինը՝ 28,4 տոկոսով, մինչդեռ համախառն՝ արտադրանքի պլանն արտապլանային աշխատանքների կատարման հաշվին գերակատարեց 1,5 տոկոսով:

Պլանի նկատմամբ նման վերաբերմունքն անթույլատրելի է:

Պետական կարգապահության խախտում պետք է համարել նաև այն, որ առանձին ձեռնարկություններ ռիթմիկ կերպով չեն աշխատում: Հայէլեկտրո գործարանը 1957 թվականի ընթացքում առաջին տասնօրյակում թողարկել է արտադրանքի 15 տոկոսը, երկրորդ տասնօրյակում՝ 28 տոկոսը, իսկ երրորդ տասնօրյակում՝ 57 տոկոսը: Երևանի էլեկտրա-տեխնիկական առարկաների գործարանը համապատասխանորեն, ըստ տասնօրյակի, արտադրանքի թողարկման պլանը կատարել է 19 տոկոսով, 32 տոկոսով և 49 տոկոսով:

Ռիթմիկ ձևով չաշխատող ձեռնարկությունների ղեկավարները չեն օգտագործում եղած բոլոր հնարավորությունները՝ ձեռնարկությունների պլանաչափ



աշխատանքն ապահովելու համար: Որոշ տնտեսավարներ չեն թափանցում ձեռնարկության էկոնոմիկայի մեջ, թույլ են տալիս մեծ գերածախս: Ահա մի բնորոշ օրինակ: Երևանի էլեկտրալամպերի գործարանը կազմակերպել է կոլբաների սեփական արտադրություն: Այդ արտադրանքի մեկ միավորի ինքնարժեքը հավասար է 47,6 կոպեկի, այն ժամանակ, երբ ներմուծվող կոլբաների արժեքը հավասար է 21 կոպ.: Միայն այդ պատճառով գործարանը 893 հազար ռուբլու գերածախս է ունեցել: Այդ նույն գործարանը թույլ է տալիս հումքի մեծ գերածախս: Գերածախսի մի մասը, հաշվառման վատ դրվածքի հետևանքով, ձևակերպվել է իբրև արտադրության խոտան:

Էլեկտրատեխնիկական գործարանը հումքի գծով ունի 277 հազար ռուբլու տնտեսում: Սակայն արտաքուստ բարեհաջող այդ թվի տակ թաքնված են գործարանի աշխատանքի թերությունները: Այսպես, պողպատի առանձին տեսակների գծով թույլ է տրվել 318 տոննայի գերածախս: Այդ գերածախսը քողարկվում է նրանով, որ գործարանը հումքի մյուս տեսակների գծով տնտեսում է ունեցել:

Սննդի արդյունաբերության վարչության ձեռնարկություններն ամբողջ ապրանքային արտադրանքի ինքնարժեքը, պլանով նախատեսվածի համեմատությամբ, իջեցրել են 5 միլիոն ռուբլով: Բայց դրա հետ միասին առանձին ձեռնարկություններ 12,2 միլիոն ռուբլով թանկացրել են ինքնարժեքը: Այսպես, միայն Սպիտակի շաքարի գործարանը շաքարի արտադրության տեխնոլոգիայի կոպիտ խախտման հետևանքով հումքի և հիմնական նյութերի ինքնարժեքը թանկացրել է 1,6 միլիոն ռուբլով:

Ձեթ-օճառ կոմբինատն ունի 706 հազար ռուբլու հումքի տնտեսում, այն ժամանակ, երբ սոյայի ձեթի գերնորմատիվ կորուստները կազմում են 35,5 տոննա, բամբակի ռաֆինացված ձեթինը՝ 50 տոննա և ճարպաթթուներինը՝ 107 տոննա, որոնց ընդհանուր արժեքը հավասար է 1438 հազար ռուբլու: Իսկ տնտեսումը ձեռք է բերվել էժանագին սերմերի և ճարպաթթուների վերամշակման հետևանքով:

Նույնանման փաստեր կան նաև ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի մի շարք ձեռնարկություններում: Այս փաստերը ցույց են տալիս, որ մեր շատ ձեռնարկությունների ղեկավարների մոտ ասորտիմենտի պլանի կատարումը դեռևս օրենք չի դարձել: Դեռևս շատ ձեռնարկությունների ղեկավարներ մեծ խախտումներ են թույլ տալիս արտադրանքի տեսակների և ասորտիմենտի պլանի կատարման գործում: Մեքենաշինության և հաստոցաշինության վարչության ձեռնարկությունները 1957 թվականին արտադրանքի 91 տեսակներից 51 տեսակի պլանը չկատարեցին, մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության ձեռնարկությունները ապահովեցին արտադրանքի 33 տեսակներից 16-ի պլանի կատարումը, իսկ Թեթև արդյունաբերության վարչությունը չկատարեց նախատեսված 107 տեսակներից 42-ի պլանը: Այդպիսի օրինակներ շատ կարելի է բերել:

Պետական ցածր կարգապահության հետևանքով տնտեսական կազմակերպությունները 1957 թվականին թույլ տվեցին դեբիտորական պարտքերի ավելացում: Ֆինանսական օրգանների կողմից կատարված ստուգումները պարզել են, որ բացի պակասորդներից, վատնումներից ու հափշտակումներից դեբիտորական պարտքերի աճման պատճառներից մեկն էլ այն է, որ մի կազմակերպություն մյուսին միջոցներ է փոխանցում այն դեպքում, երբ վերջինս

*ժամանակին չի կատարում մատակարարումները կամ համապատասխան ծա-
ռայությունները։ Կան փաստեր, երբ գնորդները միջոցներ են փոխանցել մա-
տակարարողներին այն ժամանակ, երբ նրանք չունեն համապատասխան ապ-
րանքներ կամ նյութեր։*

*Վերադաս կազմակերպություններն անհրաժեշտ վերահսկողություն չեն
սահմանում իրենց ենթակա ձեռնարկությունների նկատմամբ, պատշաճ մի-
ջոցներ ձեռք չեն առնում, որպեսզի դեբիտորական պարտքեր չգոյանան։ Իսկ
ձեռնարկությունների, կազմակերպությունների և հիմնարկների ղեկավարներն
ու գլխավոր հաշվապահները սիստեմատիկաբար չեն զբաղվում դեբիտորական
պարտքերի գանձման հարցով և անհրաժեշտ հաստատակամություն չեն ցու-
ցաբերում այդ գործում։*

*Կան դեպքեր, երբ նույնիսկ դատական-արբիտրաժային օրգանների որո-
շումների առկայության դեպքում ձեռնարկությունների ղեկավարները ժամա-
նակին չեն գանձում դեբիտորական պարտքերը, որի հետևանքով ժամկետ-
ներն անցնում են, վաղեմությունը կորչում է և որպես «անհուսալի» դուրս
են գրում, որպիսի հանգամանքն էլ տեղիք է տալիս ուղղակի կորուստների։*

*Դեբիտորական պարտքերի քողարկման նպատակով առանձին տնտեսա-
վարներ դիմում են տվյալների արհեստական աղավաղման։ Այսպես, ֆինօր-
գանները պարզել են, որ Երևանի կաշեհումքի բազայի դեբիտորական պարտքը
առ 1-ը մայիսի 1958 թվականի ոչ թե 2,9 հազար ռուբլի է, ինչպես դուրս է
բերված բալանսով, այլ դրանից 189,5 հազար ռուբլով ավելի, ալյումինի գոր-
ծարանի դեբիտորական պարտքը պակաս է ցույց տրված 108,9 հազար ռուբ-
լով և այլն։ Դեռ 1957 թվականի փետրվարից ալյումինի գործարանը 247,4
հազար ռուբլու դրամական վեճ ունի Նովոչերկասկի էլեկտրոդային գործարանի
հետ՝ անորակ մասսայի պակասորդի համար, սակայն այս մեկ և կես տա-
րում մինչև իսկ հայց չի ներկայացրել արբիտրաժ։*

*Դեբիտորական պարտքերի իջեցման համար մղվող պայքարը պետք է
դառնա ձեռնարկությունների և կազմակերպությունների աշխատողների ամեն-
օրյա գործը։*

*Պետական կարգապահության լուրջ խախտումներ կան նաև կառավարչա-
կան ապարատի պահպանման համար նախատեսված միջոցներ ծախսելու
գործում։ Բավական է ասել, որ միայն 1957 թվականին և 1958 թվականին
առաջին կիսամյակում ֆինօրգաններն իրենց ստուգումներով հայտաբերել են
335 արտահաստիքային միավոր՝ տարեկան 1,5 միլիոն ռուբլու աշխատավար-
ձի ֆոնդով։ Հայտաբերվել է բանվորների և ծառայողների պաշտոնադրույք-
ների ապօրինի ավելացման ավելի քան 350 դեպք։*

*Ճարտարապետական գործերի և հուշարձանների պահպանության վարչու-
թյունը 1957 թվականի ընթացքում անօրինական կարգով պահել է 2 միավոր
տեխնիկական աշխատողների։*

*Երևանի քաղաքային Սովետի գործկոմի տեղական արդյունաբերության
վարչության կարի անհատական պատվերների ֆաբրիկայում պահվել է 4 ար-
տահաստիքային միավոր (հաշվապահ, ապրանքագետ և հավաքարար), ինչ-
պես նաև 5 պահակներ լիմիտից դուրս։ Կահույքի վերանորոգման արտելում
հաստիքից դուրս պահվել են մարդատար ավտոմեքենայի վարորդի, հավաքա-
րարի պաշտոններ։ Ժողտնտխորհի Շինանյութերի արտադրության վարչության*



*Երևանի և Հոկտեմբերյանի քարհանքներում պահվել է 6 արտահաստիքային
միավոր և այլն։*

*Կազմակերպությունների և ձեռնարկությունների ղեկավարները զգալի ա-
վելորդություններ են թույլ տալիս աշխատողների գործուղումների գործում,
որով զգալի նյութական վնաս են հասցնում պետությանը։*

*Լուրջ թերություններ կան և արդյունաբերության կառավարման կազմա-
կերպման գործում. միանգամայն անբավարար է արմատավորվում արտադրու-
թյան ոչ ցեխային կառուցվածքը։ Շատ գործրանային վարչությունների հաս-
տիքներ ուռճացած են։ Պետք է ավելի լայնորեն կիրառել տիպային նոր հաս-
տիքների մշակումն ու օգտագործումը։*

*Այս ամենը խոսում է այն մասին, որ պարտիան միանգամայն ժամանա-
կին է դնում պետական կարգապահությունը հաստատապես ու անշեղորեն
պահպանելու անհրաժեշտության հարցը։*

*Պետական կարգապահության վերոհիշյալ խախտումները մեծ չափերի
հասնող կորուստներ են պատճառում Սովետական պետությանը և թուլացնում
են մեր երկրի սոցիալիստական շինարարության առաջընթացը։*

*Պետք է ուղղակի ասել, որ տնտեսական այդ ցուցանիշների գծով թույլ
տրված պետական կարգապահության խախտումների համար նախ և առաջ
մեղավոր են մեր տնտեսական ղեկավարներն ու տեղական պարտիական ու
սովետական օրգանները, որոնք դեռևս ընդհուպ չեն պայքարում գործարան-
ների ու ֆաբրիկաների տնտեսական մյուս ձեռնարկությունների համար պե-
տական պլանով սահմանված բոլոր ցուցանիշները լրիվ ու անթերի կատա-
րելու համար։ Նրանք չեն բարձրացնում մեր տնտեսական ղեկավարների
պատասխանատվությունը, արտադրության պլանը կատարելու ոչ միայն համա-
խառն արտադրանքի գծով, այլև տնտեսական բոլոր ցուցանիշների՝ ինքնար-
ժեքի իջեցման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ոչ ար-
տադրական ծախսերի ու անտնտեսվարությունից առաջացած կորուստների
վերացման, պլանով նախատեսված արտադրանքի ասորտիմենտի ապահով-
ման, ինչպես նաև սոցիալիստական կուտակումներն ու պետական բյուջեին
հանձնվող պարտավորությունների կատարման գործում։*

*Անհրաժեշտ է ամենայն լրջությամբ գիտակցել, որ եթե պետական կար-
գապահության նմանօրինակ խախտումներն արմատախիլ չարվեն, ապա կա-
րող են մեծ վնաս հասցնել ժողովրդական տնտեսությանը։ Պարտիական, սո-
վետական, տնտեսական և արհմիութենական օրգանները, մեր մամուլը կոչված
են ամենօրյա անհաշտ պայքար մղելու պետական խստագույն կարգապահու-
թյան պահպանման համար, պարտիայի և կառավարության կողմից հաստատ-
ված օրենքների և կանոնների կատարման համար։*

*Ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատանքի 1958 թվականի առա-
ջին կիսամյակի արդյունքները ցույց են տալիս, որ ձեռնարկությունները սիս-
տեմատիկորեն բարելավում են իրենց աշխատանքը։ Ժողտնտխորհը արտա-
դրության պլանը կատարեց 105,5 տոկոսով, ապրանքային արտադրանքի ինք-
նարժեքն իջեցրեց 17 միլիոն ռուբլով, շահույթների պլանը գերակատարեց 14
միլիոն ռուբլով։*

*Դրա հետ մեկտեղ, 1958 թվականի առաջին կիսամյակում անարտադրո-
ղական ծախսերը կազմեցին 19 միլիոն ռուբլի, իսկ դեբիտորական պարտքերի
գումարը հասավ 30 միլիոն ռուբլու։*

Նոր պայմաններում, երբ արդյունաբերության և շինարարության կառավարումը հանձնված է տեղերին, անհրաժեշտ է առավել բարձրացնել ֆինանսական ամբողջ աշխատանքի մակարդակը։ Մեր տնտեսավարների և ֆինանսական աշխատողների ուշադրությունը պետք է կենտրոնացվի ներտնտեսային ռեսուրսների հայտաբերման ու մոբիլիզացման և պետական կարգապահության խախտման ամեն մի դեպք տեղնուտեղը կանխելու հարցերի վրա։

Անհրաժեշտ է, որ պետական ապարատի բոլոր օղակների, կազմակերպությունների և ձեռնարկությունների աշխատողները հիշեն, որ պետական կարգապահության խստիվ ու անշեղ պահպանումը ամբողջ ժողովրդական տնտեսության հետագա վերելքի պարտադիր պայմանն է։

---

# ԼԱՎ ԴԱՍԱԽՈՍԸ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԼԱՎ ԳՈՐԾԻՉ Է

Խ. ԴԱՆԻԵԼՅԱՆ

Դասախոսը բոցաշունչ պրոպագանդիստ է, կոմունիզմի համար մղվող պայքարի ակտիվ մասնակից։ Լինել դասախոս և ժողովրդին հաղորդել մեր պարտիայի ճշմարտացի խոսքը, դա մեծ պատիվ է։ Այդ իսկ պատճառով դասախոսի վրա դրված է և՛ մեծ պարտականություն, և՛ մեծ պատասխանատվություն։ Մեր պարտիայի ու կառավարության ղեկավարները միշտ էլ եղել են և մնում են կոմունիզմի գործի լավագույն պրոպագանդիստները։

Լենինը պարտիական, պետական դժվարին աշխատանքի հետ միաժամանակ գործարաններում, ֆաբրիկաներում և այլուր սիստեմատիկաբար հանդես էր գալիս դասախոսություններով։ Պրոպագանդիստական աշխատանք էին տանում նաև Ձերժինսկին, Կալինինը, Ստալինը, Կույբիշևը, Սվերդլովը, Լունաչարսկին, Յարոսլավսկին, Կրուպսկայան և շատ շատերը։ Երիտասարդ դասախոսը պետք է ուշի-ուշով ուսումնասիրի նրանց պրոպագանդիստական աշխատանքի հարուստ փորձը և սովորի դրանից։

Դասախոսական պրոպագանդայի գործում վճռական դերը պատկանում է դասախոսներին։ Դեռևս 1909 թ. օգոստոսի 30-ին Կապրիի պարտիական դպրոցի ունկնդիրներին ուղղած իր նամակում Լենինը գրում էր.

«Յուրաքանչյուր դպրոցում ամենակարևորը դասախոսությունների գաղափարական-քաղաքական ուղղությունն է։ Ինչո՞վ է որոշվում այդ ուղղությունը։ Ամբողջովին և բացառապես դասախոսների կազմով։ Դուք շատ լավ հասկանում եք, ընկերներ, որ ամեն մի «վերահսկողություն», ամեն մի «ղեկավարում», ամեն մի «ծրագիր», «կանոնադրություն» և այլն, այս ամենը դատարկ հնչյուն են դասախոսների կազմի հանդեպ։ Ոչ մի վերահսկողություն, ոչ մի ծրագիր և այլն բացարձակապես ի վիճակի չեն փոփոխելու պարապմունքների այն ուղղությունը, որ որոշվում է դասախոսների կազմով» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 15, Հայպետհրատ, Երևան, 1950 թ., էջ 588)։

Ինչպես տեսնում ենք, դասախոսական կադրերի ընտրությունը բավականին դժվար և խիստ կարևոր գործ է։

Դասախոսը պետք է սիրի իր աշխատանքը։ Ամեն մի աշխատանք, լինի մեծ թե փոքր, պետք է սիրել և սիրով կատարել. եթե սեր չկա դեպի աշխատանքը, այն հաջողություն ունենալ չի կարող։ Լավ դասախոս լինելու համար դա բավական չէ։ Լավ դասախոսը պետք է գերազանց տիրապետի իր խոսելիք նյութին։ Մեր երկիրը Սովետական իշխանության տարիներին աճել ու զարգացել է ոչ միայն տնտեսապես, այլև կուլտուրապես։ Բարձրացել է մարդկանց պահանջկոտությունը, որը բավարարել կարելի է նյութին բազմակողմանիորեն տիրապետելով միայն։ Այդ իսկ պատճառով դասախոսը պետք է բազմակողմանի զարգացում ունենա։ Լավ դասախոսը պետք է խոր կերպով

իմանա կյանքը, լավ գիտակ լինի պարտիայի ներքին ու արտաքին քաղաքականությանը, ծանոթ լինի ռեսպուբլիկայի. շրջանի, քաղաքի և, մանավանդ, այն օբյեկտի աշխատանքներին, որտեղ պետք է հանդես գա։ Դասախոսը ինչ թեմայով էլ խոսի, պետք է ծանոթ լինի գեղարվեստական գրականությանը, իմանա գիտության, կուլտուրայի և տեխնիկայի նվաճումները։ Ճիշտ է, նա հանդես է գալիս որոշակի թեմաներով, բայց վերոհիշյալը նրա համար պարտադիր է։

Նյութին բազմակողմանիորեն տիրապետելուց բացի, պետք է այն մատուցել իմանալ։ Կան շատ օրինակներ, երբ մարդ տիրապետում է նյութին, հրաշալի գիտե այն, գրած գրքեր ունի, բայց ունկնդիրներին մատուցել չի կարողանում։ Քիչ չեն դեպքերը, երբ այդպիսի մարդկանց դասախոսությունն անցնում է անհրապույր, տաղտկալի, որի պատճառով ունկնդիրները հեռանում են դահլիճից։ Դասախոսի խոսքը պետք է հասնի ունկնդրին, ներգործի նրա վրա։ Դասախոսը պետք է կարողանա համակել, հրապուրել ունկնդիրներին, խորապես ազդել նրանց վրա։ Մարքսիզմ-լենինիզմի ոգուն խորթ են վերացականությունը, դոգմատիզմը, թեորիայի կտրվածությունը կյանքից։

Լենինը նախազգուշացնում է, որ.

«Յուրաքանչյուր պրոպագանդիստի ու յուրաքանչյուր ագիտատորի հըմտությունը հենց այն է, որպեսզի լավագույն կերպով ներգործի տվյալ լսարանի վրա, նրա համար հայտնի ճշմարտությունը դարձնելով ըստ հնարավորին ավելի համոզիչ, ըստ հնարավորին ավելի դյուրին յուրացվող, ըստ հնարավորին ավելի ակնբախ ու հաստատ տպավորվող» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 17, Հայպետհրատ, Երևան, էջ 418)։

Լենինի այդ պահանջը կատարելու համար պետք է դասախոսությանը պատրաստվել խնամքով, բազմակողմանի կերպով ստուգել փաստերը, թվերը։ Ամեն գործի մեջ անպատասխանատվությունը հանցանք է, այս դեպքում առավել ևս։ Մենք պետք է օրինակ վերցնենք մարքսիզմի կլասիկներից։ Պ. Լաֆարգի վկայությամբ, Մարքսը «Կապիտալ»-ի՝ մոտ 20 էջ գրելու համար կարդացել էր մի ամբողջ գրադարան, որտեղ զետեղված էին Անգլիայի ու Շոտլանդիայի գործարանային տեսուչների զեկուցագրերը։ Հայտնի է, որ Լենինն իր «Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա» աշխատությունը գրելիս օգտագործել է գերմաներեն, ֆրանսերեն, անգլերեն հարյուրավոր գրքեր ու բազմաթիվ հոդվածներ և քաղվածքներ արել դրանցից։ Լենինը նույն պահանջկոտությամբ պատրաստվում էր նաև դասախոսություններին։ Այդ մասին Կրուպսկայան գրում է.

«Չնայած նրան, որ Լենինը ուներ հսկայական գիտելիքներ, պրոպագանդիստի հարուստ փորձ, բազմաթիվ զեկուցումներ էր անում, պրոպագանդիստական շատ հոդվածներ էր գրում, իր ամեն մի ելույթին, ամեն մի զեկուցմանը, դասախոսությանը նա մանրակրկիտ պատրաստվում էր»։

Աշխատանքի լենինյան այս ոճը շատ ուսանելի է դասախոսի համար։ Նա Դասախոսը ամեն օր, ամեն ժամ պետք է հարստացնի իր գիտելիքները։ Նա պետք է հարստացնի իր թեման, երբ ինքն է դասախոսություն լսում, երբ թերթ ու ժուռնալ է կարդում, երբ ռադիո է լսում, մարդկանց հետ խոսում, թանգարան, ցուցահանդես է հաճախում և այլն։ Եվ բոլոր այն նյութերը, որոնք վերաբերում են իր դասախոսության թեմային, պետք է գրի առնի։ Լավ դըրասանը, արվեստագետն իր արվեստի բարձունքին հասնում է համառ ու մեծ





աշխատանքով, ականավոր արվեստագետների թողած ժառանգությունն ուսումնասիրելով։ Բացի դրանից, վաստակավոր, տարիների փորձ ունեցող դերասանը երբեք բեմ չի բարձրանա առանց լուրջ փորձերի։

Հարց է ծագում՝ ինչո՞ւ դասախոսը պետք է հանդես գա առանց լավ նախապատրաստվելու։ Մի՞թե նա ևս իր գործի արվեստագետը չէ։ Դասախոսը նույնպես պետք է աշխատի իր վրա։ Միայն քրտնաջան, համառ աշխատանքը, լսողների հանդեպ պատասխանատվության զգացումը կարող է դասախոսին հասցնել վարպետության։ Դասախոսի համար ծանր է, երբ ինքը խոսում է, իսկ լսողները ննջում են, ընդմիջումներին մաղվում. լինում են դեպքեր, երբ դահլիճում մնում է ունկնդիրների փոքրամասնությունը։

Ռուսական ականավոր դատական գործիչ Ա. Կոնին իր «Խորհուրդներ դասախոսին» գրքույկում գրել է.

«Որպեսզի ելույթից առաջ քիչ հուզվես, պետք է ավելի վստահ լինես քեզ վրա, իսկ այդ կարող է լինել միայն դասախոսությանը ավելի լավ նախապատրաստվելու դեպքում։ Որքան ավելի լավ են տիրապետում առարկային, այնքան քիչ են հուզվում։ Բոլորի համար անտեսանելի նախապատրաստական աշխատանքը դասախոսի վստահ լինելու հիմքն է։ Այդ վստահությունն իսկույն ևեթ կբարձրանա դասախոսելու ժամանակ, հենց որ դասախոսն զգաց (իսկ նա անպայմանորեն իսկույն կզգա), որ խոսում է ազատ, խելացի, տպավորություն է գործում և գիտե այն ամենը, ինչ դեռ մնում է ասելու»։

Այս վերաբերում է բոլոր դասախոսներին, իսկ ամենից շատ՝ սկսնակ դասախոսներին։ Դժբախտաբար, շատ դասախոսներ հաշվի չառնելով այդ, իրենց վրա չեն աշխատում, չեն սովորում։ Նրանք մոռանում են, որ շատ բաներ, ինչ այսօր ասում են, վաղն արդեն հնանում է։ Այն դասախոսը, որն իր վրա ամեն օր չի աշխատում, կյանքից կտրվում է. իսկ կյանքից կտրված դասախոսին լսել չեն կարող։ Իրենց վրա չաշխատող դասախոսները սովորաբար արդարանում են նրանով, որ ժամանակ չունեն։ Այդպիսիների մասին բոցաշունչ տրիբուն Ս. Մ. Կիրովն ասել է.

«Երբ որ մենք շոշափում ենք ինքնակրթության հարցերը, մեզանում հաճախ կլսես այսպիսի պատճառաբանություն՝ ժամանակ չկա, մինչդեռ ամբողջ օրը լեզուն հանած վազվզող է։ Իսկ ես խորհուրդ կտայի այսպես՝ փորձեցեք ահա այդ լեզուն թեկուզ մեկ ժամով տեղը դնել, փորձեցեք և կտեսնեք, որ սարսափելի ոչինչ չի լինի, ավելի լավ կլինի»։

Ցավալին այն է, որ իրենց վրա չաշխատող, կյանքից ետ մնացող դասախոսներից շատերը հանդես են գալիս բազմաթիվ թեմաներով։ Այսպես, օրինակ, Ախուրյանի շրջանից ընկ. Մինասյանը դասախոսություններ է կարդացել ռադիո-տեխնիկայի նվաճումների մասին, նյութի կառուցվածքի, եգիպտացորենի բերքատվության բարձրացման միջոցառումների, սովետա-հարավսլավական հարաբերությունների մասին և այլն։ Հնարավոր չէ նույնիսկ որոշել, թե ընկ. Մինասյանը ինչ մասնագիտություն ունի։ Մի՞թե պարզ չէ, որ այդպիսի «դասախոսի» դասախոսությունները օգուտ տալ չեն կարող։ Կան նաև «դասախոսներ», որոնք իրենց վրա աշխատելու փոխարեն սիրում են հանդես գալ ուրիշի կազմած տեքստով։ Դա արդեն անթույլատրելի է։ Այդպիսի «դասախոսը» չի կարող որևէ լուրջ հարցի պատասխանել, որովհետև ինքը նյութի վրա չի աշխատել, հետևաբար չգիտե այն։ Դա դասախոս չէ, այլ սո-

վորական ընթերցող։ Իսկ աուդիտորիայում դասախոսությունը գրավոր տեքս-
տով ընթերցել, նշանակում է ձանձրույթ պատճառել ունկնդիրներին։ Մինչ-
դեռ դասախոսը պետք է նայի աուդիտորիային, նայի մարդկանց աչքերին։
Դա հաճելի է ունկնդիրներին և անհրաժեշտ է հենց իր՝ դասախոսի հա-
մար։ Այս դեպքում նա կկարողանա տեսնել, թե իր ասածը ինչ տպավորու-
թյուն է թողնում մարդկանց վրա։ Դասախոսի ոգևորության աղբյուրը մարդ-
կանց հայացքն է։ Նրա ամենալավ գնահատողները ունկնդիրներն են։ Այդ
մասին Մ. Ի. Կալինինը գրում է. «Ամենից զգայուն ծանրաչափը՝ դա աուդի-
տորիան է»։ Եվ դա շատ ճիշտ է։

Պետք է վճռականապես վերջ տալ դասախոսությունն ընթերցելու այդ
անպտուղ մեթոդին։ Լավ դասախոսը ոչ թե կարդում է, այլ խոսում է կենդանի
լեզվով։ Դասախոսությունը ինչքան էլ լավ գրված լինի, ինքչքան էլ բովան-
դակալից լինի, երբ այն կարդացվում է առանց ունկնդիրներին նայելու,
կորցնում է իր արժեքը և նպատակին չի հասնում։ Դասախոսի զենքը՝ դա
կենդանի, համոզիչ խոսքն է։ Ահա թե ինչու պետք է լավ տիրապետել այդ
զենքին։ Լավ, գեղեցիկ ոճով և առոգանությամբ կարդացված դասախոսու-
թյունը, եթե բարձր է նաև նրա գիտական, գաղափարական մակարդակը, ոչ
միայն բովանդակությամբ է մատչելի ունկնդիրներին, այլև գեղարվեստական
հաճույք է պատճառում։ Եթե բովանդակությունը լավ է, իսկ լեզուն՝ ոչ, միև-
նույն է, այդպիսի դասախոսությունը ցանկալի արդյունք չի տալիս։ Լեզվին
լավ տիրապետելու համար պետք է շատ կարդալ գեղարվեստական գրակա-
նություն, մտածել ամեն մի բառ գործածելիս, խուսափել ավելորդ ու ան-
տեղի բառերից։

Վ. Լիբկնեխտի վկայությամբ՝ Մարքսը համարյա ամեն օր կարդում էր
գեղարվեստական գրականություն։ Նրա սիրած հեղինակներն էին՝ Գյոթեն,
Շեքսպիրը, Դանթեն, Սերվանտեսը։ Լենինը հրաշալի գիտեր և կարդում էր
արտասահմանյան և ռուս կլասիկ գրականությունը։ Պուշկինը, Գոգոլը, Տոլ-
ստոյը, Սալտիկով-Շչեդրինը նրա սիրած գրողներն էին։

Դասախոսության հաջողության համար քիչ նշանակություն չունի խոսե-
լու ձևը, տեմպը։ Պետք է խոսել բնական ձևով, այսինքն՝ ինչպես թույլ է
տալիս ձայնը։ Արհեստական, կեղծ ձայնով խոսելը հիասթափեցնում է ուն-
կընդիրներին, հաճախ նույնիսկ զզվանք առաջացնում։ Կան անփորձ դասա-
խոսներ, որոնք սկսում են բարձր տոնով, համարյա գոռալով, հետո աստի-
ճանաբար թուլացնում են և վերջում գրեթե անլսելի դարձնում ձայնը։ Երև-
վանի դասախոսներից մեկը խոսելիս գոռում էր այն դեպքում, երբ իր առջև
մի փոքրիկ սենյակում նստած էին ընդամենը 15 մարդ։ Նա չէր զգում, թե
որքան տհաճ տպավորություն էր թողնում ունկնդիրների վրա։ Այդպիսի դա-
սախոսը հաջողություն ունենալ չի կարող։ Դասախոսը երբեք չպետք է շտա-
պի, անգիր արած նախադասություններ կրկնի, դա վնասում է գործին։ Երբ
դու չես կազմել նախադասությունը, այլ ուրիշի գրածը կամ ասածն ես կրկը-
նում, մտքիդ թելը կարվելու դեպքում կընկնես անելանելի դրության մեջ։
Այդպիսի «դասախոսների» մասին Միխայիլ Իվանովիչ Կալինինը դիպուկ է
ասել.

«Դա նշանակում է, որ Ձեր միտքը չի աշխատում, այլ դրա փոխարեն
աշխատում է միայն լեզուն»։

Դասախոսությանը մեծ չափով վնասում է նաև բառերի կրկնությունը,



մանավանդ, երբ տեղին չէ։ Օրինակ, «հոյակապ», «դրանդիող», «ուրեմն»,
«ահա թե ինչու» և այլն։ Քիչ վնաս չի հասցնում դասախոսության որակին նաև
օտար բառերի անտեղի գործածումը։ Կան դասախոսներ, որոնք օտար բա-
ռերը տեղի անտեղի գործածելու սիրահարներ են։ Երևի նրանք դրանով ուզում
են ցույց տալ, որ իրենք շատ բան գիտեն, սակայն այդպիսի դասախոսները
չարաչար սխալվում են։ Լենինը պահանջում էր պատերազմ հայտարարել
լեզվի անմաքրության դեմ։ Օտար բառեր պետք է գործածել անհրաժեշտու-
թյան դեպքում, երբ տվյալ լեզվում փոխարինողը չկա։ Քիչ չեն այն դեպքերը,
երբ մարդիկ գործածում են այս կամ այն օտար բառը, որի իմաստը նույնիսկ
իրենք չեն հասկանում։ Խոսքի սքանչելի վարպետ Լ. Ն. Տոլստոյը գրել է՝
«Եթե ես թագավոր լինեի, այնպիսի օրենք կհրատարակեի, որով գրողը, եթե
նա մի բառ է գործածել, որի նշանակությունը ինքը չի կարող բացատրել,
զրկվում է գրելու իրավունքից և ստանում ճիպոտի հարյուր հարված»։

Միխայիլ Իվանովիչ Կալինինը Հայրենական պատերազմի տարիներին
դիմելով ճակատային ագիտատորներին, ասել է. «Ագիտատորի համար լե-
զուն ամեն ինչ է։ Մարտիկների հետ դուք հայտնի բաների մասին եք խոսում.
ուրեմն, դուք նրանց հետաքրքրությունը կշարժեք այն դեպքում միայն, երբ
այդ բաների մասին կպատմեք պարզ և լավ։ «Գեղեցիկ» բառը ես չեմ գոր-
ծածում, քանի որ մեզանում հաճախ տարվում են ֆրազներով, կարծելով, որ
դա շատ լավ է, մինչդեռ տրաֆարետը, ֆրազներ տեղալը շատ վատ է։ Ես
գիտեմ ագիտատորներ, որոնք կարող են երեք ժամ խոսել. Բայց դրանից
հետո ունկնդիրների գլխում, առանձին բղավոցներից բացի, ոչինչ չի մնում,
որովհետև ասածների մեջ մտքեր չեն լինում։ Իսկ չէ՞ որ ձեր առջև մարտիկ-
ներ են, հասարակ մարդիկ, որոնք մարտերով հազարավոր կիլոմետրեր են
անցել, շատ ծանր բաներ տեսել, այնպես որ նրանց համար ընդհանուր և
այն էլ փքուն ֆրազները՝ ոնց որ դանակը բկին»։

Դասախոսն ամեն օր պետք է աշխատի իր լեզվի մաքրության վրա։
Պետք է հաշվի առնի ունկնդիրների դիտողությունները և վերացնի այն թե-
րությունները, որ նկատվել են։ Պետք է միշտ հիշել, որ խոսելու կուլտուրան
վերջին հաշվով մտքի կուլտուրա է։ Դժբախտաբար շատ դասախոսներ իրենք
էլ չեն նկատում, թե որքան է ընկնում դասախոսության որակը, կորչում
ունկնդիրների հետաքրքրությունը, երբ սխալ են արտասանում բառը, նա-
խադասությունը։ Ունկնդիրները իրար հետ խոսում, նույնիսկ ծիծաղում են,
օրինակ, երբ դասախոսը անձրևի փոխարեն ածվեr է ասում, սահմանի փո-
խարեն՝ սայման, շրջանի փոխարեն՝ սrջան, սենյակի փոխարեն՝ սեյնակ,
լաուրեատի փոխարեն՝ լավուrյաnտ և այլն։

Շատ ավելի տհաճ է, երբ աղավաղվում են հանրահայտ, ունկնդիրներին
քաջածանոթ անունները և այլն։ Լեզվի մաքրությունը մեծ չափով բարձրաց-
նում է հետաքրքրությունը, նյութի բովանդակությունը հասցնում է ունկնդիր-
ներին։ Նույնիսկ երկար տարիների փորձ ունեցող դասախոսը կարող է տա-
պալվել, եթե նա խոսի չոր ու ցամաք լեզվով։

Դասախոսության որակի բարձրացման համար մեծ նշանակություն ունի
տեղական փաստերի խելացի օգտագործումը։ Օրինակ, դասախոսներից մեկը
Նախքան գործարանում աշխատանքային կարգապահության մասին դասա-
խոսելը, ուսումնասիրել, հաշվել է, թե որքան վնաս է ստանում գործարանը
ուշացումների պատճառով։ Նա ցույց է տվել, թե ինչ արժե բանվորի մեկ

բոպեն և այդ րոպեների գումարը վերջին հաշվով ինչ վնաս է հասցնում գոր-
ծարանին։ Բացի դրանից, նա միաժամանակ հրապարակել է այդ գործա-
րանի մի քանի բանվորների անունները, որոնք սիստեմատիկաբար ուշանում
են։ Այդ դասախոսությունը մեծ տպավորություն է թողել։ Տվյալ օբյեկտից
վերցրած սույդ փաստերի ճիշտ օգտագործումը մեծ չափով բարձրացնում է
դասախոսության որակը։ Օրինակ, ինչքան լավ կլինի, եթե դասախոսը դիմի
ունկնդիրներին հետևյալ խոսքերով՝ «Այդ հրաշալի աշխատանքը փտե՞ք ով է
կատարել. ձեր գործարանի բանվոր Հարությունյանը, ձեր կոլտնտեսական
Կիրակոսյանը» և այլն։ Դժբախտաբար այս կարգի դասախոսների թիվը շատ
փոքր է, ընդհակառակը, մեծ է այն դասախոսների թիվը, որոնք դասախո-
սությունների մեջ ամեն տեղից փաստեր են բերում և օգտագործում, սակայն
տեղական փաստերը չեն օգտագործում։ Վեդու շրջանի կոլտնտեսության նա-
խագահներից մեկը՝ ընկ. Մինասյանը, Քաղաքական և գիտական գիտելիք-
ների տարածման ընկերության շրջանային բաժանմունքի ընդհանուր ժողո-
վում բողոքեց այն մասին, որ Երևանից եկած դասախոսները տեղական փաս-
տեր չեն օգտագործում, աշխատավորներին չեն մոբիլիզացնում եղած թերու-
թյունները վերացնելու համար։ Օրինակ, ասում էր նա, Երևանից եկած դա-
սախոսներից մեկը կոմունիստական բարոյականության մասին խոսելիս Սա-
խալինից օրինակներ բերեց, սակայն մեր գյուղից և նույնիսկ Հայաստանից
օրինակներ չբերեց։ Ինչ խոսք, որ դասախոսը որքան էլ որակյալ լինի, այդ
նրա համար մեծ բաց է։

Դասախոսական աշխատանքը ստեղծագործական աշխատանք է։ Շաբլո-
նը խիստ վնասակար է այստեղ։ Այն, ինչ կարելի է անել մի աուդիտորիա-
յում, չի կարելի նույնությամբ կրկնել մի ուրիշ տեղ։ Ամբիոն բարձրանալուց
մի քանի օր առաջ դասախոսը պետք է իմանա, թե ում համար է կարդալու
դասախոսությունը և ըստ այնմ էլ վերակառուցի նյութը։ Լենինը գտնում էր,
որ ագիտատորը պետք է այնպես խոսի, որ նրան հասկանան. նա պետք է ելնի
այն բանից, թե ինչն է լավ ծանոթ ունկնդիրներին... Կառապանների հետ
պետք է խոսել այլ կերպ, քան նավաստիների, նավաստիների հետ այլ կերպ,
քան դրաշարների։ Լենինի այս ցուցումը երբեք չի կարելի մոռանալ։

Դասախոսի հաջողության գրավականներից մեկն էլ նրա պատասխա-
նատվությունն է ունկնդիրների հանդեպ։ Ավելի լավ է գերագնահատել աուդի-
տորիան (ավելի շատ և ավելի լավ պատրաստվել), քան թերագնահատել։
Բոլոր այն դասախոսները, որոնք գերագնահատում են իրենց ուժերը և ան-
ընդհատ չեն լրացնում իրենց գիտելիքները, մեծ մասամբ տապալվում են։
Այդպես պատահեց Երևանից Կիրովական ուղարկված մի դասախոսի հետ։
Երբ նրան դիտողություն արվեց այդ մասին, նա փոխանակ ընդունելու իր
սխալը, պատասխանեց. «Ես 20 տարվա դասախոս եմ, ասպիրանտներ եմ ղե-
կավարում, այդ ինչպե՞ս է, որ նրանց պահանջները բավարարում եմ, իսկ
նրանցից ավելի ցածր մակարդակ ունեցողների պահանջները չեմ կարող բա-
վարարել»։ Այդ ընկերը մոռանում է, որ ուսանողները իրեն լսում են, որով-
հետև ուսանում են։ Բացի դրանից, նրանք ճնճուրջյուն պետք է տան և կա-
խում ունեն դասախոսից։ Միատարր ուսանողական աուդիտորիան չի կարելի
շփոթել բազմատարր աուդիտորիայի հետ։ Եվ, վերջապես, եթե այսօր ուսա-
նողների համար մի բան թերի թողեցիր, նույնիսկ ոչ ճիշտ բան ասացիր,



հեշտությամբ կարող ես ուղղել վաղը, մյուս օրը, մինչդեռ այդ նույն բանը
հնարավոր չէ անել այնտեղ, որտեղ հանդես ես գալիս միայն մեկ անգամ
և, գուցե, այդ օբյեկտում՝ վերջին անգամ։ Անպատասխանատվությունը բոլոր
դեպքերում չարիք է, վնասակար, այս դեպքում առավել ևս։ Այդ իսկ պատ-
ճառով պետք է պահանջկոտ լինել սեփական անձի նկատմամբ և երբեք չթե-
րագնահատել ունկնդիրներին։ Դասախոսը թող երբեք չկարծի, որ ինքը ավե-
լի շատ բան գիտե, քան շրջանում, նույնիսկ գյուղում նստած ընկերը։ Իր
ուժերը գերագնահատող և ունկնդիրների ուժերը թերագնահատող դասախոս-
ների մասին Մ. Ի. Կալինինը ասել է.

«Եթե մարդիկ անգամ մի փոքր նկատեն, որ ագիտատորը պարծենում է,
իրեն համարելով նրանցից խելոք, ապա այդպիսի ագիտատորը կորած է,
նրա նկատմամբ վստահություն չի լինի» (Մ. Ի. Կալինին, Կոմունիստական
դաստիարակության մասին, էջ 288, ռուս. հրատարակություն)։

Դժբախտաբար այդպիսի դասախոսներ դեռ հանդիպում են. այդ հաճախ
է պատահում հատկապես Երևանից գյուղ գնացող որոշ դասախոսների հետ,
որոնք կարծում են, թե մեր գյուղը դեռ Մուրացանի և Պռոշյանի նկարագրած
գյուղն է։

Դասախոսության ժամանակ դիտողական նյութերի օգտագործումը կա-
րևոր տեղ պետք է գրավի։ Այդ նյութերի մտածված ու ճիշտ օգտագործումը
բարձրացնում է ունկնդիրների հետաքրքրությունը և մեծ չափով օգնում նյութի
յուրացմանը։ Նայած նյութին, կարելի է օգտագործել դիագրամներ, սխե-
մաներ, պլակատներ, աղյուսակներ, քարտեզներ, գծագրեր, մակետներ, մո-
դելներ և այլն։ Գյուղատնտեսական թեմաներով հանդես եկողները, այդ բո-
լորից բացի, պետք է օգտագործեն նաև էքսպոնատներ՝ հացահատիկներ,
բանջարեղեն, պտուղներ, ծառերի վնասատուներ, պարարտանյութեր և այլն։
Ըստ որում պետք է ոչ միայն ցույց տալ, այլև բացատրել օգտագործելու և
պայքարելու միջոցները։ Գիտա-աթեիստական թեմաներով հանդես եկողները
իրենց ասածը պետք է հիմնավորեն քիմիական փորձերով և այլն։

Սակայն դիտողական նյութերի օգտագործումը չպետք է չարաշահել. եթե
դասախոսությունը կարդացվում է բարձր մակարդակի աուդիտորիայում,
հարկ չկա այն ծանրաբեռնել դիտողական նյութերով։ Դիտողական նյութերը
պետք է ցուցադրել այն հերթականությամբ, ինչ հերթականությամբ կառուց-
ված է դասախոսությունը։ Խորհուրդ չի տրվում դասախոսությանը վերաբե-
րող բոլոր դիագրամներն ու դիտողական նյութերը միասին պատին փակցնել
և պահել մինչև դասախոսության վերջը. այդ կարող է ունկնդիրների ուշա-
դրությունը գրավել և վնասել գործին։ Ավելորդ է նաև ունկնդիրներին ծան-
րաբեռնել թվերով։ Թվերի օգտագործումը նույնպես պետք է լինի չափավոր։
Չպետք է ունկնդիրներին ծանրաբեռնել բազմաթիվ ցիտատներով։ Ասածը
հիմնավորելու համար ցիտատն անհրաժեշտ է, իհարկե, այն պետք է խնամ-
քով ընտրել, տեղադրել, որպեսզի հեշտ լինի օգտագործել։ Մինչդեռ քիչ չեն
դեպքերը, երբ դասախոսը երկար ժամանակ փնտրում է, բայց չի կարողա-
նում ժամանակին գտնել ընտրած ցիտատը։ Այդպիսի դեպքերում սովորաբար
դահլիճում ծիծաղ է առաջանում, ցրվում է ունկնդիրների ուշադրությունը։
Էլ չենք խոսում այն մասին, որ հաճախ էլ չեն կարողանում ցիտատը ճիշտ
կարդալ։ Սրանք մանրուքներ չեն, այլ գործին օգնող անհրաժեշտ պայ-
մաններ։

Դասախոսությունը պետք է լինի նպատակսլաց. այդ նշանակում է՝ այն, ինչի մասին խոսում ես, պետք է մարսի ունկնդիրը, օգնի՝ վերացնելու եղած թերությունները, բարձրացնի տնտեսությունը, առաջ մղի գիտությունն ու կուլտուրան և այլն։ Այդ իսկ պատճառով, նայած թե ինչ թեմայով և որտեղ ես հանդես գալիս, դասախոսությունը կազմելիս պետք է ելնել այդ սկզբունքից։ Դժբախտաբար շատ դասախոսներ խախտում են նաև այդ սկզբունքը։ Այսպես, օրինակ, դասախոսներից մեկը խոսելով «Ընտանիքը սովետական հասարակության մեջ» թեմայով, դասախոսության մեծ մասը նվիրել է այն հարցին, թե ինչպես կարելի է բաժանվել, և ինչ է հարկավոր բաժանվելու համար և այլն։ Նա շատ քիչ է խոսել այն մասին, թե մեզ մոտ սովետական ընտանիքն ամրացնելու համար ինչ անելիքներ կան։ Պարզ է, որ այդպիսի դասախոսությունը նպատակին չի հասնի։ Կամ ի՞նչ օգուտ կարող է տալ այն դասախոսությունը, երբ բամբակի բերքահավաքի ժամանակ խոսես այն մասին, թե ինչպես պետք է ջրել կամ ծերատել բամբակենին։ Դասախոսությունը նպատակասլաց կլինի այն դեպքում, երբ ժամանակին կարդացվի, որպեսզի աշխատողները կարողանան տեսնել իրենց սխալները և վերացնեն դրանք։ Դասախոսությունը չի հասնում իր նպատակին նաև այն դեպքում, երբ դասախոսը, դահլիճն աշխուժացնելու համար զանազան անեկդոտներ է պատմում, որի հետևանքը լինում է այն, որ երբ ունկնդիրները հեռանում են դահլիճից, բացի անեկդոտից ոչինչ չեն հիշում։

Դահլիճն աշխուժացնելու համար պետք է ընտրել նյութին համապատասխան աֆորիզմներ, ժողովրդական ասացվածքներ և դրանք երբեք չչարաշահել. օգտագործել համով հոտով։ Օրինակ՝ «Գեղ կանգնի՝ գերան կկոտրի», «Ձվի գողը ձիու գող կդառնա», «Քանի լեզու գիտես, էնքան մարդ ես», «Ցամաք գդալը բերանը չեն տանի», «Ստամից անուշ բան չկա, որ ցավա, կքաշեն, կգցեն» և այլն։

Դասախոսի նկատմամբ կա նաև մի այլ շատ կարևոր պահանջ։ Նա պետք է իր ասածի օրինակելի կիրառողը լինի։ Գրոշի արժեք չունի այն դասախոսությունը, երբ հարբեցողության վնասների մասին խոսողը ամբիոն է բարձրանում հարբած վիճակում, կամ խոսելու է ծխելու վնասների մասին, բայց ամբիոն է բարձրանում ծխախոտը բերանին։

Մեր լավագույն դասախոսների և պրոպագանդիստների հաջողությունների պատճառներից մեկն էլ այն է, որ նրանք իրականում կիրառում են իրենց արծարծած սկզբունքները, չկա հակասություն նրանց խոսքի և գործի մեջ։ Դժբախտաբար կան առանձին դասախոսներ, որոնք իրենց պրակտիկայով և կենցաղով խախտում են մեր հանրակեցության սկզբունքները։ Պարտիական կազմակերպությունները, դասախոսական պրոպագանդայով զբաղվող բոլոր օղակները պետք է խիստ հսկողություն սահմանեն, որպեսզի դասախոսի պատվավոր անունը կրող ոչ մի խոտանարար ամբիոն չստանա։

Դասախոսության ընդհանուր տպավորությունը կախված է նրանից, թե ինչպես է վերջանում այն։ Կան դասախոսներ, որոնք չեն իմանում, ինչպես վերջացնեն դասախոսությունը և երկար ժամանակ տառապում են. այդ մեծ մասամբ նրանից է, որ նրանք վաղօրոք կազմված պլան չունեն։ Մտածված, խնամքով կազմված պլանը հեշտացնում է դասախոսի աշխատանքը։ Այս դեպքում դասախոսը գիտե, թե ինչ հաջորդականությամբ պետք է խոսի, որ հարցի վրա պետք է ավելի շատ ուշադրություն դարձնի, որ հարցի մասին հի-



շատակի և այլն։ Օրինակ՝ «Երեխաների կոմունիստական դաստիարակությունը» թեման կարելի է պլանավորել այսպես.

1. Նախաբան։

2. Երեխաների կոմունիստական դաստիարակության խնդիրները.

ա) մտավոր և աշխատանքային դաստիարակություն (պոլիտեխնիկական ուսուցում և աշխատանքային ունակությունների պատվաստում).

բ) բարոյական դաստիարակություն.

գ) էսթետիկական դաստիարակություն.

դ) ֆիզիկական դաստիարակություն։

3. Դպրոցի, ընտանիքի և սովետական հասարակայնության դերը երեխաների դաստիարակության գործում.

ա) ծնողները երեխաների առաջին դաստիարակողներն են.

բ) երեխաների կոմունիստական դաստիարակության մեջ դպրոցի գլխավոր ու վճռական դերը՝ դա խոր ու բազմակողմանի գիտելիքներով նրանց զինելն է.

գ) կոմերիտական, պիոներական կազմակերպությունների և արտադպրոցական հիմնարկների դերն ու նշանակությունը երեխաների կոմունիստական դաստիարակության սիստեմում։

4. Երիտասարդ սերնդի դաստիարակության հիմնական պայմանները, միջոցներն ու մեթոդները.

ա) երեխաներին դաստիարակելու անհրաժեշտությունը նրանց կյանքի հենց առաջին տարիներին.

բ) երեխաների տարիքային առանձնահատկությունները և անհատական տարբերությունները հաշվի առնելը.

գ) բարձր պահանջկոտությունը երեխաների նկատմամբ և վերահսկողությունը նրանց վարքի վրա.

դ) երեխաների դաստիարակումը աշխատանքի մեջ և աշխատանքի համար.

ե) երեխաների դաստիարակումը կոլեկտիվի մեջ և կոլեկտիվի համար.

զ) մեծերի կողմից երեխաների հանդեպ մոտեցման միասնական գիծը և ավագների օրինակը.

է) խրախուսանքը և պատիժը.

ը) դպրոցի և ընտանիքի համագործակցությունը երեխաների դաստիարակության գործում։

Այս պլանը պարտադիր չէ բոլոր դասախոսների համար. ամեն մի դասախոս ուրույն պլան կարող է կազմել։ Բայց պլան ունենալը անվիճելի է և պարտադիր։

Լենինի «Ֆաբրիկաներում ու գործարաններում բանվորներից գանձվող տուգանքների օրենքի բացատրությունը» հայտնի աշխատությունը ութ գլուխ ունի, յուրաքանչյուր գլխի վերնագիրը իրենից ներկայացնում է հստակ պլան զեկուցման համար. այսպես, օրինակ.

1. Ի՞նչ են տուգանքները։

2. Ինչպե՞ս էին առաջ տուգանքներ դրվում և ինչի՞ց են առաջացել տուգանքների նոր օրենքները։

3. Ի՞նչ առիթներով ֆաբրիկանտը կարող է տուգանքներ դնել։

4. Որքա՞ն մեծ կարող են լինել տուգանքները։

5. Ո՞րն է տուգանքներ սահմանելու կարգը։

6. Օրենքով ո՞ւր պիտի գնա տուգանադրամը։

7. Արդյոք բոլո՞ր բանվորների վրա են տարածվում տուգանքների օրենքները։

8. Եզրափակում։

Ինչպես տեսնում ենք, վերնագրերն այնքան պարզ ու որոշակի են, որ մատչելի են նույնիսկ շարքային բանվորին։

Հաջող դասախոսության համար պետք է ունենալ նաև խնամքով մշակված պլան։ Լավ պլանը հաջող դասախոսության որակավոր տաղձն է, որի մշակման վրա մտածված աշխատանք պետք է թափել։

Մեր պարտիան և կառավարությունը գործադրում են բոլոր միջոցները սովետական ժողովրդի նյութական բարեկեցությունը է՛լ ավելի բարձրացնելու համար. այդ մեծ և պատասխանատու գործի համար ջանք չեն խնայում նաև դասախոսները։ Մեր պարտիայի առաջադրանքը անթերի կատարելու համար համառ կերպով պետք է աշխատել, օր-օրի հարստացնել գիտելիքները, կատարելագործել դասախոսական վարպետությունը։ Դասախոսը միշտ պետք է հիշի, որ ինքը առաջավոր, իդեոլոգիական պայքարի մարտիկ է և առանց գիտելիքների հարստացման չի կարող կատարել այն մեծ ու պատվավոր պարտականությունը, որ դրված է իր վրա։

---



# ԿԱՐԵՎՈՐ ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿՅԱՆՔՈՒՄ

Հոկտեմբերի մեկից ռեսպուբլիկայում սկսվել են սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները, որոնցում քննարկվում են պարտիական կազմակերպությունների կոմիտեների, բյուրոների ու քարտուղարների հաշվետվությունները, կատարվում են պարտիական ղեկավար օրգանների և շրջանային ու քաղաքային պարտիական կոնֆերանսների պատգամավորների ընտրություններ։

Սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները տեղի են ունենում այն պահին, երբ պարտիական, սովետական, պրոֆմիութենական, կոմերիտական կազմակերպությունները, մեր պանծալի բանվոր դասակարգը, կոլտնտեսային ողջ գյուղացիությունն ու ինտելիգենցիան համաժողովրդական պայքարի են դուրս եկել Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI արտահերթ համագումարը նորանոր հաջողություններով դիմավորելու համար։ Այդ պայքարի յուրաքանչյուր օրը նշանավորվում է ժողովրդական տնտեսության զարգացման բնագավառում ձեռք բերված փայլուն նվաճումներով։ Գլխավորելով աշխատավորների արտադրական ու քաղաքական ակտիվությունը, պարտիական կազմակերպություններն իրենց հաշվետու-ընտրական ժողովներում առանձնահատուկ ուշադրություն են նվիրում նախահամագումարյան սոցիալիստական մրցությունն ավելի լայնորեն ծավալելու, արտադրական պլանները սահմանված ժամկետից շուտ կատարելու և ընթացիկ տնտեսական տարին բարձր ցուցանիշներով փակելու հարցերի վրա։

Հաշվետու-ընտրական ժողովները լուրջ իրադարձություն են պարտիական կազմակերպությունների կյանքում։ Այդ ժողովներում կոմունիստներն անմիջականորեն մասնակցում են պարտիական կյանքի, տնտեսական ու կուլտուրական շինարարության արմատական հարցերի քննարկմանը, գնահատական են տալիս պարտիական ղեկավար օրգանների գործունեությանը։ Դա պարտիական մասսաների կողմից պարտիական ղեկավար օրգանների գործունեության նկատմամբ վերահսկողության ամենագործուն ձևերից մեկն է, երբ ամեն մի կոմունիստ լիակատար իրավունք ունի պարտկազմակերպության կոմիտեից, բյուրոյից ու քարտուղարից հաշիվ պահանջելու, թե նա ինչպես է ապահովել պարտիական վերադաս օրգանների որոշումների ու դիրեկտիվների, հաշվետու-ընտրական նախորդ ժողովի որոշման կենսագործումը, ինչպես է ղեկավարել տվյալ ձեռնարկության ու հիմնարկության կոլեկտիվի աշխատանքը և կոնկրետ ինչ արդյունքների է հասել, որով և գնահատվում է նրա գործունեությունը։ Քննադատաբար գնահատելով հաշվետու ժամանակաշրջանում պար-

տիական ղեկավար օրգանների կատարած աշխատանքը, կոմունիստները համապատասխան առաջարկություններ են անում հետագա աշխատանքի համար, նշում իրենց առջև կանգնած խնդիրների իրականացման միջոցները։

Երևան, Լենինական քաղաքների, Շամշադինի, Իջևանի, Կալինինոյի և մյուս շրջանների սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովների ընթացքը ցույց է տալիս, թե ՍՄԿՊ XX համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում ինչպես է բարձրացել պարտիական կազմակերպությունների մարտունակությունը, կոմունիստների ակտիվությունն ու նախաձեռնությունը։ ՍՄԿՊ XX համագումարի ոգով ներպարտիական կյանքի լենինյան նորմերը վերականգնելով, նրանք սիստեմատիկաբար քննության են առնում տվյալ կոլեկտիվի առջև դրված խնդիրները, բոլշևիկյան համարձակությամբ ու սկզբունքայնությամբ քննադատում են աշխատանքում նկատվող թերությունները, հետևողականություն են ցուցաբերում կոլեկտիվ ղեկավարության իրագործման և որոշումների կատարման ստուգման գործում, ցանկացած հարցի առթիվ հայտնում են իրենց նկատառումները և գործնական քայլերի դիմում պարտիայի դիրեկտիվները կյանքում անշեղորեն կենսագործելու համար։ Այդ տեսակետից բնորոշ է Երևանի ավտոդողերի գործարանի պարտկազմակերպության օրինակը, որի հաշվետու-ընտրական ժողովում բյուրոյի հաշվետու զեկուցման մեջ կոնկրետ փաստերով ցույց տրվեց, թե ինչպես պարտիական-քաղաքական ու կազմակերպական ամբողջ աշխատանքը ուղղվել է արտադրական պլանների կատարումն ապահովելու, ՍՄԿՊ XX համագումարի որոշումները կենսագործելու նպատակին։ Պարտիական կազմակերպության օգնությամբ գործարանի կոլեկտիվը նույն արտադրական տարածության վրա խոշոր չափով ավելացրել է արտադրանքի թողարկումը, լուրջ հաջողությունների է հասել տեխնիկական պրոգրեսի, ռացիոնալիզատորական առաջարկությունների կենսագործման և մյուս բնագավառներում։ Ընդհանրացնելով պարտկազմակերպության աշխատանքի դրական փորձը, կոմունիստներ Ոսկանովը, Քրմոյանը, Բոյախչևը, Դանիելյանը, Հարությունյանը, Միրզոյանը, Գևորգյանը և մյուսները առողջ քննադատությամբ վեր հանեցին մի շարք լուրջ թերություններ և գործին օգնող խելացի առաջարկություններ արին եղած ռեզերվներն ամբողջապես գործի դնելու և ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշումը հաջողությամբ կենսագործելու համար։

Այս գործարանի պարտկազմակերպության օրինակը եզակի չէ։ Նման օրինակները շատ են. մեծ է այն պարտկազմակերպությունների թիվը, որոնց ծավալած քաղաքական ու կազմակերպական աշխատանքի շնորհիվ հաշվետու ժամանակաշրջանում լուրջ հաջողություններ են ձեռք բերվել արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի զարգացման և աշխատավորների կենսամակարդակի բարձրացման բնագավառներում։

Բայց դեռևս կան առանձին պարտիական կազմակերպություններ, որոնք ինչպես հարկն է չեն զբաղվում արտադրության բուն հարցերով, անբավարար են իրականացնում ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ իրենց վերահսկողության իրավունքը և ողջ կոլեկտիվին չեն մոբիլիզացնում սահմանված պլանային առաջադրանքները ժամանակին կատարելու համար։ Հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները պետք է սուր քննադատության ենթարկեն այդ պարտկազմակերպությունների բյուրոներին, ցույց տան նրանց աշխատանքի ստվերոտ կողմերը և կոնկրետ առաջարկություններ անեն



պարտկազմակերպությունների առջև դրված խնդիրների կատարումը ապահովելու համար։

Սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովների ընթացքը ցույց է տալիս, որ պարտիայի մի քանի շրջկոմներ ժամանակին անհրաժեշտ ուշադրություն չեն դարձրել և առանձին պարտկազմակերպությունների բյուրոներին ինչպես հարկն է չեն օգնել ժողովները լավ նախապատրաստելու և բարձր մակարդակով անցկացնելու համար։ Դրանով պետք է բացատրել, որ առանձին պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում խորությամբ չեն քննարկվում հաշվետու զեկուցումները, ինչպես հարկն է չեն շոշափվում պարտիական աշխատանքի հիմնական հարցերը։ Այդպիսին էր Երևանի Սպանդարյան շրջանի «Տրուդ» արտելի պարտկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովը։ Պարտկազմակերպության բյուրոյի քարտուղար ընկ. Բալաբեկյանը իր զեկուցման մեջ ինչպես հարկն է չտվեց արտադրությունը ղեկավարելու բնագավառում պարտիական կազմակերպության կատարած աշխատանքը. փոխանակ խոր կերպով բացահայտելու համախառն արտադրանքի պլանի թերակատարման պատճառները, փոխանակ կանգ առնելու աշխատանքի արտադրողականության բարձրացման, ինքնարժեքի իջեցման, բնակչության սպասարկման, կոմունիստների քաղաքական ուսուցման և այլ կարևոր հարցերի վրա, նա հիմնականում խոսեց երկրորդական ու մանր հարցերի մասին և չնշեց այն հիմնական խնդիրները, որոնք այսօր պետք է դրվեն կոմունիստների ուշադրության կենտրոնում։ Փաստորեն պարտբյուրոյի հաշվետու զեկուցումը մակերեսային էր և չբավարարեց ժողովականների պահանջը։ Այդպես էր նաև Կոտայքի շրջանի Ջրաղբյուր գյուղի կոլտնտեսության սկզբնական պարտիական կազմակերպության բյուրոյի հաշվետու զեկուցումը, ուր բացակայում էր կոնկրետ քննադատությունն ու ինքնաքննադատությունը։ Պարտբյուրոյի քարտուղար Ս. Հովհաննիսյանը կոնկրետ ոչինչ չասաց պարտբյուրոյի աշխատանքում եղած լուրջ թերությունների մասին, չնշեց իրենց պարտականությունները վատ կատարող ընկերների անունները։ Ճիշտ վարվեցին ժողովում ելույթ ունեցող կոմունիստները, երբ խիստ քննադատության ենթարկեցին պարտբյուրոյին, որը հոգ չի տարել պարտկազմակերպության մարտունակությունը բարձրացնելու, հանրային տնտեսության զարգացման գործում կոմունիստների, բոլոր կոլտնտեսականների ուժերը մոբիլիզացնելու, եղած ռեզերվները գործի դնելու համար, որի հետևանքով էլ կոլտնտեսությունը շարունակում է ետ մնալ։

Պարտիական ղեկավար օրգանների անպայման ընտրովի լինելը, նրանց հաշվետվությունը պարտիական մասսաների առաջ, քննադատության և ինքնաքննադատության ազատությունը պարտիական կյանքի հաստատուն նորմերն են։ Դրանք օգնում են բազմակողմանիորեն ստուգելու պարտիական ղեկավար օրգանների ու նրանց ղեկավարների գործունեությունը, կատարելագործելու տնտեսության պարտիական ղեկավարության ձևերն ու մեթոդները, բարձրացնելու կոմունիստների ակտիվությունը, առաջ քաշելու նոր կադրեր և բարելավելու ամբողջ պարտիական աշխատանքը։ Այս իսկ նպատակով էլ պարտիայի քաղկոմներն ու շրջկոմներն իրենց ապարատի աշխատողների, բյուրոների ու պլենումների անդամների միջոցով պետք է սկզբնական պարտիական կազմակերպություններին բազմակողմանի օգնություն ցույց տան հաշվետու-ընտրական ժողովները բարձր մակարդակով անցկացնելու համար։

Պետք է հասնել այն բանին, որպեսզի հաշվետու-ընտրական ժողովներն իրենց հիմնական ուշադրությունը բևեռեն տվյալ ձեռնարկության ու հիմնարկության արմատական հարցերի վրա, լայնորեն քննարկեն պարտիական-քաղաքական ու կազմակերպական աշխատանքի վիճակը և կոնկրետ որոշում ընդունեն հետագա աշխատանքների համար։ Արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները պետք է խթան հանդիսանան ընթացիկ տարվա արտադրական պլանները տեխնիկա-տնտեսական բարձր ցուցանիշներով և սահմանված ժամկետից շուտ կատարելու, իսկ գյուղական վայրերում՝ բերքահավաքն ու գյուղատնտեսական մթերքների մթերումները հաջող անցկացնելու, կերի կուտակման պլանը կատարելու և անասունների մսուրային շրջանի խնամքն օրինակելիորեն նախապատրաստելու համար։

Պարտիական կազմակերպությունների հետագա հաջող աշխատանքի շահերը պահանջում են, որպեսզի պարտիական ղեկավար օրգանների կազմում ընտրվեն քաղաքականապես պատրաստված ու կոփված, բոլորի համակրանքը վայելող և աշխատանքում փորձված կոմունիստներ, որոնք արտադրության մեջ ու պարտիական հանձնարարությունների կատարման գործում անձնական օրինակ են ծառայում բոլորի համար և կարող են արդարացնել պարտիական կազմակերպության վստահությունը։ Կոմունիստներին պետք է լայն հնարավորություններ տալ և օգնել, որպեսզի նրանք անհատական ընտրության միջոցով պարտիական կոմիտեների, բյուրոների և քարտուղարների կազմում առաջադրեն այն ընկերներին, որոնց ճանաչում են աշխատանքում և որոնց ուժերի վրա վստահ են։ Առանձնահատուկ ուշադրություն պետք է դարձնել այն բանի վրա, որպեսզի պարտիական ղեկավար օրգաններում ավելի շատ ընտրվեն բուն արտադրության մեջ աշխատող առաջավոր բանվորներ ու կոլտնտեսականներ, որոնք մոտ կանգնած լինելով արտադրությանը, լավ ծանոթ լինելով գործերի իրական վիճակին, պարտիական կազմակերպություններին լուրջ օգնություն ցույց տան աշխատավորական լայն մասսաների հետ կապը ուժեղացնելու, արտադրության նեղ տեղերը ժամանակին տեսնելու, հասունացած հարցերը քննելու և լուծելու գործում։

Պարտիական կազմակերպություններում այժմ զգալի թիվ են կազմում կանայք, որոնցից ակտիվիստներին համարձակ կերպով պետք է ընտրել պարտիական ղեկավար օրգաններում և նրանց բազմակողմանի օգնություն ցույց տալ ամենօրյա աշխատանքում։

Սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներից հետո, նոյեմբերի 15-ից, սկսվելու են շրջանային ու քաղաքային պարտիական կոնֆերանսները, որոնք քննարկելու են շրջկոմների և քաղկոմների հաշվետվությունները, ընտրելու են շրջկոմների պլենումների, վերստուգիչ հանձնաժողովների նոր կազմ և Հայաստանի Կոմունիստական պարտիայի XX արտահերթ համագումարի պատգամավորներ։

Շրջանային ու քաղաքային պարտիական կոնֆերանսները հանրագումարի են բերելու հաշվետու ժամանակաշրջանում պարտիական կազմակերպությունների կատարած բազմաբովանդակ աշխատանքը, որը լի է հարուստ իրադարձություններով։ Ինչպես ցույց տվին անցած շրջանային ու քաղաքային պարտիական կոնֆերանսները, ինչպես ցույց են տալիս ներկայումս ընթացող սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժո-



ղովները, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններն անհամեմատ աճել են և պարտիական-քաղաքական, պարտիական-կազմակերպական աշխատանքի մեծ փորձ են կուտակել։

Շրջանային ու քաղաքային պարտիական կոնֆերանսների նախապատրաստման ընթացքում անհրաժեշտ է առանձնահատուկ ուշադրություն դարձնել շրջկոմների ու քաղկոմների հաշվետու զեկուցումները կազմելու վրա։ Պարտիայի շրջկոմների ու քաղկոմների հաշվետու զեկուցումները քաղաքական կարևոր փաստաթուղթ են, որոնց մեջ ամփոփվում են հաշվետու ժամանակաշրջանում կատարված աշխատանքի արդյունքները, տրվում են պարտիական կազմակերպությունների հերթական խնդիրները։ Հաշվետու զեկուցում կազմելը միայն շրջկոմի կամ քաղկոմի քարտուղարի գործը չէ։ Հաշվետու զեկուցում կազմելուն պետք է մասնակցեն շրջկոմների ու քաղկոմների բոլոր անդամները, որպեսզի այն լինի օբյեկտիվ և արտահայտի կոլեկտիվ կարծիք։

Պետք է նկատի ունենալ, որ պարտիայի շրջկոմների ու ու քաղկոմների հաշվետու զուկուցումներն ընդգրկելու են հարցերի ավելի լայն շրջանակ։ Ինչպե՞ս է պարտիական կոմիտեն կատարելագործել իր աշխատանքի ձևերն ու մեթոդները, մոտիկից ինչպե՞ս է կապված պարտիական սկզբնական կազմակերպությունների հետ և ի՞նչ է արել նրանց դերը բարձրացնելու համար, ինչպե՞ս է օգնել սովետական, տնտեսական օրգանների, պրոֆմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների գործունեության բարելավմանը, ի՞նչ աշխատանք է կատարել կադրերի հետ, ինչպե՞ս է բարձրացրել նրանց պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ, մոտիկից ինչպե՞ս է ուսումնասիրել տնտեսությունը, կոնկրետ ի՞նչ միջոցների է դիմել տվյալ շրջանի ու քաղաքի առջև դրված տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրները լուծելու, ետ մնացող ճյուղերը առաջ մղելու և պարտիայի դիրեկտիվները կյանքում անշեղորեն կենսագործելու համար։ Սրանք հարցեր են, որոնք հաշվետու զեկուցումներում պետք է լայն լուսաբանում ստանան և դրվեն կոնֆերանսների քննարկմանը։ Չպետք է մոռանալ, որ շրջանային ու քաղաքային պարտիական կոնֆերանսների բարձր մակարդակով անցկացումը, գործարար քննադատության և ինքնաքննադատության ծավալումը մեծ չափով կախված է հաշվետու զեկուցումից, որը պետք է լինի բովանդակալից, իր մեջ ամփոփի հիմնական հարցերը, վերլուծի փաստերը, ցույց տա գործերի իրական վիճակը, հաջողությունների հետ միասին նշի թերությունները, դրանց պատճառները և վերացման միջոցները։

Պարտիայի XX համագումարի որոշումների լույսի տակ արդյունաբերության և շինարարության ղեկավարության վերակառուցումը, քիմիական արդյունաբերության զարգացման մասին պարտիայի Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշումը աշխատանքային լայն ասպարեզ են բացել պարտիական կազմակերպությունների առջև։ Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունները, քաղկոմներն ու շրջկոմները սկսել են ավելի մոտիկից զբաղվել արտադրության էկոնոմիկայի հարցերով։ Պարտիական կազմակերպությունների ամենօրյա օգնությամբ ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները հաջողությամբ են կատարում իրենց առջև դրված խնդիրները և երկրին տալիս են ավելի շատ արտադրանք։ Երևան քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները, սոցիալիստական մրցություն ծավալելով ի պատիվ պարտիայի XXI համագու-

մարի, ժամկետից շուտ, սեպտեմբերի 19-ին կատարեցին այս տարվա 9 ամսվա համախառն արտադրանքի պլանը։ Առանձնապես լավ ցուցանիշների հասան Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, Ս. Մ. Կիրովի անվան, Պոլիվինիլացետատ, ալյումինի գործարանները, մետաքսի կոմբինատը և ուրիշ շատ ձեռնարկություններ։ Լուրջ հաջողությունների են հասել նաև Կիրովական քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները։ Նրանք 1958 թվականի անցած 8 ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարել են 105,3 տոկոսով և պլանից դուրս երկրին տվել են մոտ 10 միլիոն ռուբլու արտադրանք։ Էականն այն է, որ համախառն արտադրանքի պլանը գերակատարելու հետ միասին գերակատարված է նաև աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը։ Այսպիսի օրինակներ կարելի է բերել նաև ռեսպուբլիկայի մյուս քաղաքների ու շրջանների արդյունաբերական ձեռնարկություններից։

Քաղաքային ու շրջանային կոնֆերանսներում արդյունաբերության զարգացման բնագավառում ձեռք բերված հաջողություններն ըստ ամենայնի պետք է գնահատվեն, և ընդհանրացվի այդ ուղղությամբ կուտակված հարուստ փորձը։ Դրա հետ միասին անհրաժեշտ է վեր հանել մի շարք արդյունաբերական ձեռնարկություններում եղած թերությունները և քննադատության ենթարկել այն ձեռնարկությունների տնտեսական ղեկավարներին ու պարտիական կազմակերպություններին, որոնք շարունակում են վատ աշխատել և չեն ապահովում պետական առաջադրանքների կատարումը։ Այդպիսի ձեռնարկությունների թիվը, դժբախտաբար, փոքր չէ։ Հենց միայն Երևանում 26 ձեռնարկություն չեն կատարել 1958 թ. 9 ամսվա պլանը, որի հետևանքով պակաս են տվել 23 միլիոն ռուբլու արտադրանք։ Մի շարք արտադրական ձեռնարկություններում մինչև օրս էլ պատշաճ ուշադրություն չեն նվիրում տեխնիկական պրոգրեսի հարցերին, որի հետևանքով էլ արտադրությունը չի զարգանում այնպես, ինչպես հարկն է։ Այդպես է վիճակը Երևանի փոքր հիդրոտուրբինների, մեխանիկական, Լենինականի հեծանվի, էլեկտրատեխնիկական գործարաններում, փայտամշակման ու կահույքի, կաթի և տեղական շինանյութերի արտադրության մի շարք ձեռնարկություններում։ Բավական է նշել, որ 1958 թվականի առաջին կիսամյակում պլանով նախատեսված նոր տեխնիկայի արմատավորման, արտադրական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման, արտադրության տեխնոլոգիայի կատարելագործման 156 միջոցառումներից՝ Ժողտնտխորհի ձեռնարկությունները կատարել են միայն 120-ը։

Առանձնապես լուրջ թերություններ կան աշխատանքի արտադրողականության բարձրացման ուղղությամբ։ Ժողտնտխորհի ձեռնարկություններից 25-ը 1958 թվականի առաջին կիսամյակում չեն կատարել աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը, իսկ 41 ձեռնարկությունում միջին աշխատավարձն ավելի արագ է աճել, քան աշխատանքի արտադրողականությունը, որը ներկայիս տեխնիկական առաջադիմության պայմաններում նորմալ երևույթ համարել չի կարելի։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում կարևոր նշանակություն ունեն արտադրության ղեկավարման կատարելագործումը, ձեռնարկությունների համաչափ աշխատանքը, բանվորների, ինժեներա-տեխնիկական անձնակազմի որակավորումը, առկա մեքենայական պարկի ու գործող մեքենաների ռացիոնալ օգտագործումը և այլն։ Սրանք արմատական հարցեր են, որոնք ամեն օր, ամեն ժամ պետք է գտնվեն Ժողտնտխորհի, պարտիայի քաղկոմների ու շրջկոմների, սովետական օրգանների ու պրոֆմիութենական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։ Բայց միշտ չէ, որ այդ հարցերը լուրջ ուշադրության են արժանանում, միշտ չէ, որ լրիվ լուծում են ստանում։ Մի՞թե հանդուրժելի է, որ մինչև օրս էլ Ժողտնտխորհի ձեռնարկություններում եղած շատ թանկարժեք նոր մեքենաներ ու սարքավորումներ չեն տեղադրված։



Եղած սարքավորումները ժամանակին չտեղադրելու հետ միասին առանձին ձեռնարկություններում հոգ չեն տանում նաև տեղադրված մեքենաների ու սարքավորումների անխափան աշխատանքն ապահովելու նկատմամբ։ Այդ է պատճառը, որ տեղի են ունենում պարապուրդներ։ Միայն Երևանի կաբելի գործարանում 1958 թվականի առաջին հինգ ամսում ձգման ու գլանման ցեխերը 27.800 մեքենա-ժամ պարապուրդ են տվել։ Պարապուրդի փաստեր կարելի է բերել նաև մի շարք այլ արդյունաբերական ձեռնարկություններից, որոնք խիստ բացասաբար են անդրադառնում աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա։

Փաստերը ցույց են տալիս, որ արդյունաբերության բնագավառում դեռևս կան շատ թերություններ, չլուծված առանձին հարցեր, որոնք լուրջ քննարկման պետք է ենթարկվեն շրջանային ու քաղաքային պարտիական կոնֆերանսներում։ Այստեղ, կոնֆերանսներում, պատգամավորներն իրենց քննադատական խոսքը կասեն այն շրջկոմների ու քաղկոմների հասցեին, որոնք դեռևս խորությամբ չեն ներթափանցում արտադրության էկոնոմիայի մեջ և անհրաժեշտ պահանջկոտություն հանդես չեն բերում պետական պլանները սիստեմատիկաբար թերակատարող ձեռնարկությունների ղեկավարների նկատմամբ։

Շրջանային ու քաղաքային պարտիական կոնֆերանսները լուրջ ուշադրություն պետք է նվիրեն նաև շինարարության հարցերին։ Գաղտնիք չէ, որ այդ ուղղությամբ ձեռք բերված որոշակի հաջողությունների կողքին կան նաև աղաղակող թերություններ։ Բանն այն է, որ ՀՍՍՌ Շինարարության մինիստրությունը և առանձին շինարարական կազմակերպություններ դեռևս անհրաժեշտ եզրակացություններ չեն արել իրենց հասցեին բազմիցս արված քննադատական դիտողություններից և արմատական բեկում չեն մտցրել աշխատանքում։ Բազմաթիվ փաստեր կարելի է բերել, թե ինչպես շինարարության համար հատկացված միջոցները փոշիացվում են, շատ կառույցներում վատ են օգտագործվում մեխանիզմներն ու բանվորական ուժը, անբավարար է աշխատանքի կազմակերպումը, շինանյութերի հաշվառումը, պահպանումն ու ռացիոնալ օգտագործումը։ Շինարարական առանձին կազմակերպություններում թույլ է պետական կարգապահությունը, չի ապահովվում ըստ եռամսյակների սահմանված պլանի կատարումը, շինարարության գործում, առանձնապես տարվա չորրորդ եռամսյակում, նկատվում է գրոհայնություն, որը խիստ իջեցնում է շինարարական աշխատանքի որակը։ Անհանդուրժելի է, որ հենց Երևան քաղաքում բնակարանային շինարարության ընթացիկ տարվա 8 ամսվա պլանը կատարված է ընդամենը 33 տոկոսով։

Բացահայտելով և սուր քննադատության ենթարկելով շինարարական կազմակերպությունների աշխատանքում եղած թերությունները, շրջանային ու քաղաքային պարտիական կոնֆերանսները պետք է համապատասխան միջոցառումներ նշեն շինարարության ասպարեզում եղած թերությունները վե-

*բացնելու, պետության բաց թողած միջոցները ռացիոնալ օգտագործելու և բնակարանային, արդյունաբերական ու կուլտ-կենցաղային օբյեկտների շինարարության պլանները սահմանված ժամկետներին կատարելու համար։*

*Կենսագործելով սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման մասին Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX և ՀԿՊ XIX համագումարների և դրանց հաջորդած ժամանակաշրջանում պարտիայի Կենտկոմի պլենումների որոշումները, ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովետական տնտեսությունները որոշակի հաջողությունների են հասել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացման, ինչպես նաև հանրային տնտեսությունների զարգացման և նրանց եկամտաբերության ավելացման բնագավառներում։ Այժմ կոլտնտեսային գյուղն ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ է արտադրում, քան արտադրել է երբևէ։ Գյուղատնտեսության զարգացման բնագավառում հաջողությունները իրոք զգալի են, բայց դրանք չեն կարող բավարարել այսօրվա պահանջը, մանավանդ մի շարք շրջաններում, որտեղ դեռևս ցածր է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրվող անասնաբուծական մթերքների քանակը։ Առանձին շրջաններում պարտիական կազմակերպությունները և սովետական օրգանները դեռևս խոր կերպով չեն թափանցում կոլտնտեսությունների էկոնոմիկայի մեջ։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում չնայած անասնաբուծական մթերքների արտադրությունը բավականին ավելացել է, բայց մի շարք կոլտնտեսություններում դեռևս բարձր է նրանց ինքնարժեքը։ Շատ կոլտնտեսություններում վճռական պայքար չի ծավալվում կերի կայուն բազա ստեղծելու համար, անբավարար է կերային կուլտուրաների և առանձնապես եգիպտացորենի բերքատվության բարձրացման ուղղությամբ կատարվող աշխատանքը։*

*Այս և նման կարգի մի շարք արմատական հարցեր, որոնք սերտորեն կապված են գյուղատնտեսության զարգացման հետ, պետք է դրված լինեն գյուղական շրջանների պարտիական կոնֆերանսների ուշադրության կենտրոնում և լայնորեն քննարկման ենթարկվեն։ Համարձակորեն բացահայտելով եղած թերությունները, կոնֆերանսները կոնկրետ միջոցներ պետք է նշեն դրանք վերացնելու, գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու, անասունների գլխաքանակն ու մթերատվությունն ամեն կերպ ավելացնելու, որը հնարավորություն կտա յուրաքանչյուր շնչին ընկնող կաթի, յուղի և մսի արտադրությամբ առաջիկա տարիներում ԱՄՆ-ին հասնելու՝ պարտիայի առաջադրած խնդիրը պատվով կատարելու համար։*

*Պարտիայի շրջանային ու քաղաքային կոնֆերանսները, սկզբնական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները պետք է լուրջ ուշադրություն դարձնեն պարտիական կազմակերպությունների իդեոլոգիական աշխատանքի հարցերի վրա։ Այս իսկ առումով պետք է լայնորեն քննարկվեն մասսայական-քաղաքական աշխատանքի, կոմունիստների, մեր բոլոր կադրերի մարքսիստական-լենինյան ուսուցման, գիտական, կուլտուրական ու ստեղծագործական հիմնարկությունների ու կազմակերպությունների գործունեության, մասսաների կոմունիստական դաստիարակության հարցերը։ Այդ հարցերի խոր ու բազմակողմանի քննարկումը մեծապես կօգնի պարտիական կազմակերպությունների իդեոլոգիական աշխատանքի ուժեղացմանը, որը*



*պետք է կրի մարտական բնույթ և մասսաներին ոգեշնչի ու մոբիլիզացնի կոմունիստական շինարարության՝ պարտիայի նախագծումները կյանքում անշեղորեն կենսագործելու։*

*Իդեոլոգիական աշխատանքում կարևոր դեր է խաղում պարտիական պրոպագանդան, որի հաջողությունը կախված է նրանից, թե պարտիայի քաղկոմներն ու շրջկոմներն ինչպես են ղեկավարում այդ բնագավառը։ Հարկ է նշել, որ առանձին քաղկոմներ ու շրջկոմներ պարտիական պրոպագանդայի ծավալման, նրա բովանդակության ու մարտունակության բարձրացման ուղղությամբ անբավարար աշխատանք են կատարում։ Նրանք դեպքից-դեպք են անդրադառնում պրոպագանդիստական աշխատանքին և սկզբնական պարտիական կազմակերպություններին անհրաժեշտ օգնություն ցույց չեն տալիս այդ գործն իր արժանի բարձրության վրա դնելու համար։ Առանձին շրջանային պարտիական կոնֆերանսներում շրջկոմների հաշվետու զեկուցումների մեջ պրոպագանդիստական աշխատանքի հարցերը մղվում են երկրորդական պլանի վրա, կամ էլ հատ ու կենտ պատգամավորներ են խոսում պարտիական պրոպագանդայի մասին, այն էլ թռուցիկ կերպով։ Առաջիկա կոնֆերանսներում այդ երևույթը չպետք է կրկնվի։ Կոնֆերանսները պետք է լուրջ ուշադրություն դարձնեն պարտիական պրոպագանդայի հարցերի վրա և կոնկրետ միջոցառումներ նշեն պրոպագանդան կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ ավելի սերտ կապելու, նրա գաղափարական մակարդակը բարձրացնելու, կոմունիստներին, մեր բոլոր կադրերին մարքսիզմ-լենինիզմով զինելու, որը նրանց հնարավորություն կտա ճիշտ կողմնորոշվելու աշխատանքում, անհաշտ պայքար ծավալելու ռևիզիոնիզմի, տիրացուականության, քարացածության ու այն բոլոր երևույթների դեմ, որոնք խորթ են լենինիզմի ոգուն և արգելակում են մեր առաջընթացը։*

*Պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովների և քաղաքային ու շրջանային պարտիական կոնֆերանսների հաջող անցկացումը լուրջ խթան կհանդիսանա պարտիական-քաղաքական, պարտիական-կազմակերպական աշխատանքի հետագա բարելավման, պարտիական կազմակերպությունների, բոլոր կոմունիստների դերի ու ակտիվության բարձրացման համար։ Դրանք պարտիական կազմակերպություններին կօգնեն մասսաներին մոբիլիզացնելու տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրները հաջողությամբ կատարելու և Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI և Հայաստանի Կոմպարտիայի XX արտակարգ համագումարները նորանոր հաջողություններով դիմավորելու համար։*

---

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

Ա. ԳԵՎՈՐԳՅԱՆ

*Մեր երկրում հսկայական կապիտալ շինարարություն է կատարվում։ Սիստեմատիկաբար ավելանում է կապիտալ ներդրումների ծավալը։ Ընթացիկ տարում այն կազմում է ավելի քան 200 միլիարդ ռուբլի, կամ 11 տոկոսով ավելի, քան անցյալ տարի և մոտ 3,5 անգամ ավելի, քան ամբողջ առաջին հնգամյակում։ Այս տարի շահագործման կհանձնվեն բազմաթիվ նոր արդյունաբերական ձեռնարկություններ, զգալիորեն կընդարձակվեն կարողությունները ածխի, նավթի, թեթև, սննդի և հատկապես գազի ու քիմիական արդյունաբերության մեջ։ Քաղաքներում և բանվորական ավաններում կկառուցվեն 61 միլիոն քառակուսի մետր բնակելի շենքեր, որոնց ծավալը 1957 թվականին կառուցված շենքերի ծավալից ավելի է 13 միլիոն քառակուսի մետրով։*

*Շինարարությունը մեծ չափով աճում է նաև մեր ռեսպուբլիկայում։ Ընթացիկ տարում Հայկական ՍՍՌ-ում շինարարության գծով պետական կապիտալ ներդրումները կազմում են ավելի քան մեկ միլիարդ 150 միլիոն ռուբլի, կամ 30 տոկոսով ավելի, քան անցյալ՝ 1957 թվականին։ Կապիտալ ներդրումների ծավալը բնակարանային շինարարության մեջ կազմում է 283 միլիոն ռուբլի. նախատեսված է շահագործման հանձնել 193 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, կամ 2 անգամ ավելի, քան շահագործման է հանձնվել 1957 թվականին։*

*Ռեսպուբլիկայում շինարարության պլանի կատարումը ապահովելու նպատակով զգալի աշխատանք է կատարվել շինարարական կազմակերպությունների ամրապնդման, նյութական և ֆինանսական միջոցների մանրատվածության լիկվիդացման, ինչպես նաև շինարարության համար անհրաժեշտ ինդուստրիալ բազայի ստեղծման ուղղությամբ։*

*Ընթացիկ տարում շահագործման հանձնվեցին՝ Գյումուշգէս—Քաջարան էլեկտրահաղորդման գիծը, Քաջարանի պղնձա-մոլիբդենային կոմբինատի հարստացման ֆաբրիկան, Կիրովականի «Ավտոմատիկա» և Երևանի էլեկտրալուսավորման արմատուրայի գործարանները, էլեկտրատեխնիկական գործարանը Լենինականում, կորացրած կահույքի ֆաբրիկան Երևանում և տասնյակ այլ ձեռնարկություններ ու արտադրական ցեխեր։*

*Արագացված տեմպերով կառուցվում են և առաջիկայում շահագործման կհանձնվեն մի շարք նոր ձեռնարկություններ, այդ թվում ռելեների, հաստոցաշինական և հաստոցանորմալների գործարանները Երևանում, ներտաշիչ հաստոցների գործարանը Լուսավանում, արհեստական կորունդի գործարանը*



*Կիրովականում, հղկող հաստոցների և փոքր շարժիչների գործարանները Լենինականում։*

*Հատկապես մեծ մասշտաբներով է ավելանում կապիտալ շինարարության ծավալը Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանում։ 1959—1965 թվականներին ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ կներդրվի ավելի քան 12 միլիարդ ռուբլի, որը 2 անգամ ավելի է, քան ներդրվել է անցած 7 տարում։ Ներդրումները կուղղվեն նոր ձեռնարկությունների շինարարության և գործող ձեռնարկությունների վերակառուցման նպատակին։*

*Գունավոր մետալուրգիայի ուղղությամբ նախատեսվում է կառուցել և շահագործման հանձնել՝ Ագարակի պղնձա-մոլիբդենային կոմբինատը, Ախթալայի հարստացնող ֆաբրիկան, զգալիորեն ընդարձակել Քաջարանի և Դաստակերտի պղնձա-մոլիբդենային կոմբինատները, Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատը, ինչպես նաև սկսել Ախտայի լեռնա-քիմիական կոմբինատի շինարարությունը։ Այս միջոցառումների կենսագործման համար նախատեսվում են մեկ միլիարդ 368 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ։*

*Յոթնամյակում մեծ չափերով կզարգանա քիմիական արդյունաբերությունը։ Այդ պլանի համապատասխան ռեսպուբլիկայի արդյունաբերության բնագավառում կծախսվեն 5,5 անգամ ավելի միջոցներ, քան 1952—1958 թվականներին։ Նախատեսված է կառուցել՝ ացետատի մետաքսի գործարան Կիրովականում, կապրոնի կորդի կոմբինատ Ախտայում, զգալիորեն ընդարձակել Կիրովի անվան, Պոլիվինիլացետատ և ավտոդողերի գործարանները։ Մեր ռեսպուբլիկայում զգալի չափով զարգանալու են՝ մեքենաշինությունը, հաստոցաշինությունը, սարքաշինությունը, էլեկտրատեխնիկական և ռադիոտեխնիկական արդյունաբերությունը։ Այդ բնագավառներում նախատեսված է կառուցել ավելի քան 30 ձեռնարկություն։*

*Ժողովրդական տնտեսությունն անհրաժեշտ էներգետիկ բազայով ապահովելու նպատակով նախատեսվում է բնական գազով աշխատող 300 հազար կվտ ընդհանուր հզորությամբ էլեկտրակայանների շինարարությունը Երևանում և Ախտայում, ինչպես նաև Տաթևի 150 հազար կիլովատ հզորությամբ էլեկտրակայանի կառուցումը Որոտանի կասկադում։*

*Բնակարանային շինարարության անհամեմատ մեծ ծավալ է նախատեսված 1959—1965 թվականներին։ Այդ ժամանակաշրջանում բնակարանային շինարարության համար պետական կենտրոնացված կապիտալ ներդրումների գծով առանձնացված է մոտ 3 միլիարդ ռուբլի. քաղաքներում կառուցվելու է 3,1 միլիոն քառակուսի մետր, իսկ գյուղական վայրերում՝ 775 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։*

*Պլանի նախագծի համաձայն ավելի խոշոր միջոցառումներ կհատկացվեն նաև կոմունալ տնտեսության, կուլտուրայի, առողջապահության, լուսավորության օբյեկտների շինարարությանը։ Կապիտալ շինարարության այդ վիթխարի ծրագրի հաջող իրականացման նպատակով նախատեսվում է շինարարության ինդուստրիալ բազայի և շինանյութերի արտադրության հետագա զարգացում։ Նախատեսված է կառուցել երկաթբետոնե կոնստրուկցիաների, արհեստական բլոկների, պանելային հաստոցամիջնորմների, փայտային թելքավոր սալերի և այլ շինանյութերի ու շինարարական իրերի մի շարք գործարաններ։*

Յոթնամյակում ծախսվելիք հսկայական կապիտալ ներդրումների հաջող իրացումը մեր շինարարական կազմակերպություններից պահանջում է մեծ ջանքեր և լավ կազմակերպվածություն։ Յոթնամյակի առաջին տարվա—1959 թվականի աշխատանքային տեմպերը խոշոր չափով կախված են այս տարվա հաջող աշխատանքից։ Ընթացիկ տարում ռեսպուբլիկայի մի շարք շինարարական կազմակերպություններ ձեռք են բերել աշխատանքային բարձր ցուցանիշներ։ Այսպես, օրինակ, 9-րդ տրեստը, որ կառուցում է ալյումինի, էլեկտրալամպերի, ռելեների գործարանները և մի շարք այլ ձեռնարկություններ, 10-րդ տրեստը, որ կառուցում է Քաջարանի պղնձամոլիբդենային գործարանը և Զանգեզուրի հանքվարչության օբյեկտները, Աթարբեկյանգէսի շինարարական, Ջակտրանսստրոյգէսի տրեստի շինմոնտաժային վարչությունները, Արմվոդստրոյ տրեստը և շատ ուրիշ կազմակերպություններ հասել են շինմոնտաժային աշխատանքների պլանների սիստեմատիկ կատարման։ Նրանք անցյալ ութ ամիսների պլանները կատարել են 105—110 տոկոսով։

Չնայած ռեսպուբլիկայում շինարարական կազմակերպությունների ձեռք բերած որոշ հաջողություններին, այնուամենայնիվ հիշյալ բնագավառում դեռևս կան խոշոր թերություններ։ Ամենից առաջ պետք է նշել, որ ռեսպուբլիկայում կապիտալ ներդրումների պլանը ընդհանուր առմամբ և առանձին ճյուղերի գծով՝ չի կատարվում։ Ռեսպուբլիկայում կապիտալ ներդրումների պլանը ութ ամսում կատարված է 87,9 տոկոսով, ընդ որում շինմոնտաժային աշխատանքների գծով՝ 91,1 տոկոսով։ Այդ նույն ժամանակաշրջանում բնակարանային շինարարության բնագավառում կապիտալ ներդրումների պլանը կատարվել է միայն 84,1 տոկոսով։ Շահագործման է հանձնված 42,6 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, որը կազմում է իննամսյա պլանի միայն 45,5 տոկոսը։ Ռեսպուբլիկայի շինարարները մի քանի տարի շարունակ չեն կատարում բնակարանային շինարարության պլանները։ Այսպես, 1957 թվականին բնակելի տարածության կառուցման պլանը թերակատարվել է 44 հազար քառակուսի մետրով. դա նշանակում է, որ շուրջ 1500 ընտանիք չեն ստացել նոր, բարեկեցիկ բնակարաններ. հարյուրավոր բնակարաններ պակաս են կառուցվել նաև ընթացիկ տարվա անցած ութ ամսում։

Շինարարության մինիստրության խոշոր տրեստներից մեկը՝ առաջին տրեստը (կառավարիչ Ա. Հարությունյան, պարտիական կազմակերպության քարտուղար Ա. Սեդրակյան) այս տարվա 8 ամսում տարեկան պլանը կատարել է 31 տոկոսով։ Այդ տրեստի 5 շինվարչություններից միայն երկուսն են կատարել իրենց պլանները (2-րդը և 5-րդը)։ Հատկապես վատթար վիճակում է 4-րդ շինարարական վարչությունը, որ տարեսկզբից շահագործման է հանձնել միայն 1543 քառակուսի մետր բնակելի տարածություն, մինչդեռ նրա տարեկան պլանը կազմում է 10,5 հազար քառակուսի մետր։ Ավելի վատ է վիճակը 3-րդ տրեստում (կառավարիչ Գ. Ղարագյոզյան, պարտիական կազմակերպության քարտուղար Բ. Գրիգորյան)։ Տրեստի ղեկավարների և պարտիական կազմակերպության անբավարար աշխատանքի հետևանքով բնակարանային շինարարության ութամսյա պլանը կատարված է 49,4 տոկոսով։

Արդյունաբերական օբյեկտների շինարարությունը անբավարար է կատարում 2-րդ շինարարական տրեստը (կառավարիչ Հ. Կարապետյան, պարտիական կազմակերպության քարտուղար Ա. Մելիքսեթյան), որը շինմոնտաժային աշխատանքների ընթացիկ տարվա ութամսյա պլանը կատարել է միայն 75,5



տոկոսով։ Տրեստը ՀԿՊ Կենտկոմի բյուրոյի որոշմամբ Արարատի ցեմենտի գործարանի 3-րդ տեխնոլոգիական գծի ամբողջ կոմպլեքսի թողարկումը պետք է ավարտեր 1957 թվականին, սակայն կոմպլեքսը դեռևս շահագործման չի հանձնված. հատկապես վատ է կառուցվում ջարդիչ տնտեսությունը և տրանսպորտային սրահը։ Ցեմենտագործների ակումբը արդեն 4 տարի է, ինչ կառուցվում է, սակայն դեռևս հայտնի չէ, թե երբ կավարտվի նրա կառուցումը։ Արարատ ավանում մեծ ուշացումներով են կառուցվում նաև բնակելի շենքերը։ Երևանի Զարբախ ավանում Ժողտնտխորհի Շինանյութերի արդյունաբերության վարչության երկաթբետոնե կոնստրուկցիաների գործարանի կառուցման համար կապիտալ ներդրումների յուրացման գործը աշխատանքի չափազանց վատ կազմակերպման հետևանքով ձախողվել է։

Ետ մնացողների շարքում է նաև Երևանի Հայհիդրոէներգոշինի Երևանգէսի շինվարչությունը (վարչության պետ Մ. Տեր-Գրիգորյան, պարտիական կազմակերպության քարտուղար Ա. Գրիգորյան)։ Այդ վարչությունում շինարարական աշխատանքները չափազանց անբավարար են կատարվում, անհրաժեշտ հոգատարություն չի ցուցաբերվում երիտասարդ բանվորների նկատմամբ. կարգապահությունը ցածր է։ Շինվարչությունը աշխատանքի ոչ մի տեսակի գծով պլանը չի կատարել։ Ձախողված է բանվորների բնակելի շենքի շինարարությունը, ավելի դանդաղ է ընթանում Հայգիդեպի շենքերի շինարարությունը։ Անբավարար է աշխատանքը նաև 4-րդ տրեստում, Երքաղսովետի կոմունշինում, 2-րդ մոնտաժային վարչությունում, Կովկասի էլեկտրացանցշինում և մի շարք այլ կազմակերպություններում։

Ոչ բոլոր շինարարական կազմակերպություններն են ապահովում շինարարության պլանի տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով կատարումը։ Կարևորագույն ցուցանիշ է համարվում աշխատանքի արտադրողականությունը, որի բարձր մակարդակը կարելի է ապահովել միայն աշխատատեղի պատշաճ կազմակերպմամբ և շինարարության բարձր մեքենայացմամբ։ Մինչդեռ շինարարական մեխանիզմները անբավարար են օգտագործվում, որի հետևանքով էլ աշխատանքի արտադրողականությունը ցածր է։ Առաջին տրեստի առաջին շինվարչությունը Կիևյան փողոցի վրա բնակելի շենք է կառուցում։ Շենքի փոսորակը փորելու վրա աշխատում էր մեկ էքսկավատոր, որին առանձին օրերում սպասարկում էր միայն մեկ ավտոմեքենա։ Երթաերթերի միջև ընկած ժամանակամիջոցում էքսկավատորը պարապուրդ էր տալիս համարյա մեկ ժամ։ Այդ տրեստի մի այլ օբյեկտում, շինարարական աշխատանքներն ավարտելուց հետո ավելի քան երկու ամիս կանգնած էր աշտարակային ամբարձիչը և այդ այն ժամանակ, երբ բոլորին հայտնի է, որ շինարարության մեջ նման մեխանիզմների թիվը չափազանց քիչ է, և նրանց կարիքը միշտ էլ զգացվում է։ Այսքանից հետո զարմանալի չէ, որ այդ տրեստում աշխատանքի արտադրողականությունը ցածր է։

Անհրաժեշտ է նշել, որ էքսկավատորների պարկը ամենուրեք անբավարար է օգտագործվում։ Մեքենայացման և ավտոտրանսպորտի տրեստի մեքենայացման վարչությունում (վարչության պետ Վ. Սանդուխչյան, պարտիական կազմակերպության քարտուղար Ա. Ղալումյան) մեկ էքսկավատորի օրական միջին արտադրողականությունը կազմում է 100 խոր. մետր, նորմայով սահմանված 240 խոր. մետրի փոխարեն։ Ահա թե ինչու վարչությունը շինմոնտաժային աշխատանքների պլանը կատարել է միայն 75 տոկոսով։

դրանով իսկ խանգարելով շինարարական շատ վարչությունների աշխատանքների նորմալ ընթացքը: Անհանդուրժելի է, երբ վարչության պարտիական կազմակերպությունը անտարբերությամբ է անցնում այդ թերությունների կողքով և մեխանիզմները լիարժեք օգտագործելու, աշխատող ուժի մեծ հոսունությունը կանխելու ուղղությամբ ոչ մի կոնկրետ միջոցառում չի ձեռնարկում: Շինարարական աշխատանքները թույլ են մեքենայացված նաև 11-րդ տրեստի օբյեկտներում (Նոր Արեշի դպրոցը և այլն): Դրա հետ միասին տրեստը ձգձգում է բետոնի գործարանի կառուցումը:

Արմվոդստրոյ տրեստում բետոնախառնիչների և մեխանիզմների ոչ ճիշտ տեղաբաշխման պատճառով միևնույն բրիգադաների միջև աշխատանքի արտադրողականության ցուցանիշը 4—5 անգամ տարբեր է:

Աշխատանքի բարձր արտադրողականությունը չապահովելու պատճառը նաև այն է, որ կառույցներում անբավարար են կիրառվում աշխատանքի ինդուստրիալ մեթոդները: Հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիաների օգտագործման պլանը ցածր է. մեկ միլիոն շինմոնտաժային աշխատանքներին ընկնում է 67 հազար ռուբլու երկաթբետոնե կոնստրուկցիաներ: Սակայն, չնայած դրան, այստեղ յուրաքանչյուր մեկ միլիոն ռուբլու շինմոնտաժային աշխատանքում օգտագործվում են 61 հազար ռուբլու երկաթբետոնե կոնստրուկցիաներ, որ դանդաղեցնում է շինարարության տեմպերը:

Աշխատանքի բարձր արտադրողականությունն ապահովող կարևոր պայմաններից է նաև աշխատատեղի ճիշտ նախապատրաստումը: Մեր կառույցների մեծ մասում աշխատատեղը վատ է նախապատրաստվում, տեղամասերը լիքն են շինարարական աղբով և շինանյութերով: Այդպիսի պայմաններում շինանյութերի մի մասը, հատկապես երկաթբետոնե կոնստրուկցիաները և պեմզաբլոկները կոտրվում, գործածության համար անպետք են դառնում, տեղի են ունենում ցեմենտի, գաջի և մյուս նյութերի մեծ կորուստներ, ինչպես նաև խախտվում է նորմալ տեխնոլոգիական ռեժիմը: Շինհրապարակում կարգ ու կանոնի բացակայությունը դժվարացնում է շինանյութերի խստիվ հաշվառումն ու պլանային ծախսումը, ստեղծում է բարենպաստ պայմաններ նրանց անկանոն ծախսման, շռայլման ու յուրացման համար, խիստ բացասաբար է անդրադառնում աշխատանքների որակի վրա:

Շինարարության որակի հարցը բազմիցս քննարկվել է պարտիական և սովետական օրգաններում: Անցյալ տարի Հայաստանի ԿՊ Կենտկոմի պլենումը բնակարանային շինարարության ցածր որակի համար խիստ քննադատության ենթարկեց շինարարական կազմակերպություններին, հատկապես Շինարարության մինիստրությանը: Սակայն շինարարները դարձյալ շարունակում են շահագործման հանձնել այնպիսի շենքեր, որոնք դեռևս ունեն զգալի թերություններ: Հատկապես անորակ են կատարվում վերջնամշակման և սանիտարական-տեխնիկական աշխատանքները, պարկետի դրումը, պատուհանների ու դռների ներկումը և այլն: Այսպես, Պոմստրախկասսայի Ջերմուկի սանատորիայի շենքի շինարարությունում 4-րդ տրեստի 3-րդ շինվարչության կողմից աշխատանքների անորակ կատարման հետևանքով քանդվել են երկաթբետոնե միջհարկային ծածկերը: Այդ նույն պատճառով քանդվեցին նաև Պոլիվինիլացետատ գործարանի № 14 բնակելի տան միջհարկային ծածկերը: 2-րդ տրեստի 3-րդ շինվարչությունում՝ էլեկտրատեխնիկական գործարանի, Գյուղատնտեսության և Ֆինանսների մինիստրությունների բնա-





կելի շենքերի վրա կատարված անորակ աշխատանքներն ուղղելու համար լրացուցիչ ծախսվել է 80 հազար ռուբլի:

Այդպիսի թերություններ կան նաև 6-րդ տրեստի առաջին շինվարչությունում, Լենինականի ապակե տարայի գործարանի արտադրական կորպուսի կառուցման աշխատանքներում, Քաջարանի շինարարության մեջ և այլ կազմակերպություններում:

Կոմունիստական պարտիան կադրերին միշտ դաստիարակում է կարգապահության, հանձնարարված գործի նկատմամբ բարձր պատասխանատվության, դեպի իր պարտականությունների կատարումը պետական վերաբերմունք ցուցաբերելու ոգով: Բայց, այնուամենայնիվ, շինարարությունների պարտիական կազմակերպությունները դեռևս բավարար հետևողականություն ու պահանջկոտություն չեն ցուցաբերում այդ գործում և թույլ են պայքարում պետական կարգապահությունը խախտողների դեմ:

1957 թվականին ռեսպուբլիկայի շինարարական կազմակերպությունները թույլ են տվել աշխատավարձի ֆոնդի ավելի քան 24 միլիոն ռուբլու գերածախս, այդ թվում Շինարարության մինիստրության կազմակերպությունները՝ 18 միլիոն ռուբլի, Հայհիդրոէներգոշինը՝ 3 միլիոն ռուբլի, Ճանվարչությունը՝ 640 հազար ռուբլի: Շինարարության մինիստրության սիստեմի 13 տրեստներից 12-ը և 3 շինմոնտաժային վարչություններից 2-ը աշխատանքի արտադրողականության աճի նկատմամբ թույլ են տվել միջին աշխատավարձի առավել աճ, որը մինիստրության գծով 1957 թվականին կազմել է 13,3 տոկոս, իսկ այս տարվա առաջին կիսամյակում՝ 8,7 տոկոս:

Առանձին շինարարական վարչություններում դեռևս շարունակվում են աշխատավարձի ֆոնդի գերածախսի դեպքեր: Այսպես, Կիրովականի 7-րդ տրեստի առաջին շինվարչությունում (պետ Խաչատրյան, պարտիական կազմակերպության քարտուղար Կարապետյան) ժողովրդական միջոցների ծախսման նկատմամբ ոչ պետական վերաբերմունքի պատճառով թույլ է տրվել շինարարական աշխատանքների 921 հազար ռուբլու թանկացում, այդ թվում աշխատավարձի ֆոնդի գերածախս՝ 413 հազար ռուբլու չափով: Աշխատավարձի ֆոնդի մեծ գերածախս է թույլ տրվել նաև Երևանգէսի շինվարչությունում (293 հազար ռուբլի) և այլ կազմակերպություններում:

Պարտիական կազմակերպությունները թույլ են պայքարում նյութերի և դրամական միջոցների շռայլումների ու յուրացումների դեմ: Վերջին 3 տարիների ընթացքում անհատական շենքեր կառուցվել է 4 անգամ ավելի, քան կառուցված է պետական ներդրումներով. և այդ այն դեպքում, երբ բնակչությանը շինանյութեր վաճառվում է խիստ սահմանափակ քանակությամբ: Պարզ է, որ անհատական բնակարաններ կառուցողները շինանյութերը ձեռք են բերել ի հաշիվ պետական շինարարության:

Վերջերս պարզվեց, որ Ախթալայում 2-րդ շինվարչության աշխատողները կատարված աշխատանքների վրա թույլ են տվել հավելագրումներ, կեղծ կարգագրերով դրամի վճարումներ և շինարարական նյութերի շռայլումներ:

Առաջին տրեստի աշխղեկ Զաքարյանն այս տարվա ապրիլին վարորդ Թադևոսյանի կատարած աշխատանքի համար ստորագրել է մի քանի կարգագիր, հաստատելով, որ Թադևոսյանն իբր օրական կատարում է 22 ռեյս կամ 345 կիլոմետր վազք, մինչդեռ վարորդը չափազանց լարված աշխատան-

քի դեպքում կարող է կատարել միայն 10 ռեյս կամ 150—160 կիլոմետրից ոչ ավելի վազք։

Նման դեպքեր տեղի չէին ունենա, եթե պարտիական կազմակերպությունները ժամանակին արձագանքեին տեղերից եկող ահազանգումներին և ձեռք առնեին խիստ միջոցներ։ Այսպես, օրինակ, Լենինականի 6-րդ տրեստում ահազանգումներ կային այն մասին, որ կոմունիստ աշխղեկներ Բաբայանի և Նազարեթյանի օբյեկտներում տեղի են ունենում նյութերի յուրացման դեպքեր։ Սակայն պարտիական կազմակերպության քարտուղար ընկ. Բաղդասարյանը, տեղյակ լինելով այդ ահազանգումներին, չի հետաքրքրվել, թե ինչումն է բանը և այդ աշխղեկների հարցը քննության առարկա չի դարձրել։ Ավելին, աշխղեկ Ջանոյանը հաճախակի հարբած վիճակում աշխատանքի ներկայանալու համար հանվել է աշխատանքից, իսկ պարտկազմակերպությունը հանդես է եկել կարգապահության խախտողի պաշտպանի դերում։

Առաջին տրեստի պարտիական կազմակերպության ժողովներում շատ անգամ նշվել են շինվարչությունում տեղ գտած թերությունները՝ շինանյութերի հաշվառումը վարելու ոչ ճիշտ պրակտիկան, կարգադրերի ձևակերպման և կատարված աշխատանքների գնահատման սխալ ձևը և այլն։ Սակայն սկզբնական պարտիական կազմակերպության բյուրոն այդ քննադատական դիտողությունները անհետևանք է թողել։

Պետական կարգապահության խախտումների առթիվ ահազանգումների և փաստերի նկատմամբ որոշ պարտիական կազմակերպությունների նման սխալ վերաբերմունքը չի կարող նպաստել շինարարական կազմակերպություններում անհրաժեշտ կարգ ու կանոն մտցնելու գործին։

Գործի հաջող կազմակերպումը մեծ չափով կախված է կոմունիստների ուժերի ճիշտ տեղաբաշխումից։ Կոմունիստների ճիշտ տեղաբաշխումը կարևոր նախապայման է պարտիական օրգանների և սկզբնական պարտիական կազմակերպությունների որոշումների իրականացման գործում։ Կոմունիստներին պետք է դասավորել այնպես, որպեսզի յուրաքանչյուր շինվարչություն ունենա ՍՄԿՊ անդամների ամուր կորիզ, որը կարողանա ղեկավարել կոլեկտիվի աշխատանքները։

Մի շարք պարտիական կազմակերպություններում կոմունիստների մեծամասնությունը աշխատում է անմիջապես արտադրության մեջ։ Այսպես, օրինակ, 7-րդ տրեստում 189 կոմունիստներից արտադրության մեջ աշխատում են 149-ը, այդ թվում 116-ը՝ բանվոր։ Հայքիմարդշինում 65 կոմունիստներից արտադրության մեջ աշխատում են 63-ը, այդ թվում 40-ը բանվոր։ Կոմունիստները ճիշտ են տեղաբաշխված նաև Աթարբեկյանգէսի շինվարչությունում, Ագարակշինում և այլ կազմակերպություններում։

Բայց միանգամայն այլ պատկեր է ներկայացնում կոմունիստների տեղաբաշխումը Արմպրոդստրոյ տրեստի պարտիական կազմակերպությունում։ Այստեղ 34 կոմունիստներից տրեստի ապարատում աշխատում են 15-ը, իսկ արտադրության մեջ՝ ընդամենը 12-ը, որոնցից բանվորներ են միայն 6-ը։ Սկզբնական պարտիական կազմակերպության բյուրոյի 5 անդամներից 4-ը տրեստի ապարատի աշխատողներ են (կառավարիչը, իրավաբանը, արտադրա-տեխնիկական բաժնի պետը և ինժեները) և միայն մեկը՝ բանվոր։ Դրանով կարելի է բացատրել այդ կազմակերպության կողմից բանվորների շրջանում տարվող քաղաքական դաստիարակչական թույլ աշխատանքը, ցածր



կարգապահությունը, տրեստի կոլեկտիվում եղած մեծ հոսունությունը (8 ամսվա ընթացքում տրեստի կոլեկտիվի համարյա ամբողջ կազմը փոխվել է)։

Այդպիսի վիճակ գոյություն ունի նաև 2-րդ տրեստում, որի շինարարական 3 վարչություններում հաշվվում է 51 պարտանդամ, որոնցից 20-ը աշխատում են կառավարման ապարատում և մատբաժնում։ Այստեղ կոմունիստ բանվորներ են 6 հոգի, ընդ որում 3-րդ շինվարչությունում՝ միայն մեկը։

Շինարարության աշխատանքների բարելավման համար չափազանց կարևոր է բանվորների հոսունության վերացումը, որովհետև գործի հաջողությունը ամենից առաջ կախված է կադրերից, նրանց պատրաստվածությունից, նրանց որակավորումից, մինչդեռ եղած մեծ հոսունությունը բացառում է բարձր որակավորում ունեցող բանվորական մշտական կադրերի ստեղծման հնարավորությունը։

Շինարարական մի շարք կազմակերպությունների տնտեսական ղեկավարները բանվորների համար չեն ստեղծում աշխատանքի, ապրուստի ու կենցաղի նորմալ պայմաններ, իսկ պարտիական, պրոֆմիութենական և կոմերիտական կազմակերպությունները անհրաժեշտ պահանջկոտություն և հետևողականություն չեն ցուցաբերում այդ հարցերի լուծման գործում։

Մշտական բանվորական կադրեր ստեղծելու և դաստիարակելու գործում մեծ նշանակություն ունի հոգատար վերաբերմունքը դպրոցական նստարանից արտադրություն եկածների նկատմամբ և նրանց ճիշտ տեղաբաշխումը։

Հայտնի է, որ ռեսպուբլիկայի կոմերիտական կազմակերպությունների կոչով մեծ թվով երիտասարդներ գնացին աշխատելու արդյունաբերական ձեռնարկություններում ու կառույցներում։ Մեծ մասամբ նրանց ընդունեցին լավ, իսկույն տեղավորեցին և ապահովեցին աշխատանքի համապատասխան պայմաններով։ Բայց որոշ դեպքերում այս գործում դրսևորվեց միանգամայն անթույլատրելի վերաբերմունք։

26 կոմիսարների անվան շրջանի ԼԿԵՄ շրջկոմը երիտասարդ բանվորներ ուղարկեց Երևանգէսի շինարարությունում աշխատելու։ Իսկ ինչպե՞ս նրանց ընդունեցին այնտեղ։ Տեղամասի պետը՝ կոմունիստ ընկ. Սողոմոնյանը և աշխղեկ կոմունիստ Շաբոյանը երկար ժամանակ դիմադրում էին, չցանկանալով նրանց աշխատանքի ընդունել։

Շինարարական կազմակերպությունների անբավարար աշխատանքում քիչ մեղք չունեն նաև պատվիրատուները և նախագծային կազմակերպությունները, որոնք ձգձգում են տերիտորիաների կառուցապատման յուրացումը, հողային տեղամասերի օտարումը, նախագծային-նախահաշվային փաստաթղթերի և աշխատանքի կազմակերպման պլանի կազմումը. Նրանք դրանով իսկ շինարարական կազմակերպություններում պարապուրդների և անարտադրողական աշխատանքների առիթ են տալիս։ Անհրաժեշտ է արմատապես բարելավել նախագծերի որակը, ապահովել հարմար, ամուր, գեղեցիկ և էժան բնակարանների նախագծումը։

Շինարարական կազմակերպությունների աշխատանքներում թերություններ ավելի քիչ կլինեին, եթե պարտիական կազմակերպությունները ավելի սերտ կապված լինեին բանվորների հետ, խորանային շինարարական արտադրության դետալների ուսումնասիրման մեջ, բացահայտեին աշխատանքներում տեղ գտած բոլոր թերությունները և ժամանակին միջոցառումներ ձեռք առնեին դրանց վերացման համար։ Այսպիսի աշխատանքը խոշոր դրական

արդյունք է տալիս։ Այսպես, օրինակ, Հայքիմարդշինի պարտիական կազմակերպությունը ուսումնասիրելով տրեստի առանձին օղակների աշխատանքը, թերություններ բացահայտեց հյուսնային աշխատանքների և բետոնի արտադրության բնագավառում։ Պարտիական կազմակերպությունը քննության առավ այդ հարցը, մշակեց համապատասխան միջոցառումներ և հետևեց դրանց կատարմանը, որի շնորհիվ կարճ ժամկետում վերացվեցին նշված թերությունները։

Նման միջոցառումներ անցկացրին նաև Շինարարության մինիստրության 9-րդ և 10-րդ տրեստների, Աթարբեկյանգէսի շինվարչության և ուրիշ ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունները։

Դրա հետ միասին որոշ պարտիական կազմակերպություններ շինարարության ադմինիստրացիայի տնտեսական ու արտադրական գործունեության նկատմամբ ցուցաբերում են մակերեսային վերաբերմունք։ Ձևականորեն քննարկելով այս կամ այն հարցը, նրանք գործնական միջոցների չեն դիմում շինարարության աշխատանքներում տեղ գտած թերությունները վերացնելու, աշխատանքային նորանոր հաջողությունների հասնելու համար։

Չնայած Երևանգէսի շինվարչության սիստեմատիկորեն ետ մնալուն, նրա պարտիական կազմակերպությունը անցած 8 ամսվա ընթացքում քննության չի առել արտադրական մի շարք կարևոր հարցեր։

Լենինականի 6-րդ շինտրեստի պարտկազմակերպությունը, քննարկելով ՀԿՊ Կենտկոմի որոշումը Շինարարության մինիստրության կազմակերպություններում պետական կարգապահության խախտումների մասին, պատշաճ գնահատական չտվեց տրեստում տեղ գտած պետական կարգապահության խախտումներին ու տրեստի աշխատանքում եղած թերություններին և այդ հարցի վերաբերյալ չկայացրեց ոչ մի որոշում։

Առանձին պարտիական կազմակերպություններ նախաձեռնություն և ստեղծագործական եռանդ չեն ցուցաբերում այն հարցերի նախապատրաստման ու քննարկման գործում, որոնք բխում են տվյալ պարտկազմակերպության կենսական շահերից ու գործունեությունից։ Այսպես, օրինակ, Հայպետշինտրեստի պարտիական կազմակերպությունը ընթացիկ տարվա 11 ժողովից 8-ում քննության է առել միայն վերադաս օրգաններից հանձնարարվող հարցեր։

Շինարարությունների պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ լայնորեն ծավալել թերությունների անաչառ քննադատությունն ու ինքնաքննադատությունը, կոմունիստների, ամբողջ կոլեկտիվի ուժերը մոբիլիզացնել կապիտալ ներդրումների և շինմոնտաժային աշխատանքների պլանը կատարելու համար, ապահովել արդյունաբերական ձեռնարկությունների, բնակելի և կուլտուր-կենցաղային օբյեկտների շահագործման հանձնումը նշանակված ժամանակին և բարձր որակով։

---

# ԿՅԱՆՔԻ ՀԵՏ ԿԱՊՎԱԾ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ՀԱՄԱՐ

Ա. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Պարտիան սովորեցնում է, որ ներկա պայմաններում քաղաքական-ագիտացիոն աշխատանքը պետք է սերտորեն կապված լինի կյանքի, կոմունիստական շինարարության հետ, այսինքն՝ նրա հիմնական բովանդակությունը պետք է լինի տնտեսական հարցը։ Վ. Ի. Լենինը խոսելով այդ մասին, ասել է. «Հին տիպի պրոպագանդան պատմում է, օրինակներ է տալիս, թե ինչ բան է կոմունիզմը։ Բայց այդ հին պրոպագանդան ոչ մի բանի պետք չէ, որովհետև հարկավոր է գործնականորեն ցույց տալ, թե ինչպե՛ս պետք է կառուցել սոցիալիզմ։ Ամբողջ պրոպագանդան պետք է կառուցվի տնտեսական շինարարության քաղաքական փորձի վրա։ ...Մեր գլխավոր քաղաքականությունն այժմ պետք է լինի պետության տնտեսական շինարարությունը... Եվ դրա վրա պետք է կառուցվի ամբողջ ագիտացիան ու ամբողջ պրոպագանդան» (Երկեր, հատ. 31, էջ 465—466)։

Ելնելով լենինյան այդ դրույթից, ՍՄԿՊ XX համագումարը պարտիական կազմակերպությունների առջև խնդիր դրեց՝ պրոպագանդան և ագիտացիան սերտորեն կապել մեր առօրյայի, կյանքի հետ։

Կիրովականի քաղաքի պարտիական կազմակերպություններն իրենց գործունեության հիմքում դնելով XX համագումարի պահանջը, լուրջ ուշադրություն են դարձնում մասսաների շրջանում տարվող քաղաքական ագիտացիոն աշխատանքին, ապահովում են նրա նպատակասլացությունը, բարձր գաղափարայնությունը։ Պարտիական կազմակերպությունները հաշվի են առնում, որ տնտեսական ու քաղաքական հարցերի հաջող լուծման գործում հսկայական է կենդանի, կյանքի հետ կապված քաղաքական ագիտացիայի ուժը, նրա ներգործող ազդեցությունը։

Բազմազան են աշխատավոր մասսաների շրջանում տարվող քաղաքական-բացատրական աշխատանքի ձևերն ու մեթոդները։ Սակայն ինչպիսի ձևվով ու մեթոդով էլ կատարվի այն, պարտիայի քաղաքային կոմիտեն և սկզբնական կազմակերպությունները նպատակ են դնում քաղաքի աշխատավորներին հանգամանորեն պարզաբանելու Կոմունիստական պարտիայի գաղափարներն ու լոզունգները, տնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառներում նրանց առջև ծառացած ու աշխատավորներին առավել հետաքրքրող հարցերը, մոբիլիզացնելու նրանց ուժերը առաջադրված խնդիրները հաջողությամբ կատարելու համար։

Կիրովականը կառուցվող քաղաք է։ Տարեցտարի աճում է քաղաքի արդյունաբերության տեսակարար կշիռը, վիթխարի ծավալով են կատարվում

արտադրական նոր ձեռնարկությունների շինարարությունը, հների ընդարձակումն ու վերակառուցումը, կուլտուր-կենցաղային օբյեկտների և բնակելի շենքերի կառուցումը։ Միայն № 7 շինտրեստի գծով այս տարի շինմոնտաժային աշխատանքների ծավալը աճել է ավելի քան 2 անգամ։ Զարգացման ավելի լայն հեռանկարներ են նախատեսված առաջիկայում։

Հաջողությամբ կատարելով 1957 թվականի պլանները, քաղաքի արտադրական ձեռնարկությունների, շինարարական կազմակերպությունների ու տրանսպորտի կոլեկտիվները հենց տարեսկզբից պայքարում են ընթացիկ տարում տեխնիկա-տնտեսական ավելի բարձր արդյունքների հասնելու համար։ Այս տարվա անցած 8 ամիսների արդյունաբերության համախառն արտադրանքի պլանը կատարվել է 105,3 տոկոսով և պլանից դուրս երկրին տրվել է մոտ 10 միլիոն ռուբլու արտադրանք։ Այդ նույն ժամանակամիջոցում գերակատարվել են աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքները։ Անցած տարվա նույն ժամանակաշրջանի նկատմամբ արդյունաբերության արտադրանքի աճը կազմում է 113,2 տոկոս։

Արտադրական այդ հաջողություններին մեծապես նպաստել է պարտիական կազմակերպությունների կողմից կատարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքը։ Այդ տեսակետից դրական օրինակ է ցույց տալիս Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատի պարտիական կազմակերպությունը։

Անհրաժեշտ հետևություն անելով քիմիական արդյունաբերության զարգացումն արագացնելու մասին ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշումից, պարտիական կազմակերպությունը քաղաքական-բացատրական լայն աշխատանք ծավալեց կոլեկտիվի շրջանում։ Ավելի քան 120 ագիտատոր քիմիագործներին սկսեցին պարզաբանել պարտիայի այդ որոշման նշանակությունը և դրանից բխող նրանց անելիքները։ Բացի ագիտացիոն զրույցներից, զեկուցումներից, դասախոսություններ են կազմակերպվել՝ «Քիմիան ժողովրդական տնտեսության մեջ», «Նորագույն նվաճումները քիմիայի բնագավառում», «Ի՞նչ է ստացվելու կոմբինատի կառուցվող կորպուսի և մելամինի ցեխերի արտադրությունից» և այլ թեմաներով։

Արտադրության կոնկրետ խնդիրների հետ կապված քաղաքական-բացատրական աշխատանքը զարգացնում է քիմիագործների ստեղծագործական նախաձեռնությունն ու ակտիվությունը, նպաստում արտադրության կատարելագործմանը։ № 1 ցեխի օդի բաժանման 2-րդ բաժանմունքի ագիտատոր, ավագ ապարատավար Վ. Ասատրյանը խոսելով ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշման մասին, բաժանմունքի աշխատողների ուշադրությունը բևեռեց այն բանի վրա, որ նրանց մոտ թթվածնի կորուստ է տրվում, առանձին երիտասարդ բանվորներ չեն կատարում օրվա առաջադրանքները, թույլ է արտադրական կարգապահությունը։ Ընկ. Ասատրյանի ամենօրյա ագիտացիոն աշխատանքը ուղղվեց բաժանմունքում եղած թերությունների վերացման, արտադրական ցուցանիշների բարձրացման նպատակին։ Հենց ագիտատորի անմիջական օգնությամբ երիտասարդ բանվորներ Վ. Հարությունյանը (մեքենավար) և Պ. Կավրյուկը (լցնող) դարձել են առաջավոր։ Բաժանմունքում վերացել են թթվածնի կորուստի դեպքերը։ Անցած 8 ամիսներին ազոտի արտադրական պլանը այն հերթափոխությունում, որի ագիտատորը Վ. Ասատրյանն է, կատարվել է 107 տոկոսով։



Ագիտացիան արտադրության կոնկրետ խնդիրների հետ կապելու լավ փորձ ունի նույն կոմբինատի թմբուկի ցեխի ագիտատոր Ս. Գևորգյանը։ Նա ցեխի աշխատողներին պարտիայի ու կառավարության որոշումներին, սովետական պետության ներքին ու արտաքին քաղաքական հարցերին ծանոթացնելուց բացի, նրանց հետ սիստեմատիկ զրույցներ է անցկացնում կոմբինատի ու նրանց ցեխի կյանքին վերաբերող կարևոր դեպքերի մասին։ Ագիտատոր Գևորգյանը անտարբեր չանցավ այն բանի կողքով, երբ թմբուկի ցեխում խոտանը մեծ տոկոսի էր հասնում, երբ կարբիդի, ցիանամիդի և № 27 ցեխերը ժամանակին չէին ստանում բարձրորակ թմբուկներ։ Նա ամենօրյա քաղաքական աշխատանք ծավալեց և կոլեկտիվին օգնեց բարձրացնելու թմբուկի ցեխի տեխնիկա-տնտեսական ցուցանիշները։ Անցած ամիսների պլանը այստեղ կատարվել է 103,7 տոկոսով և պլանից դուրս թողարկվել 11.200 թմբուկ։ Նախատեսված 5-ի դիմաց խոտանը հասցվել է 1 տոկոսի։

Ամբողջությամբ վերցրած, քիմիական կոմբինատի կոլեկտիվը ընթացիկ տարվա 8 ամիսների պլանը կատարել է 103 տոկոսով։ Նախատեսված ասորտիմենտներից չի ապահովվել միայն կարբիդի թողարկման պլանը։ Բայց վերջին երկու ամիսներին կարբիդի արտադրության առաջադրանքներն արդեն կատարվում են և պայքար է գնում մինչև դեկտեմբերի 29-ը տարեկան պլանը կատարելու համար։

Թե ինչպես է քաղաքական ագիտացիան օգնում արտադրական ցուցանիշների բարձրացմանը, կարելի է ցույց տալ նաև քաղաքի մի շարք ձեռնարկությունների՝ կարի և կոշիկի ֆաբրիկաների, մսի կոմբինատի, մեքենաշինական և կզմինդր-աղյուսի գործարանների, քարհանքերի վարչության, երկաթուղային հանգույցի պարտկազմակերպությունների աշխատանքի օրինակով, որոնք մշտական հոգատարություն են ցուցաբերում քաղաքական աշխատանքի բովանդակությունը բարձրացնելու նկատմամբ։ Քաղաքական զեկուցումների, աշխատավորների ժողովների, հարց ու պատասխանի երեկոների, զրույցների, թեմատիկ երեկոների, միտինգների, էքսկուրսիաների, կոլեկտիվ կինոդիտումների, ներկայացումների և այլ միջոցներով նրանք ապահովում են ամենօրյա աշխատանքը կոլեկտիվի անդամների հետ, նրանց դաստիարակում աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի, նյութական բարիքների արտադրությունն ամեն կերպ ավելացնելու ոգով։

Կոշիկի ֆաբրիկան երկար ժամանակ համարվում էր ետ մնացող ձեռնարկություն։ Բացի պլանների թերակատարումից, այստեղ ցածր էր աշխատանքային ու արտադրական կարգապահությունը, թողարկվում էր ցածրորակ արտադրանք։ Պարտիական կազմակերպությունից և ֆաբրիկայի դիրեկցիայից քիչ ժամանակ ու եռանդ չպահանջվեց վիճակը բարելավելու համար։ Ամենից առաջ կոլեկտիվի շրջանում վճռականապես բարելավվեց քաղաքական աշխատանքը։ Ագիտատորների հետ հաճախակի տարվող սեմինարների ու հրահանգչական խորհրդակցությունների, ագիտատորների կազմի ուժեղացման և նրանց նկատմամբ պարտկազմակերպության պահանջկոտության բարձրացման շնորհիվ ապահովվեց բովանդակալից ու սիստեմատիկ ագիտացիայի վարումը։ Ֆաբրիկայի տերիտորիայում և ցեխերում փակցվեցին արտադրության կոնկրետ հարցերին վերաբերող լոզունգներ ու կոչեր։ Ֆաբրիկայի ղեկավարները սիստեմ դարձրին կոլեկտիվի առջև զեկուցումներով հանդես գալը։ Նրանցից ֆաբրիկայի դիրեկտոր Ս. Աբելյանը, պարտբյուրոյի

*քարտուղար Մ. Փաշինյանը բացի քաղաքական թեմաներով զեկուցումներ տալուց, զեկուցումներ են տվել նաև «Ֆաբրիկայի մարկայի համար», «Ի՞նչ կարելի է ստանալ աշխատանքի արտադրողականությունը մեկ տոկոսով բարձրացնելու դեպքում», «Բնակչությանը միայն բարձրորակ կոշիկներ», «Բանվորի աշխատանքային մեկ օրը» և այլ թեմաների մասին։ Քաղաքական աշխատանքի ծավալման հետ միասին լուրջ գործ կատարվեց նաև ֆաբրիկայի աշխատատար պրոցեսները մեքենայացնելու, բանվոր-բանվորուհիների արտադրական որակավորումը բարձրացնելու ուղղությամբ։*

*Այս ամենի արդյունքը եղավ այն, որ 1957 թվականի երկրորդ կիսամյակին կոշիկի ֆաբրիկան դուրս եկավ առաջավորների շարքը։ Ֆաբրիկայի արտադրական հաջողությունները ավելի բարձր են այս տարի. համախառն արտադրանքի անցած 8 ամսվա պլանը կատարվել է 120,6 տոկոսով։ Նույն ժամանակամիջոցում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 16,3, իսկ ինքնարժեքը իջել է 6,4 տոկոսով. տնտեսվել է ավելի քան 60 հազար դեցիմետր տարբեր տեսակի կաշի։ Անցյալ տարվա համեմատությամբ արտադրանքն աճել է 179,3 տոկոսով։*

*Դժբախտաբար ոչ բոլոր պարտկազմակերպություններն են հարկ եղած ուշադրությունը դարձնում քաղաքական աշխատանքներին։ Մեխանիկական գործարանում (պարտբյուրոյի քարտուղար Ա. Հարությունյան) զրույցներ, զեկուցումներ հազվադեպ են կազմակերպվում։ Գործարանի ղեկավարները կոլեկտիվի առջև զրույցներով և զեկուցումներով հանդես չեն գալիս, չեն ունկնդրում աշխատողների ձայնին։ Եվ այս ամենից հետո պատահական չէ, որ գործարանի բանվորները տեղյակ չեն այնտեղ տիրող դրությանը։ Գործարանը չի կատարում պետական պլանները։ Սակայն այս գործարանի օրինակը եզակի չէ։ Կոլեկտիվի անդամների առջև հանդես գալուց խուսափում են նաև ուրիշ մի շարք ձեռնարկությունների ղեկավար աշխատողներ։*

*Աշխատավորների համար զրույցների ու զեկուցումների կազմակերպումը գործի դեռևս մի կողմն է։ Անհրաժեշտ է, որ դրանք կապվեն կյանքի, տվյալ կոլեկտիվի առջև դրված կոնկրետ խնդիրների հետ։ Հաճախ առանձին աշխատողներից կարելի է լսել. «Դե, մեր ձեռնարկության կամ քաղաքի մասին ի՞նչ ագիտացիա կամ զրույց կարելի է անել, բոլորն էլ այդ մասին գիտեն»։ Նման կարծիքը սխալ է։ Խոսելով տեղական փաստերի և նյութերի օգտագործման մասին՝ Մ. Ի. Կալինինը ասել է. «Չէ որ մեր կյանքը այժմ այնպես հարուստ է հիանալի փաստերով, որ յուրաքանչյուր ագիտատոր, ամենափոքրից մինչև ամենամեծը, կարող է այնտեղ գտնել անսահման քանակությամբ վառ, կենդանի, անմիջականորեն ընթացիկ դեպքերին վերաբերող նյութեր»։*

*Ճինարարական № 7 տրեստի շինտեղամասերում ու կառույցներում քիչ դասախոսություններ, զեկուցումներ և զրույցներ չեն կազմակերպվում, բայց դրանք գրեթե չեն առնչվում շինարարների առջև ծառացած խնդիրների հետ։ Այդ է պատճառը, որ № 3 շինտեղամասի բնակելի շենքերից մեկի վրա աշխատող բանվորներ Հ. Աչամյանը, Մ. Դարչինյանը և ուրիշներ չգիտեն իրենց օրվա նորմաները, շենքը շահագործման հանձնելու ժամկետը, տրեստի, տեղամասի և աշխղեկության՝ ամսվա, եռամսյակի և կիսամյակի պլանի կատարողականը։ Այսպիսի բանվորներ քիչ չեն ոչ միայն շինարարության մեջ, այլև ուրիշ ձեռնարկություններում։*

*Կարևոր նշանակություն ունի քաղաքական-մասսայական աշխատանքի*



*կազմակերպումը ըստ բնակավայրերի։ Պետք է նկատի ունենալ, որ բոլորը չեն, որ աշխատում են արտադրության մեջ։ Կան նաև տնային տնտեսուհիներ, ծերեր, թոշակառուներ։ Ահա թե ինչու պարտիայի քաղաքային կոմիտեն և սկզբնական կազմակերպությունները իրենց գործունեության ընթացքում հաշվի են առնում աշխատավորների այդ կատեգորիաներին և նրանց հետ տանում են առանձին աշխատանք։ Կիրովականը իր աշխարհագրական դիրքով բաժանված է մի շարք հեռավոր՝ Դիմաց, Առափնյա և Սանատորիական թաղամասերի։ Քաղաքային կոմիտեի դասախոսների միջոցով այդ թաղամասերի բնակիչների համար դասախոսություններ են կազմակերպվում ՍՍՌՄ ներքին ու արտաքին քաղաքականության առանձին հարցերի, Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության որոշումների շուրջը։ Յուրաքանչյուր այդպիսի միջոցառման վերջում կազմակերպվում են գեղարվեստական ինքնագործունեության խմբերի ելույթներ։*

*Ըստ բնակավայրի աշխատավորների հետ քաղաքական աշխատանքի կարևոր օջախներ են ագիտկետերը։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի վերջին ընտրություններից հետո քաղաքում շարունակում են գործել առանձին ագիտկետեր, որտեղ սիստեմատիկաբար կազմակերպվում են զրույցներ, զեկուցումներ և կուլտուր-մասսայական միջոցառումներ։ Դրանցից առանձնապես հիշատակության արժանի է այն ագիտկետը, որը տեղավորված է Լուսաշխի տանը։ Ագիտկետի վարիչ, լուսաշխի տան վարչության նախագահ Ա. Ճահնազարյանը կոշիկի ֆաբրիկայի պարտկազմակերպության օգնությամբ, ամսական 2—3 անգամ ընտրական նախկին օկրուգի բնակիչներին հավաքում է և նրանց համար հետաքրքիր միջոցառումներ անցկացնում։ Բացի ՍՍՌՄ Գերագույն Սովետի 5-րդ գումարման առաջին սեսիայի նյութերի, ՍՄԿԿ Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշման, ժողովուրդների բարեկամության, Սովետական Միության ժողտնտեսության 1958 թվականի առաջին կիսամյակի արդյունքների, Միջին և Մերձավոր Արևելքի իրադարձությունների և այլ թեմաների մասին զեկուցումներից ու դասախոսություններից, այդ օկրուգի բնակիչների համար ելույթներ են ունեցել կուլտուրայի տան, կարի ֆաբրիկայի, մեքենաշինական գործարանի և ուրիշ գեղարվեստական ինքնագործ խմբեր, ցուցադրվել են կինոնկարներ։*

*Քաղաքական աշխատանքի կարևոր ձև է հանդիսանում բանավոր ամսագիրը, որը վերջերս բավական լայն տարածում է ստացել քաղաքում։ Բանավոր ամսագրեր կազմակերպվում են խոշոր ձեռնարկություններում և կուլտուրայի օջախներում։ Բանավոր ամսագրերի ծրագիրը կազմելուն մասնակցում են պարտիական, կոմերիտական և արհմիութենական կազմակերպությունների ակտիվը, կուլտուրայի աշխատողները, առաջավոր բանվորները։ Դրանցում սովորաբար նախատեսվում են 15—20 րոպե տևողությամբ քաղաքական, գիտական, տնտեսական ակտուալ հարցերի շուրջը զեկուցումներ։ Յուրաքանչյուր զեկուցումից հետո լինում է գեղարվեստական որևիցե սպասարկում։ Այսպես, օրինակ, ապրիլի 17-ին լուսաշխի տան դահլիճում անցկացվեց առաջին բանավոր ամսագիրը, որտեղ լսվեցին.*

*1. Ի՞նչ օրենքներ ընդունեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի 5-րդ գումարման առաջին սեսիան (զեկուցող ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ Ս. Թևոսյան)։*

*2. Սովետական արհեստական արբանյակը (զեկուցող «Ավտոմատիկա»*

գիտա-հետազոտական ինստիտուտի գիտաշխատող, ինժեներ Վ. Ջալինյան)։

3. Կիրովականը 1960 թվականին (զեկուցող քաղսովետի գործկոմի նախագահ Ալ. Տովգարյան)։

Գեղարվեստական սպասարկումը կազմված էր քաղաքի կուլտուրայի տան ժողգործիքների անսամբլի նոր համարներից, երիտասարդ բանաստեղծների նոր գործերի արտասանություններից և գեղարվեստական կինոնկարի ցուցադրումից։

Բավականին հաջող էր հունիսի 23-ին Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատի կուլտուրայի պալատում կազմակերպված բանավոր երրորդ ամսագիրը, որին մասնակցեցին մոտավորապես 700 մարդ։ Մասնակիցները ուշադրությամբ լսեցին կոմբինատի գլխավոր էներգետիկ Է. Մալյանի «Ինչ տեսա նոր Չինաստանում», ուսուցիչ Լ. Արղուշյանի «Քիմիան ժողտնտեսության մեջ» և քաղկոմի դասախոս Վ. Պողոսյանի «Միջազգային դրության մասին» զեկուցումները։

Ինչպես սովետական ամբողջ ժողովուրդը, այնպես էլ Կիրովական քաղաքի աշխատավորները մեծ ոգևորությամբ ընդունեցին ՍՄԿՊ Կենտկոմի 1958 թ. Սեպտեմբերյան պլենումի որոշումը՝ պարտիայի XXI արտահերթ համագումար հրավիրելու մասին։ Այդ որոշումը առաջացրել է քաղաքական ու աշխատանքային նոր խանդավառություն։ 1958 թվականի պետական պլանները հաջողությամբ կատարելու և հարազատ պարտիայի արտահերթ XXI համագումարը արժանավայել դիմավորելու համար քաղաքի արտադրական ձեռնարկություններում ու կառույցներում օր-ավուր ավելի լայնորեն է ծավալվում սոցիալիստական գործարար մրցությունը։ Ամենուրեք վերանայվում են նախկինում ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, յուրաքանչյուր կոլեկտիվ հաշվի է առնում իր հնարավորությունները, գտնում նոր ռեզերվներ, վերցնում նոր, ավելի բարձր պարտավորություններ։

Քաղաքի պարտիական կազմակերպությունները ավելի ուժեղացնելով կյանքի հետ սերտորեն կապված քաղաքական-բացատրական աշխատանքը և գլխավորելով ՍՄԿՊ XXI և ՀԿՊ XX համագումարների պատվին ծավալված սոցիալիստական մրցությունը, բոլոր աշխատավորներին մոբիլիզացնում և նրանց ստեղծագործական նախաձեռնությունն ու ուժերը ուղղում են տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրները պատվով կատարելու և հարազատ Հայրենիքին ավելի շատ ու որակյալ արտադրանք տալու նպատակին։

---

# ԿԵՆՍԱԳՈՐԾԵՆՔ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՄԱՅԻՍՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

## Դ. ՎԱՆՅԱՆ

Ներկա պայմաններում առանց քիմիական արդյունաբերության, հատկապես սինթետիկ նյութերի արտադրության զարգացման, անհնարին է ապահովել նորագույն տեխնիկայի ժամանակակից բարդ պրոբլեմների լուծումը։

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական առաջընթացը ապահովելու գործում սինթետիկ նյութերը յուրահատուկ տեղ են գրավում, որովհետև դրանք օժտված են այնպիսի հատկություններով, որպիսիք չունեն ոչ մետաղները և ոչ էլ բնական մյուս նյութերը. շատ դեպքերում դրանցից ստացվող առարկաներն իրենց ամրությամբ, դիմացկունությամբ, թեթևությամբ և այլ հատկություններով գերազանցում են բնական նյութերից ստացվող առարկաներին, չհաշված այն, որ նրանք անհամեմատ էժան են։

Մեր երկրի տնտեսական զարգացման գործում սինթետիկ նյութերի արտադրությունը չափազանց կարևոր ճյուղ է։ Այդ նյութերի արտադրության արագ զարգացումը հնարավորություն կտա լայն սպառման առարկաների թողարկումն ավելացնելու համար ստեղծել հումքի լրացուցիչ մեծ ռեսուրսներ, որոնց օգտագործումը, գյուղատնտեսական հումքի հետ միասին վերցրած, մոտակա տարիներին լրիվ չափով կբավարարի ժողովրդի պահանջները տեքստիլի, հագուստեղենի և կոշկեղենի գծով։

Այս բոլորից հետո ինքնըստինքյան հասկանալի է դառնում պարտիայի Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշման կարևորությունը և այն պատասխանատվությունը, որ դրվում է քիմիական արդյունաբերության աշխատողների վրա։

Պոլիվինիլացետատ գործարանի պարտկազմակերպությունը և ողջ կոլեկտիվը մեծ խանդավառությամբ դիմավորեցին պարտիայի Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշումը։ Պարտիական կազմակերպության բյուրոն լուրջ աշխատանք ձեռնարկեց՝ կոլեկտիվի անդամներին պլենումի որոշման հետ մանրամասն ծանոթացնելու ուղղությամբ։ Պարտբյուրոն հրավիրեց ագիտկոլեկտիվի սեմինար պարապմունք, որտեղ ագիտատորները ծանոթանալով ինչպես պլենումի որոշման, այնպես էլ այդ որոշումից բխող, գործարանի առջև դրված խնդիրների հետ, բանվորների համար մի շարք հետաքրքիր և բովանդակալից զրույցներ անցկացրին։ Ագիտատորներ Ա. Հովասափյանը, Խ. Ասատրյանը, Ս. Պողոսովը, Լ. Բաբայանը, Գ. Սարգսյանը և մյուսները իրենց զրույցների ընթացքում կոնկրետ խնդիրներ առաջադրեցին ունկնդիրներին, ելնելով այն բանից, որ պլենումի որոշումները բացի հեռանկարային խնդիրներից, միաժամանակ նախատեսում են մեծ չափով ընդլայնել սինթե-

տիկ նյութեր թողարկող արտադրությունները, որոնց շարքին է պատկանում նաև Պոլիվինիլացետատ գործարանը։

Ձեռնարկության ռիթմիկ և պլանավորված աշխատանքն ապահովելու գործում մեծ է պարտիական կազմակերպության դերը։ Ահա թե ինչու գործարանի պարտկազմակերպության բյուրոն, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի կազմակերպման հետ միասին, միշտ իր ուշադրության կենտրոնում է պահում կոլեկտիվի առջև դրված արտադրական խնդիրների լուծումը։

Դեռ պարտիական կազմակերպության հաշվետու ընտրական ժողովում կոմունիստները սուր քննադատության էին ենթարկել նախկին պարտիական բյուրոյին այն բանի համար, որ նա անհրաժեշտ չափով չէր իրականացրել իր հսկողությունը գործարանի ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ, արտադրական մի շարք կարևոր հարցերի մասին ընդունված որոշումների կատարման գործում ցուցաբերել էր անհետևողականություն, բացակայել էր պարտբյուրոյի անհրաժեշտ օգնությունը և ղեկավարությունը ցեխային պարտկազմակերպություններին։

Հաշվի առնելով կոմունիստների քննադատական դիտողությունները՝ նորընտիր պարտիական բյուրոն իրականացրեց մի շարք միջոցառումներ. ցեխային պարտիական կազմակերպությունների քարտուղարների համար անցկացրեց սեմինար պարապմունքներ, որտեղ պարզաբանվում էին ինչպես ներպարտիական, քաղաքական ուսուցման և ագիտ-մասսայական աշխատանքների, այնպես էլ սոցիալիստական մրցության կազմակերպման ու ծավալման և արտադրական մի շարք կարևոր հարցեր։ Անկասկած այդ սեմինարները տվին իրենց դրական արդյունքը։ Բավականաչափ աշխուժացավ ցեխային պարտիական կազմակերպությունների աշխատանքը․ նրանք նկսեցին լուրջ կերպով զբաղվել կոլեկտիվների քաղաքական-դաստիարակչական հարցերով, բարելավեցին պատի թերթերի աշխատանքը, ցեխերում կազմակերպեցին ցուցադրական ագիտացիա, պատվո տախտակներ, ինչպես նաև արտադրական պլանների կատարման և տեխնոլոգիական ռեժիմի պահպանման ցուցադրում։ Միաժամանակ նրանք կարողացան խորանալ արտադրության հարցերում և քաղաքական մասսայական աշխատանքը սերտորեն կապեցին կոլեկտիվի առջև դրված տնտեսական կարևոր խնդիրների կատարման հետ, որը դրական արդյունք տվեց։

Արտադրանքի պլանային ինքնարժեքի ապահովումը խնայողական ռեժիմի պահպանման կարևոր օղակներից մեկն է. այն հիմնականում կախված է գործող ցեխերի տեխնոլոգիական պրոցեսներում օգտագործվող հումքի և նյութերի ծախսի գործակիցների խիստ պահպանումից։ Այս տեսակետից վատ էր դրությունը գործարանում, 1957 թվականին։ Բավական է նշել, որ 1957 թվականի 11 ամիսների ընթացքում ծախսի գործակիցները չապահովելու հետևանքով գործարանում թույլ էր տրվել էթանոլի 220 տոննա, բուտանոլի 42 տոննա, մեթանոլի 124 տոննա, ացետիլենի 35 տոննա, քացախաթթվի 19 տոննա գերածախս, որի գումարային արտահայտությունը կազմում էր 1868 հազար ռուբլի։ Անհրաժեշտ էր ձեռնարկել կոնկրետ միջոցառումներ, նախ՝ կարգավորելու գործող ցեխերի նորմալ աշխատանքը, այնուհետև՝ լուրջ կերպով զբաղվելու նոր կառուցվող ցեխերի շինարարության հարցերով, որոնք



նախատեսված էին շահագործման հանձնել ընթացիկ տարում. այլապես տարեկան արտադրական պլանի կատարումը կարող էր ձախողվել։

Պարտիական բյուրոն անհրաժեշտ գտավ հումքի և նյութերի ծախսման գործակիցների ապահովման հարցը քննել գործարանի պարտիական կազմակերպության դռնբաց ժողովում, կոլեկտիվի անդամների լայն մասնակցությամբ։ Ժողովի նախապատրաստման համար պարտիական բյուրոն առանձնացրեց մի քանի բրիգադա, դրանց մեջ ընդգրկելով ավելի պատրաստված և ձեռնհաս ինժեներների, տեխնոլոգների, ինչպես նաև արտադրության առաջավոր բանվորների։

Մոտ մեկ ամիս հարցը ուսումնասիրելուց հետո պարտիական բյուրոն ամփոփեց բրիգադաների աշխատանքի արդյունքները, որից հետո հրավիրվեց պարտիական ժողով։ Ժողովում զեկուցումով հանդես եկավ գործարանի գլխավոր ինժեներ Կ. Տեր-Ակոպովը։ Ժողովն անցավ կոմունիստների բարձր ակտիվությամբ։ Նրանց զգալի մասը մասնակցել էր բրիգադաների աշխատանքներին, ժողովի էր եկել իր դիտողություններով և կոնկրետ առաջարկություններով։

Պարտիական ժողովն իր որոշման մեջ գործարանի տեխնիկական ղեկավարությանը պարտավորեցրեց հումքի և նյութերի ծախսի գործակիցների պահպանումը, ինչպես նաև նրանց հետագա իջեցումը ապահովելու նպատակով քսան օրվա ընթացքում մշակել կազմակերպչական-տեխնիկական միջոցառումներ և ապահովել դրանց կիրառումը։

Պարտիական ժողովից հետո պարտբյուրոն իր ամենօրյա հսկողության տակ վերցրեց որոշման կատարման ընթացքը։ Որոշման կենսագործման շնորհիվ լրիվ յուրացվեց յուղային ալդեհիդի ստացումը մեկ ռեկտիֆիկացիայի միջոցով, նախկին տեխնոլոգիական ռեգլամենտում նախատեսված կրկնակի ռեկտիֆիկացիայի փոխարեն, որը արտադրական կորուստները կրճատեց մոտ 20 տոկոսով և համապատասխան քանակով բարձրացրեց յուղային ալդեհիդի արտադրանքը։

Գործարանում կազմակերպվեց ացետալդեհիդի հատուկ պահեստ, որը մեծ չափով կրճատեց ացետալդեհիդի կորուստները ինչպես պահեստում, այնպես էլ քացախաթթվի ցեխում։ Մեթանոլի ծախսի ճշգրիտ հաշվառումը ապահովելու նպատակով կազմակերպվեց հատուկ չափիչ ապարատների տնտեսություն։ Պոլիտեխնիկական ինստիտուտի դոցենտներ Հ. Հակոբյանի, Հ. Սայադյանի և գործարանի ինժեներներ Կ. Տեր-Ակոպովի, Կ. Ռուխկյանի առաջարկությամբ կազմակերպվեց և յուրացվեց նատրիումի ացետատի ստացումը պոլիվինիլբուտիրալ ցեխի թափթփուկներից։

Քանի որ առաջներում պոլիվինիլային սպիրտի արտադրության մեջ պոլիմերացումը և օճառացումը տարվում էր մեկ ապարատի մեջ, ապա պրոցեսի վերջում մնում էր պոլիվինիլացետատի չօճառացված մասը, որն ազդում էր պոլիվինիլային սպիրտի որակի վրա և որպես թափթփուկ հեռացվում էր։

Այդ նույն ցեխի մի խումբ ինժեներա-տեխնիկական աշխատողների առաջարկությամբ, ցեխի պետ կոմունիստ Գ. Ցրեյդլինի անմիջական գլխավորությամբ կազմակերպվեց նշված պրոցեսների իրականացումը տարբեր ապարատներում, որը խոշոր չափով կրճատեց կորուստները և զգալի չափով բարելավեց թողարկվող պոլիվինիլային սպիրտի որակը։

Մեծ կորուստներ կային պոլիվինիլացետատային էմուլսիայի արտադրու-

թյունում։ Ինժեներ-տեխնոլոգներ Գ. Խաչատրյանի և Ա. Հովհաննիսյանի առաջարկությամբ փոփոխություն մտցվեց տեխնոլոգիական պրոցեսում։ Եթե առաջ ամբողջ հումքը պոլիմերիզատոր էր բարձվում միանգամից, որի պատճառով անհամեմատ մեծ էին կորուստները ապարատի օդանցքերից, ապա ռացիոնալիզատորական առաջարկի կիրառումից հետո, ինչպես հումքի, այնպես էլ ինիցիատորի բարձումը սկսեցին կատարել աստիճանական, որը հնարավորություն տվեց պրոցեսը տանել ավելի արագ, քան նախկինում, բայց շատ հանգիստ ու միապաղաղ և դա զգալի չափով կրճատեց արտադրական ցիկլի տևողությունը և կորուստները։

Տեխնոլոգիական պրոցեսի փոփոխություն մտցվեց նաև վինիլացետատի արտադրությունում։ Այստեղ սինթեզի պրոցեսը տարվում էր կոնտակտային մասսայի 160-ից մինչև 240 աստիճանն ընկած ջերմության ինտերվալում, որի պատճառով սինթեզի սկզբում և վերջում ստացվում էր վատորակ կիսաֆաբրիկատ, ինչպես նաև մեծ քանակությամբ կողմնակի պրոդուկտներ։ Այդ պատճառով բավականաչափ դժվարանում ու երկարում էր մաքուր վինիլացետատի անջատման պրոցեսը կիսաֆաբրիկատից, հետևապես և ավելանում էին կորուստները։

Անհրաժեշտ էր բարելավել կիսաֆաբրիկատի որակը։ Դա հնարավոր դարձավ այն ժամանակ, երբ ցեխի պետ կոմունիստ Ս. Պողոսովի և տեխնոլոգ կոմերիտական Ե. Գրիգորյանի նախաձեռնությամբ սինթեզի պրոցեսը սկսեցին տանել կոնտակտային մասսայի 170—230 աստիճանն ընկած ջերմության ինտերվալում, որն անշուշտ զգալի կերպով բարելավեց կիսաֆաբրիկատի որակը, իսկ վերջինս համապատասխան չափով ավելացրեց ստացվող մաքուր վինիլացետատի քանակը։ Այս ցեխում ծախսի գործակիցների իջեցման մեջ մեծ դեր խաղաց նաև տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացումը։ Գործարանի բոլոր տեխնոլոգիական ցեխերում ուժեղ պայքար կազմակերպվեց տեխնոլոգիական ռեժիմների խախտման և մեխանիկական կորուստների դեմ։ Այս գործում մեծ նշանակություն ունեցան արտադրական խորհրդակցությունները, որտեղ յուրաքանչյուր ամսվա վերջին ամփոփվում են սոցիալիստական պարտավորությունների կատարման արդյունքները, քննադատության և ինքնաքննադատության միջոցով բացահայտվում արտադրության մեջ գոյություն ունեցող թերությունները և միջոցներ ձեռնարկվում նրանց վերացման համար։

Տեխնոլոգիական ռեժիմների ապահովման հիմնական երաշխիքը այն էր, որ յուրաքանչյուր խախտման դեպք, բացի արտադրական խորհրդակցություններում հիշատակվելուց, առանձին կարգով քննության էր առնվում հերթափոխությունում, իսկ արդյունքները հրապարակվում էին պատի թերթերում, ագիտացիոն զրույցների ժամանակ և այլն։

Այժմ արտադրական խորհրդակցություններում, բացի արտադրական պլանների կատարման արդյունքներն ամփոփելուց, քննարկվում են նաև շատ ուրիշ հարցեր։ Ուսանելի է հատկապես 02, 04, 10-րդ ցեխերի աշխատանքի դրական փորձը։ Նշված ցեխերում արտադրական խորհրդակցությունները քննարկել են հումքի ծախսի գործակիցների իջեցման և տեխնոլոգիական ռեժիմների պահպանման հարցերը, մեխանիկական ծառայության աշխատանքը և այլն։ Դրանով պետք է բացատրել այն հանգամանքը, որ այդ ցեխերում մեծ քանակությամբ տնտեսվում է հումքը, զգալի չափով բարելավվել է տեխնոլոգիական ռեժիմների պահպանումը և կրճատվել են մեխանիկական կորուստները։



Գործարանային արհմիութենական կոմիտեն յուրաքանչյուր ամիս իր նիստում ամփոփում է միջցեխային մրցության արդյունքները և խրախուսում առաջավորներին։ Վերջերս ամփոփվեց գործարանի կոլեկտիվի՝ ընթացիկ տարվա ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքը. գործարանի ադմինիստրացիայի, պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ներկայացուցիչները մեկնեցին իրենց մրցակից Կուսկովի քիմիական գործարանը՝ ծանոթանալու նրանց սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքի հետ։

Ստուգումները ցույց տվին, որ երկու կոլեկտիվներն էլ պատվով են կատարում վերցրած պարտավորությունները։ Արդյունքներն ամփոփելուց և փորձի փոխանակում կատարելուց բացի երկու կողմերը լրացուցիչ պարտավորություններ ստանձնեցին ի պատիվ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 41-րդ տարեդարձի։

Պարտիական ժողովը գործարանի տեխնիկական ղեկավարությանը, ինչպես նաև ցեխերի ղեկավարներին, պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին պարտավորեցրել էր ուժեղացնել ռացիոնալիզատորական և գյուտարարական աշխատանքները, ուղղելով դրանք տեխնոլոգիական պրոցեսների հետագա բարելավմանը և ծախսի գործակիցների իջեցմանը։ Ընթացիկ տարվա միայն ութ ամիսների ընթացքում ծախսի գործակիցներն իջեցնելու ուղղությամբ արվել է 43 ռացիոնալիզատորական առաջարկ, որից ներդրվել է 25-ը։

Վերը նշված մի շարք այլ միջոցառումների հաջող իրականացումը պայմաններ ստեղծեց զգալի չափով իջեցնելու գործարանում օգտագործվող հումքի և նյութերի ծախսման գործակիցները։ Արդյունքը եղավ այն, որ անցյալ տարվա ընթացքում թույլ տրված հումքի և նյութերի զգալի գերածախսի դիմաց այս տարվա ութ ամիսների ընթացքում գործարանը տնտեսեց ացետալդեհիդ՝ 58,8 տոննա, բուտանոլ՝ 8,2 տոննա, մեթանոլ՝ 53,6 տոննա, յուղային ալդեհիդ՝ 3,7 տոննա, վինիլացետատ՝ 14,1 տոննա, ացետիլեն՝ 6,7 տոննա, քացախաթթու՝ 15,1 տոննա։ Միայն թվարկած նյութերի գծով գործարանը ընթացիկ տարվա 8 ամսվա ընթացքում տվեց մոտ 840 հազար ռուբլու տնտեսում։

Ընթացիկ տարվա սկզբին գործարանը գտնվում էր ֆինանսական ծանր վիճակում։ Պարտիական բյուրոն այս հարցը քննարկեց իր նիստում, որտեղ բացահայտվեցին գործարանի մատակարարման, սպառման ու տրանսպորտի բաժինների, ինչպես նաև առանձին ցեխերի աշխատանքներում տեղ գտած մի շարք լուրջ թերություններ։ Օրերով ձգձգվում էր պատրաստի արտադրանքի հանձնումը, ընդունումն ու բարձումը։ Գործարանի պահեստներում կուտակվել էին զանազան հիմնական և օժանդակ նյութեր, որոնց քանակությունը սահմանվածից շատ ավելին էր, իսկ մատակարարման բաժինը, ինչպես հարկն է, հոգ չէր տանում դրանց իրացման համար։ Գործարանի հաշվապահությունը անհրաժեշտ հսկողություն և պահանջկոտություն չէր ցուցաբերում այդ խախտումները կանխելու նկատմամբ։ Գործարանի ադմինիստրացիայի և պարտբյուրոյի համատեղ աշխատանքի շնորհիվ հաջողվեց հիմնովին բարելավել գործարանի ֆինանսական դրությունը։

Այս և նման հարցերի հետ զուգընթաց, պարտիական բյուրոն լրջորեն զբաղվեց նաև նորակառույց ցեխերը ժամանակին շահագործման հանձնելու հարցով։ Այստեղ ևս անհրաժեշտ էր մանրամասն ստուգում և խոր ուսումնասիրություն, որը և պարտբյուրոյին հաջողվեց առաջադրված ստուգող բրիգադայի բարեխիղճ աշխատանքի և կոմունիստների ակտիվ մասնակցության շնորհիվ։

Մեր ուսումնասիրությունները ցույց տվին, որ մինչև բյուրոյի հրավիրումը անհրաժեշտ էր կազմակերպել խորհրդակցություն գործարանի և շինարարական կազմակերպությունների ներկայացուցիչների մասնակցությամբ։ Հրավիրված խորհրդակցությունը պարտիական բյուրոյի որոշման համար պահանջվելիք նյութեր տվեց։

Որոշման հիման վրա գործարանի տնտեսական ղեկավարությունը շինարարական կազմակերպությունների հետ միասին վերանայեց և ճշտեց աշխատանքային գրաֆիկները և միջոցներ ձեռնարկեց դրանց կատարման համար։ Գործարանի տնտեսական ղեկավարությունը և պարտիական բյուրոն ապահովեցին գործարանի մի շարք ցեխերի ակտիվ մասնակցությունը և օգնությունը նոր ցեխերի ու բաժինների կառուցմանը։ Հատկապես խրախուսելի աշխատանք կատարեցին մեխանիկական ցեխը (ցեխի պետ ինժեներ Հ. Մաիլյան), էլեկտրոցեխը (ցեխի պետ Ս. Տերյան) և ստուգող ու չափիչ գործիքների ցեխի կոլեկտիվը։ Այս ընկերների աջակցությամբ արագ կարգով պատրաստվեցին և մոնտաժվեցին մի շարք կարևոր ագրեգատներ ու սարքավորումներ, որոնց բացակայության դեպքում հնարավոր չէր լինի ժամանակին շահագործման հանձնել թողարկող ցեխերը։ Միաժամանակ գործարանի ադմինիստրացիան և պարտիական կազմակերպությունը լուրջ աշխատանք կատարեցին կադրերի ընտրության և տեղաբաշխման ուղղությամբ։ Քանի որ թողարկող ցեխերի տեխնոլոգիան նոր էր ու բարդ, անհրաժեշտ էր այդ ցեխերն ապահովել ավելի բանիմաց և ձեռնհաս կադրերով, ժամանակին կազմակերպել նրանց ուսուցումը։ Այդ նպատակով շահագործման հանձնվելիք «բուտաֆոլ» թաղանթի ցեխի պետ նշանակվեց Գ. Մխիթարյանը, ցեխի մեխանիկ Դ. Զարչյանը, հերթափոխության պետեր նշանակվեցին գործող ցեխերի աշխատանքի մեծ փորձ ունեցող հերթափոխության պետերից՝ Հ. Նազարյանը, Մ. Գալստյանը, Հ. Պողոսյանը և Վ. Բաղդասարյանը։ Արտադրական երկար տարիների փորձ ունեցող ապարատչիկներ՝ Ս. Ավետիսյանը, Ս. Մնացականյանը, Ջ. Փափազյանը և շատ ուրիշներ փոխադրվեցին այդ ցեխը որպես բրիգադավարներ և ապարատչիկներ։

Ցեխի ինժեներա-տեխնիկական աշխատողները և ապարատչիկները եղան արտադրական պրակտիկայում Լենինգրադի նույնատիպ գործարանում, որտեղ տեխնոլոգիական պրոցեսները ուսումնասիրելուց հետո վերադարձան և ձեռնամուխ եղան ցեխի թողարկման նախապատրաստական աշխատանքներին։ Սահմանված ժամկետում շահագործման հանձնվեց «բուտաֆոլ» թաղանթ արտադրող ցեխը, որն արդեն ո՛չ միայն արտադրանք է տալիս, այլև կատարում և գերակատարում է իր արտադրական պլանները։

Շահագործման հանձնվեց թվով երրորդ շոգեկաթսան, որով և լուծվեց գործարանի ցեխերը գոլորշիով լրիվ ապահովելու հարցը. միաժամանակ զգալի չափով բարելավվեցին աշխատանքային պայմանները կաթսայական ցեխում։



Թողարկվեց և այժմ տեխնոլոգիական պրոցեսի յուրացման շրջանումն է գտնվում յուղաթթվի արտադրությունը։ Հաջողությամբ ավարտվեց գործարանի սառցակայանի ընդլայնման աշխատանքը, որն ապահովեց հիմնական ցեխերի արտադրողականության հետագա բարձրացումը։

Խրախուսելի և շնորհակալ աշխատանք կազմակերպվեց նաև գործարանի թթվածնային ցեխում։ Ցեխի պետ Գ. Պետրոսյանի անմիջական նախաձեռնությամբ փականագործների բրիգադան (բրիգադավար Բ. Ամանյան) լրացուցիչ պարտավորություն ստանձնեց և ժամկետից շուտ ապահովեց թթվածնային նոր ագրեգատի թողարկումը։ Դրանով հնարավորություն ստեղծվեց քացախաթթվի արտադրությունը գործարանում ավելացնել մոտ 20 տոկոսով։

Նշված և շատ ուրիշ միջոցառումների հաջող իրականացումը ցույց տվեց կոլեկտիվի լրիվ պատրաստակամությունը անշեղորեն և մինչև վերջ կատարելու պարտիայի Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշումը։ Հենց միայն վերջերս 04 ցեխի պարտիական կազմակերպությունն իր ժողովում քննարկեց ցեխի պետ կոմունիստ Գ. Ֆրեյդլինի զեկուցումը՝ առանց մեծ կապիտալ ներդրումների և արտադրական տարածությունների ավելացման ցեխի կարողությունը բարձրացնելու մասին։ Պարտիական ժողովում այդ հարցի քննարկմանը ակտիվորեն մասնակցեցին կազմակերպության բոլոր անդամները և իրենց դիտողություններով ու առաջարկություններով օգնեցին հարցի խելացի լուծմանը։

Պարտիական ժողովը որոշեց մոտակա երկու ամիսների ընթացքում լրիվ ավարտել ցեխի վերակառուցման աշխատանքները, որով ցեխի արտադրողականությունը կբարձրանա մոտ 22 տոկոսով։ Շնորհիվ կոլեկտիվի քրտնաջան աշխատանքի այդ գործն իր ավարտին է մոտենում։ Այժմ գործարանում թողարկվող արտադրանքը հիմնականում կիրառվում է սինթետիկ նյութերի և պլաստմասսաների արտադրության մեջ։

Ժողովրդական տնտեսության համար կարևոր նշանակություն ունի գործարանում արտադրվող պոլիվինիլբուտիրալը, որից ստացվում է «բուտաֆոլ» թաղանթը չջարդվող ապակու արտադրության համար, իսկ վերջինս կիրառվում է ավիացիոն և ավտոմոբիլային արդյունաբերության մեջ։ Գործարանում թողարկվող պոլիվինիլացետատային էմուլսիան ունի լայն կիրառում արհեստական կաշվի, ներկերի և կահույքի արտադրության, տեքստիլ և պոլիգրաֆ արդյունաբերության, ինչպես նաև շինարարության մեջ։

Թողարկվող արտադրանքի մեջ կարևոր տեղ է գրավում պոլիվինիլային սպիրտը, որի կիրառման համար, հատկապես վերջին ժամանակներս, լայն ասպարեզ է բացվել արդյունաբերության տարբեր ճյուղերում։ Այդ սպիրտը օգտագործվում է արհեստական թելերի, բենզինակայուն շլանգների և այլ նյութերի արտադրության համար։ Միաժամանակ գործարանը սինթետիկ նյութերից թողարկում է մեծ քանակությամբ քացախաթթու և վինիլացետատ, որոնց միայն մի մասն է օգտագործվում գործող ցեխերում, իսկ զգալի մասը ուղարկվում է միության տարբեր գործարաններ՝ բարձր մոլեկուլյար սինթեզի պրոդուկտներ ստանալու համար։

Բնակչության պահանջմունքները բավարարելու նպատակով գործարանի ցեխերից մեկը արտադրում է միայն լայն սպառման ապրանքներ՝ օլիֆ, քլորակիր, սպիտակեցնող հեղուկ (ժավել) և դուստ՝ ԴԴՏ։

Գործարանի կոլեկտիվը ժամկետից շուտ ապահովեց ընթացիկ տարվա

ութ ամսվա արտադրական պլանների կատարումը և լրացուցիչ պարտավորություններ ստանձնեց հետագայում է՛լ ավելի բարձրացնելու ձեռնարկության տեխնիկա-տնտեսական ցուցանիշները։

Հայաստանի Ժողտնտխորհը և Սովպրոֆը, ամփոփելով ընթացիկ տարվա երկրորդ եռամսյակի սոցիալիստական պարտավորությունների կատարման արդյունքները, նշեցին գործարանի կոլեկտիվի լավագույն աշխատանքը, իսկ Ստալինյան շրջանի մասշտաբով գործարանը գրավեց առաջին տեղը և արժանացավ շրջանային պատվո տախտակին։

Սակայն սխալ կլիներ կարծել, որ գործարանի ներքին հնարավորություններն արդեն լրիվ սպառված են, և կոլեկտիվն այլևս այդ ուղղությամբ անելիքներ չունի։ Անկասկած դեռևս կան շատ հնարավորություններ և դրանց հայտաբերման ու օգտագործման համար լուրջ աշխատանք է կատարվում գործարանում։

Գործարանի կոլեկտիվի առաջ լուրջ և պատասխանատու խնդիրներ է դնում գործարանի հեռանկարային պլանը։ Բավական է նշել, որ գործարանի զարգացման յոթնամյա պլանով նախատեսված է եղբայրական Ադրբեջանից ստացվող բնական գազի բազայի վրա մինչև 1965 թվականը ձեռնարկության համախառն արտադրանքն ավելացնել մոտ 8 անգամ, ինչպես գործող ցեխերի ընդլայնման, այնպես էլ մի շարք կարևոր նոր սինթետիկ նյութերի արտադրության կազմակերպման միջոցով։

1959 — 1960 թվականներին պետք է ապահովվի վինիֆլեքսի թողարկումը, որը մեծ կիրառություն ունի էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ։ Այդ նույն ժամանակամիջոցում նախատեսված է պոլիամիդային թաղանթի՝ «պերֆոլի» թողարկումը, որը կիրառվում է սննդարդյունաբերության մեջ մթերքներ փաթաթելու համար, ինչպես նաև գյուղատնտեսության մեջ։ 1961—1963 թվականներին գործարանում կկազմակերպվի ացետիլցելյուլոզի արտադրությունը, որը լայն կիրառում ունի արհեստական թելերի ու չայրվող ֆոտո և կինոժապավենների արտադրության մեջ։ Միաժամանակ զգալիորեն կընդլայնվեն գործող ցեխերը և անհամեմատ կավելանա նրանց հզորությունը։

Գործարանի կոմունիստները, բոլոր աշխատողները ոչ մի ջանք չեն խնայի մինչև վերջ կենսագործելու պարտիայի Կենտկոմի Մայիսյան պլենումի պատմական որոշումները։

---

## ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

# ԹՈՇԱԿԱՌՈՒ ԿՈՄՈՒՆԻՍՏԸ ՊԵՏՔ Է ՊԱՐՏԻԱԿԱՆ ՀԱՆՁՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ ՈՒՆԵՆԱ

Յուրաքանչյուր կոմունիստ, անկախ նրանից, թե նա աշխատում է կամ թե կենսաթոշակի է անցել, պետք է որևէ պարտիական հանձնարարություն ունենա։ Դա մեր պարտիայի կանոնադրությամբ նախատեսված կոմունիստի պարտականություններից մեկն է։

Սակայն, պետք է նշել, որ դա երբեմն խախտվում է. կոմունիստներից ոմանք շատ անգամ մի քանի հանձնարարություններ են կատարում, իսկ ոմանք էլ բավարարվում են միայն անդամավճար մուծելով և պարտիական ժողովներին պասիվ մասնակցություն ունենալով։

Այդպիսի վիճակի մեջ հաճախ կարելի է տեսնել կենսաթոշակի անցած կոմունիստներին։

Պետական կենսաթոշակների մասին նոր օրենքը գործողության մեջ մտնելուց հետո մեր ռեսպուբլիկայի քաղաքներում և շրջաններում արտադրության, պետական ու ռազմական ծառայության տասնյակ հազարավոր վետերաններ անցել են կենսաթոշակի։ Շնորհիվ Կոմունիստական պարտիայի և Սովետական իշխանության ջերմ հոգատարության թոշակառուները ապահով ու երջանիկ կյանք են վարում։ Սակայն նրանցից շատերը, չնայած այդ ապահովվածությանը, չեն ցանկանում իրենց կապերը կտրել պրակտիկ գործունեությունից, ձգտում են իրենց կյանքը բազմաբովանդակ ու հետաքրքրական դարձնել։ Բայց միշտ չէ, որ նրանք հասնում են իրենց նպատակին։ Դա բացատրվում է նրանով, որ պարտիական, արհմիութենական և կոմերիտական որոշ ղեկավարներ մոռացության են տալիս թոշակառուներին, խորամուխ չեն լինում նրանց հասարակական ակտիվ կյանքի մեջ ներգրավելու գործում, չեն նկատում, որ առանձին թոշակառու կոմունիստներ իրենց պասիվ են պահում, կտրվում են պարտիական և հասարակական կյանքից, չեն հաճախում պարտիական ժողովներին, չեն օգնում իրենց կազմակերպություններին։ Եվ իրոք, թոշակառուներից ոմանք աշխատանքը թողնելուց հետո գտնում են, որ իրենք հասարակության համար արդեն ամեն ինչ արել են և կարող են նիրհել դափնիների վրա, հեռանալ հասարակական կյանքից։ Նրանց հետաքրքրող հարցերի շրջանակները խիստ կերպով սահմանափակվում են, և նրանք համարյա ամբողջովին տարվում են իրենց նեղ, անձնական կյանքով։

Բայց չէ՞ որ նրանք կյանքի ու գործունեության հարուստ փորձ, կայուն գիտելիքներ ու աշխատանքային կոփվածություն ունեցող, դեռևս երեկվա մեր ակտիվ ընկերներն են։ Հապա ինչո՞ւ չօգտագործել այդ անսահման հարստությունը, ինչո՞ւ չօգնել նրանց՝ վերադառնալու դեպի հասարակական ակտիվ կյանք, ինչո՞ւ ժամանակին չուղղել նրանց՝ ակամայից թույլ տված սխալները, չթողնել, որ նրանք իրենց մենակ զգան։ Այս հարցերը լուծելի են,

միայն անհրաժեշտ է, որ տեղական պարտիական, պրոֆմիութենական և կոմերիտական կազմակերպություններն ավելի մոտիկից զբաղվեն թոշակառու մեր ընկերներով, ավելի ջերմորեն շրջապատեն նրանց, ավելի հաճախ ու խելացիորեն օգտագործեն նրանց գիտելիքներն ու հարուստ փորձը: Պարտիական կոմիտեների մի շարք ղեկավարներ կարևորություն չտալով այս լուրջ հարցին, խնդիրը պրիմիտիվ կերպով են լուծում: Նրանք բավարարվում են թոշակառուներին դեպքից դեպք հանձնարարություններ տալով և ռեոլյուցիոն տոնակատարությունների կապակցությամբ զեկուցումներ հանձնարարելով: Այդպիսի վերաբերմունքը հանգեցնում է այն բանին, որ որոշ կոմունիստ թոշակառուներ կտրվելով կյանքից՝ կոմունիստին անվայել արարքներ են թույլ տալիս: Այդպես պատահեց, օրինակ, Երևան քաղաքում բնակվող մի քանի ընկերների հետ:

Անհրաժեշտ է, որպեսզի շրջկոմների և քաղկոմների քարտուղարները, շրջանային ու քաղաքային Սովետների գործադիր կոմիտեների նախագահները ավելի հաճախակի հանդիպեն թոշակառուների հետ, մոտիկից ծանոթանան նրանց կյանքին, չավատեղյակ լինեն նրանց տրամադրություններին, օգնեն նրանց հուզող հարցերի լուծմանը և դրա հետ մեկտեղ դիմեն նրանց օգնությանը, օգտագործեն նրանց կարողությունները:

Դժվար է թվել թոշակառուներին հասարակական աշխատանքի մեջ ներգրավելու բոլոր ձևերը, դրանք նույնքան բազմազան են, որքան բազմազան է ինքը՝ կյանքը:

Սակայն մի հարց որոշակի է. դա այն է, որ այդ աշխատանքը կամպանիոն բնույթ չպետք է կրի, պետք է իմանալ, որ մարդու նկատմամբ հոգատարությունը դա սովետական հասարակարգի օրենքն է: Այնտեղ, որտեղ պարտիական կազմակերպություններն իսկական և ամենօրյա հոգատարություն են հանդես բերում թոշակառուների նկատմամբ, հաջողությունն անվիճելի է դառնում, կյանքն ինքն է թելադրում աշխատանքի կազմակերպական ձևերը: Թոշակառուների հետ տարվող աշխատանքի հարուստ փորձ են կուտակել, օրինակ, Երևանի, Լենինականի և Կիրովականի պարտիական շատ կոմիտեներ: Երևանի կազմակերպության Կիրովյան պարտշրջկոմը այս հարցը ճիշտ է լուծում: Այստեղ թոշակառուին պարտիական կազմակերպությանը կցելիս հաշվի են առնում կոմունիստի գիտելիքներն ու ցանկությունը, նրա մասնագիտությունն ու տվյալ կազմակերպությանն օգտակար լինելու հանգամանքը: Շրջկոմի 9 հրահանգիչներից յուրաքանչյուրին կցված են 20-ից ավելի թոշակառուներ, որոնք բացի սկզբնական կազմակերպություններում որոշ հանձնարարություններ ունենալուց, հանձնարարություններ են ստանում նաև հրահանգիչներից և շրջկոմի քարտուղարներից: Նրանք հարցեր են նախապատրաստում շրջկոմի բյուրոյի ու պլենումների համար, մասնակցում են սկզբնական կազմակերպությունների ժողովներին, ստուգում են շրջկոմի հասցեով ստացվող դիմումներն ու բողոքները:

Վերջերս թոշակառուների ուժերով ՀԿՊ Երևանի Կիրովյան շրջկոմի բյուրոն քննության առավ կամավոր հրշեջ ընկերության ռեսպուբլիկական կոմիտեի և պարտիական կազմակերպության գործունեության հարցը: Պարզվեց, որ թոշակառու կոմունիստները բարեխղճորեն էին ուսումնասիրել այդ հիմնարկի ու պարտկազմակերպության բոլոր թերություններն ու բացերը և ճիշտ առաջարկություն էին արել նրանց աշխատանքները բարելավելու համար:



Ընկերության նախկին ղեկավարները, որոնք չէին կարողացել գլխավորել գործը, փոխարինվեցին ավելի գործիմաց աշխատողներով:

Կիրովյան շրջանում գտնվող որսորդների և ձկնորսների ռեսպուբլիկական կամավոր ընկերության պարտիական սկզբնական կազմակերպությունը բաղկացած է 13 հոգուց, որից 7-ը կենսաթոշակի անցած հին կոմունիստներ և պաշտոնաթող սպաներ են: Նրանցից Հ. Հովհաննիսյանը և Վ. Դանիելյանը ագիտացիոն աշխատանք են կատարում թաղամասերում, Մ. Մնացականյանը և Ս. Էգիլյանը մշտապես կատարում են շրջկոմի հանձնարարությունները, իսկ Գ. Միքայելյանը և մյուսները կատարելով պարտկազմակերպության որոշումը՝ հսկում են ընկերության շրջանային օրգանների կողմից Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի 7-րդ սեսիայի՝ «Բնության պահպանման» վերաբերյալ որոշման ճիշտ կատարումը: Պիոներների պալատի սկզբնական պարտիական կազմակերպության անդամներ, պահեստի գեներալներ ընկ. ընկ. Ս. Մարտիրոսյանը և Ա. Կարապետյանը ոչ միայն երեխաների հաճելի հյուրերն են, այլև կազմակերպության ու հիմնարկի աշխատանքների ակտիվ մասնակիցներ. նրանք ժամանակին և բարեխղճորեն են կատարում պարտիական կազմակերպության բոլոր հանձնարարությունները և միաժամանակ օգնում են շրջկոմին: Պետք է նշել նրանց ակտիվ մասնակցությունը հատկապես պատի թերթի աշխատանքներին: Այսպես, օրինակ, Սովետական Բանակի 40-րդ տարեդարձին նվիրված պատի թերթի ձևավորումն ու լույսընծայումը կատարեցին ընկ. ընկ. Մարտիրոսյանը, Կարապետյանը և թոշակառու փնդապետ Դանիելյանը:

Ակտիվ աշխատանքի ու հանձնարարությունների ճիշտ կատարման լավագույն օրինակ են ծառայում նաև Կիրովյան պարտշրջկոմի անդամ, պահեստային գեներալ ընկ. Խ. Գանիեր և շրջկոմի վերստուգիչ հանձնաժողովի անդամ, հին կոմունիստ ընկ. Ա. Ղազարյանը:

Թոշակառուների հետ աշխատանքը լավ է դրված նաև Լենինականի երկաթուղային հանգույցում: Այստեղ վերջին ժամանակներս ավելի քան 200 կադրային աշխատողներ անցել են կենսաթոշակի: Սակայն հեռանալով արտադրությունից, նրանցից շատերը չեն կտրվել հարազատ կոլեկտիվից, իրենց աշխատանքային ընկերներից: Թոշակառու կոմունիստ Ս. Ժամկոչյանը հաճախ է լինում արհեստանոցում, հետաքրքրվում աշխատանքի վիճակով, խոսքով ու գործով օգնում իրեն փոխարինած երիտասարդներին: Նրա այդ գովելի աշխատանքն ապարդյուն չի անցնում. նրան անմիջապես փոխարինող Լ. Գալստյանն այժմ իր օրական առաջադրանքը կատարում է 180—200 տոկոսով և տալիս է միայն բարձր որակի արտադրանք: Դրականն այստեղ այն է, որ հանգույցի պարտիական կազմակերպությունն ամեն կերպ պաշտպանում է կենսաթոշակի անցած կոմունիստների և անպարտիական ակտիվիստների նախաձեռնությունը ու նրանց հասարակական ակտիվ աշխատանքի է ներգրավում: Այստեղ թոշակառուների նախաձեռնությամբ ու շոգեքարշային դեպոյի պարտիական կազմակերպության բյուրոյի օժանդակությամբ երկաթուղայինների՝ Սևյանի անվան կուլտուրայի պալատում վերջերս ստեղծվեց թոշակառուների սենյակ: Այդ սենյակն այժմ նրանց երկրորդ տունն է, կուլտուրայի տունը: Նրանք այստեղ են անցկացնում իրենց ժամանակի զգալի մասը, լսում են զեկուցումներ ու դասախոսություններ, հանդիպումներ են ունենում երիտասարդների հետ: Լենինականի կազմակերպության համար

այս փաստը եզակի չէ։ Քաղաքային կոմիտեն իր նախաձեռնությամբ հրավիրել է հին կոմունիստների համաքաղաքային խորհրդակցություն, նրանցից շատերին ընդգրկել է հասարակական աշխատանքներում։ 1917 թվականի կոմունիստ Հ. Ղազարյանը քաղաքային կոմիտեի դասախոսական խմբի անդամ է, նա միաժամանակ Լենինականի կայազորի զորամասերի սիրելի հյուրն է։ Նա հաճախ է հանդես գալիս մարտիկների առաջ, նրանց պատմում մայիսյան ապստամբության ու երիտասարդության անցած փառապանծ ուղու մասին։

1917 թվականի կոմունիստ Գ. Ասատրյանը իր հասարակական բարեխիղճ աշխատանքի և բազմաթիվ դասախոսություններ կարդալու համար վերջերս արժանացել է ՀՍՍՌ Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերության պատվոգրին։ Բանակից զորացրված գնդապետ Ի. Իվանովը դեղատների պարտիական կազմակերպության անդամ է։ Նա հաճախակի հարցեր է պատրաստում ոչ միայն իր կազմակերպության բյուրոյի համար, այլև քաղկոմի հանձնարարությամբ հսկում է առևտրական և հասարակական սննդի ձեռնարկությունների աշխատանքների վրա, օգնում է ԴՕՍԱԱՖ-ի քաղաքային կոմիտեին։

Թոշակառուների հետ դրական աշխատանք է կատարում Կիրովականի քաղաքային Սովետը։ Այստեղ քաղսովետի հասցեով ստացված դիմում-բողոքների 90 տոկոսը ստուգվում է թոշակառուների կողմից, որոնց մի մասը քաղաքային Սովետի դեպուտատներ են։ Քաղսովետի նախաձեռնությամբ այս տարվա օգոստոսի 7-ին հին կոմունիստ Ն. Գևորգյանի գլխավորությամբ ստեղծվեց 15 թոշակառուներից բաղկացած մի հանձնաժողով, որը կենսագործելու է առևտրի և հասարակական սննդի օբյեկտների վրա պրոֆմիութենական կազմակերպությունների հսկողությունն ուժեղացնելու վերաբերյալ ՀԱՄԽ-ի վերջերս ընդունած որոշումը։

Այստեղ լավագույն աշխատանք է ծավալել նաև կոմերիտմիության քաղաքային կոմիտեն։ Ընդօրինակելով Կույբիշև քաղաքի կոմերիտականների նախաձեռնությունը, քաղկոմն ստեղծել է հին կոմունիստների խորհուրդ, որտեղ հիմնականում ընդգրկված են ռևոլյուցիայի վետերանները։ Այս խորհրդի անդամներն ակտիվ մասնակցություն են ունենում կոմերիտականների ու պիոներների հետ տարվող աշխատանքներին, պատմում են նրանց քաղաքի և ռեսպուբլիկայի կոմերիտմիության հերոսական անցյալի մասին, Հայրենական պատերազմի ռազմաճակատներում մարտնչած կոմերիտականների մասին։ Նրանք հաճախակի լինում են բակային ճամբարներում, օգնում աշխատանքի կազմակերպմանը։ Կիրովականի քիմիական կոմբինատի սկզբնական պարտիական կազմակերպության անդամ, 1919 թվականի կոմունիստ Ն. Մարությանը իր նախաձեռնությամբ քաղաքում ստեղծել է բակային 7 ճամբար և խորեոգրաֆիկ մեկ խումբ։ Նրա ջանքերով վերջերս տեղի ունեցավ բակային ճամբարների երեխաների հանդիպումը ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ, քիմիական կոմբինատի դիրեկտոր ընկ. Ս. Թևոսյանի հետ, որը երեխաներին պատմեց մեր ռեսպուբլիկայում քիմիական արդյունաբերության զարգացման հեռանկարների մասին։

Քաղաքային կոմիտեին կից խորհրդի ակտիվ մասնակիցներից են նաև 1920 թվականից կոմունիստներ՝ Հ. Վանունին, Հ. Դանիելյանը և ուրիշներ։ Նրանցից փոխգնդապետ Մ. Պեցը զորացրվելով բանակից՝ իրեն ամբողջու-



թյամբ նվիրել է Հայրենական Մեծ պատերազմին մասնակցած զորամասերից մեկի նոր թանգարանի ստեղծմանը։ Այժմ Կիրովականում գործում է մի գեղեցիկ և հարուստ թանգարան, որն այցելուներին պատմում է «H» զորամասի 40 տարվա անցած փառապանծ ուղու մասին։

Անհրաժեշտ է նշել, որ ոչ բոլոր քաղկոմներն ու շրջկոմները, պարտիական, կոմերիտական և պրոֆմիութենական կազմակերպություններն են, որ թոշակառուների ուժերը օգտագործելու ուղղությամբ համապատասխան աշխատանքներ են ծավալել։ Օրինակ՝ Կիրովականի քիմիական կոմբինատում 120-ից ավելի կենսաթոշակի անցած մասնագետներ կան. նրանց հետ դեռևս շոշափելի աշխատանք չի կատարվում։ Ճիշտ է, այստեղ Կուլտուրայի տանը 2 սենյակ է առանձնացված թոշակառուների համար, բայց սկզբնական պարտկազմակերպությունը (քարտուղար՝ Խ. Թադևոսյան), պրոֆկոմը (նախագահ՝ Ս. Սարգսյան) և կոմերիտական կազմակերպությունը (քարտուղար՝ Ս. Թարոյան) այդ հսկայական ուժը դեռևս անբավարար են օգտագործում։ Նրանց հնարավորություն չի տրվում իրենց տարիների ընթացքում կուտակած փորձը, օրինակ՝ բարձրորակ կարբիդ, ցիանամիդ և քիմիական այլ նյութերի ստացման գործում, հաղորդելու երիտասարդ բանվորներին։

Կարելի է, օրինակ, օգտագործել բոլորին ծանոթ, կադրային բանվոր-վարպետներ Ֆ. Ֆիռֆանովի, Ա. Կիրակոսյանի, Շ. Խոյեցյանի և մյուսների փորձը, որոնց խորհուրդները երիտասարդ բանվորները կընդունեն մեծ ուրախությամբ։

Թոշակառուների հետ դեռևս անբավարար աշխատանք են կատարում նաև Հայաստանի Ներքին գործերի մինիստրությունը, Պետական անվտանգության կոմիտեն և մի շարք այլ հիմնարկություններ ու ձեռնարկություններ։

Թոշակառուներին հասարակական աշխատանքի մեջ ընդգրկելու լավագույն ձևերից մեկը դա նրանց տնային կառավարչություններին ու ԴՕՍԱԱՖ-ի շրջանային կոմիտեներին կից ստեղծված պարտիական կազմակերպություններում ընդգրկելն է. Թոշակառուներն այստեղ հնարավորություն են ունենում քաղաքական-մասսայական աշխատանք ծավալել բնակիչների մեջ, մասնակցել զանազան կուլտուրական միջոցառումների, հսկել երեխաների դաստիարակությանը, պահպանել բնակելի ֆոնդը և այլն։

Երևանի № 9 տնային կառավարչության սկզբնական պարտիական կազմակերպությունը խորանում է բնակիչների կենցաղային ու կուլտուրական հարցերի բարելավման ուղղությամբ առաջացած բոլոր հարցերի մեջ և դրական կերպով է լուծում դրանք։ Պարտիական կազմակերպությունը հատուկ ուշադրություն է դարձնում բնակչության մեջ կատարվող քաղաքական-մասսայական աշխատանքի ծավալմանը։ Կազմակերպության անդամ, հին կոմունիստ Ա. Ամիրզադյանին գիտեն բոլոր մեծ ու փոքր բնակիչները։ Նա հաճախ է լինում նրանց շրջանում, պարզաբանում նրանց համար պարտիայի ու կառավարության քաղաքականությունը, սովետական քաղաքացու իրավունքներն ու պարտականությունները, սոցիալիստական համակեցության կանոնները և հասարակական համակեցության կարգ ու կանոնի ամրապնդման հարցերը։ Կենսաթոշակի անցած ընկերներին հատկապես չեն մոռանում Երևանի սպայի տան աշխատողները։

Այստեղ զորացրված և պահեստի սպաների համար շաբաթական երկու անգամ կազմակերպվում է դասախոսություն՝ մարքսիզմ-լենինիզմի, ռազմա-

կան գիտության նորությունների, բնական գիտությունների և այլ հարցերի շուրջ։ Միայն 1958 թվականի անցած ամիսների ընթացքում նրանց համար կարդացվել է 52 դասախոսություն և զեկուցում։ Բացի այդ, նրանցից շատերը մասնակցում են նաև կայազորի սպայակազմի ու նրանց ընտանիքների անդամների համար կազմակերպվող դասախոսություններին և զանազան այլ միջոցառումների անցկացմանը։ Սպայի տանը կից զորացրված և պահեստի սպաների համար ստեղծված է կամավոր ռազմագիտական ընկերություն և որսորդների խմբակ։ Կամավոր ռազմագիտական ընկերությունը բաղկացած է 73 հոգուց։ Ընկերության անդամների հետ ամսական երկու անգամ պարապմունքներ են անցկացվում, որտեղ նրանք ծանոթանում են ռազմական նոր տեխնիկայի և հանդերձանքի հետ։ Ընկերության անդամները հաճախակի հանդես են գալիս զեկուցումներով, որոնցում մատչելի ձևով բնակչությանը ծանոթացնում են ժամանակակից ռազմական գիտության և նորագույն տեխնիկայի հարցերին։

Սպայի տանը կից որսորդների խմբակը բաղկացած է 18 հոգուց. նրանք բոլորն էլ պահեստի սպաներ են։ Սպայի տան ղեկավարությունը շաբաթական 2—3 անգամ այդ ընկերներին տրամադրում է մեքենաներ՝ որսի և ձկնորսության դուրս գալու։ Նրանք որսի են գնում ռեսպուբլիկայի զանազան վայրեր, բայց միաժամանակ չեն մոռանում իրենց պարտքը հասարակության հանդեպ. նրանցից շատերը յայլաներում հանդիպումներ ու զրույցներ են ունենում ռեսպուբլիկայի անասնապահների հետ, նրանց համար զրույցներ են անցկացնում արդի հուզող հարցերի շուրջը։

Բացի այս բոլորից, կենսաթոշակի անցած զինծառայողների համար Երևանի սպայի տանը ստեղծված են նաև անհրաժեշտ պայմաններ՝ նրանց կուլտուրական սպասարկումը կազմակերպելու համար։ Այդ նպատակով ցերեկվա ժամերին միշտ բաց են լինում ընթերցարանը, խաղերի սենյակը և բիլիարդանոցը։

Սակայն, պետք է նշել, որ Լենինականի և ռեսպուբլիկայի այլ քաղաքների սպայի տները դեռևս քիչ բան են անում կենսաթոշակի անցած զինծառայողների համար. օրինակ, Լենինականի սպայի տան ղեկավար ընկերները բավարարվում են միայն հանգստի երեկոներ կազմակերպելով ու հանդիսավոր նիստերին նրանց հրավիրատոմսեր ուղարկելով։

Կենսաթոշակի անցնելով՝ սովետական մարդիկ չեն դադարում կոմունիզմի ակտիվ կառուցողներ լինելուց, նրանց մեջ կան շատ գործունյա մարդիկ։ Նրանցից շատերը 50—55 տարեկան են և դեռ երկար ժամանակ կարող են հասարակական կյանքի համար պիտանի լինել. խնդիրը նրանումն է, որ նրանց լավ օգտագործեն, օգնեն, որ նրանք գտնեն իրենց տեղը հասարակական կյանքում։ Պարտիական կոմիտեները թոշակառուներին պարբերաբար պետք է ծանոթացնեն Կոմունիստական պարտիայի և կառավարության կարևորագույն որոշումներին և հերթական խնդիրներին։ Հնարավորության դեպքում պետք է նաև նրանց աշխատանք տալ. հարցը, իհարկե, պաշտոնի մեջ չէ. իսկական կոմունիստը չի կարող ընկնել պաշտոնի հետևից, այլ նա պետք է մտածի, թե որտեղ ինքը կկարողանա ավելի շատ օգուտ բերել իր ժողովրդին։

Ռեսպուբլիկայի պարտիական, կոմերիտական, արհմիութենական և հա-



սարակական կազմակերպությունների խնդիրն է՝ ամենօրյա հոգատարությամբ շրջապատել կենսաթոշակի անցած վետերաններին և նրանց մասնակից դարձնել ակտիվ հասարակական կյանքին։

Ռ. ՆԻԿՈՂՈՍՅԱՆ

## ԲՈՒԺՀԻՄՆԱՐԿՆԵՐԻ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՐԵՎՈՐ ԽՆԴԻՐԸ

Վերջին տարիների ընթացքում ինչպես ժողովրդական տնտեսության մյուս, այնպես էլ առողջապահության բնագավառում ձեռք են բերվել զգալի հաջողություններ։ Բավականին ընդարձակվել է բուժհիմնարկների ցանցը, ստացիոնար բուժման հիմնարկներում ավելացել է մահճակալների թիվը, ստացվել է նոր առաջնակարգ կահավորում, զգալիորեն բարելավվել է բնակչության բժշկասանիտարական սպասարկման գործը, բարձրացել է ազգաբնակչության սպասարկման կուլտուրան։ Բուժհիմնարկներում աշխատող կոմունիստ և անպարտիական շատ բժիշկներ, բուժքույրեր, բուժակներ անում են իրենցից կախված ամեն ինչ՝ բարձրացնելու այդ միանգամայն անհրաժեշտ ու կարևոր նշանակություն ունեցող գործը։

Երևանի Ստալինյան շրջանի բուժհիմնարկների պարտիական կազմակերպությունները վերջին տարիների ընթացքում որոշակի աշխատանք են կատարել բնակչության բուժսպասարկման գործը բարելավելու ուղղությամբ։ Նրանք բարձրացրել են բուժպերսոնալի պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ և իրենց ժողովներում ու բյուրոների նիստերում քննարկել են մի շարք գործնական հարցեր, որոնք, հիրավի, նպաստել են բնակչության բուժսպասարկման աշխատանքների հաջող կազմակերպմանը։

Պարտիական կազմակերպությունները շոշափելի աշխատանք են կատարել բնակչության շրջանում բժշկա-սանիտարական գիտելիքների պրոպագանդայի ուղղությամբ։ Այս տեսակետից աշխատանքի դրական փորձ ունի շրջանի 5-րդ բուժմիավորման պարտիական կազմակերպությունը։ Նա թաղամասի բնակչության համար սիստեմատիկորեն կազմակերպում է բժշկա-սանիտարական թեմաներով կինոնկարների դիտումներ, դասախոսություններ, զեկուցումներ, զրույցներ, բուժմիավորման աշխատողների հանդիպումներ բնակչության հետ։ Նման օրինակներ կարելի է բերել նաև շրջանի առաջին բուժամասի և 6-րդ բուժմիավորման պարտիական կազմակերպությունների աշխատանքի պրակտիկայից։ Անցկացվող այդպիսի միջոցառումները, նրանց պլանային, սիստեմատիկ բնույթը ինչ խոսք, որ նպաստում են բուժհիմնարկությունների պարտիական կազմակերպությունների հեղինակության բարձրացմանը և օգնում գործի բարելավմանը։

Չնայած կատարված դրական աշխատանքին, այնուամենայնիվ, պետք է նշել, որ ինչպես բուժհիմնարկների պարտիական կազմակերպությունների, այնպես էլ ադմինիստրացիաների աշխատանքներում գոյություն ունեն լուրջ թերություններ. դրանց զգալի մասը բաժին է ընկնում առողջապահության վերադաս օրգաններին, որոնց ոչ օպերատիվ աշխատանքի հետևանքով մի շարք կարևոր հարցեր ժամանակին չեն լուծվում։

Շրջանում կատարված ուսումնասիրությունները ցույց տվին, որ ոչ բոլոր բուժհիմնարկներն են ձեռնարկում պլանային միջոցառումներ՝ հիվանդու-

թյունների դեպքերը նվազեցնելու ուղղությամբ եղած հնարավորություններն օգտագործելու համար: Ինչպես քաղաքի Ստալինյան, այնպես էլ մյուս շրջաններում ընդհանուր թերություն է բնակչության դիսպանսեր սպասարկման անբավարար կազմակերպումը: Այդ գործի նկատմամբ ցուցաբերված ձևական վերաբերմունքի հետևանքով շատ բժիշկների մոտ դիսպանսերացված են 10—15 հիվանդ, այն դեպքում, երբ նրանք պետք է ունենան մինչև 50—60 հիվանդ: Փաստերը խոսում են այն մասին, որ դիսպանսեր հսկողության տակ եղած սակավաթիվ հիվանդների նկատմամբ էլ անհրաժեշտ բուժօգնություն չի կազմակերպվում:

Շատ հիվանդներ ստուգման են ենթարկվում տարեկան երկու, նույնիսկ մեկ անգամ: Օրինակ, հիվանդ Նազարյանի մոտ բժիշկ Աստվածատրյանը (6-րդ բուժմիավորում) 1957 թվականի հունվարին հայտաբերել է խրոնիկ ռևմատիկ պոլիարթրիտ և միոկարդոդիստրոֆիա: Հաջորդ այցելությունը հիվանդին կատարվել է մեկ տարի անց: Այսպիսով, ամբողջ մեկ տարի հիվանդը դուրս է մնացել բժշկի տեսադաշտից: Հիվանդի անկետայում բացակայում են լաբորատոր անալիզների, ռենտգեն քննության և այլ անհրաժեշտ տվյալներ:

Լուրջ թերություններ գոյություն ունեն նաև հիվանդներին ժամանակին դիագնոզելու և նրանց անհրաժեշտ բուժում կազմակերպելու գործում: Դեռևս քիչ չեն դեպքերը, երբ բուժելու փոխարեն հիվանդին ուղարկում են կաբինետից-կաբինետ: Առանձին բժիշկներ հիվանդության նկարագրերը լրացնում են թերի, հաճախ նրանց նշանակումները չեն համապատասխանում մանիպուլյացիաներին և այլն: Շատ դեպքերում չի նշվում ստացիոնար բուժման ուղարկվող հիվանդների էպիկրիզը, այսինքն՝ հիվանդանոցում պառկած ժամանակ հիվանդի դիագնոզի ճշգրտումը ստացիոնարի կողմից, չեն նշվում նաև ռենտգեն և բուժման այլ հետազոտության արդյունքները, որոնք անհրաժեշտ են հիվանդների հետագա բուժումը կազմակերպելու համար:

Միանգամայն անթույլատրելի է, որ մեր հիվանդանոցները ապահովված չեն անհրաժեշտ դեղորայքով, հատկապես զգացվում է թթվածնի և լուսանկարչական ժապավենի մեծ պակաս: Մեր կարծիքով միանգամայն հիմքից զուրկ է այն բացատրությունը, որ այս հարցի կապակցությամբ տրվում է առողջապահության վերադաս օրգանների կողմից: Հիվանդանոցներում, դեղատներում մի շարք դեղորայքի պակասը (բիոմիցին, պենիցիլին, ստրեպտոմիցին), նրանց կողմից բացատրվում է նրանով, որ իբր դրանք բուժպերսոնալի կողմից հաճախակի նշանակվում են առանց անհրաժեշտության: Այսպիսի բացատրությունը առողջապահական օրգանների անբավարար աշխատանքը սքողելու փորձ է: Ուղղակի կարելի է ասել, որ երկու դեպքում էլ ստեղծված վիճակի համար պատասխանատու են ինչպես քաղառբաժինը, այնպես էլ Առողջապահության մինիստրությունը, որոնք թույլ են ղեկավարում իրենց հիմնարկները:

Հիվանդանոցների աշխատանքներում տեղ գտած թերություններից է նաև այն, որ եզակի չեն դեպքերը, երբ հիվանդների սպասարկման պարտականությունը, հատկապես ծանր հիվանդների խնամքը, երբեմն թողնվում է միայն սանիտարուհիներին:

Թերություններ կան նաև բուժման գործում: Եղել են դեպքեր, երբ հիվանդները դուրս են գրվել առանց լրիվ ապաքինման: Հիվանդանոցների շատ



հիվանդների օրվա բոլոր ժամերին կարելի է տեսնել ո՛չ միայն հիվանդանոցի բակում, որն անթույլատրելի է, այլև բակից էլ դուրս: Հիվանդանոցների ոչ բոլոր հիվանդներն են ապահովված ռադիոականջակալներով: Սեղանի խաղեր, թերթեր, ամսագրեր ու գեղարվեստական գրքեր հազվադեպ են լինում հիվանդասենյակներում:

Ժամանակին պարտիական և սովետական վերադաս օրգանների կողմից խիստ քննադատության ենթարկվեցին ռեսպուբլիկայի մանկական առողջապահական հիմնարկների աշխատանքները: Չնայած վերջին տարիներում այդ հիմնարկների աշխատանքների բարելավման ուղղությամբ կատարված որոշ դրական աշխատանքներին, դեռևս լուրջ թերություններ կան նրանց գործունեության մեջ: Մանկական կոնսուլտացիայի բուժաշխատողների կողմից բացակայում է սիստեմատիկ պատրոնաժ հսկողությունը (9-րդ պոլիկլինիկա): Երեխաների անտրոպոմետրիկ չափումները, նրանց ֆիզիկական զարգացումը իրենց արտահայտությունը չեն գտնում անկետաների մեջ: Թույլ է հսկողությունը հիպոտրոֆիկ և ռախիտիկ երեխաների նկատմամբ:

Ծննդատնից դուրս գրվելուց հետո երեխաները բժշկի և բուժքրոջ կողմից ուշացումով են վերցվում հաշվառման, հետևաբար և պատրոնաժ հսկողությունը սահմանվում է ուշացումով:

Մանկական բուժհիմնարկների աշխատանքների ցուցանիշը հիվանդությունների դեպքերի և մահացության իջեցումն է, որին հասնելու հիմնական միջոցներից մեկը դա ծնողների, հատկապես մայրերի սանիտարական կուլտուրայի, նրանց սանիտարական գիտելիքների մակարդակի բարձրացումն է: Պարտիական կազմակերպությունները, բուժհիմնարկների ղեկավարությունը պարտավոր են մանկական կոնսուլտացիաներում, հիվանդանոցներում ու թաղամասերում մայրերի համար կազմակերպել դասախոսություններ, ղեկուցումներ, զրույցներ, նրանցից ակտիվիստներին ներգրավել սանլուսգիտելիքների տարածման գործում: Որպեսզի կոնսուլտացիոն հիմնարկի և մայրերի միջև կապը ուժեղանա, անհրաժեշտ է նրանց հրավիրել կոնսուլտացիա՝ երեխայի զարգացման ընթացքի հետ ծանոթանալու նպատակով:

Դեռևս բավարար աշխատանք չի կազմակերպված երեխաների ժամանակին հոսպիտալացման ուղղությամբ: Երեխաների հիվանդության և մահացության նվազեցման գործի հաջող կազմակերպումը մեծ չափով կախված է նրանից, թե յուրաքանչյուր մանկաբույժ քանի պատրոնաժ երեխա ունի: Ստալինյան շրջանում յուրաքանչյուր տեղամասում մեկ մանկաբույժին ընկնում է 100-ից ավելի երեխա: Ստեղծված վիճակը մեզանից հրամայաբար պահանջում է մանրացնել մանկաբուժական տեղամասերը, որը հնարավորություն կտա թեթևացնելու տեղամասային մանկաբույժների ծանրաբեռնվածությունը և կօգնի լայնորեն կիրառելու պրոֆիլակտիկ միջոցառումները: Պետք է նկատի ունենալ նաև այն հանգամանքը, որ շրջանի մանկական 3-րդ կոնսուլտացիան զուրկ է ստացիոնար բուժման հնարավորություններից, որը չափազանց անհրաժեշտ է շրջանի, հատկապես 3-րդ մասի և Զարբախի բնակչության համար:

Լուրջ թերություններ գոյություն ունեն նաև բանվորների աշխատանքային պայմանների բարելավման գործում: Գործարանների ոչ բոլոր առողջապահական կայաններն են դարձել բանվորների առողջության պահպանման կենտրոններ: Բանվորների առողջության պահպանման ուղղությամբ պլանա-

յին, հետևողական աշխատանք չեն տանում դերմատոխին-մոմլաթի, ավտոպահեստամասերի գործարանների առկայանները։ Նշված առկայանների բուժաշխատողները չեն խորանում արտադրական պրոցեսների տեխնոլոգիայում՝ բանվորների առողջությանը վնասող հակահիգիենիկ երևույթները, բացասական ազդակները պարզելու և կանխելու համար։ Պետք է նշել, որ առկայաններին անհրաժեշտ մեթոդական օգնություն չեն կազմակերպում հիգիենայի, էպիդեմիոլոգիայի, տրավմատոլոգիայի ու օրթոպեդիայի գիտա-հետազոտական ինստիտուտները։

Այս առումով անհրաժեշտ է նշել, որ յուրաքանչյուր տարի Առողջապահության մինիստրության կողմից Ստալինյան շրջանի բուժհիմնարկների աշխատողներին որակյալ մասնագիտական կոնսուլտացիաներ տալու, աշխատանքներին օգնելու նպատակով կցվում են մեծանուն մասնագետներ, բայց, ցավոք սրտի, բացի մեկից, մնացած ընկերները չեն բարեհաճում այցելել շրջանը, ուղղակի չեն կատարում մինիստրի հրամանը։

Անհանդուրժելի է սննդհամի բժշկական հանձնաժողովի անբավարար աշխատանքը։ Առանձին դեպքերում սննդի օբյեկտներում աշխատում են մարդիկ, որոնք երկար ժամանակ չեն ենթարկվում բժշկական քննության։ Շատ են այն դեպքերը, երբ վաճառասեղանի մոտ են կանգնում, կամ խոհանոցային ու այլ բնույթի աշխատանքներ են կատարում բացիլակիրներ, որոնք անմիջապես պետք է ազատվեն աշխատանքից և փոխադրվեն սննդի հետ առնչություն չունեցող օբյեկտներ։ Այս և նման թերությունների վերացման հարցով հանձնաժողովի ղեկավարությունը, պարտիական կազմակերպությունների հետ միասին, պետք է անհրաժեշտ միջոցառումներ ձեռնարկեն։ Բուժհիմնարկների պարտիական կազմակերպությունները պարտավոր են բարձրացնել տեղամասային բժիշկների պատասխանատվությունը այն հաշվով, որ նրանք ակտիվ աշխատանք կազմակերպեն իրենց տեղամասերի սանիտարական վիճակի բարելավման ուղղությամբ։

Բուժհիմնարկությունների աշխատանքներում տեղ գտած թերությունները բացատրվում են նրանով, որ ռեսպուբլիկայի Առողջապահության մինիստրության կողմից դեռևս բացակայում է առանձին հարցերի խոր ուսումնասիրությունը։ Բերենք մեկ օրինակ. ռեսպուբլիկայի սանիտարա-էպիդեմիոլոգիական կայանի սկզբնական պարտիական կազմակերպության ժողովում պարտիականների կողմից արվեցին մի շարք քննադատական դիտողություններ մինիստրության հասցեին այն բանի համար, որ ռեսպուբլիկայում պրոֆիլակտիկ պատվաստումների պլանները ռեալ չեն, որ Առողջապահության մինիստրության կողմից այն կազմելիս հաշվի չի առնվում քաղաքային և շրջանային առողջապահության օրգանների կարծիքը։ Այդ պայմաններում հաճախ չի ապահովվում պլանավորված պատվաստումների անցկացումը։ Առողջապահության մինիստրության սանէպիդ վարչությունը հակառակ նախօրոք պլանավորվածին, կարիքից ավելի բակպրեպարատներ է պատվիրում։ 1958 թվականի 6 ամիսների ընթացքում արտապլանային պրեպարատների ծախսերը կազմել են 641000 ռուբլի, որով ստեղծվել է նորմայից (պահանջից) ավելի պահեստային նյութերի կուտակում։

Պարտիական ժողովում միաժամանակ նշվեց, որ ընթացիկ տարում ախտափոշիացման փոխարեն (հակամալարիային միջոցառումներ), որի ծախսերը 1957 թվականին կազմել են 50695 ռուբլի, մինիստրության սանէպիդ վարչությունը պլանավորել է փոշիացման աշխատանքների կատարում ձեռքով, որի ծախսերը ավելի շատ են (81350 ռուբլի) և դա համեմատաբար քիչ էֆեկտավոր է։



Ստալինյան շրջանի աշխատավորության բուժ. սպասարկման գործը բարելավելու նպատակով անհրաժեշտ է ֆիզիոթերապևտիկ, քիթ-կոկորդի բաժանմունքներ և բիոքիմիական լաբորատորիա ստեղծել։

Շրջանի բուժհիմնարկների գործունեության մեջ տեղ գտած թերությունները հետևանք են նաև այն բանի, որ նրանց ղեկավարները պահանջկոտություն հանդես չեն բերում աշխատողների նկատմամբ, աշխատանք չեն տանում կոլեկտիվի շրջանում առաջավոր փորձի փոխանակման ու տարածման ուղղությամբ։

Պարտիական կազմակերպությունների կողմից պլանավորված աշխատանք չի տարվում բուժ. աշխատողների քաղաքական գիտելիքների բարձրացման ուղղությամբ։ Բուժաշխատողները չեն ներգրավվում հասարակական ակտիվ աշխատանքի մեջ։ Պարտկազմակերպությունների ժողովներում և բյուրոյի նիստերում քննարկվող հարցերը լավ չեն նախապատրաստվում, որի հետևանքով հաճախ ընդունվում են գործին չօգնող որոշումներ։

Ստալինյան շրջանի բուժհիմնարկություններում դեռևս անհրաժեշտ բարձրության վրա չի դրված աշխատանքային կարգապահությունը։ Երքաղսովետի առողջբաժինը իր հերթին անհրաժեշտ պահանջկոտություն հանդես չի բերել, կոնկրետ օգնություն ցույց չի տվել բուժհիմնարկներին։

Բուժհիմնարկների պարտիական կազմակերպությունների անհետաձգելի խնդիրն է՝ ապահովել բոլոր պարտիական և անկուսակցական բուժաշխատողների ակտիվ մասնակցությունը աշխատավորության բուժսպասարկումը բարելավելու համար անցկացվող միջոցառումներին, քննարկել բուժհիմնարկների կյանքին վերաբերող գործնական հարցեր և սիստեմատիկաբար ստուգել ընդունված որոշումների կատարման ընթացքը, կոլեկտիվների աշխատանքներում ստեղծել առողջ մթնոլորտ, ծավալել քննադատությունն ու ինքնաքննադատությունը։

Առողջապահության ֆրոնտի աշխատողների պատվի գործն է՝ կարճ ժամկետում լիկվիդացնել աշխատանքում գոյություն ունեցող թերությունները, ՍՄԿԿ XXI և Հայաստանի Կոմպարտիայի XX համագումարները դիմավորել նորանոր հաջողություններով, երբեք չմոռանալ պարտիայի պահանջը՝ հոգատար վերաբերմունք դեպի մարդը, սովետական քաղաքացին, նրա առողջությունը։

Ե. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

# ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

ՀԱՐՑ

*Ես ցանկանում եմ ընդունվել ՍՄԿՊ-ի շարքերը։ Դեռ մայիս ամսից հավաքել եմ ընդունելության համար պահանջվող բոլոր փաստաթղթերը և դիմումիս հետ հանձնել եմ տեղի արտադրական պարտիական կազմակերպությանը։ Բայց մինչև օրս իմ ընդունելության հարցը պարտիական կազմակերպության ժողովում չի քննարկվել։ Այդ առթիվ ես մի քանի անգամ դիմել եմ նաև պարտիայի շրջանային կոմիտեին, սակայն դրանից հետո էլ իմ դիմումը չի քննարկվել։ Խնդրում եմ պատասխանել, ճի՞շտ է վարվում պարտիական կազմակերպությունը, որ այսքան ժամանակ իմ դիմումը չի քննարկում։*

Ա. ՄՈՒՐԱԴՅԱՆ

Եղեգնաձորի շրջանի Եղեգնաձոր գյուղի
ԼԿԵՄ կազմակերպության անդամ

ՊԱՏԱՍԽԱՆ

*Պարտիայի շարքերի ընդունելության յուրաքանչյուր գործ սկզբնական պարտիական կազմակերպության բյուրոն կամ քարտուղարը նախօրոք մանրամասն ստուգում է, պարզում ընդունվողի կենսագրական և աշխատանքային գործունեության վերաբերյալ տվյալները, երաշխավորությունների յավորակությունը և ապա քննության դնում պարտիական կազմակերպության ժողովում։ Որպես կանոն, այդ բոլորը պետք է կատարվի ժամանակին և ընդունելության գործը քննարկվի առանց ձգձգվելու։*

*Երբ պարտիական կազմակերպությունը լրիվ ճանաչում է դիմում տվողին, երբ ծանոթ է նրա կենսագրական տվյալներին ու աշխատանքային գործունեությանը, բնավ էլ հարկ չկա ամիսներ շարունակ, այն էլ մոտ հինգ ամիս, ձգձգելու ընդունելության գործի քննարկումը։ Բայց կարող են պատահել առանձին դեպքեր, որ պարտիայի շարքերն ընդունվողի կենսագրական տվյալների ստուգման համար (որոնք կապված են այլ վայրերում նրա կատարած աշխատանքային գործունեության հետ), պահանջվի որոշ ժամանակ։ Այս դեպքում էլ, իհարկե, չի կարելի ձգձգվածություն թույլ տալ, որովհետև վերջիվերջո սկզբնական պարտիական կազմակերպությունը անպայմանորեն պետք է քննության առնի ընդունելության համար ստացված գործը և իր հայեցողությամբ որոշում կայացնի տվյալ ընկերոջը պարտիայի շարքերն ընդունելու կամ չընդունելու մասին։*

ՀԱՐՑ

*Պարտիայի անդամը մի քանի ամիս շարունակ անդամավճարը պակաս է մուծել, որը միայն հետագայում է պարզվել։ Այսպիսի դեպքում ինչպե՞ս վարվել և նրանից ինչպե՞ս գանձել ու ձևակերպել պակաս մուծած անդամավճարը։*

Ս. ԲԱԲԱՋԱՆՅԱՆ

ՀԿՊ Գորիսի շրջկոմի հրահանգիչ

ՊԱՏԱՍԽԱՆ

*Ինչպես բոլոր դեպքերում, այնպես էլ անդամավճարի մուծման գործում կոմունիստը պետք է լինի ազնիվ։ Նա յուրաքանչյուր ամսի վերջին պետք է*



*ցույց տա իր ստացած վաստակի լրիվ գումարը և սահմանված չափով անդամավճար մուծի։ Իսկ եթե հետագայում պարզվի, որ նա պակաս անդամավճար է մուծել, ապա անցած ամիսների գումարը, որից անդամավճար չի գանձված, պետք է ավելացնել վերջին ամսվա վաստակին, գանձել անդամավճարը ու գրանցել պարտիական տոմսում և անդամավճարների մատյանում։*

*Եթե կոմունիստը լրիվ ցույց չի տալիս ամսական իր վաստակը և սահմանված չափից պակաս անդամավճար է մուծում, թույլ է տալիս կանոնադրության խախտում, որի կողքով պարտիական կազմակերպությունը լռությամբ չպետք է անցնի։*

ՀԱՐՑ

*Խնդրում ենք պատասխանել, թե շրջկոմի հրահանգչի աշխատանքային պլանում ի՞նչ հարցեր պետք է նախատեսվեն։ Կարո՞ղ է արդյոք շրջկոմի հրահանգիչն իր պլանում նախատեսել, օրինակ, պարտիական կազմակերպության ագիտ-կոլեկտիվի խորհրդակցության հրավիրում։*

Ս. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ

ՀԿՊ Մեղրու շրջկոմի հրահանգիչ

ՊԱՏԱՍԽԱՆ

*Շրջկոմի ապարատի վերակառուցումից հետո, այսինքն՝ բաժինների վերացումից հետո, անշուշտ շրջկոմի հրահանգչի դերն ավելի է բարձրանում։ Այժմ շրջկոմի յուրաքանչյուր հրահանգիչ սպասարկում է մի խումբ սկզբնական պարտիական կազմակերպություններ։ Շրջկոմի հրահանգիչը, համաձայն նախօրոք կազմած պլանի, սիստեմատիկ կազմակերպական աշխատանք է տանում սկզբնական պարտիական կազմակերպություններում։ Քանի որ շրջկոմի հրահանգիչը պատասխանատու է իրեն ամրացված պարտկազմակերպությունների աշխատանքի ամեն մի բնագավառի համար, ուստի նրա աշխատանքային պլանում կարող են նախատեսվել պարտիական-կազմակերպական և պարտիական-քաղաքական աշխատանքի բոլոր հարցերը, այդ թվում նաև ագիտ-կոլեկտիվի սեմինարները, հրահանգչական խորհրդակցությունները և այլ միջոցառումներ։*

---

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԱԿՏԻՎԻՍՏԻ ՍԵՂԱՆԻ ԳԻՐՔԸ

Հայպետհրատը քաջալերանքի արժանի գործ է կատարում։ «Պարտիական ակտիվիստի հուշատետր»-ից հետո վերջերս լույս է ընծայել «Партийная աշխատանքի հարցեր» ստվարածավալ ժողովածուն։ Պարտիական աշխատողի, ակտիվիստի գրադարանում ավելացավ ևս մի լավ գիրք։

Ներկա ժողովածուն կազմված է ՍՄԿՊ «Партийная жизнь» ամսագրում 1954 թվականի ապրիլից մինչև 1957 թվականը հրատարակված նյութերից, որոնց մի մասը՝ վերամշակված ձևով։ Նա իր մեջ պարունակում է հետաքրքիր նյութեր, արժեքավոր տեղեկություններ ու տեղեկանքներ պարտիական աշխատանքի շատ կարևոր հարցերի մասին. ընթերցողը նրանում կգտնի իրեն հուզող բազմաթիվ հարցերի հստակ ու սպառիչ պատասխանները։

Ժողովածուի առաջին բաժնում, որը վերնագրված է «Պարտիական ղեկավարման մեթոդների մասին», զետեղված հոդվածներում սեղմ, բայց հանրամատչելի կերպով պարզաբանվել են պարտիական կյանքի լենինյան նորմաների ու սկզբունքների, պարտիական ղեկավարման մեթոդների էությունը։ Ցույց տալով պարտիական սկզբունքների ու նորմաների մշակման գործում Վ. Ի. Լենինի բացառիկ մեծ ծառայությունը, ժողովածուում նշվում է, թե ինչպես ՍՄԿՊ Կենտկոմը՝ XX համագումարի որոշումների հիման վրա հետևողականորեն վերականգնում ու զարգացնում է այդ սկզբունքներն ու նորմաները։

«Պարտիական կյանքի լենինյան սկզբունքներն ու նորմաները,— ասված է գրքում,— անխզելի կապի մեջ են գտնվում պարտիայի իդեոլոգիական, կազմակերպական և տակտիկական հիմքերի հետ։ Նրանք որոշվում են այդ հիմքերով և միևնույն ժամանակ արտահայտում և կոնկրետացնում են դրանք պարտիայի կազմակերպման որոշակի ձևերի մեջ, նրա ներքին կյանքի ղեկավար կանոններում ու նրա գործունեության մեթոդների մեջ։ Պարտիական կյանքի լենինյան նորմաներն ու սկզբունքներն իրենց ձևական հաստատումն են գտնում պարտիայի Կանոնադրության մեջ, որի խստագույն պահպանումը պարտադիր է պարտիայի բոլոր անդամների համար՝ ինչպես ղեկավարների, այնպես էլ շարքայինների համար» (էջ 6—7)։

Վ. Ի. Լենինը պարտիայի ներքին կյանքի կարևորագույն սկզբունքն ու նրա գործունեության անհրաժեշտ պայմանը համարում էր պարտիական շարքերի ամենասերտ միասնությունը, ծրագրի, տակտիկայի և կազմակերպական հարցերի վերաբերյալ հայացքների միասնությունը։ Պարտիային հարկավոր է, ասում էր նա, համախմբվածություն, տոկունություն և կարգապահություն։ Պարտիայի կազմակերպական կառուցվածքի լենինյան ղեկավար սկզբունքը դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքն է, որը պարտիական ամենախիստ կարգապահությունը օրգանապես զուգակցում է ամբողջ ներպարտիական կյանքի լայն դեմոկրատիզմի հետ։

Հոդվածներից մեկում հիմնական գծերով շարադրված է պարտիական ղեկավարության կոլեկտիվության լենինյան սկզբունքի էությունը, ցույց է տրված այդ սկզբունքի կենսական ուժը։ «Ղեկավարման կոլեկտիվությունը,— ասվում է հոդվածում,— ոչ միայն որպես հակաթույն է ծառայում միակողմանիության, նեղմտության ու սխալականության դեմ, որոնք անխուսափելի են կարևոր հարցերը միանձնյա կերպով լուծելու դեպքում, այլև հող է ստեղծում բոլոր աշխատողների ակտիվության և ինքնագործունեության աճման համար, երաշխիք է տալիս, որ յուրաքանչյուրի խելացի կարծիքը կդիմավորվի բարյացակամորեն ու կկենսագործվի» (էջ 20)։

Ղեկավարության կոլեկտիվության սկզբունքի իրականացումը նշանակում է՝ բարձրացնել հանձնարարված գործի համար ամեն մի կոմունիստի, ամեն մի ղեկավարի անձնական պատասխանատվությունը։ Հոդվածում ցույց է տրված, որ պաշտպանելով պարտիական ղեկավարության կոլեկտիվության սկզբունքը՝ Վ. Ի. Լենինը դրա հետ մեկտեղ հանդես էր գալիս առանձին ղեկավարների, կազմակերպիչների դերը նսեմացնելու դեմ։ Այստեղից էլ հետևություն, որ պարտիական կազմակերպությունները պետք է ամեն կերպ պաշտպանեն պրակտիկ աշխատանքում պարտիական, սովետական, տնտեսական ղեկավարների նվաճած բարոյական հեղինակությունը։ Լենինը դատապարտում էր մասսաները ղեկավարներին հակադրելու պարտիայի կադրերը դեմագոգիկ կերպով պարսավելու ամեն մի փորձ։

Համոզելու մեթոդը գլխավորն է պարտիայի կողմից մասսաների ղեկավարման մեջ և այն դրված է ներպարտիական կյանքի, պարտիական կազմակերպությունների ամբողջ պրակտիկ գործունեության հիմքում։ Համոզել, ասված է գրքում, դա նշանակում է անմիջականորեն աշխատել մարդկանց հետ, անհատական մոտեցում հանդես բերել դեպի մարդը, կարողանալ ճիշտ մոտենալ աշխատավորների տարբեր խմբերին։ Վարչական մեթոդները հակասում են պարտիայի հենց բնությանը, նրանք կարող են հասցնել մասսաների հետ նրա ունեցած կապերի թուլացմանը և արգելակում են կոմունիստների ինքնագիտակցության, նախաձեռնության զարգացմանը։ Բացահայտելով համոզելու մեթոդի էությունը, ցույց է տրված, թե ինչպես կարելի է պրակտիկ կերպով իրագործել այդ մեթոդը, թե ինչպես կարելի է առավել լրիվ չափով օգտագործել այդ մեթոդի ներգործության ուժը։

Ժողովածուի այս բաժնում, նրա առանձին հոդվածներում քննարկվում են ներպարտիական կյանքի այնպիսի հարցեր, ինչպիսիք են՝ պարտիական դեմոկրատիան, կադրերի ընտրությունն ու դաստիարակությունը, պարտիական որոշումների իրականացումը. այնտեղ պարզաբանված են Վ. Ի. Լենինի դրույթները պարտիայի ներսում ծավալվող քննադատության, տնտեսության պարտիական ղեկավարման մեթոդների, սովետական պետական ապարատի աշխատանքի մասին և այլն։

«Պարտիայի անդամությունը» — այսպես է կոչվում ժողովածուի երկրորդ բաժինը։ Այստեղ մեկնաբանված են ՍՄԿՊ Կանոնադրության այն կետերը, որոնք վերաբերում են պարտիայի անդամությանը, ՍՄԿՊ շարքերն ընդունելու մասին տրված դիմումների քննարկման կարգին, պարտիայի մեջ ընդունվողների երաշխավորությանը, ՍՄԿՊ թեկնածուների իրավունքներին ու պարտականություններին, կոմունիստների ավանգարդային դերին և այլն։ Ապա խոսվում է «կոմսնապարծության» վնասի մասին։ Երբ մեր պարտիան դարձավ կառավարող պարտիա, Վ. Ի. Լենինը բազմիցս կոմունիստներին զգուշացնում էր մեծամտանալուց, մասսաներից կտրվելու վտանգից։ ՍՄԿՊ մեջ մարդիկ մտնում են ոչ թե հանուն անձնական օգուտի, այլ հանուն մեծ նպատակի՝ կոմունիզմի իրականացման։ Կոմունիստները ոչ մի արտոնություն չունեն մյուս աշխատավորների նկատմամբ, նրանք միայն ավելի մեծ պատասխանատվություն են կրում գործի վիճակի համար այն տեղամասում, որտեղ նրանք աշխատում են։ Այժմ էլ կան կոմունիստներ, որոնք գործում են վարչարարության մեթոդներով, չեն ունկնդրում անպարտիական մասսաների ձայնին։ Դատապարտելի է այն առանձին կոմունիստների վարքագիծը, երբ նրանք հրաժարվում են շարքային աշխատանքից, հավակնում են զբաղեցնելու բարձր պոստեր և այլն։

«Պարտիական աշխատանքի հարցեր» ժողովածուում ընդարձակ տեղեկություններ են հաղորդվում սկզբնական պարտիական կազմակերպությունների մասին։ Եվ դա հասկանալի է, քանի որ նրանք պարտիայի հիմքն են և բացառիկ կարևոր դեր են խաղում մասսաների հետ պարտիայի կապերն ամրապնդելու գործում։ Այստեղ խոսվում է, թե ինչպես են ստեղծվում սկզբնական և ցեխային պարտկազմակերպությունները, ցույց է տրվում արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովետական հիմնարկների, առևտրի սիստեմի և տերիտորիալ պարտիական կազմակերպությունների պրակտիկ գործունեության առանձնահատկությունները. գրքում անհրաժեշտ տեղեկություններ կան պարտիական հանձնարարությունների, պարտիական ժողովների, սկզբնական կազմակերպության բյուրոյի ու քարտուղարի աշխատանքի մասին։

Ընթերցողը ժողովածուից պրակտիկ շատ խորհուրդներ, տեղեկանքներ է ստանում տեղական պարտիական ղեկավար օրգանների գործունեության, պարտիական օրգաններում կոմունիստների անձնական գործերը քննարկելու կարգի, պարտիական տնտեսությունը վարելու մասին։ Արժեքավոր մտքեր կան պարտիական ղեկավարի մատչելիության, նրա վարվեցողության ու համեստության մասին, գծեր, որոնք բնորոշ են լենինյան տիպի գործիչներին։

Պարտիական ղեկավար աշխատողի մատչելիությունը նրա կողմից արվող ժեստ չէ, ոչ էլ իրեն մասսայականացնելու խաղ, այլ ղեկավարման անհրաժեշտ տարրն է, պարտիական ղեկավարի չգրված պարտականություններից մեկը։ Ղեկավարն ինչպիսի փորձ էլ որ ունենա, առանց կոմունիստների ու անպարտիականների հետ մշտական անձնական շփման չի կարող խորապես գիտենալ, ըմբռնել ու զգալ գործերի վիճակը։ Ղեկավարի արժանիքների մասին դատում են նաև այն բանով, թե նա ինչպես է ծանոթանում ու ընթացք տալիս աշխատավորների նամակներին։

Պարտիական աշխատողը գործում է լայն մասսաների մեջ, շփվում է մեծ թվով մարդկանց հետ։ Ղեկավարը, ասված է գրքում, իրեն միշտ պետք է պահի ըստ արժանվույն, տակտով, լինի պարզ ու համեստ։ Նրա վարվեցողությունը ինչ-որ արհեստական, ձևաքաղաքավարի հատկություն չէ, այլ հիմնված է մարդկանց նկատմամբ խոր հարգանքի վրա։

Գրքում քաղվածաբար մեջ են բերված Մ. Ի.

Կալինինի մտքերը. «Պարտիական ղեկավարը,— գրել է նա,— գոռոզ, մեծամիտ չպետք է լինի։ Եթե դուք բանվորների կամ շարքային պարտիականների հետ խոսելիս թեկուզ մի որևէ շարժուձևով, ձայնի տոնով, կարծես աննշան, պատահական խոսքով զգալ տաք, որ դուք ավելի խելոք եք համարում ձեզ, որ ավելի շատ բան գիտեք նրանցից, ապա կորած եք» (էջ 366—367)։

Համեստությունն ու պարզությունը, իր նկատմամբ բարձր պահանջկոտությունը այն բարոյական հատկություններն են, որ պարտիան դաստիարակում է բոլոր կոմունիստների, ղեկավարների մեջ։ Պարտիան ամենավճռական ձևով դատապարտում է այնպիսի աշխատողներին, որոնք պաշտոնական աստիճաններով առաջ քաշվելու համեմատ սկսում են գոռոզանալ, դառնում են «ազնվազարմ», չափազանցնում են իրենց հնարավորությունները։ «Ո՛չ աստիճանը,— կարդում ենք գրքում,— ո՛չ դիրքը, ո՛չ էլ բնակարանի չափերը չեն կարող իրենք-իրենց հեղինակություն ստեղծել մարդու համար։ Նրա հեղինակությունը լիովին կախված է նրանից, թե նա խոսքով ու գործով ինչպես է ազդում մարդկանց վրա» (էջ 372)։

Պարտիական կյանքի կարևորագույն բնագավառն է հանդիսանում ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը։ Ժողովածուի առանձին բաժնում քննարկվում են կոմունիստի գաղափարական համոզվածության, ինչպես նաև պարտիական քաղաքական լուսավորության, դասախոսական պրոպագանդայի, ագիտացիոն-մասսայական աշխատանքի կազմակերպման մի շարք հարցեր։

ՍՄԿՊ Կենտկոմի որոշումներում ասվում է, որ պարտիական պրոպագանդայի գլխավոր խնդիրը՝ կոմունիստների զինումն է մարքսիզմ-լենինիզմի հիմունքների, հասարակական զարգացման օրենքների, կոմունիզմի կառուցման օրենքների իմացությամբ, Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ներքին ու արտաքին քաղաքականության խոր ըմբռնմամբ։ Անհրաժեշտ է պարտիայի անդամների մեջ դաստիարակել մարքսիստական-լենինյան աշխարհայացք, կոմունիստական գաղափարայնություն, ստեղծագործական մոտեցում թեորիայի ուսումնասիրման նկատմամբ, անհաշտվողականություն բուրժուական գաղափարախոսության դրսևորումների նկատմամբ։ Պարտիական պրոպագանդան ու ագիտացիան կոչված են խորապես բացահայտելու սովետական մարդկանց ամենօրյա գործունեության և կոմունիզմի կառուցման վիթխարի խնդիրների միջև եղած կապը, բարձրացնելու պարտիայի կյանքի գաղափարական մակարդակն ու կոմունիստների ստեղծագործական ակտիվությունը։

Օգտակար, շատ կողմերից ուսանելի այս ժողովածուն պետք է դառնա մեր պարտիական աշխատողների, ակտիվիստների սեղանի գիրքը։ Այն մեծապես կօգնի նրանց պրակտիկ աշխատանքում՝ բարելավելու և կատարելագործելու ղեկավարման մեթոդներն ու եղանակները։

Ցանկանք, որ Հայպետհրատը հետևողական լինի իր լավ նախաձեռնության մեջ, և պարտիական շինարարության ու պարտիական աշխատանքի փորձի մասին շարունակի հրատարակել նման արժեքավոր գրքեր ու գրքույկներ։

Կ. ՂԱԶԱՐՅԱՆ

---

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении. тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.



ՎՖ 08324
Պատվեր 2544 Տիրաժ՝ 13000
Տպ. 11 մամուլ. մամուլում 63.840 նիշ։
Ստորագրված է տպագրության 24/X 1958 թ.։
ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։

ԳԻՆԸ 2 ռ. 50 կ.